# ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ

# ՀԱՆԳԻՍՏ ՍՐԲՈՑ



Ուրեմն ալ վախնանք, որ չըլլայ թէ անոր հանգիստը
մտնելու խոստմունքը որ մեզի թողեր է,
ձեզմէ մէկը անկէ զրկուած գտնուի։
Եբր. Դ. 1։



Constantin

ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՈԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ Յ. ՓԱՓԱԶԵԱՆ

1859

# ՑԱՆԿ

## ԳԼՈՒԽ Ա

ԵՐԵՍ

Աս գրքիս նախադրութը՝ սրբոց հանգստեան բնու-
թեանը վրայով . . . . . . . . . . . . 1

## ԳԼՈՒԽ Բ

Սրբոց հանգստեան համար եղած մեծ պատրաստու-
թիւնները . . . . . . . . . . . 29

## ԳԼՈՒԽ Գ

Սրբոց հանգստեան գերազանցութիւնը. . . . 43

## ԳԼՈՒԽ Դ

Ան անձանց որպիսութիւնը՝ որոնց համար որ է աս
հանգիստը . . . . . . . . . . . 71

## ԳԼՈՒԽ Ե

Սրբոց հանգիստը կորսնցնողներուն մեծ թշուա-
ռութիւնը . . . . . . . . . . . 99

## ԳԼՈՒԽ Զ

Անոնց թշուառութիւնը, որոնք բաց 'ի կորսնցու-
նելէ սրբոց հանգիստը, ժամանակաւոր վայելում-
ներն ալ կը կորսնցունեն ու դժոխքին տանջանք-
ները կը կրեն. . . . . . . . . . . . 121

## ԳԼՈՒԽ Է

ԵՐԵՍ

Սրբոց հանգէտը անդանդաղ խնդրելու հարկաւորութիւնը . . . . . . . . . . . 144

## ԳԼՈՒԽ Ը

Սրբոց հանգէտէն մեզ մեր մասնակցութիւն ունենալը ինչե՞ն պէտք որոշէն. . . . . . . 178

## ԳԼՈՒԽ Թ

Նուագածոյ ժողովուրդին պարտքն է յորդորելու-ացրէններըն՝ սրբոց հանգէտը փնտռելու համար 211

## ԳԼՈՒԽ Ժ

Սրբոց հանգէտը երկրէս վրայ անհնարելու չէ . 246

## ԳԼՈՒԽ ԺԱ

Երկրէ վրայ երջանաւոր կեանք մը վարելուն հարկաւորութիւնը . . . . . . . . . . 279

## ԳԼՈՒԽ ԺԲ

Խորհուրդներ թէ ինչպէս վարելու է երկրէ վրայ երջանաւոր կեանք . . . . . . . . . . 314

## ԳԼՈՒԽ ԺԳ

Երկնային մրցանակութեան բնութիւնը, և անկէց ըննելու ամենայարմար ժամանակը՝ տեղը՝ և անոր

ԵՐԵՍ

ամենայարմար եղած բնաւորութիւնը . . . . 348

ԳԼՈՒԽ ԺԴ

Ներքնային մաքրութեան ինչ օգնութիւն կ'ընեն զգացումները՝ առանձնախօսութիւնը և աղօթքը 370

ԳԼՈՒԽ ԺԵ

Թէ ինչպէս կ'օգնեն զգալի առարկաները ներքնային մաքրութեան, և թէ ինչպէս կը պաշտպանուի անձկայ խաբեբայ աչքերէն . . . . 393

ԳԼՈՒԽ ԺԶ

Ներքնային մաքրութեան օրինակ . . . . . 423

ՎԵՐՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ . . . . . . . . 461

# ՅԱՒԻՏԵՆԱԿԱՆ
# ՀԱՆԳԻՍՏ ՍՐԲՈՑ

ԱՍՏՈՒԾՈՅ ԺՈՂՈՎՈՒՐԴԻՆ ՀԱՆԳԻՍՏ ՄԸ ԿԸ ՄՆԱՅ

ԵԲՐ. Դ. 9:

## ԳԼՈՒԽ Ա

Առ երկու նախադասութիւն՝ այժմու հանգստեան բնութեանը վերայ:

Ոչ միայն Աստուծոյ շնորհքը և մեր-արդեամբ անիկայ վայելելն էր որ կորսուեցաւ. Ադամին անկումովը, հապա նաև զանիկայ հոգևորապէս ճանչնալն ու անանկ երանութեան մը վրայ ճըշմարիտ յօժարութիւն ունենալն ալ: Երբոր Աստուծոյ Որդին կու գայ գթութեամբ ձրի շնորհքով փրկելու, և հոգևոր ու յաւիտենական երջանկութիւնն ու փառքը կը յայտնէ, մարդոց վըրայ հաւատք չգտներ, որ անոնք ընդունին և հաւատան: Ան աղքատին նման՝ որ չէր կրնար հաւատալ թէ տասը հազար դահեկան ունեցող մը կրնայ ըլլալ, որովհետև իր ունեցածէն այնքան աւելի էր, մարդիկ ալ հիմա հազիւ կը հաւատան թէ կայ անանկ երջանկութիւն մը՝ որ ատեն մը առաջին մարդը կը վայելէր. ուր մնաց անանկը՝ որ իրենց համար ստացեր է Քրիստոս: Երբոր

Աստուած կ'ուզէր Իսրայէլացիներուն իր հանգըստեան Շաբաթները տալ հանգստեան երկրի մը մէջ աւելի բան ըրաւ անոնց հաւատացընելու համար, քան թէ անոնց թշնամիները յաղթելու և ան հանգիստը պատրաստելու համար ։ Ու երբոր անիկայ ձեռք ձգեցին՝ միայն իբրև փոքր նշան ու առհաւատչեայ մը Քրիստոսով ըլլալու անհամեմատ աւելի փառաւոր հանգստեանը, տակաւին իրենց ունեցածէն աւելիին չէին հաւատար, այլ խնճոյքի մէջ գտնուող որկրամոլին պէս կ'ըսէին. Ասոր նմանը ասկէ աղէկ երկինք չըլլար. կամ թէ որ Մեսիային ձեռօքը աւելի բանի ակնկալութիւն ալ ունէին, ան ալ միայն իրենց երկրաւոր երջանկութեան աւելնալն էր ։ Առաքեալը Եբրայեցւոց գրած թուղթին մէջ ըստ մեծի մասին աս խստասրտութեանը դէմ կը խօսի, և պարզ ու ընդարձակ կերպով կ'ապացուցանէ թէ բոլոր արարողութիւններուն և ստուերական նախատիպներուն վախճանը՝ զիրենք Յիսուս Քրիստոսի տանիլ էր, որոնց իսկութիւնը բուն ինքն է. և կը ցուցունէ թէ Շաբաթներուն ու Քանանու հանգիստը՝ ուրիշ հանգիստի մը նայիլ սորվեցընելու համար էր իրենց, որ ան էր արդարև իրենց երջանկութիւնը ։ Իմ բնաբանս՝ անոր քանի մը փաստաբանութիւններէն վերջը հանած եզրակացութիւնն է. և անանկ եզրակացութիւն մըն է որ՝ հաւատացեալին բոլոր մխիթարութեան հիմը, և բոլոր իր կատարած պարտաւորութիւններուն ու քաշած չարչարանքներուն վախճանը, և բոլոր Աւետարանի խոստմունքներուն ու Քրիստոնէական պարգևներուն կեանքն ու լոյսը կը պարունակէ ։

Հանգիստէն աւելի ինչ հաճելի բան կայ անձնական տառապանքներու, ծանր պարտաւորութիւ-

ներու և դառն փորձութիւններու կամ չարչարանքներու տակ եղող մարդոց։ Ասիկայ ոչ միայն մեր միխիթարութիւնն է, այլ և մեզի հաստատութիւն տալող։ Ամէն պարտաւորութեան մէջ մեր աշխոյժ ըլլալը, մեր նեղութեան համբերելը, մեր զԱստուած պաշտելը, և մեր սիրոյն ու շնորհակալութեան ու բոլոր մեր առաքինութիւններուն զօծը, և մինչև անգամ բուն իսկ կրօնքն ու Քրիստոնէութիւնը՝ մեր հանգիստին սրտի մօռք հաւատալէն կախուած է։ Դու արդ ընթերցող՝ ով որ ըլլաս, պզտիկ՝ թէ մեծ, հարուստ՝ կամ աղքատ, կ'աղաչեմ քեզի և կը յորդորեմ քու Տէրոջդ անունովը՝ ան որ քիչ ատենէն քեզ հաշիւի պիտի կանչէ, և քեզ դատելով քու յաւիտենական անփոփոխ վիճակդ պիտի որոշէ, աս բաները միայն կարդալով ու աղէկ է ըսելով մէկդի չձգես. այլ սրտով ձեռք զարնես աս գործին, ու զԱստուած քու միակ հանգիստդ ընես Քրիստոսով, և քու սիրտդ ամէն բանէն աւելի անոր վրայ հաստատես։ Կենդանի Աստուածը՝ որ իր սուրբերուն* բաժինն ու հանգիստն է՝ երանի թէ աս մեր մարմնաւոր միտքերը ան աստիճան հոգևոր ընէ, և մեր երկրաւոր սիրտերը ան աստիճան երկնային ընէ, որ զինքը սիրել ու իրմով ուրախանալը մեր կենացը մեծ գործն ըլլայ. և ես որ կը գրեմ աս գիրքը, ու դուն որ կը կարդաս անիկայ՝ չըլլայ որ գտնուինք աս կենաց ճամբայէն, և չըլլայ որ՝ անոր հանգիստը մտնելու խոստմուն-

* Սուրբ կ'ըսուի ամէն փրկուած քրիստոնեաներուն՝ ինչպէս որ Նոր Կտակարանին մէջ ալ աս անունովը կը կոչուին քրիստոնեաները, քանզի "առանց սրբութեան զԱստուած տեսնել չկայ"։ (Եբր. ԺԲ. 14.)

քը՝ որ մեզի մնացեր է, մեզմէ մէկը անկէ զըր-կուած գտնուի անհաւատութիւնով կամ զանցա-ռութիւնով :

Արդ հանգիստը՝ Քրիստոնէից գերազանց եր-ջանիկ վիճակն է, կամ թէ կատարեալ ե-ղած սուրբերուն զԱստուած յաւիտեան կատա-րելապէս վայելելնին է, իրենց ընդունակութեան ան-չափին համեմատ՝ որուն անոնց հոգիները կը հաս-նին մահէն վերջը, և հոգին ու մարմինը միանգա-մայն կը հասնին կատարեալ չափով՝ յարութենէն ու դատաստանէն ետքը : Արդ հանգիստին վրայ աս վերոգրեալ սահմանին համեմատ, աւելի ըն-դարձակ բացատրութիւն մը պիտի տրուի աս

Ա. գլխուն մէջ՝ անոր բնութեանը վրայ :

Բ. գլխուն մէջ՝ անոր նախապատրաստութիւն-ներուն վրայ :

Գ.ին մէջ՝ անոր գերազանցութեանը վրայ :

Դ.ին մէջ՝ ան անձանցը վրայ, որոնց համար որ սահմանուած է աս հանգիստը : Աս նիւթին վրայ աւելի բացատրութիւն տալու համար,

Ե. գլխուն մէջ պիտի բացատրուի աս հանգիս-տը կորսնցընողներուն թշուառութիւնը.

Զ.ին մէջ՝ անոնց թշուառութիւնը՝ որ ժամա-նակաւոր վայելքներն ալ կը կորսնցընեն, և դը-ժոխքին տանջանքներն ալ կը քաշեն : Դարձեալ պիտի ցուցուի

Է. գլխուն մէջ՝ աս հանգիստը շատ ջանքով փնտռելուն հարկաւորութիւնը :

Ը.ին մէջ՝ թէ ինչէն կ'իմանանք մեր անիկայ ժառանգելիքը :

Թ.ին մէջ՝ թէ անոնք որ կրնան իմանալ իրենց ան հանգիստին ժառանգորդ ըլլալը, վախցողնե-րուն օգնելու են :

աս իրենց փնտռած վախճանէն ։ Ընդհանուր մարդկային ազգին ահաւոր վիճակը աս է Ադամի անկումէն հետէ ։ Երբ որ Քրիստոս կու գայ ձրի շնորհքով զանոնք նորոգելու՝ մարդ մը չգտներ հանդարտ կեցած , այլ կը տեսնէ որ ամէնը յաւիտենական կործանման ու դէպ 'ի դժոխք արտորնօք կը վազեն . մինչև որ իրենց յանցանքնին ճանչնալ տալով առաջ՝ կանուխ առնել կու տայ իրենց ճամբէն , և ետքը նորոգելով սիրտերնին ու վարքերնին՝ զանոնք անկեղծութեամբ իրեն կը դարձընէ . ( Դ ) Թէ աս հանգիստը փնտռողները՝ ան վախճանն ու անոր գերազանցութիւնը ճշդելու են , և հաստատ դիտաւորութիւն ունենալու են նոյնը գտնելու ։ Անծանօթ բարիքը փափաքի և ջանքի չշարժեր մարդը ։ Դարձեալ՝ ( Ե ) Թէ գիտնալու են որ մարդիկ ոչ միայն հեռու են աս հանգիստէն , այլ նաև աս հեռաւորութեան արժանի ըլլալու ։ Անոնք որ չեն գիտեր իրենց Աստուծմէ հեռու և դժոխքի ճամբուն մէջ ըլլալը՝ արքայութեան ճամբան ալ բնաւ չեն գիտեր ։ Մարդ մը կրնա՞յ իր Աստուծմէ հեռացած և հոգին կորսնցուցած ըլլալը իմանալ և չաղաղակել՝ Թէ Ես կորսուա՜ծ եմ ։ Աս հանգիստը այնքան քիչ անձինք ձեռք ձգելնուն պատճառը աս է , որ չեն ուզեր համոզուիլ՝ թէ իրենց արժանաւորութեանը նայելով հեռու են անկէ , և իրենց վարմունքին նայելով ալ հակառակ են անոր ։ Ո՞վ կը փնտռէ ան բանը՝ որ կորսնցուցած ըլլալը չգիտեր ։ "Առողջներուն բժիշկ պէտք չէ , այլ հիւանդներուն" ։ Պէտք է գիտնալ նաև՝ ( Զ ) Թէ գերագոյն Պատճառի մը ողորմութիւնը կայ , որ կը շարժէ մեզ աս հանգիստը փնտռելու . եթէ ոչ ամէնքս ալ անշարժ պիտի կենայինք , և յաւէտ պիտի չերթայինք դէպ 'ի մեր հանգիստը ։ Եթէ

Աստուած մեզ չշարժէ, մենք չենք կրնար շարժիլ»։ Քրիստոնէական իմաստութեան մէկ գըլխաւոր մասն է՝ միայն պահել մեր Աստուծոյ հըպատակ ըլլալնիս, և ամէն բանի մէջ անկէ կախում ունենալնիս։ «Չէ թէ մենք ինքնիրեննիս բաւական ենք բան մը խորհելու՝ որպէս թէ մեզմէ. հապա մեր բաւականութիւնը Աստուծմէ է։» (Բ. Կոր. Գ. 5։) «Առանց ինծի», կ՚ըսէ Քրիստոս, «բան մը չէք կրնար ընել»։ Դարձեալ (Է) Թէև սա հանգիստը փնտռողները հոգնած կենաց նեղքին դողքը ունին։ Աստուած մարդիկը քարի պէս չշարժեր, այլ կեանք կու տայ անոնց. ոչ թէ անոր համար որ առանց իրենն շարժին, այլ իրենն հպատակելով որ է առաջին շարժողը։ Դարձեալ (Ը) Թէև սա հանգիստը ձեռք ձգելու համար՝ պէտք է հաստատ, եռանդուն և գործունեայ ընթացք մը բռնել։ Ան որ իր տաղանդները չշանեցըներ, ծոյլ ծառային վարձքը պիտի առնէ։ Քրիստոս է սա հանգիստին դուռը՝ և մի միայն ճամբան։ «Ինչու որ՝ նեղ է ան դուռը՝ ու նեղուածք է ան ճամբան»։ և ջանք ընելու ենք թէ որ կ՚ուզենք մտնել. «քանզի շատերը պիտի ուզեն մտնել, և պիտի չկրնան»։ որ կը ցուցընէ թէ «երկնից թագաւորութիւնը ուժով կ՚առնուի, և ուժեղները կը յափշտակեն անիկայ»։ Նաև ոչ ալ սուրբերուն վախճանին պիտի հասնինք, թէ որ հոգիով սկսինք՝ և մարմինով վերջացընենք։ Միայն ան որ՝ «մինչև վերջը կը համբերէ, պիտի ազատի»։ Ու բնաւ մէկ հոգի մը ան հանգիստը բռնացած չէ Աստուծոյ քով՝ որուն փափաքը աշխարհքի ամէն բաներէն աւելի անոր վրայ հաստատուած չէր։ «Ձեր գանձերնիդ ուր որ է, սրտերնիդ ալ հոն պիտի ըլլայ»։ Մեր հին բնութեան մէջ-

ցորդը շատ պիտի նեղացընէ այս փափկալիկերը, բայց բոլորովին պիտի չյաղթէ մեզնից։ Ու խորհելով այն ընդդիմութեանց վրայ, որ մեր հայեցի փափկալիցներուն կ'ըլլայ՝ մեր խնութեանց մէջ եղած հակառակ սկզբունքներէն ու մեր ունեցած կարողութիւններուն և ձիրքերուն տկարութենէն, ու նաև մեր այն փախճանէն ունեցած հեռաւորութեանը վրայ կ'իմանանք թէ հարկաւ շատ աշխատութիւնով ու բոլոր ուժով ըլլալու է մեր ընթացքը դէպ 'ի այն փախճանը։

Արդ՝ աս քայլերը առնելով հասանք աստճանքին արտաքին գուխթը, բայց կարող պիտի ըլլա՞նք արդեօք վարագուրին ներսի կողմը նայիլ։ Արդեօք կարող պիտի ըլլա՞նք՝ ոչ միայն անոր նախընթացները և պատրաստութիւնները, այլ նաև այն հանգիստքին մէջ պարունակածները ցուցանել։ Մա՛րդ, ո՛րչափ քիչ տեղեկութիւն ունիմ ան փառքին վրայ։ Ան տեսիլքը որ Պօղոս առաքեալ տեսաւ, անանկ բան մը կը պարունակէր, որ չէր կրնար՝ կամ պէտք չէր զրուցուիլ։ Թէ՛ որ անիկայ երկինքին բաները անանկ երկնաւոր լեզուով զըրուցած ըլլար որ մարդ մը չկրնար հասկընալ այն լեզուն, ինչ օգուտ էր։ Երանի՜ թէ Տէրը ինծի սորվեցընէ այն բաները՝ որ ես ալ ձեզի յայտնեմ։ Երանի՜ թէ Տէրը լոյս մը ծագեցընէ և ցուցընէ մեր ժառանգութիւնը, ձեզի ալ՝ ինծի ալ։ Ո՛չ թէ Բաղաամին պէս՝ որուն աչքերը բացուեցան Յակոբին վրաններուն ու Իսրայէլի խորաններուն գեղեցկութիւնը տեսնելու՝ որ հոն ինք բաժին չունէր, և անէծք պիտի գար իր կործանումին. ո՛չ թէ Մովսէսին պէս՝ որ 'Փասգայէն երկիրը ժառանգելուն տեսաւ, միայն տեսաւ անիկայ՝ բայց որ ինք հոն պիտի չերթար. այլ Ս. Յովհաննէսին մէջ յի-

թիւն կը բաշխէ ։ Եթէ Հարաւի Թագուհին պատճառ ունէր ըսելու Սողոմոնի փառքին համար թէ "Երանի՜ քու մարդիկներուդ, երանի՜ այս քու ծառաներուդ, որոնք միշտ քու առջեւդ կայնելով քու իմաստութիւնդ կը լսեն". (Գ Թագ. Ժ. 8.) աւելի՜ անշուշտ անոնք՝ որ միշտ Աստուծոյ առջեւը կը կենան և Անոր փառքը և Գառնուկին փառքը կը տեսնեն, աւելի՛ եւս երանելի են ։ "Քրիստոս կենաց ծառէն և պահուած մանանայէն անոնց ուտել պիտի տայ, նաև զանոնք սիւներ պիտի ընէ Աստուծոյ տաճարին մէջ, և ալ դուրս պիտի չելլեն անկէ. և անոնց վրայ պիտի գրէ իր Աստուծոյն անունը և իր Աստուծոյն քաղաքին անունը՝ այսինքն նոր Երուսաղեմին, որ երկինքէն իր Աստուծմէն կ'իջնէ. և պիտի գրէ անոնց վրայ իր նոր անունը. և ասկէ աւելի ալ (թէ որ ասկէ աւելին կրնայ ըլլալ) պիտի շնորհէ անոնց նստիլ իրեն հետ իր աթոռին վրայ ։ Ասոնք են մեծ նեղութենէ եկողներ՝ որ իրենց հանդերձները լուացին, ու զանոնք Գառնուկին արիւնովը ճերմկցուցին. անոր համար Աստուծոյ աթոռին առջևն են և իրեն կը ծառայեն ցորեկ գիշեր իր տաճարին մէջ. և աթոռին վրայ նստողը իր վրանը պիտի տարածէ անոնց վրայ ։ Ան Գառնուկը՝ որ աթոռին մէջն է, պիտի հովուէ զանոնք ու պիտի առաջնորդէ անոնց կենդանի ջուրերու աղբիւրներուն, և Աստուած բոլոր արցունքները պիտի սրբէ անոնց աչքերէն" ։ (Յայտ. Է. 14, 15. 17 ։) Ո՜վ կոյր ու խաբուած աշխարհ, կրնա՞ս աւանկ փառք մը ցուցընել մեզի ։ Ասիկայ մեր Աստուծոյն քաղաքն է, ուր որ "Աստուծոյ խորանը մարդոց մէջն է և ինքն անոնց հետ պիտի բնակի, և անոնք անոր ժողովուրդը պիտի ըլլան և Աստուած ինքն անոնց հետը պիտի ըլլայ իբրև ա-

նանց Աստուածը» : «Աստուծոյ փառքը զանիկայ կը լուսաւորէ ու անոր ճրագը Գառնուկն է» : «Այ-ալ նզովք պիտի չըլլայ հոն, այլ Աստուծոյ ու Գառնուկին աթոռը անոր մէջ պիտի ըլլայ. եւ անոր ծառաները պիտի պաշտեն անիկայ եւ անոր երեսը պիտի տեսնեն, եւ անոր անունը իրենց ճակատներնուն վրայ պիտի ըլլայ» : Ասոր խօսքերը հաւատարիմ ու ճշմարիտ են, եւ շուտով պիտի ըլլան :

Այս հիմա Միլլենիումթէյին պէս կ՚ըսենք թէ՝ Թո՛ղ աշխարհս ամէն բան առնէ. որովհետեւ մեր Տէրը խաղաղութեամբ պիտի գայ : Ցնծացէ՛ք ուրեմն Տէրոջմով, ո՛վ դուք արդարներ, եւ ըսէք իր Դաւիթ ծառային հետ, «Տէրն է իմ ժառանգութեանս ու բաժակիս բաժինը. իմ վիճակս դուն պիտի պահես : Վիճակներ ելան ինծի զուարճալի տեղերու մէջ. իրաւ՝ իմ ժառանգութիւնս ինծի երջանիկ եղաւ : Ամէն ատեն Տէրը իմ առջեւս դրի. որովհետեւ իմ աջ կողմս է, պիտի չսասանիմ : Ասոր համար սիրտս ուրախ եղաւ ու փառքս բերկրեցաւ, ու մարմինս ալ յուսով պիտի հանգստանայ. վասն զի իմ անձս գերեզմանին մէջ պիտի չթողուս, ու քու սուրբիդ ալ ապականութիւն տեսնել պիտի չտաս : Կենաց ճամբան ինծի պիտի ցուցընես. երեսիդ առջեւ լեցուն ուրախութիւն կայ, քու աջ կողմդ միշտ հաճոյութիւններ կան» : (Սաղ. ԺԶ. 5—11.) Ինչ յանդգնութիւն պիտի ըլլար խորհիլ կամ խօսիլ ատանկ բան մը՝ թէ որ մեզի առաջ Աստուած խօսած չըլլար : Ես չէի համարձակեր խորհիլ թէ սուրբերուն անանկ բարձր աստիճան մը ունին աս աշխարհքիս մէջ ինչպէս որ Սուրբ Գիրքը կը ցուցընէ, թէ որ Աստուած նոյն ճշմարտութիւնը յայտնած չըլլար : Ո՛րչափ անփայլել պիտի ըլլային

բանն'ի խօսքերը, թէ որ Աստուծոյ խօսքերը չըլլային անոնք. Աստուծոյ զաւակներ ըլլալ. Աստուծոյ հետ խօսիլ. Աստուծոյ հետ հաղորդութիւն ունենալ. Աստուծոյ մէջ բնակիլ, և Աստուած ալ մեր մէջը: Ո՞ւր մնաց որ համարձակութիւն պիտի ունենանք խորհելու թէ՝ արևու պէս պիտի փայլինք, Քրիստոսի ժառանգակիցներ պիտի ըլլանք, անոր աթոռը պիտի նստինք, աշխարհը պիտի դատենք; մէկ պիտի ըլլանք Քրիստոսի և իր Հօրը հետ՝ թէ որ աս ամէնն Աստուծոյ բերնէն զրուցուած և անոր ձեռքով հաստատուած չըլլար: Բայց ըսաւ ու պիտի չընէ՞: Խօսեցաւ և տեղը պիտի չըբերէ՞: Այո, ինչպէս որ Տէր Աստուած ճշմարիտ է, այնպէս ալ պիտի ըլլայ աս բաները ան մարդուն՝ որն որ Քրիստոս կ'ուզէ պատուել: Աճիլառա, քրիստոնեայ, մօտ է ան ժամանակը՝ որ Աստուած և դուն մէկզմէկու մօտ պիտի ըլլաք, և այնքան մօտ՝ որքան որ կրնաս փափաքիլ: Անոր ընտանիքին մէջ պիտի բնակիս: Աս բաւակա՞ն է: «Աւելի ընտրեցի իմ Աստուծոյս տանը սեմին վրայ կենալ, քան թէ ամբարշտաց վրաններուն մէջը բնակիլ»: Միշտ անոր առջևը պիտի կենաս՝ անոր աթոռին քովը՝ անոր ունկնդրութեան սրահին մէջը: Ասկէ աւելի մօտ ըլլալ կ'ուզե՞ս: Անոր զաւակը պիտի ըլլաս, և ան քու Հայրդ. անոր թագաւորութեանը ժառանգորդ. և ոչ այսչափ միայն՝ այլ իր Որդւոյն նշանածը պիտի ըլլաս: Ասկէ աւելի ի՞նչ բանի կրնաս փափաքիլ: Իր Որդւոյն մարմինին մէկ անդամը պիտի ըլլաս. ան քու գլուխդ պիտի ըլլայ. դուն անոր հետ մէկ պիտի ըլլաս՝ ինչպէս որ ինք մէկ է Հօրը հետ. քեզի համար ալ Հօրմէն խնդրեց ըսելով՝ «Որ ամէնն ալ մէկ ըլլան ինչպէս որ դուն, ո՛վ Հայր, իմ մէջս,

ու ես քու մէջդ, որ անոնք ալ մեր մէջը մէկ ըլ-
լան։ Եւ ան փառքը որ դուն ինծի տուիր՝ ես ա-
նոնց տուի, որ մէկ ըլլան՝ ինչպէս որ մենք մէկ
ենք. Ես անոնց մէջ և դուն իմ մէջս, որ իրենք
կատարեալ ըլլան միութեան մէջ, ու աշխարհս
գիտնայ թէ՝ դուն խրկեցիր զիս, ու սիրեցիր զա-
նոնք՝ ինչպէս որ զիս սիրեցիր"։ ( Յովհ. ԺԷ.
21—23։)

5. Աս ալ պէտք է յիշել թէ՝ սա հանգիստը իր
պարունակէ մարմնոյն և հոգւոյն ամէն կարողութիւննե-
րուն մէջ անոյշ և ներդաշնակ գործողութիւնը՝ զԱստ-
ուած վայելելու մէջ։ Աս մարմինը անանկ պիտի
փոխուի՝ որ ալ միս ու արիւն պիտի չըլլայ, որ ա-
նոնք չեն կրնար ժառանգել Աստուծոյ թագաւո-
րութիւնը, այլ հոգևոր մարմին պիտի ըլլայ։ Ոչ
թէ ան մարմինը կը ցանենք որ պիտի բուսնի, այլ
Աստուած անոր մարմին կու տայ ինչպէս որ կ'ու-
զէ. և ամէն մէկ սերմին իր յատուկ մարմինը։ Ե-
թէ շնորհքն այնչափ կը փոխէ քրիստոնեան իր
առջի եղածէն՝ որ ըսէ թէ, Ես ան մարդը չեմ
որ էի, որչափ առաւել փառքը պիտի փոխէ մեզ։
Որչափ որ արեգակէն պայծառ եղող հոգևոր մար-
մինը՝ աս տկար ու ապականացու հիւանդոտ մար-
մինէն գերազանց է, այնչափ գերազանց պիտի ըլլայ
զգայարանքներնիս՝ մեր հիմակուան ունեցածներէն։
Անտարակոյս Աստուած որչափ որ կատարելագործէ
մեր զգայարանքները և ընդարձակէ մեր ընդունա-
կութիւնը, այնչափ պիտի աւելցընէ ան զգայա-
րանքներուն երջանկութիւնը՝ և իրմով պիտի լեցընէ
բոլոր ան ընդունակութիւնը։ Անշուշտ մարմինը
յարութիւն առնելու և կրկին ապրելու չէր՝ թէ որ
ան փառքին մասնակից չըլլար։

Ինչպէս որ հնազանդութեան և չարչարանքի

մէջ մտնալնիկց ելլալ, անանկ ալ պիտի ըլլայ ե-
րանութեան մէջ։ Որովհետեւ Քրիստոս ամբողջ
մարդը ծախու առաւ, վասն որոյ ան ամբողջութիւ-
նը յաւիտենական արքայութեանը ժառանգորդ պիտի
ըլլայ։ Ի՛նչ երջանիկ զբաղմունք՝ որ փառաւոր-
եալ մարմինը պիտի ունենայ. Աստուծոյ և Գառ-
նուկին աթոռին առջեւը կենալ և միշտ կանչել,
«Արժանի ես Տէր, փառք ու պատիւ և զօրու-
թիւն առնելու։ Այն մորթուած Գառնուկը ար-
ժանի է զօրութիւն ու հարստութիւն, իմաստու-
թիւն ու կարողութիւն, և պատիւ ու փառք ու
օրհնութիւն առնելու... ինչու որ մորթուեցար
ու մեզ ծախու առիր Աստուծոյ՝ քու արիւնովդ ա-
մէն ցեղէ ու լեզուէ, ժողովուրդէ ու ազգէ, Ու
մեզ մեր Աստուծոյ թագաւորներ ու քահանաներ
ըրիր։ Ալէլուիա, փրկութիւն և փառք և պատիւ
և իշխանութիւն մեր Աստուծոյն, Ալէլուիա. քան-
զի մեր ամենակարող Տէր Աստուածը թագաւո-
րեց»։ Ո՛վ քրիստոնեաներ՝ ան երջանիկ հանգիս-
տը աս է. հանգիստ մը՝ որ իրը թէ առանց հան-
գիստի է, քանզի «չեն հանգչիր ոչ ցորեկը՝ ոչ
ալ գիշերը՝ ըսելով. Սուրբ՝ Սուրբ՝ Սուրբ՝ Տէր
Աստուած ամենակալ՝ որ էր, և որ է, և որ պիտի
գայ»։ Ու եթէ մարմինը այսպէս պիտի պատա-
ղի, ալ հոգին ինչ պիտի ըլլայ. որչափ որ անոր
կարողութիւններն ու ընդունակութիւնները մեծ
ըլլան, այնքան զօրաւոր պիտի ըլլան անոր գոր-
ծողութիւնները, և այնքան անուշ անոր վայելք-
ները։ Ինչպէս որ ամէն մէկ մարմնաւոր զգայա-
րանք իրեն յատուկ գործողութիւնն ունի, որով
կ'զգայ և կը վայելէ իր առջեւի առարկան; ա-
նանկ ալ հոգին իր գործողութիւններուն մէջ կը
վայելէ իր առարկաները, գիտութիւն՝ յիշողու-

թիւն՝ սէր և ազատութիւն ունենալով ։ Աստուծոյ հոգիին փայլեր քն է ։ Ան աչքերովը կը տեսնէ, և ան ձեռքերովը կը բռնէ ։

Պիւթագորինը ինքնին շատ փափաքելի է ։ Որչափ որ մարդուս բանական հոգին զգայականէն աւելի է, նոյնչափ ալ փիլիսոփային երկրութիւնները՝ բնութեան գաղտնիքները գտնելով, և գիտութեանց խորին բաները հասկընալով, որկրամոլ՝ գինեմոլ՝ անառակ և ամէն տեսակ մոլի մարդոց երկրութիւններէն աւելի է ։ Սակայն գերազանց է ամէն ճշմարտութիւն ։ Սուրբն ո՛րչափ անպատմելի է անոնց երկրութիւնը, որոնք որ Աստուած՝ ճշմարտութեան աղբիւր կը ճանչնան ։ Հոգիին իմացականութիւնը ինչ ազնիւ կարողութիւն է՝ որ երկրի ծայրերը կը հասնի, արեւը՝ լուսինը՝ աստղերն ու երկինքը կը չափէ, խաւարման ճիշդ ժամանակը մինչև մէկ րոպէն որոշելով կը գուշակէ՝ շատ տարիներ առաջ ։ Բայց բոլոր իր գերազանցութեան գլուխն աս է որ՝ բոլոր արարածոց ստեղծիչ անհուն Աստուածը՝ կընայ աս կեանքիս մէջ քիչ մը, և հանդերձեալ կենաց մէջ աւելի ու շատ աւելի ճանչնալ ։ Ի՛նչ իմաստութիւն և բարութիւն է որ մեր օրհնեալ Տէրը կը ցուցընէ. անիկայ ստեղծեց իմացականութիւնը բնական յօժարութիւնով և հակամիտութիւնով մը ճշմարտութիւն փնտռելու՝ իբր իր առարկան, և գերագոյն ճշմարտութիւնը՝ իբր իր գերագոյն առարկան ։ Քրիստոնեայ ; երբոր "աչքերդ անկած դէպ 'ի երկինք նայելէն ետքը" աղօտ տեսութիւն մը կը ստանաս Քրիստոսի վրայ, երբեմն անկանկ չը թուիր քեզի՝ որպէս թէ Պօղոսի հետ երրորդ երկինքն ես, թէ մարմնով և թէ առանց մարմնոյ, և կը տեսնես հոն անպատմելի բաներ ։ Պատրաստ չե՞ս

ըսել Պետրոսի հետ, "Տէր աղէկ է հոս կենալը". ո՛ւր էր թէ ես ալ ըլլալը կենայի, և միշտ տեսնէի ինչ որ հիմա կը տեսնեմ: Ինչու երբեք Արդարութեան Արեգակին այնքան նայած չե՞մ՝ որ մինչև աչքերդ խտտղէր անոր սքանչելի փառաւորութեններն: Այս անոր չքեղութիւնը վարի ամէն բաները խաւար և տխուր չցուցնե՞ց քեզի: Մանաւանդ Քրիստոսի համար նեղութիւն քաշած ատենդ՝ երբ որ ինքը սովորաբար ամէն ատենէն աւելի յայտնի կ'ընէր իր ժողովրդեանը. չտեսա՞ր բնաւ Աստուծոյ Որդւոյն պէս մէկը՝ բոցալից հընոցին մէջ քեզի հետ պտըտող: Հաւատա՛ ինծի, ո՛վ քրիստոնեայ, մանաւանդ հաւատա Աստուծոյ. աս տեղ Քրիստոսով Աստուծոյ վրայ ամենէն շատ գիտցածդ, գիտնալիքիդ քովը ոչինչ է. Հիմակւանը անոր հետը բաղդատելով՝ հազիւ թէ գիտութիւն ըսուելու արժանի է: Վասն զի ինչպէս աս մարմինը՝ անանկ ալ ան գիտութիւնը պիտի դադարի, որ աւելի կատարեալ մը անոր տեղը յաջորդէ: "Գիտութիւնը պիտի խափանի. քանզի հիմա շատէն քիչը գիտենք, բայց երբոր կատարեալը գայ՝ ան ատենը շատէն քիչը պիտի խափանի. երբոր տղայ էի տղայի պէս կը խօսէի, տղայի պէս կը խորհէի, տղայի պէս համարում ունէի. բայց երբոր այր եղայ՝ տղայութեան բաները մէկ դի ձգեցի: Քանզի հիմա մենք որպէս թէ հայելիի մէջ կը տեսնենք աղօտ կերպով. բայց ան ատենը երես առ երես. հիմա շատէն քիչ տեղեակ եմ, բայց ան ատեն անանկ պիտի ճանչնամ ինչպէս որ ճանչցուեցայ": (Ա Կորն. ԺԳ. 8—12:) Վասն որոյ մի զարմանար, ո՛վ քրիստոնեայ, թէ զԱստուած և Յիսուս Քրիստոս ճանչնալը ինչպէս յաւիտենական կեանք կ'ըսուի ըլլալ.

Աստուած և Քրիստոս ճանչնալը յաւիտենական կեանք է. և հոգին վայելելը ճանչնալով կ'ըլլայ։ Անոնք որ միայն երկրաւոր բաներուն համ առեր են, և մարմնաւոր բաներու տուած են խելքերնին, զԱստուած ճանչնալը թեթև երջանկութիւն կը սեպեն։ Բայց մենք գիտենք որ Աստուծմէ ենք և բոլոր աշխարհ չարի մէջ է. և գիտենք որ Աստուծոյ որդին եկաւ և մեզի միտք տուաւ որ ճշմարիտը ճանչնանք, և այն ճշմարիտին մէջն ենք իր Որդւոյն Յիսուս Քրիստոսի մէջը. Ասիկայ է ճշմարիտ Աստուած և յաւիտենական կեանք։ (Ա Յովհ. Ե. 20։)

Յիշողութիւնը թուլ ու անպիտան պիտի չմնայ աս օրհնեալ գործին մէջը։ Ան բարձրութենէն կրնայ նայիլ սուրբը, թէ ետեւն ու թէ առջևը։ Իւր անցեալը ներկային հետ բաղդատելը՝ հարկաւ իր վիճակին վրայ անպատմելի յարգութիւն մը և ճանաչում մը յառաջ պիտի բերէ հոգիին մէջ։ Ան լեռան վրայ կանգնիլը ուրկէ Անապատն ու Քանանու երկիրը մէկտեղ կրնանք տեսնել. Երկինքը կենալ և վար երկրի վրայ նայիլը՝ և դատողութեան ու ճանաչողութեան կշիռքին մէջ զանոնք մէկտեղ կշռելը՝ որչափ պիտի զմայլեցընէ հոգին և աղաղակել տայ. "Ո՞ւր է եղեր ան ժառանգութիւնը՝ որ այնչափ սուղ ծախու առնուեցաւ, այսինքն՝ Քրիստոսի արիւնովը. զարմանք չէ ուրեմն. ինչ օրհնեալ գին՝ և որչափ օրհնեալ սէր՝ որ գտաւ փրկութեան ճամբան, և զիջաւ Աստուածորդւոյն մահովը զանիկայ կատարելու։ Ո՞ւր է հաւատքին վախճանը։ Ո՞ւր է եղեր Սուրբ Հոգւոյն ներգործութիւններուն վերջը։ Ի՞նչ նաւահանգիստ է աս՝ ուր որ շնորհաց հովերը բերին զիս։ Ո՞ւր է եղեր ան տեղը՝ ա-

րան վրայ Պղատոնս կը խօսէր զիս հրաւիրելով ։ Օրհնեալ ժամերս և երկիցս օրհնեալ վախճան ։ Ո՞ւր է եղեր այն փառքը որուն վրայ Սուրբ Գիրքը կը խօսէր, և քարոզիչներն անդադար կը քարոզէին ։ Աւետարանը յիրաւի աւետիս է՝ խաղաղութեան և բարիքներու աւետիս, ամէն ազգերուն մեծ ուրախութեան աւետիս ։ Իմ աւուրներուս՝ ժամերուս՝ սիրուր խանդհութիւններուս՝ երկչոտ քայլերուս վախճանն ա՞ւ է եղեր ։ Ո՞ւ է եղեր իմ աղօթքներուս՝ հեկեծեկներուս՝ իմ Տէրոջս կամքէն դուրս ելլելու վախերուս վախճանը ։ Իմ նեղութիւններուս՝ Աստուածային փորձութիւնները և աշխարհին նախատինքն ու երգիծանքը ա՞ւ վախճանին հասան ։ Ուա՜ղ անարգ բնութեան՝ որ այնքան ատեն այնչափ դէմ կեցար ասանկ երանութեան մը ։ Անարժան հոգի ․ ասանկ տեղ չէ՞իր ուզեր գալ ։ Որքան ծա՞նր էին պարտաւորութիւնները, այնչափ աղէ՞կ էր աշխարհ որ չէիր ուզեր ձգել ․ չէ՞ր արժեր որ ամէն բան ձգէիր՝ ամէն բան ուրանայիր, և ինչ և իցէ բան քաշէիր ասանկ տեղ մը գալու համար ։ Աս վախճանիս հասնելու համար՝ չէ՞իր ուզեր մեռնել ։ Խաբեբա՜յ սիրտ՝ դուն զիս յաւիտենական բարերու զիտոյ մեռնէիր և զիս աս փառքէն պիտի զրկէիր ։ Ամօթալ չէ՞ս հիմա ով իմ հոգիս, ըրածներուդ վրայ, որ չէիր ուզեր վստահիլ այն սիրոյն՝ որ քեզ հոս բերաւ ․ կը տարակուսէիր երբեմն քու Տէրոջդ հաւատարմութեանը, անոր սէրէն կը կասկածէիր՝ երբ միայն քու անձէդ կասկածելու էիր ․ կը խափանէիր անոր հոգւոյն ազդեցութիւնը, ծուռ կը հասկընայիր այն նախախնամական տնօրէնութիւնները, և կը դանդաղէիր այն ճամբաներուն համար՝ որոնք քեզ աս վախճանիդ հասուցին ։ Հիմա բաւական խնդ

տակաւին սիրէ որչափ որ կրնաս, ու դուն հազա-րապատիկ աւելի պիտի սիրուիս։ Եթէ Աստուծոյ Որդւոյն բազուկները խաչին վրայ բաց էին, և նի-զակով ճամբայ բացուելով հասաւ մինչև անոր սիրտը, ուստի ալ իր բազուկները և սիրտը ևս ա-ռաւել փառաց մէջ բաց պիտի չը՞լլան քեզի։ Պ՛ու-զինքը սիրելէդ առաջ ան չսկսե՞ց սիրել քեզ, և ատկէց վերջն ալ պիտի չշարունակէ՞ սիրելը։ Չսի-րե՞ց քեզ որ թշնամի էիր. քեզ՝ որ մեղաւոր էիր, քեզ՝ որ մինչև անգամ ինքզինքէդ զզուելի էիր. և չընդունե՞ց քեզ՝ երբ դուն ինքզինքդ մերժելի էիր։ Եւ հիմա իր անսահման սիրովը պիտի չսիրե՞ քեզ՝ որ որդի մըն ես, և քեզ որ կատարուած սուրբ մըն ես, և սէր մը կը փոխարինես իր անճառ սիրոյն։ Ան որ սիրովը լացաւ հին Երուսաղեմի վրայ՝ երբ որ կործանելու վրայ էր, ինչ սիրով պիտի ու-րախանայ նոր Երուսաղեմի վրայ՝ անոր փառաւոր-ուած ատենը։ Ո՛վ քրիստոնեայ, հաւատա՛ սորա և միտքդ բե՛ր, թէ ան սիրոյն բազուկները քեզ յաւիտեանս պիտի գրկեն. այն սէրը՝ որ 'ի յաւի-տենից էր, և պիտի տևէ մինչև յաւիտեանս. ան սէրը՝ որ Աստուծոյ սիրելի Որդին երկինքէն երկիր բերաւ, երկրէն խաչը, խաչէն գերեզմանը, գե-րեզմանէն փառքը հանեց. ան սէրը՝ որ կը յոգնէր՝ կ'անօթենար՝ կը փորձուէր՝ կը նախատուէր. ան սէրը՝ որ ծեծեցին՝ ապտակեցին՝ թքին՝ խաչ'ցին՝ ծակեցին. ան սէրը՝ որ ծոմ պահեց՝ աղօթեց՝ տր-վեցաւ՝ բժշկեց՝ լացաւ՝ քրտնեցաւ՝ արիւն թա-փեց և մեռաւ. ան սէրը քեզ պիտի գրկէ յա-ւիտեան։ Երբոր երկինքին մէջ արարչագործեալ կատարեալ սէրին ու անստեղծ ամենակատարեալ սէրը զիրար դիմաւորեն՝ Յովսեփին ու անոր եղ-բայրներուն պէս պիտի չըլլայ, որոնք իրարու վիզն

խնկան լալով . ատիկայ սիրել և ուրախանալ պիտի ըլլայ, և ոչ թէ սիրել ու տրտմիլ ։ Սակայն Սատանայի պալատը պիտի հնչեցընէ աս լուրը թէ Յովսեփին եղբայրները եկան . ուրեմն ապահով հասան Քրիստոսի գիրկը՝ դժոխքին իշխանութենէն յաւիտեանս ազատ ։ Դաւիթին ու Յովնաթանին սիրոյն պէս ալ չէ աս, որ դառն ողբ մը յառաջ բերէ, աշխարհական բաժանմանը համար ։ Գիտցիր ատիկայ, հաւատացեալ, քու յաւիտենական մխիթարութեանդ համար, եթէ անգամ մը ան բարեկամները գրկեցին քեզ, ալ ո՛չ մեղքը՝ և ո՛չ դժոխքը կրնայ յաւիտեանս յափշտակել քեզ անկէ ։ Քու գործդ անհաստատ արարածի մը հետ չէ, այլ անոր հետ "որուն մէջ բնաւ փոփոխութիւն և կամ դառնալու շուք մը չկայ" ։ Անոր՝ քու վրադ ունեցած սէրը՝ երկրի վրայ քու անոր ցուցուցած սիրոյդ պէս երերեցող և փոփոխական չէ ։ Ան որ իր սէրը վրայէդ չվերցուց քու թշնամութեանդ՝ չար զանցառութիւններուդ և խստապարանոց ընդդիմութիւններուդ համար, կրնա՞յ դադարիլ քեզ սիրելէն ան ատենը՝ երբոր քեզ ճշմարտապէս սիրելի ըրեր է ։ Ան որ քեզ այնքան հաստատուն կը պահէ դէպ իրեն սիրոյն մէջ որ կրնաս ըսել թէ՝ "ո՛չ նեղութիւն՝ ո՛չ վիշտ՝ ո՛չ հալածանք՝ ո՛չ սով՝ ո՛չ մերկութիւն՝ ո՛չ վտանգ և ո՛չ սուր կրնայ իմ սէրս բաժնել Քրիստոսէն", ալ ինք ո՛րչափ հաստատուն պիտի ըլլայ իր սիրոյն մէջ ։ Արդարև կրնաս համոզուիլ որ "ո՛չ մահը, և ո՛չ կեանքը, ու ո՛չ հրեշտակները, և ո՛չ իշխանութիւնները, ու ո՛չ ներկայ բաները, և ո՛չ գալու բաները, ու ո՛չ զօրութիւնները, և ո՛չ բարձրութիւնը, ու ո՛չ խորունկութիւնը, և ո՛չ մէկ ուրիշ արարած մը կըր-

նայ մեզ զատել Աստուծոյ սիրէն, որ Քրիստոս Յիսուս մեր Տէրոջմով է"։ (Հռովմ. Ը. 38, 39.) Եւ հիմա մենք ալ Առաքելոյն պէս զարմանքի մէջ չմնացի՞նք. "Ի՞նչ ըսենք աս բաներուն"։ Անհուն սէրը 'ի հարկէ հաւանաւոր կարողութենէն վեր գաղտնիք մը պէտք ըլլայ։ Զարմանք չէ որ հրեշտակները աս խորհուրդին ակնկառոյց նային։ Եւ եթէ սրբոց ջանքը հաս կ'ըլլայ Քրիստոսի սիրոյն լայնութիւնը՝ երկայնութիւնը՝ խորութիւնը և բարձրութիւնը գիտնալ որ ամէն գիտութենէ վեր է, ուրեմն սրբոց յաւիտենական հանգիստը Աստուած սիրով վայելելուն մէջ պէտք կայանայ։

Ուրախութիւնը մեծ բաժին ունի աս հանգիստին մէջ։ Ամէն ինչ որ վերը յիշեցինք, ասոր կ'առաջնորդեն և ասոր մէջ կը վերջանան. այսինքն ան անպատմելի հաւանութեան մէջ, որ երանեալները կ'զգան տեսնելով գիտնալով սիրելով և Աստուծմէ սիրուելով։ Աս է "ան ճերմակ խիճը՝ որուն վրայ նոր անուն մը գրուած է, որն որ մէկը չգիտեր, բայց միայն ան՝ որ կ'ընդունի"։ "Աս է ան ուրախութիւնը, որուն ուրիշը մասնակից չըլլար"։ Քրիստոսի ողորմութեան բոլոր ճամբաները դէպ 'ի սրբոց ուրախութիւնները կ'ուղղուին և անոնց մէջ կը վերջանան։ Ան լացաւ՝ տրտմեցաւ՝ չարչարուեցաւ որ անոնք ուրախանան. անիկայ Հօրմէն կը խնդրէ՝ որ անոնց մխիթարիչը ըլլայ. անիկայ խոստմունքները կը շատցընէ և կը յայտնէ անոնց՝ իրենց ապագայ երջանկութիւնը, որ իրենց ուրախութիւնը լեցուն ըլլայ։ Անիկայ կենդանի ջուրերուն աղբիւրը կը բանայ անոնց, որ ալ չծարաւին. հապա անոնց ներսի դին յաւիտենական կենաց-համար բղխէ։ Զանոնք կը խրատէ, որ անոնց հանգիստ տայ։ Անոնց վրայ իրբև պարտա-

ւորութիւն կը դնէ, որ միշտ իր վրայ ուրախ ըլլան. դարձեալ՝ և դարձեալ կ'ըսէ՝ որ ուրախանան : Երբեք զանոնք անանկ ցած վիճակի մը մէջ չձգեր, որ աւելի ուրախութեան պատճառներ չունենան քան թէ տրտմութեան : Նա եթէ հոս Տէրը մեր մխիթարութեանը համար այսչափ հոգ կը տանի, ո՜հ. որչափ մեծ պիտի ըլլայ ան ուրախութիւնը երբ հոգին կատարելապէս պատրաստուած ըլլալով ուրախութեան, և ուրախութիւնն ալ Քրիստոսով հոգիին համար պատրաստուած, մեր գործը՝ մեր զբաղմունքը յաւիտենից ուրախանալ պիտի ըլլայ : Կ'երևի թէ սրբոց ուրախութիւնը դատապարտելոց տանջանքէն աւելի պիտի ըլլայ. վասն զի ան տանջանքը արարածոց տանջանք է՝ պատրաստուած Սատանային և իր հրեշտակներուն համար, սակայն մեր ուրախութիւնը մեր Տէրոջը ուրախութիւնն է : Ան փառքը՝ որ Հայրը իր Որդիին տուաւ, նոյնը Որդին իր սիրելիներուն տուաւ, այսինքն իրեն աթոռը նստիլ իրեն հետ, ինչպէս որ ինքն ալ իր Հօրը աթոռը նստած է : Դուն՝ ով խեղճ հոգի, որ կ'աղօթես ուրախութեան համար, կ'սպասես ուրախութեան համար, գանգատ կ'ընես երբոր ուրախութիւնը կը պակսի, ան ատենը կատարեալ ուրախութիւն պիտի ունենաս, որչափ որ կրնաս ունենալ՝ քու խորհածէդ և քու փափաքածէդ աւելի : Հիմա ուրեմն զգուշութեամբ քալէ, անդադար հսկէ, և թող՝ որ Աստուած քեզի սահմանէ քու ուրախութեանդ ժամանակները և չափերը : Կարելի է զանոնք կը պահէ, մինչև որ աւելի հարկաւոր ըլլան քեզի : Լաւագոյն է քու մխիթարութիւնդ կորսնցունել քան թէ քու ապահովութիւնդ : Թէև վախերով և վիշտերով լեցուն մնանելու ալ ըլլաս, ան միայն մէկ վայրկեան մը կը

տևէ . և ամէնը կը փառաւորին ու անպատմելի ուրախութեան մէջ կը վերջանան ։ Ինչպէս կեղծաւորին ուրախութիւնը, անանկ ալ ուրիշներուն վախերը վայրկենական են ։ "Աստուծոյ բարկութիւնը միայն մէկ րոպէ մը կը տևէ . բայց իր հաճութիւնը մեր բոլոր կենացը տևենը . իրիկունը լաց կայ, բայց առտուն ուրախութիւն" ։

Ո՜հ, օրհնեալ առաւօտ ։ Խեղճ խոնարհ նուաղեալ հոգի, ինչպէս քեզ ուրախութեամբ կը լեցունէր հիմա, եթէ երկինքէն ձայն մը ըսէր քեզի Աստուծոյ սիրոյն վրայով, մեղքերուդ թողութեանը վրայով, և քեզ ապահովցընէր ան ուրախութիւններուն մէջ քու բաժին ունենալդ ։ Արդեօք ի՞նչ պիտի ըլլայ ան ատենը քու ուրախութիւնդ, երբոր քու իրական ստացումդ քեզի պիտի ապացուցանէ թէ դուն իրաւունք ունիս, և դեռ աղէկ մը չիմացած երկինքը հասած պիտի գտնուիս ։

Ու տակայ ոչ միայն քու ուրախութիւնդ՝ այլ փոխադարձ ուրախութիւն մըն է . ինչպէս որ սէրն ալ փոխադարձ է ։ Քու դարձի գալուդ վրայով երբոր երկինքի մէջ ուրախութիւն կ՚ըլլայ, փառաւորութեան մէջ հասնելուդ ալ պիտի չըլլա՞յ ։ Միթէ հրեշտակները հոն պիտի չողջունե՞ն քեզ . և քու ապահովապէս հոն հասնիլդ պիտի չշնորհաւորե՞ն ։ Այո, Յիսուս Քրիստոսի ուրախութիւնն է ան, քանզի ինքը հիմա իր գործքին, աշխատութեան, չարչարանաց, մահուան արդիւնքը ձեռք կը ձգէ, երբ մենք մեր ուրախութիւնները ձեռք կը ձգենք, երբ ինք "իր սուրբերուն մէջ կը փառաւորուի և հիանալի կ՚ըլլայ բոլոր իրեն հաւատացողներուն մէջ", երբ ինքը " իր անձին աշխատութեան պտուղը տեսնէ և կշտանայ"։ Աս է Քրիստոսի հանգիստը՝ երբոր իր աշխատութեանը պտուղը

պիտի հնձէ, և իր չարչարանացը համար պիտի չվշտայ, հապա իր ծախու առած ժառանգութեանը վրայ պիտի ուրախանայ, և իր ժողովուրդն ալ իրեն վրայ պիտի ուրախանայ: Այո, Հայրն ալ կ'ուրախանայ մեր ուրախութիւններուն վրայ: Ինչպէս որ մեր մեղքերը իր Հոգին կը տրտմեցընեն և կը վշտացընեն. անանկ ալ մեր բարիքները կ'ուրախացընեն: Ո՜հ. անիկայ որչափ շուտով կը նշմարէ դարձի եկող անառակը՝ մինչև անգամ հեռուէն: Ինչպէս կը վազէ զանիկայ դիմաւորելու: Եւ ինչ գթով անոր պարանոցին վրայ կ'իյնայ՝ զանիկայ կը համբուրէ՝ ամենալաւ պատմուճանը անոր կը հագցունէ, մատանին անոր մատը՝ և կօշիկները անոր ոտքը կը հագցունէ, և պարարտ զուարակը կը մորթէ, որ ուտեն և ուրախ ըլլան: Յիրաւի Աստուած դարձի եկող մեղաւորին վրայ մեծապէս կ'ուրախանայ. բայց ալ աւելի պիտի ուրախանայ՝ երբոր իր ամէն ընտրեալները իր յաւիտենական հանգստեանը մէջ ընդունի: "Քու Տէր Աստուածդ քու մէջդ զօրաւոր է. անիկայ քեզ պիտի փրկէ. Անիկայ քեզի համար ուրախութեամբ պիտի զուարճանայ, ու իր սիրովը քեզի թողութիւն պիտի տայ, և քու վրադ ցնծութեամբ պիտի ուրախանայ": Իրաւամբ մենք ալ կրնանք մեր Աստուծոյն վրայ զուարճանալ և ցնծութեամբ ուրախանալ:

Ո՜հ. իմ վախկոտ սիրտս հազիւ թէ կը համարձակի յառաջ երթալու: Ինծի կը թուի թէ ես կը լսեմ Ամենակարողին ձայնը, որ կ'ըսէ, "Ո՞վ է անիկայ որ անիմաստ խօսքերով խորհուրդը կը նըսեմացունէ": Սակայն ով Տէր՝ քու ծառայիդ ներողամիտ եղիր. յանդգնութեամբ չզննեցի չյայտնուած բաները: Արդարև կը խոստովանիմ և կը

ցաւիմ որ իմ իմացողութիւններս խիստ թոյլ են, իմ խորհուրդներս խիստ ցած, սէրս խիստ պաղ և խօսքերս խիստ տկար և անվայել՝ երկնաւոր փառաց հետ բաղդատուելով : Միայն ականջքս լըսել լսեր եմ. Ո՛Հ. թող քու ծառադ քեզ տեսնէ և տա ուրախութիւններդ ստանամ. ան ատենը աւելի յարմար պիտի ըլլան իմ ըմբռնումներս ու քեզի որ աւելի վայելուչ կերպով փառաբանութիւն պիտի մատուցանեմ : Ան ատենը ներկայ անձս պիտի արհամարհեմ, և ամէն անկատարութիւններէս հրաժարիմ ու հեռանամ : «Յիրաւի կը զղջացեր, բայց չէի հասկընար. ինծի սքանչելի բաներ ըլլալով՝ չէի իմանար» : Նյաւ ամենայնիւ, «Հաւատացի՝ անոր համար խօսեցայ» : Ու թէև բոլոր տկարութիւնս և պղծութիւնս իմս է, բայց կրակը քու սեղանէդ է, ու ձեռք զարկած գործս քու հրամայած գործդ է : Ես առանց քեզի տապանակին մէջ չնայեցայ, ու ոչ ալ ձեռքս երկնցուցի : Ոփծերս լուա Գառնուկին արիւնովը. վասն զի կամ անկատար՝ կամ ոչինչ պիտի ըլլայ հոս մատուցած պաշտօնս. Ո՛Հ. քու Որդւոյդ ջատագովութիւնը ընդունէ՛, «Հոգին յօժար է, բայց մարմինը տկար» :



# ԳԼՈՒԽ Բ

Մեծոց հանդիսին համար եղած մեծ պատրաստութիւնները :

Դրախտին մուտքը հիմա այնպէս գոցուած ու պաշարուած չէ՝ ինչպէս օրէնքին և անէծքին իշխած ատենը : Ուրեմն սիրելի եղբայրներս՝ «Հա-

մարձակութիւն ունենալով սուրբ տեղը մտնելու Յիսուսի արիւնովը, ան նոր ու կենդանի ճամբավը՝ որ բացաւ մեզի վարագուրին մէջէն՝ որ է իր մարմինը", վստահութեամբ պիտի մօտենամ, և գտնելով թէ բոցեղէն սուրը վերցուած է՝ նորէն մեր Աստուծոյն դրախտին մէջ նայիմ: Այսպ գիտնալով ալ թէ ասիկայ արգիլուած պտուղ մը չէ՝ այլ ճշմարտապէս բարի է կերակուրի համար, հոգեւոր աչքերուն հաճելի, և փափաքելի՝ իմաստուն ու երջանիկ ըլլալու համար, Սուրբ Հոգիին օգնութեանը ապաւինելով՝ անոր պտուղէն ես ալ առնելով պիտի ուտեմ, և կարողութեանս չափովը ձեզի ալ տամ, որ ուտէք: Աս տաճարիս սրահը խիստ փառաւոր է և անոր դուռը գեղեցիկ կոչուած է: Ահա՛ սրահիս չորս անկիւնները՝ որ ասոնք են:

1. Նախ՝ Աստուծոյ Որդւոյն ամենապայծառ Երկրորդ Գալուստը ու փառօք երեւնալը՝ անշուշտ իր ժողովուրդին փառքին մէկ երևելի մասը պիտի ըլլայ: Անոնց համար ինքը աշխարհը մտաւ չարչարուեցաւ՝ մեռաւ՝ յարութիւն առաւ և համբարձաւ, անոնց համար ալ նորէն պիտի գայ: Աս առթով վերստին պիտի գայ, իրենները իր քովը առնելու համար, որպէս զի ուր որ ինքն է՝ իրեններն ալ հոն ըլլան: Փեսան ոչ թէ իր հարսը արձակելով գնաց, և ոչ հեռացաւ որ ալ չդառնայ, այլ մեզի բաւական վկայութիւններ ձգեր է իր նորէն գալուն, այսինքն իր խօսքը, իր բոլոր խոստմունքները, իր սուրբ ընթրիքը որ իր մահը կը ցուցընէ մինչև որ ինքը գայ, և իր Հոգին որուն գործն է իր ժողովուրդը ուղղել, սրբել և մխիթարել՝ մինչև որ ինքը դառնայ: Նաև իր սիրոյն նշանները յաճախ կու տայ մեզի՝ որ հաւատանք թէ ոչ

իր խոստմունքները կը մոռնայ և ոչ ալ մեզ ։ Թէպէտ հեշտասէր աշխարհս կ'ըսէ թէ՝ Տէրս իր գալը կ'ուշացընէ, բայց սուրբերը թող իրենց գլուխները վեր վերցընեն գիտնալով որ իրենց փրկութիւնը մօտ է ։ Ո՜հ քրիստոնեայ եղբայրներս, ինչ պիտի ընենք մենք՝ թէ որ մեր Տէրը չդառնայ ։ Ի՞նչ, գայլերու մէջ՝ առիւծներու մէջ՝ իժերու ծնունդի մէջ ձգէ մեզ ու մեզ մոռնա՞յ ։ Իր արեան չափ թանկագին փրկանքով մեզ ծախու առնելէն ետքը՝ մեղքերու ու վիշտերու մէջ թողելով ալ մեզի չ'դառնար ։ Անկարելի է ։ Իրաւի ասիկայ մեր դէպ'ի իրեն բռնած ընթացքին կը նմանի. որ երբ աշխարհիս սիրահարած կ'ըլլանք՝ հոգ չենք ըներ Քրիստոսի դառնալու, բայց իրեն մեզի հետ բռնած ընթացքին չնմանիր ։ Ան որ չարչարուելու համար եկաւ, անտարակոյս յաղթանակ հանդիսացընելու համար ալ պիտի գայ ։ Ան որ ծախու առնելու համար եկաւ՝ անտարակոյս ստացուածքը ընդունելու համար ալ պիտի գայ ։ Եթէ ոչ՝ ի՞նչ կ'ըլլան մեր ամէն յոյսերը, մեր աղօթքները, մեր արցունքները, մեր սպասելը ։ Սուրբերուն բոլոր համբերութիւնը իրենց ինչ արժէք ունի ։ Չէ՞ որ մենք ամէն մարդիկներէն աւելի խղճալի կ'ըլլանք ։ Ո՛վ քրիստոնեայք, Քրիստոս ուզեց որ իրեն համար բոլոր աշխարհքէն հրաժարինք և անանկ ընթացք բռնենք որ բոլոր աշխարհքն ալ մեզմէ հրաժարի, ամէնը ատենք ու ամենուն ալ ատելի ըլլանք, որպէս զի ամենուն տեղը զինքը վայելենք. և հիմա կը կարծէք թէ մեզ մոռնալով բոլորովին պիտի մերժէ՞ ։ Հեռու ըլլայ մեր սիրտերէն անանկ անվայել խորհուրդ մը ։ Սակայն՝ կարելի է մէկը կը հարցընէ թէ՝ Ինչու համար հոս եղած ատենը իր ժողովուրդին հետ չը-

կեցաւ։ Իսկ ես ալ պիտի հարցընեմ թէ՝ Արդեօք իր աս աշխարհիս վրայի գործը լմնցուցած չէ՞ր. և պէտք չէ՞ր որ մեզի համար երթայ փառաց պատրաստութիւնը ընդունելու։ Պէտք չէ՞ր որ Հօրը քովը մեզի համար միջնորդութիւն ընէ, Սուրբ Հոգին Հօրմէն ընդունելով մեզի խրկէ և իշխանութիւն առնէ՝ որ իր բոլոր թշնամիները նուաճէ։ Մ՝եր հոս կենալը կարճատև ըլլալով՝ եթէ մեր Տէրը երկրիս վրայ մնացած ըլլար՝ մեզի ի՞նչ օգուտ, որ քիչ օրեր անոր ներկայութիւնը վայելելէն ետև պիտի մեռնէինք։ Մ՝եզմէ աւելի բազմաթիւ ժողովուրդի մը մէջ ատեղը կը բնակի երկինքը, այսինքն շատ դարերու հոգիներուն մէջ։ Նաև կ՚ուզէ որ մենք հաւատքով ապրինք ու չէ թէ երևոյթով։

Ո՛վ քրիստոնեայ ընկերներս, ի՛նչ օր պիտի ըլլայ ան, որ մեր բանտարկեալներս՝ Տէրն ինքը պիտի հանէ մեղքին ու գերեզմանին բանտէն։ Ան օրը իր վերստին գալը առջի գալուն պէս պիտի չըլլայ՝ աղքատութեամբ և անարգութեամբ, որ իր թշնամիները վրան թքնեն, ապտակ զարնեն և կրկին խաչը հանեն։ Ալ պիտի չգայ, ով անհոգ աշխարհ, որ ձեզմէ մերժուի ու անարգուի։ Թէպէտ իր առաջին գալը անգամ առանց փառքի չէր։ Թէ որ երկնային զօրքերուն բազմութիւնը՝ անոր ծնած ատենը զԱստուած կ՚օրհնէին, ի՛նչ ցնծութեան ձայներով հրեշտակներն ու սուրբերը՝ անոր երկրորդ երևնալուն՝ պիտի հրատարակեն, "փառք 'ի բարձունս Աստուծոյ, երկրիս վրայ խաղաղութիւն, մարդոց մէջ հաճութիւն։" Թէ որ աստղ մը հեռու կողմերէ պիտի տանի մարդիկը՝ որ գան մսուրին մէջի մանուկին երկրպագութիւն ընեն, որչափ աւելի անոր երկ-

բորդ երևնալուն փառքը պիտի առնպէ բոլոր աշխարհը որ անոր գերագոյն իշխանութիւնը խոստովանին ։ Թէ որ՝ առանակի վրայ հեծած, Ովսաննաներով Երուսաղէմ կը մտնէ, ի՞նչ ուրախութեամբ ու փառքով ուրեմն, դէպ'ի Նոր Երուսաղէմը պիտի գայ ։ Թէ որ՝ անոր ծառայի կերպարանք եղած ատենը աղաղակեցին, Թէ Ի՞նչպէս մարդ է աս, որ հովերը ու ծովն ալ կը հնազանդին ասոր, ի՞նչ պիտի ըսեն, երբոր իր փառքովը եկած, և երկինքն ու երկիրը անոր հնազանդած տեսնեն ։ "Ա՜ն ատենը երկրին բոլոր բնակիչները պիտի սուգ ընեն"։ Ա՜ն օրուան վրայ առակումով խորհիլն ու խօսիլը շատ վայելուչ է անկեղծ մեղաւորին, բայց բնաւ աղէկ չէ հաւատացեալ սուրբին ։ Չարերը պիտի նային անոր ու կանչեն, "Ա՜հա անիկայ, որուն արիւնը մենք արհամարհեցինք, շնորհքին դեմ կեցանք, խորհուրդը մերժեցինք, կառավարութիւնը մէջէն ձգեցինք". և պիտի չաղաղակե՞ն սուրբերը անհմանալի ուրախութիւնով, "Ա՜հա անիկայ՝ որուն արիւնը փրկեց մեզ, անոր Հոգին մաքրեց մեզ, անոր օրէնքը կառավարեց մեզ, անոր յուսացանք, ու մեր յոյսը պարապը չհանեց. անոր երկայն ատեն սպասեցինք, ու հիմա կը տեսնենք՝ որ պարապ տեղը սպասած չեղանք ։ Ա՜հ անիծեալ ապականութիւն, որ մեզ աշխարհին ու ներկայ բաներուն դարձունել ու ըսել տալ կ'ուզէ, թէ ալ ինչո՞ւ սպասենք Տէրոջը ։ Հիմա կը տեսնենք թէ Երանելի են ամէն անոնք՝ որ անոր կը յուսան ։ Եւ արդ՝ Քրիստոնեայ եղբայրներ, պէտք չէ՞ որ ան աղաչանքը սրտանց ընենք թէ. "Ո՜ Տէր. թագաւորութիւնդ գայ. Հոգին ու Հարսը կ'ըսեն, Եկուր. ու ան՝ որ կը լսէ", ու կը կարդայ, "Թող

ըսէ Եկուր": Մեր Տէրը ինք կ'ըսէ, "Այո՛ շու-
տով կուգամ ես. Ամէն. Եկուր Տէր Յիսուս":

2. Դրախտը տանող ուրիշ բան մը՝ Յիսուս Քրիստոսին այն մեծ գործն է, մարմինը հողէն յարուցանել, ու անիկայ նորէն հոգիին հետ միաւորել: Անհո՜ւն կարողութիւն ու սիրոյ զարմանալի՜ արդիւնք մը: "Այո՛՝ արդարև զարմանալի, կ'ըսէ Անհաւատութիւնը, թէ որ անիկայ ճշմարիտ է: Ի՞նչ. բոլոր այս ցրուած ոսկորներն ու փոշին մա՞րդ պիտի ըլլայ": Ես Աստուծոյ կողմէն յայտնութիւնով պաշտպանեմ այն կարողութիւնը՝ որով յոյս ունիմ թէ յարութիւն պիտի առնեմ: Ի՞նչ է երկրին թանձր մարմինը վեր բերողը՝ ի՞նչ է ընդարձակ Ովկիանոսին ջուրերուն վերջը սահման դնողը. ո՞ւրկէց է այն շարունակ տեղատուութիւնն ու մակընթացութիւնը: Երբ՝ այն լուսոյ փառաւոր մարմինը՝ բոլոր երկրէս քանի՞ անգամ աւելի մեծ է: Մեռել յարուցանելը՝ երկինքն ու երկիրը ու ամէն բան ոչինչէն ստեղծելու չափ դժուարին բան մը չէ՞: Մի՛ նայիր չոր ոսկորներուն ու փոշիին ու դժուարութեանը, հապա՝ խոստմունքին: Գրոց ըլլալով յանձնէ այս մարմինները բանտի մը՝ որ շատ ատեն պիտի չպահէ անոնք: Մեզ խաղաղութիւնով պառկինք ու հանգչինք, անիկայ մեզի յաւիտենական գիշեր պիտի չըլլայ, ոչ ալ անվախճան քուն: Մէկ որ հանուելն է բանը որ քեզ կը վախցընէ, անիկայ անոր համար է որ ալ աւելի աղէկ հագուստ ունենաս: Մէկ որ դուռնէն դուրս ձգուիլն է քեզ վախցընողը, միտքդ բեր որ երբոր "մեր վրանի նման երկրաւոր տունը քակուի, շինուածք մը ունինք Աստուծմէ, անձեռագործ տուն մը՝

յաւիտենական՝ երկինքի մէջ": Սրբութիւնով պահեցուր ապականութենէ աս զանգուածը, անտարակոյս անիկայ նորէն անապական պիտի առնես: Յօժարութիւնով պահեցուր աս երկրային, աս շնչաւոր մարմինը՝ անիկայ պիտի ընդունիս նորէն երկնային հոգևոր մարմին: Ինչպէս անիկայ անարգութիւնով կը պահեցունես, փառքով պիտի ընդունիս. Ինչպէս տկարութիւնով անկէ բաժնուած ես, անիկայ նորէն կարող զօրութիւնով յարութիւն պիտի առնէ. "յանկարծակի աչք գոցել բանալու մէջ վերջին փողին հընչուելու ատենը, որովհետև փողը պիտի հնչուի, ու մեռելները յարութիւն պիտի առնեն առանց ապականութեան. և մենք ալ պիտի փոխուինք": "Քրիստոսով մեռածները առաջ յարութիւն պիտի առնեն: Ետքը մենք ալ որ ողջ մնացած ենք՝ անոնցմով մէկտեղ պիտի յափշտակուինք ամպերով Տէրոջը առջևը ելլելու օդին մէջը": Հիմա ալ քեզի, ով քրիստոնեայ՝ աս խոստմունքներովը, քիչ ատենէն անոնց կատարուելուն յաղթութիւնովը պիտի ցնծաս: Աս ան օրն է որ Տէրը պիտի ստեղծէ. մենք պիտի ցնծանք և ուրախանանք անոր մէջը: Ան գերեզմանը՝ որ չկրցաւ մեր Տէրը պահել, մեզ ալ չկրնար պահել: Ան մեզի համար յարութիւն առաւ, ու ան նոյն կարողութիւնովը մեզ ալ պիտի յարուցանէ: "Վասնզի թէ որ կը հաւատանք թէ Յիսուս մեռաւ ու յարութիւն առաւ, անանկ ալ Աստուած ննջեցեալները Յիսուսով պիտի բերէ անոր հետ": Մենք ամենևին չնայինք գերեզմանին, հապա անկէ անդին եղած յարութեանը: Այո՛ թող մենք "հաստատ ըլլանք; անշարժ կենանք, և ամէն ատեն աւելնանք Տէրոջը գործին մէջ, գիտնալով որ մեր աշխատու-

թիւնը պարապ չէ Տէրոջմով"։

3. Սուրբերուն հանգիստին նախապատրաստութեան մէկ մասը՝ հրապարակաւ ու փառօք կերպով իրենց դատաստանը տեսնուելու երթալ չարունենին է, ուր տեղ առաջ իրենք անպարտ պիտի թողուին ու արդարանան, երբոր Քրիստոսի հետ աշխարհը դատեն։ Երիտասարդ ու ծեր՝ ամէն երկիրներէ ու ազգերէ որ աշխարհի տեղծուելէն մինչև ան օրը եկան գացին, անշուշտ հոն պիտի գան ու իրենց վճիռն ընդունին։ Ո՜հ՝ սոսկալի՜ օր, ո՜հ՝ ուրախալի՜ց օր. սոսկալի՜ անոնց՝ որոնք իրենց Տէրոջը գալը մոռցան. ուրախալի՜ց ան սուրբերուն՝ որոնք ան օրը տեսնելու սպասեցին ու յուսացին։ Ան ատեն աշխարհ Աստուծոյ բարութիւնն ու խստութիւնը պիտի տեսնայ. կորսուողներուն վրայ՝ խստութիւն, բայց իր ընտրածներուն՝ բարութիւն. ամէն մէկը իրենց տնտեսութեանը հաշիւը տալու են։ Ժամանակի՝ առողջութեան՝ կարողութիւններու՝ շնորհքներու՝ վէջտերու՝ միջոցներու՝ յորդորանաց ամէն տաղանդները պիտի հաշուուին։ Երախտապարտութեան մեղքերը՝ անոնք որ իրենք մոռցեր էին, և անոնց գաղտուկ մեղքերը, ամէնն ալ պիտի բացուին հրեշտակներուն ու մարդոց առջևը։ Անոնք պիտի տեսնան Տէր Յիսուսը՝ որուն վրայով անհոգ եղան, որուն խօսքին անհնազանդ եղան, որուն պաշտօնեաները արհամարհեցին, որուն ծառաները ատեցին, հիմա զիրենք դատելու նստած։ Լուն իրենց խղճմտանքները իրենց դէմ պիտի աղաղակեն, ու բոլոր իրենց սխալմունքները միտքերնին պիտի ձգեն։ Ո՞ր կողմը պիտի նայի թշուառականն մեղաւորը. ո՞վ կրնայ համբերել անոր դէմքին սոսկալի խորհուրդները։ Ալ աշխարհը ան

տանը չկրնար օգնել անոր, իր հին ընկերներն ալ չեն կրնար, ոչ ալ սուրբերը կրնան կամ կ՚ուզեն օգնել ։ Տէր Յիսուսը միայն կրնայ. բայց հոն է թշուառութիւնը, որ չուզեր օգնել ։ Կարատեն մը, ով մեղաւոր, որ ատեն Քրիստոս կ՚ուզէր, ու դուն չուզեցիր, հիմա ալ դուն փափաքանօք կ՚ուզես, ու ան չուզեր ։ Ողորմելին պարապ է "աղաղակել լեռներուն ու ապառաժներուն թէ վրանիս ինկէք ու մեզ ծածկեցէք անոր երեսէն՝ որ աթոռին վրայ կը նստի". ինչու որ լեռներուն ու ապառաժներուն Տէրը քու թշնամիդ է, ան ձայնին պիտի հնազանդին անոնք, ու չէ թէ քու ձայնիդ ։ Կ՚աղաչեմ քեզի ուրեմն, Աստուծոյ առջեւը ու Տէր Յիսուս Քրիստոսին, որ պիտի դատէ կենդանիները ու մեռելները իր գալու ու թագաւորելու ատենը, որ դուն ինքզինքդ շատ ծանրութիւնով աս բաներուն վրայ խորհելու տաս ։ Բայց ինչո՞ւ կը դողաս դուն՝ ով խոնարհ շնորհալի հոգի. ան՝ որ չէր ուզեր կորսնցընել Նոյը ընդհանուր ջրհեղեղի մը մէջ, ոչ ալ զանց ընել Ղովտը Սոդոմի մէջ, անանկ որ բան մը չէր կրնար ընել մինչեւ որ Ղովտը դուրս ելլայ, պիտի մոռնա՞յ քեզ ան օրը. "Տէրը գիտէ բարեպաշտները փորձութենէ ազատելը, և անիրաւները տանջանքի համար դատաստանի օրուան պահելը" ։ Ան գիտէ ան օրը իր թշնամիներուն ինտոր սոսկալի օր մը ընելը, ու իր ժողովուրդին ալ մեծ ուրախութեան օր ընելը ։ "Դատապարտութիւն չկայ Քրիստոս Յիսուսով եղողներուն՝ որոնք մարմնաւոր կերպով չեն վարուիր, հապա հոգեւոր" ։ Ո՞վ պիտի Աստուծոյ ընտրածներուն դէմ մեղադիր ըլլայ. օրէ՞նքը. "Քրիստոս Յիսուսով կենաց հոգիին օրէնքը անոնք ազատեց մեղաց եւ

մահուան օրէնքէն". կամ խղճմտա՞նքը. "Նոյն ինքն Հոգին վկայութիւն կու տայ մեր հոգիին, թէ մենք Աստուծոյ որդիքն ենք: Աստուած է որ կ'արդարացընէ, ո՞վ է որ կը դատապարտէ": Ո՛վ է որ մեր Դատաւորը մեզ չդատապարտեր, ո՞վ պիտի դատապարտէ. ան որ շնացող կնկանը ըսաւ, Մէ՞կը քեզ չդատապարտե՞ց, ես ալ չեմ դատապարտեր, պիտի ըսէ մեզի՝ Պետրոսին իրեն ըսածէն աւելի հաւատարմութիւնով, Թէպէտ ամենը քեզ ուրանան կամ դատապարտեն, բայց ես ոչ. դուն որ զիս դաւանեցար մարդոց առջևը, ես ալ պիտի դաւանիմ քեզ իմ Հօրս առջևը որ երկինքն է:

Ի՜նչ անճառելի ուրախութիւն՝ որ մեր սիրելի Տէրը՝ որ կը սիրէ մեր հոգիները, ու որ մեր հոգիներն ալ զան կը սիրեն, մեր դատաւորը պիտի ըլլայ: Մարդ մը կը վախնա՞յ իր շատ սիրելի բարեկամէն դատուելու, կամ կնիկ մը իր էրիկէն. ո՛վ քրիստոնեայ՝ ան որ եկաւ ու չարչարուեցաւ, լացաւ ու արիւն թափեց ու մեռաւ քեզի համար, հիմա քեզ պիտի դատապարտէ՞: Ան որ քու տեղդ դատուեցաւ, դատապարտուեցաւ ու քու տեղդ պատժուեցաւ, հիմա քեզ պիտի դատապարտէ՞: Արդէն գործին խոստ շատը ըրաւ քեզ փրկելով, նորոգելով, սրբացընելով ու պահպանելովը, ու հիմա նորէն աս բաները ետ պիտի առնէ: Սիրելի՛ս ան օրուան սոսկումը որչափ մեծ ալ ըլլայ, մեր Տէրը վերջապէս մեզի դէմ չկամենար: Թող ան օրը դեւերը ու չարերը դողացունէ, բայց մեզ ուրախութիւնով պիտի ցնծացունէ: Ան օրը մեզ մեր ունեցած ողորմութեան ու երջանկութեան խորունկ զգացումովը պիտի լեցունէ, երբոր տեսնանք որ աշխարհքին մեծ մասը սոսկումով լեցուած է

գողան, որ անոնց մէջ ապրանքնին կը ցեց-
ծանք. երբոր ըսինք անոնց յաւիտենական բացե-
յու փնտռելը, որ ատեն մենք թագաւորութեան
ժառանգներ ըլլալու կը հաշուինք, երբոր անու-
նանք մեր դրացիները՝ որոնք մի և նոյն քաղաքին
մէջը կը բնակէին, մի և նոյն ժողովքին կու գային,
նոյն տուները կը բնակէին ու աշխարհին մէջը
մեզմէ աւելի պատուաւոր սեպուած էին, հիմա
սիրտերը քննողին ձեռքովը յաւիտեան մեզմէ բաժ-
նուած: Ասիկայ՝ ան սրտան փառաւորութիւ-
նովը ու սրբակամութիւնովը։ Մէկալ առաքեալը
այդու խօսքերով կը բացատրէ: «Աստուծոյ առ-
ջեւ իրաւունք է՝ ձեզի նեղութիւն տուողներուն
նեղութիւն հատուցանել, և ձեզի նեղութիւն քա-
շողներուդ մեզի հետ հանգիստ, Տէր Յիսու-
սին երկինքէն յայտնուելու ատենը՝ իր զօրաւոր
հրեշտակներովը. բոցաբորբ կրակով վրէժ առ-
նելու անոնցմէ՝ որոնք Աստուած չեն ճանչնար, և
մեր Տէր Յիսուս Քրիստոսի աւետարանին չեն
հնազանդիր. որոնք պիտի պատժուին յաւիտենա-
կան սատակումով՝ Տէրոջը երեսէն ու անոր զօ-
րութեանը փառքէն. երբոր ինքը գայ փառաւո-
րուելու իր սուրբերուն մէջ, և հիանալի ըլլալու բո-
լոր հաւատացեալներուն մէջը ան օրը»: (Բ Թես.
Ա. 6—10:)

Բայց ոչ միայն ան դատաստանէն պիտի չվախ-
նանք, այլ մենք դատաւոր պիտի ըլլանք: Քրիս-
տոս իր ժողովուրդը որպէս թէ գործակից պիտի
առնէ իրեն, և անոնք պիտի նստին ու իրենք ալ
հաւանութիւն տան անոր արդար դատաստաննե-
րուն: Չէ՞ք գիտեր որ սուրբերը պիտի դատեն աշ-
խարհը. չէ՞ք գիտեր որ հրեշտակները անգամ պի-
տի դատենք: Եթէ Աստուած աս խօսքը զգուցած

չըլլար, անհաւատալի պիտի ըլլայ աս պատիւը, և սանկ խօսք մը գրուցելն ալ յանդգնութիւն ։ "Ենովք ալ որ եօթներորդ էր Ադամէն՝ մարգարէացաւ աս բանը ու ըսաւ. Ահա Տէրը իր բիւրաւոր զօրքերովը եկաւ ամենուն դատաստան ընելու ու բոլոր ամբարիշտները յանդիմանելու, իրենց ըրած ամբարիշտութեանը բոլոր գործքերուն համար, և բոլոր խիստ խօսքերուն համար որ ամբարիշտ մեղաւորները անոր դէմ խօսեցան"։ (Յուդ. 14, 15։)

Այսպէս սուրբերը պատիւ պիտի ընդունին և ուղիղները ամբարիշտներուն վրայ պիտի տիրեն առտուանց։ (Սաղմ. ԽԹ. 14։) Երանի թէ անհոգ աշխարհը իմաստուն ըլլար՝ որ հասկընար ասիկայ և իր վախճանը մտածէր. Երանի՜ թէ հիմա նոյն մըտքին վրայ ըլլար՝ ինչպէս որ պիտի ըլլայ երբ տեսնէ թէ "երկինքը սաստիկ շառաչիւնով պիտի անցնի ու տարերքները բռնկած պիտի լուծուին, երկիրն ալ ու ինչ գործքեր որ անոր մէջը կը գտնուին պիտի այրուին" ու երբ չորս կողմէն ամէն բան բռնկած պիտի ըլլայ և ամէն երկրաւոր փառք պիտի սպառի։ Քանզի երկինքը ու երկիրը որ հիմա կայ, "պահուած է դատաստանի աւուր կրակին և ամբարիշտ մարդոց դատապարտութեանը"։ Եւ "աս ամէն բաները սանկ որ պիտի լուծուին, ձեզի ինչպէս մարդիկ ըլլալ կը վայելէ սուրբ վարմունքով և բարեպաշտութեամբ, սպասելով ու արտորալով Աստուծոյ օրուանը գալուն, որուն մէջ երկինքը կրակով այրուած պիտի լուծուի, ու տարերքները բռնկած պիտի հալին"։ (Բ Պետ. Գ. 11-12։)

4 Սրբոց հանգիստին համար ըլլալիք վերջին նախապատրաստութիւնը իրենց պսակը և փառաւորութիւնը ընդունիլն է։ Աս ան չի ինչպէս որ Քրիստոս՝ իրենց գլուխը՝ թագաւոր և Քահանայ ըլ-

լալու ծծեալ է, նոյնպէս անոր ձեռքովը իր ժողովուրդն ալ թագաւորներ ու քահանաներ եղած են Աստուծոյ, և պիտի թագաւորեն ու գովութիւն պիտի մատուցանեն յաւիտեան։ Արդարութեան պսակը՝ որ անոնց պահուած էր, պիտի տըրուի ան օրը, Տէրոջը՝ արդար դատաւորին ձեռքովը։ Անոնք հաւատարիմ եղան մինչև 'ի մահ, վասնորոյ ինքն ալ անոնց կենաց պսակը պիտի տայ։ Ու իրենց տաղանդները հոս գործածելնուն համեմատ իրենց իշխանութիւնը և պատիւը պիտի մեծնայ. անոնց պատիւը ունայն պատուանուններով չէ, այլ իրական իշխանութիւնով։ Քրիստոս անոնց նստել պիտի տայ իրեն հետ իր Հօրը աթոռը. և իշխանութիւն պիտի տայ անոնց ազգերուն վրայ՝ ինչպէս որ ընդունեց իր Հօրմէն, և պիտի տայ անոնց առաւօտեան աստղը։ Տէրը ինք ժառանգութիւն պիտի տայ անոնց՝ աս հաճութեան խօսքերովը. "Ապրիս՝ բարի ու հաւատարիմ ծառայ, դուն որ քիչ բանին մէջ հաւատարիմ եղար, քեզ շատ բաներու վրայ պիտի կեցունեմ. մտիր քու տիրոջդ ուրախութիւնը"։ (Մատթ. ԻԵ. 21։) Ու աս վսեմ ու օրհնեալ յայտարարութեամբը աթոռը պիտի նստեցունէ զանոնք։ "Եկէ՛ք իմ Հօրս օրհնածները. աշխարհի սկիզբէն ձեզի համար պատրաստուած թագաւորութիւնը ժառանգեցէ՛ք"։ (ԻԵ. 24։) Աս խօսքին ամէն մէկ բառը լեցուն է կեանքով և ուրախութեամբ. "Եկէ՛ք". — ասիկայ ոսկի գաւազանը երկընցունելն է. (Եսթեր Դ. 11.) մեզի հրաման կու տայ աս փառքին մօտենալու։ Եկէ՛ք՝ հիմա ուզածնուդ չափ մօտ. Բեթսամիւսացւոց դատապարտութենէն չվախնաք (Ա Թագ. Զ. 19) վասն զի մէջտեղէ բաժնող պատը բոլորովին վեր-

ցած է։ Անիկայ անանկ “Եկէք” չէ, որ առաջ շատ անգամ կը լսէինք՝ այսինքն “Խաչերնիդ առէք և իմ ետևէս եկէք”։ Յիրաւի անուշ էր ան “Եկէք”ը, բայց աս շատ աւելի անուշ պիտի ըլլայ։ “Իմ Հօրս” — Հօրը սիրածն ալ օրհնած են, ինչպէս որ Որդւոյն. վասն զի անոնք մէկ են. Հայրը յայտնեց իր սէրը զանոնք ընտրելովը՝ Քրիստոսի պարգևելովը՝ Քրիստոսը խրկելովը՝ և անոր ըրած քաւութիւնը ընդունելովը. ինչպէս որ Քրիստոս ալ յայտնեց իրը։ Օրհնածներդ — իրաւցընէ օրհնած ենք, երբոր ան բերանը մեզ օրհնեալ կ'անուանէ։ Քանզի թէպէտ աշխարհ մեզ անիծեալ սեպած է, և մենք ալ երբեմն պատրաստ էինք ինքզինքնիս այնպէս սեպելու, սակայն անտարակոյս անոնք որ ինքը կ'օրհնէ՝ օրհնեալ են, և անոնք միայն որ ինքը կ'անիծէ՝ անիծեալ են, չկրնար ըլլալ որ իրեն օրհնութիւնը անէծքի դառնայ։ “Աշխարհի սկիզբէն” — ո՛չ միայն Ադամի անկումէն վերջը եղած խոստմունքէն հետէ, այլ 'ի յաւիտենից։ “Ձեզի համար” — ո՛չ միայն հաւատացելոց համար՝ ընդհանուր կերպով, որ առանց անհատ անձանց որոշում մը ընելու՝ բան մը ըսել չէ, այլ ձեզի համար անհատաբար։ “Ձեզի համար պատրաստուած” — Աստուած է մեր երջանկութեան Ալֆան և Օմեղան։ Յաւիտենական սէրը հիմ դրաւ. նախ թագաւորութիւնը պատրաստեց մեզի համար, և յետոյ մեզ թագաւորութեանը համար։ Ասիկայ իր խորհրդոյն և վճռոյն պատրաստութիւնն է, որուն գործադրութեանը համար Քրիստոս ուրիշ պատրաստութիւն պիտի ընէր։ “Թագաւորութիւնը” — Թագաւորութիւն է՝ ուրիշ բան մը չէ։ Մեր Տէրոջը իրեն յատուկ պատուանունն է՝ Թագաւոր Թագա-

ւորաց և Տէր տէրանց. իսկ իրեն հետ թագաւորելը մեր բաժինն է։ Սա թագաւորութեանը փայլքը արևին լոյսին պէս է. ամէն մէկը կը վայելէ բոլորը, միւսներէն ալ բնաւ բան մը չպակսիր։ "Ժառանգեցէք" — մենք՝ ալ ծառայ չենք՝ ոչ ալ դեռահասակ զաւակներ. որոնք միայն վերջի ունենալիք ժառանգական իրաւունքովնին ծառայէ տարբեր են, այլ մենք երկնային թագաւորութեանը ժառանգորդներ և Քրիստոսի ժառանգակիցներ։ Այսպէս տեսանք որ Քրիստոնեան ապահովութեամբ հասաւ դղրակոտը և պատուով իր հանգիստը տարուեցաւ։ Հիմա յաջորդ գլխոյն մէջ քիչ մըն ալ նայինք ան տեղերը՝ մտածենք անոնց ունեցած արտօնութիւնները՝ և տեսնենք թէ արդեօք աս փառքին նման փառք կա՞յ։

## ԳԼՈՒԽ Գ.

### Սրբոց Հանգստին գերազանցութիւնը։

Քիչ մըն ալ մօտենանք և տեսնենք թէ ինչ ուրիշ գերազանցութիւններ կը ցուցընէ աս հանգիստը։ Տէ՛ր՝ ծածկէ մեզ ժայռին խոռոչներուն մէջը, և քու առատ շնորհաց ձեռքերդ հովանի ըրէ մեր վրայ երբ կը մօտենանք աս տեսարանին։

1. Սրբոց հանգիստին մէկ յատուկ պատիւն է Աստուծոյ Որդւոյն արեամբը ստացած ժառանգութիւն մը ըլլալը, այո՛՝ անոր գլխաւոր արդիւնքն է ան արիւնը ամէն արդիւնքներուն և աղէկութիւններուն վախճանը և լրումը։ Ասկէ աւելի մեծ սէր մէկը չկրնար ունենալ. որ մէկը իր կեան‐

քը բարեկամներուն համար դնէ։ Ո՜հ ինչ մեծ ուրախութիւն պիտի ըլլայ առ մեր փրկիչը միշտ մեր աչացը առջեւն ունենալն ու ան մա՛հ յանձն առնող ու արիւն թափող սիրոյն կենդանի զգացումն ու ազդու յիշատակն ալ մեր հոգիներուն մէջ։ Ի՜նչ անընդհատ ուրախութեամբ պիտի լեցընէ մեր սիրտերը, երբոր խորհինք թէ՝ աս արեանը հոսած վտակին մէջ լողալով անցանք աշխարհին բռնութենէն՝ սատանային որոգայթներէն՝ մարմինին ցանկութիւններէն՝ օրինաց անէծքէն՝ Աստուծոյ բարկութենէն՝ խղճմտանքին ամբաստանութենէն և թերահաւատ սրտին մաշող տարակոյսներէն ու վախերէն, և ապահով հասանք Աստուծոյ առջեւը։ Հիմա Քրիստոս կ՚աղաղակէ մեզի. Արդեօք հոգ չէ՞ք ըներ, ով բոլոր ճամբայէ անցնողներ, նայեցէ՛ք ու տեսէ՛ք, արդեօք իմ ցաւիս պէս ցաւ կա՞յ. Իսկ մենք հազիւ երբեք կը նկատենք աս ողբալի ձայնը. և հազիւ երբեք գլուխնիս կը դարձընենք ան վէրքերուն նայելու։ Բայց ան ատենը մեր կատարեալ եղած հոգիները պիտի զգան, և սիրոյ փոխարէն սիրով պիտի բորբոքին։ Ի՜նչ հիանալի խորհրդածութեամբ պիտի նային փրկուած սուրբերը ու տեսնեն իրենց օրհնեալ փրկիչը, զիրենք ծախու առնողը՝ իրենց փրկանքն ու միանգամայն ժառանգութիւնը։ Ոչ ալ իր սիրոյ վէրքերը տեսնելով մեր տրտմութեան վէրքերը պիտի նորոգին։ Ան որ յարութիւն առնելէն ետքը իր առջի խօսքերը աս ըրաւ մեծ մեղաւորի մը, «Կնի՛կ ինչո՞ւ կու լաս», գիտէ սէր և ուրախութիւն յարուցանել առանց տրտմութեան ստուերի մը, կամ արտասուաց փոթորիկի։ Եթէ մեր վայելած մէկ բանը՝ մեր ամենասիրելի բարեկամին կեանքը զոհելովը ձեռք

ձգուած ըլլայ, ո՜րչափ կը յարգենք զանիկայ։ Եթէ մէկ բարեկամ մը մեռած ատենը լոկ մէկ սիրոյ յիշատակ մը տայ մեզի, որքան հոգ տանելով կը պահենք զանիկայ, երբոր անոր վրայ նայինք՝ տեսողը կը յիշենք իբր թէ անոր անունը գրուած ըլլար վրան։ Ու ուրեմն մեր Տէրոջը մահն ու արիւնը յաւիտենական քաղցրացուցնելու չէ՞ մեր ժառանգած փառքը։ Ինչպէս որ մեր ապրանքներուն գինը կը գրենք, անանկ ալ մեր ստացած արդարութեանն ու փառքին գինը, որ է Քրիստոսի պատուական արիւնը։ Իր չարչարանքը՝ ան արդարութեանը վճիռը տեղը տանելու համար էր՝ որ արիւն կը պահանջէր, և մեղաւորներուն արժանի եղածը քաշելու համար, որպէս զի անոնց չկորսնցուցած կեանքն ու երջանկութիւնը նորէն իրենց դարձունէ։ Քանզի փրկագործութիւնը այնքան հաճելի եղաւ Հօրը՝ որ անոր իշխանութիւն տուաւ իր ընտրեալները յառաջացունել և իրեն տրուած փառքը անոնց տալ, և աս ամէնը Հօրը հաճութիւնովը ու կամքին խորհրդովը։

2. Սրբոց Թագին վրայ ուրիշ մարգարիտ մըն ալ՝ որ անոր ձրի պարգեւ ըլլալն է։ Աս երկուքը՝ այսինքն ծախու առնուած և ձրի տրուած ըլլալը ան ոսկի շղթաներն են, որ Աստուծոյ տաճարին մէջ սիւներուն գլուխ խոյակներէն կախուած էին։ Ծախու սուղ եղաւ անիկայ Քրիստոսի, բայց մեզի ձրի։ Երբոր Քրիստոս ծախու պիտի առնէր՝ արծաթին ու ոսկիին արժէքը բան մը ըսել չէր, աղօթքներն ու արցունքներն ալ բաւական չէին կրնար ըլլալ, և ոչ ալ ուրիշ ինչ և իցէ մէկ բան մը՝ բաց ՚ի իր արիւնէն։ Բայց մեր ծախու առնելը ընդունել է. ձրի կ'առնենք զանիկայ, առանց ստակի և առանց գնոյ։ Պարտքերէն ձրիապէս

աղւաւներուն համար ընդհակառակութիւն, մատուցանելը պարտքը վճարել չէ։ Հոս ամէն բան ձրի է։ Ահա Հայրը իր Որդին ձրի կու տայ։ Որդին ալ ձրի կը վճարէ մեր պարտքը. և Աստուած կ'ընդունի ան կերպ վճարքը, քանի որ կրնար նոյն ինքն յանցաւորը գործողէն պահանջել։ Նաև Հայրն ու Որդին ձրիապէս կու տան մեզի ան ծախու առնուած կեանքը՝ մեր սրտանց ընդունելովը, և ձրի կը խրկեն Սուրբ Հոգին մեզ կարողացունելու որ ընդունինք ինչ կայ ուրեմն ասոր մէջ որ ձրի չէ, ո՜հ ինչ յաւիտենական զարմացմամբ պիտի զարմանան սուրբերը աս ձրիութեանը վրայ խորհած ատեննին։ Ի՞նչ տեսաւ Տէրը իմ վրաս՝ որ զիս յարմար գտաւ ասանկ վիճակի մը։ Ես խեղճ՝ ախտաւոր՝ անարգ՝ թշուառական մին էի, որ աս փառքին պայծառութիւնովը զիս հագուեցընէ։ Ես չնչին որդ մը ըլլալով՝ աս բարձր պատիւին հասնիմ։ Ես քիչ մը առաջ լացող՝ ողբացող ու մահկանացու մը ըլլալով հիմա այնքան ուրախութեամբ լեցուիմ, որքան որ սիրտս կրնայ ընդունել. և մանաւանդ ելլեմ գերեզմանէն՝ ուր կը փտէր մարմինս և ելլեմ հողէն ու խաւարէն՝ ուր անյիշատակ եղած կը թուէի, և հոս անոր աթոռին առջևը կենամ։ Ես Մուրթքէին պէս գերութենէ ելլեմ և թագաւորին քովը նստիմ, Դանիէլին պէս՝ առիւծներուն գուբէն ելլեմ, և իշխաններուն կառավարիչ ըլլամ։ Ո՞վ կրնայ վերահասու ըլլալ աս անչափելի սիրոյն։ Եթէ մեր ընդունելուն պայմանը՝ արժանաւորութիւննիս ըլլար, Յովհաննէս Աւետարանիչին պէս նստելու լալու էինք արժանի մէկ մարդ մը չգտնուելուն համար։ Բայց Յուդայի ցեղէն եղող Առիւծը արժանի է, և յաղ-

թեց ու անոր իրաւունքովը մեր ժառանգութիւնը կրնանք ձեռք ձգել։ Դաւիթին պէս պիտի չընենք. որ Տէրոջը զոհ մատուցանելու համար Ոռնային կալը չէր ուզեր ձրի առնել, բայց մեր ձրի առածները Տէրոջը պիտի մատուցանենք։ (Բ Թագ. ԻԴ. 24։) Ա՛ս է մեզի տրուած կանոնը, Ձրի առիք ձրի տուէք, բայց՝ Քրիստոս սուղ ծախու առաւ, և սակայն ձրի կու տայ։

Եթէ միայն առանց հատուցման ըլլար և առանց մեր արժանաւորութեանը, տակաւին զարմանքը մեծ կ'ըլլար, բայց մեր պատժոյ արժանաւորութիւնն ու երկայն ատեն բուն մեր կործանումը փնտռելնուս ալ դէմ է։ Ի՞նչ զարմանալի խորհուրդ. պիտի ըլլայ խորհիլ մեր արժանի եղածներուն և մեր ընդունածներուն անսահման տարբերութեանը վրայ, մեր հիմակուան վիճակին ան թշուառ վիճակէն ունեցած տարբերութեանը վրայ՝ որուն արժանաւոր էինք, վարնայիլ դժոխքին վրայ և տեսնել ան տարապայման տարբերութիւնը որ շնորհքը՝ ըրաւ մեր ու հոն գտնուողներուն մէջ։ տեսնել բուն ան ժառանգութիւնը որուն համար ծնած ենք, թէ այնքան տարբեր է ան ժառանգութենէն՝ որուն համար որդեգիր եղանք։ Ի՞նչ սիրոյ բորբոքներ պիտի վառին մեր սէրը երբ խորհինք, թէ "ահա ան տեղը՝ որ Քրիստոս մեզ հասուց։ Ահա ան մահը՝ որ իմ մեղքիս վարձք պիտի ըլլար. բայց աս յաւիտենական կեանքը Աստուծոյ շնորհքն է Քրիստոս Յիսուս իմ Տէրոջմովս։ Ո՞վ ըրաւ զիս այնքան տարբեր ուրիշներէն։ Հիմա ես ան բոցերուն մէջ պիտի ըլլայի, թէ որ իմ ճամբաս բռնէի և իմ կամացս թողուէի։ Անդունդի մէջ պիտի չարչարուէի մինչև որ բոցերը զիս պատէին, թէ որ Աստուած իր

ողորմութեամբը զԻս դուրս չհանէր"։ Անտաքա-կցյա յաւիտենական զարմանք պիտի ըլլայ մեզի աս բանը, որ անանկ ծանրագին թագ մը ասանկ անարգ մեղաւորի մը գլխուն յարմարի, և ասանկ բարձր պատիւն ու ասանկ բազմաժամանակեայ անպտղութիւնը և ապերախտութիւնը մի և նոյն անձին վիճակը ըլլայ, և ասանկ անարգ ապստամբութեանց վերջը՝ ասանկ պատուական ուրախութիւններ ըլլայ։ Բայց շնորհակալութիւն ո՛չ մեզի և ոչ մեր կատարած գործքերուն ու աշխատութիւններուն մէկուն, մանաւանդ թէ՝ ոչ մեր զանցառութեանը և ծուլութեանը. գիտենք մենք որու կը վայլէ գովութիւնը՝ և որու պէտք է տըրուիլ յաւիտեանս։ Բուն աս վախճանին համար էր որ անհուն իմաստութիւնը մարդուս փրկութեան բոլոր խորհուրդը այսպէս սահմանեց, այսինքն ծախու առնելը և ձրի տալը, որ մարդուն սէրն ու ուրախութիւնը կատարեալ ըլլայ, և շընորհքը խիստ փառաւոր հանդիսանայ, որ արժանաւորութեան գաղափարը չարգիլէ առջինը, երկրորդը չխաւարեցունէ. որպէս զի աս երկու ծինիներուն վրայ դառնայ երկնից դուռը։ Ուրեմն թող ԱՐԺԱՆԱՒՈՐՈՒԹԻՒՆ բառը գրուի դժողքին դրանը վրայ, իսկ երկնից ու կենաց դրանը վրայ՝ ՁՐԻ ՇՆՈՐՀՔ։

3. Աս հանգիստը որքան յարգելու է. անոնցմէ զատ ուրիշի մը բնաւ չվերաբերիր։ Թէ որ բոլոր Եգիպտոս լոյս ըլլար՝ Իսրայելացիք ալ նոյնը պիտի ունենային ոչ պակաս. բայց ան լոյսին մինակ իրենց վայելելովը դրացիներնուն թանձր խաւարի մէջ գտնուած ատենը, աւելի պիտի զգան ան իրենց ունեցած արտօնութիւնը։ Սեփհական եղած շնորհքը՝ ամէն շնորհքէ աւելի կ'ազդէ։

Եթէ որ փարաւոն ալ Իսրայէլացւոց պէս ապահով անցնէր՝ Կարմիր ծովէն յիշատակը այնքան երևելի չէր ըլլար։ Եթէ որ բոլոր աշխարհք չխղդուէր և թէ որ Սոդոմ ու Գոմոր չայրէին՝ Նոյին փըրկութիւնը զարմանք մը չէր ըլլար, ոչ ալ Ղովտի ազատութիւնը այնքան կը խօսուէր։ Երբոր մէկը կը լուսաւորուի ու միւսը խաւարի մէջ կը մնայ, մէկը կը նորոգուի և միւսը իր ցանկութիւնովը գերի բռնուած կը մնայ, աս բանը աղաղակել կու տայ սուրբերուն, "Տէր՝ ինչպէս կ'ըլլայ որ դուն ինքզինքդ մեզի պիտի յայտնես, և չէ թէ աշխարհին"։ Երբոր մարգարէն կը խրկուի բոլոր Իսրայէլի մէջ եղողներէն միայն մէկ այրի կնկան մը, և բոլոր բորոտներէն մէկ Նէեմանը մաքրելու, անոր տանը շնորհքը աւելի նշանաւոր կ'ըլլայ։ Նոյնը զգացում մը պիտի պատճառէ անշուշտ՝ ան օրը երկու կողմին ալ. երբոր մէկ անկողինի մէջ կամ դաշտի մէջ երկու հոգի ըլլայ, ու մէկը առնուի և միւսը ձգուի։ Սուրբերը վար պիտի նային ան հրեղէն լճին վրայ և իրենց երջանկութիւնը զգալով և Աստուծոյ արդար գործքին հաւանութիւն տալով, պիտի ցնծան ու երգեն, "Արդար ես՝ դուն որ ես և որ էիր, և սուրբ ես, որ ասանկ դատաստան ըրիր"։

Է. Թէպէտ աս հանդիսար Սուրբերուն յատուկ է, բայց հասարակ է բոլոր սուրբերուն. վասն զի երանելեաց ընկերութիւն է, թէ սրբոց թէ հրեշտակաց. կատարեալ եղած սուրբերուն միութիւնն է, որոնց գլուխ է Քրիստոս, և անոնց հաղորդակցութիւնը կատարեալ է։ Ինչպէս որ մէկտեղ էինք աշխատանքի, վտանգի և նեղութեան տանը, ասանկ ալ մէկտեղ պիտի ըլլանք ան մեծ հանգուցմանն ու ազատութեան տանը։ Ինչպէս

որ մէկտեղ ծաղր կ'ըլլայինք և կ'անարգուէինք, անանկ մէկտեղ պիտի ընդունուինք ու պատուուինք։ Մենք որ տրտմութեան օրը մէկտեղ անցուցինք, մէկտեղ ալ պիտի վայելենք ան ուրախութեան օրը. անոնք որ մեր հետը եղան հալածման ու բանտի մէջ, մեզի հետ ալ պիտի ըլլան ան մխիթարութեան պալատին մէջ։ Քանի՛ քանի անգամ մեր հառաչանքը մէկ ձայնի պէս եղան, մեր արտասուքը մէկ հոսանք, և մեր փափաքները մէկ աղօթք։ Բայց հիմա բոլոր մեր փառաբանութիւնները մէկ երգ պիտի ըլլան, բոլոր մեր եկեղեցիները մէկ եկեղեցի, և բոլոր մեր անձերը մէկ մարմին. վասն զի Քրիստոսով մէկ պիտի ըլլանք՝ ինչպէս որ Որդին և Հայրը մէկ են։ Ճշմարիտ է որ ան բանը սուրբերէն փնտռելու չենք որ միայն Քրիստոսի մէջը կը գտնուի։ Բայց եթէ Հայր Աբրահամին և Իսահակ ու Յակոբ Նահապետներուն հետ երկնից թագաւորութեանը մէջ նստելու խորհուրդը՝ մեր իրաւացի ուրախութիւնը կ'ըլլայ, ո՛րչափ աւելի իսկական տեսութիւնն ու իսկական ժառանգութիւնը։ Հարկաւ մխիթարական խորհուրդ մը պիտի ըլլայ մտածել ան օրուան վրայ՝ երբոր պիտի միանանք Մովսէսին հետ՝ իր երգը երգելու, Դաւիթին հետ՝ իր փառաբանութեանը սաղմոսները, և բոլոր փրկուածներուն հետ՝ Գառնուկին երգը յաւիտեան երգելու մէջ. երբոր պիտի տեսնենք Ենովքը որ Աստուծոյ հետ կը քալէ, Նոյ իր անզուգական հաւատարմութեան վարձքը կ'ընդունի, Յովսէփը իր անարատութեան, Յոբը՝ իր համբերութեանը, Եղեկիան իր ուղղութեանը և բոլոր սուրբերը՝ իրենց հաւատքին վախճանը կը վայելեն, Ոչ միայն մեր առաջուց գիտցածները, այլ ամէն

կարու բոլոր սուրբերը՝ որոնց երեսը մարմնով բընաւ երբէք տեսած չենք, պիտի ճանչնանք և ուրախութեամբ պիտի վայելենք։ Այո՛, սուրբերը և հրեշտակներն ալ մեր երջանիկ ընկերները պիտի ըլլան։ Անոնք որ հիմա յօժար սրտով մեզի ըսպասաւորող հոգիներ են, ան ատենն ալ յօժար սրտով մեր բարեկամները պիտի ըլլան ուրախութեամբ։ Անոնք որ անանկ ուրախութիւն ունին երկինքը մեր դարձի գալուն համար, անշուշտ մեծ ուրախութեամբ պիտի ցնծան մեզի հետ մեր փառաւորուելուն վրայ։ Ան ատենը ճշմարտապէս պիտի ըսենք Դաւիթին հետ թէ ամէն քենէ վախցողներուն ընկերն եմ՝ երբոր "Սիոն լեռան մօտենանք ու կենդանի Աստուծոյ քաղաքին՝ երկնաւոր Երուսաղեմին ու բիւրաւոր հրեշտակներուն ու երկինքը գրուած անդրանիկներուն հանգիսաւոր ժողովքին և եկեղեցիին, և Աստուծոյ՝ որ ամենուն դատաւորն է. ու արդարոց հոգիներուն որ կատարուեր են. և Յիսուսի որ նոր ուխտին միջնորդն է։ Երկնաւոր հանգիստին մէկ հատիկ գերազանցութիւնն է՝ որ մենք Սուրբերուն քաղաքակիցները և Աստուծոյ ընտանիքը կ'ըլլանք"։

5. Մեր հանգիստին մէկ յատկութիւնն ալ աս է, որ անոր ուրախութիւնները անմիջապէս Աստուծոյ ձեռքէն պիտի ընդունինք։ Հիմա բան մը չունինք անմիջապէս անկէ. այլ երկու՝ իրեք. կամ ո՛վ գիտէ քանի ձեռքերէ անցած, այսինքն՝ երկրէն՝ մարդէն՝ արևէն՝ լուսինէն՝ հրեշտակներուն սպասաւորութենէն։ Թէպէտ հրեշտակի ձեռքով եկածներուն մէջ՝ մեղաւորներու անկատարութիւնը խառնուած չէ, սակայն արարածներուն անկատարութիւնը և մարդու ձեռքով եկածներուն մէջ՝ երկու տեսակ անկատարութիւնն

ալ կը փառաւորուին։ Ի՛նչ կենդանի՝ զօրեղ ու սուր է Աստուծոյ խօսքը, և սակայն շատ անգամ քնած չազդեր տկար մարդոց բերնով խօսուելով։ Ի՛նչ ծանրութիւն և արժէք կայ օրհնեալ Աւետարանին ամէն խօսքերուն մէջ, մարդ կը կարծէ թէ բաւական է թափանցելու և ազդելու ամենէն թմրած հոգիին և քարոտին գրաւելու անոր խորհուրդները և զգացմունքը, և սակայն ո՛րչափ անգամ քարի վրայ ջուր թափածի պէս է՝ որ չծծեր երբէք։ Մ՚եր խօսած Աստուծոյ բաները աստուածային են, բայց մեր խօսելու կերպը մարդկային։ Ինչ բանի որ կը դպչինք քիչ կայ որ մեր աղտոտ ձեռքերուն նշանը վրան չմնայ։ Եթէ խօսքը Աստուած ինք խօսի, ան ատենը արդարև կենդանի ու զօրեղ պիտի ըլլայ։ Քրիստոնեան փորձով գիտէ հիմա որ իր ամենաքաղցր ուրախութիւնները ամենէն աւելի անմիջական կերպով Աստուծմէ եկածներ են, որոնք մարդոցմէ շա՛տ քիչ բան առնին, և ուղղակի Սուրբ Հոգիէն են։ Ան Քրիստոնեաները որ շատ կ'առանձնանան աղօթքի ու խորհրդածութեան, ամենէն շատ հոգևոր կեանք և ուրախութիւն ունեցող մարդիկը անոնք են, վասն զի անոնք ամէն բան աւելի անմիջական կերպով կ'ընդունին Աստուծմէ։ Ո՛չ թէ մեկզի ձգելու ենք խօսքը, լսելն ու կարդալը և խորհրդակցութիւնը կամ Աստուծոյ որ և իցէ մէկ սահմանադրութիւնը զանց ընելու ենք, այլ տունը ընելու ատեն՝ բոլորովին անոնց չկապուիլը քրիստոնէի ընթացքն է։ Ուրախութիւն կայ ու հեռուէն ընդունուած բաներուն մէջ, սակայն ուրախութեան լրութիւնը Աստուծոյ անմիջական ներկայութեանը մէջն է։ Ատենը լոյս պիտի առնենք առանց կանթեղի․ և

անմիջնաւոր ցորեն՝ առանց արևի, վասնզի «Քաղաքը արևի ու լուսնի պէտք չունի, որ զանիկայ լուսաւորեն. քանզի որ Աստուծոյ փառքը զանիկայ կը լուսաւորէ, ու անոր ճրագը Գառնուկն է. և հոն ալ գիշեր պիտի չըլլայ, ու ճրագ ու արևու լոյս պէտք չէ և յաւիտեանս յաւիտենից պիտի թագաւորեն»։ Ան ատենը առանց Սուրբ Գրոց՝ լուսաւորեալ միտք պիտի ունենանք, և առանց գրաւոր օրինաց պիտի կառավարուինք, վասն զի Տէրը կատարեալ պիտի ընէ իր օրէնքը մեր սրտերուն մէջ, և ամէնքս կատարելապէս Աստուծմէ սորված պիտի ըլլանք։ Մենք ուրախութիւն պիտի ունենանք, բայց ոչ թէ խոստմունքներէն առած ոչ ալ հաւատոյ և յուսոյ ձեռօքը վայելած ուրախութիւնը։ Համբերութիւն պիտի ունենանք Աստուծոյ հետ՝ առանց արարողութեանց միջոցին, ու որթին պտուղը ալ հարկաւոր պիտի չըլլայ երբոր Քրիստոս նոր պիտի խմէ մեզի հետ իր Հօրը թագաւորութեանը մէջ, և պիտի կազդուրէ մեզ անմիջական վայելքին մխիթարիչ գինիովը։ Կարօտութիւն ունենալ և անիկայ չլեցուիլը դժոխքի մէջ եղողներուն վիճակն է։ Կարօտութիւններն արարածներու ձեռօք լեցուիլը՝ մեր երկրի վրայի վիճակն է։ Իսկ կարօտութիւնը անմիջապէս Աստուծմէ լեցուիլը՝ սուրբերուն վիճակն է երկինքին մէջ։ Կարօտութիւն ամենևին չունենալը՝ միայն Աստուծոյ յատկութիւնն է։

6. Աս հանդիստին մէկ ուրիշ գերազանցութիւնն ալ ան է՝ որ յարմար ժամանակին կը տրուի։ Ան որ իր այգիին պտուղը՝ իր ժամանակին կ՚ըսպասէ առնել, և իր ժողովուրդը կ՚ընէ «Ջուրի ճամբաներուն անկուած ծառի պէս, որ իր ժամանակին իր պտուղը կու տայ», նոյնպէս կենաց պսակը

պիտի տայ անոնց իր ժամանակին ։ Ան որ յոգնածին մխիթարական խօսք մը կը զրուցէ ժամանակին, անշուշտ ուրախութիւնը ամենէն յարմար ատենին պիտի յայտնէ ։ Անոնք որ չեն ձանձրանար բարիք ընելէն, յարմար ժամանակին պիտի հնձեն, թէ որ չթուլնան ։ Եթէ Աստուած իր անձրեւը ժամանակին կու տայ մինչեւ անգամ չարերուն, և հունձքի սահմանեալ շաբաթները կը պահէ, նաեւ կը պահէ այն ուխտը որ ցորեկ ու գիշեր իրենց ժամանակին ըլլան, ուրեմն անշուշտ սուրբերուն փառաւոր հունձքն ալ իր ժամանակէն չվրիպիր ։ Անտարակոյս այն որ մէկ օր մըն ալ ետ չկեցաւ իր խոստումներէն, այլ հանեց Իսրայէլացիները Եգիպտոսէն՝ նոյն օրը երբ չորս հարիւր երեսուն տարին լմնցաւ, ոչ ալ մէկ օր մը կամ մէկ ժամ մը պիտի անցընէ իր ժողովրդեանը փառքին ատենէն ։ Երբ որ աս աշխարհիս մէջ երկայն խաւար գիշեր մը ունեցեր ենք, այն ատենը արշալոյսին երեւալը և Արդարութեան Արեգակին ծագիլը յարմար պիտի չըլլա՞յ ։ Երբոր երկայն ու ձանձրալի ճամբորդութիւն մը ըրեր ենք շատ վտանգներէ անցնելով, յարմար ատեն չը՞լլար հայրենիք հասնելու ։ Երբ որ երկայն ու վտանգաւոր պատերազմ մը ըրեր ենք ու շատ վէրքեր ալ առեր ենք, յաղթական խաղաղութիւնը յարմար չը՞գար այն ատենը ։ Մարդիկ շարունակ ձանձրութեան մէջ կ'ապրին, յատկապէս սուրբերը, որոնք շատ կը ձանձրանան այն բաներէն՝ որ աշխարհ չկրնար զգալ ։ Ոմանք կայր մոքէն կը ձանձրանան, ոմանք կարծր սիրտէն, ոմանք իրենց ամէն աւուր տարակոյսներէն և երկիւղներէն, ոմանք հոգեւոր ուրախութեան պակասութենէն, և ոմանք Աստուծոյ բարկութեան վախէն ։ Եւ երբոր քրիստոնեայ մը

շատ տարի մաքառելով ու աղօթելով ազատու-
թեան սպասեր է, ան ատենը յարմար չէ՞ փրկու-
թիւնը ։ Մ՛ենք կը գանգատինք թէ Քանանու ե-
րկիրը անապատին մէջ չենք գտներ, կամ Սիօնի
երգերը օտար երկրի մէջ, և թէ Ովկիանոսի մէջ
ալ խաղաղ Նաւահանգիստ ու ոչ ցորեկուան
տաքուն ատենը հանգիստ՝ ոչ ալ երկինք՝ երկրէս
զատուելէն առաջ, և թէ որ ասոնց ամէնը ըլլային
ատենէ դուրս իջած պիտի չըլլայի՞ն ։

7. Աս հանգիստը ինչպէս որ յարմար ժա-
մանակին, անանկ ալ յարմար կերպով պիտի ըլլայ ։
Արդարոց նոր բնութիւնը՝ անոնց հոգիները աս
հանգիստին կը յարմարցընէ ։ Մանաւանդ իրենց
սրբութիւնը ուրիշ բան չէ՝ այլ մէկ կայծ մը
երկինքէն առնուած, և Քրիստոսի Հոգւոյն
ձեռօքը իրենց սրտերուն մէջ բորբոքած. որուն բո-
ցը միշտ կը հակի իր եկած տեղին՝ իր ծագումը
աստուածային ըլլալով ։ Ժամանակաւոր թագերը
և թագաւորութիւնները չեն կրնար սրբոց հան-
գիստ տալ ։ Վասն զի անոնք անանկ ցած գնով
չփրկուեցան. և ոչ անանկ ցած բնութիւն մը ա-
ունին ։ Ինչպէս որ հոգւով երկրպագութիւն կ՚ու-
զէ անոնցմէ Աստուած իր հոգևոր էութեանը
յարմար, անանկ ալ ինք անոնց հոգևոր հանգիստ
մը պիտի պատրաստէ՝ իրենց հոգևոր բնութեանը
յարմար ։ Աստուծոյ և իր Օծեալին գիտու-
թիւնը, անոնց փոխադարձ սիրոյն մէջ հաճոյա-
կան համակրութիւնը, մեր զԱստուած վայելելուն
մէջ յաւիտենական ուրախութիւնը՝ իր փառա-
ւորեալ գոհութիւնները յաւիտեան երգելով,
Սուրբին յարմար երկինքը աս է ։ Ան ատենը
մենք հոն բուն մեր բնութեանը յարմար եղած
տարրին մէջ պիտի ապրինք ։ Մ՛ենք հիմա կը

նմանինք՝ ամանի մը մէջ դրուած ձուկի, միայն այնքան ջուրով՝ որ ողջ մնանք, բայց ի՛նչ է ա-նիկայ՝ Ովկիանոսին քով։ Քիչ մը օդ ներս թողուած է հիմա մեզի՝ որ շնչառութիւն ընենք, բայց ի՛նչ պիտի ըլլայ անիկայ՝ Սիոն լեռանը ա-նուշիկ և զով զեփիւռներուն քով։ Արեգակին ճա-ռագայթը ունինք մեր խաւարը փարատելու, և տաք շառաւիղ մը՝ մեզ սառելէն պահելու հա-մար. բայց ան արեւը անոր լուսոյն մէջ պիտի բը-նակինք, և անոր տաքութիւնովը յաւիտեան պի-տի կենդանանանք։ Սրբոց բնութիւնները ինչպէս որ են, իրենց փափաքներն ալ անանկ են. և մեր նորոգեալ բնութեանը փափաքներն են, որուն յարմարած է աս հանգիստը։ Քանի որ մեր փափաքները ապականած և անկարգ կը մնան, մե-զի շատ աղէկ է անոնք ուրանալը, մանաւանդ զա-նոնք կորսնցընելը՝ քան թէ կատարելը. բայց ան փափաքները՝ որոնք որ հոգևոր են, Աստուծոյ տնկածներն են, և անշուշտ ինքը ջուր պիտի տայ անոնց, ու աճեցունէ։ Ինքը մեզ անօթի ու ծա-րաւ ըրած է արդարութեան համար, որ երջանիկ ընէ մեզ կատարելապէս կշտացունելով։ Քրիս-տոնեայ՝ աս քու սրտիդ ուզած հանգիստն է, ու կը պարունակէ ամէն ինչ որ քու սիրտդ կրնայ ուզել, ամէն ինչ բանի որ կը ցանկաս՝ ինչ բանի համար որ կ'աղօթես՝ կ'աշխատիս, հոն պիտի գըտ-նես ամէնը։ Աւելի կ'ուզէիր զԱստուած ունե-նալ Քրիստոսով՝ քան թէ բոլոր աշխարհը. հոն պիտի ունենաս զինքը։ Ի՞նչ պիտի չտայիր անոր սիրոյն վստահ ըլլալու համար. հոն վստահութիւն պիտի ունենաս առանց կասկածի։ Փափաքէ ինչ որ կրնաս, խնդրէ ինչ որ կ'ուզես՝ իբրև Քրիս-տոնեայ, և պիտի տրուի քեզի՝ ոչ միայն մինչև

թագաւորութեան կէսը, որ մինչև անգամ թէ թագաւորութիւնք և թէ թագաւորք։ Այս կեանքը փափաքի և աղօթքի կեանք է, բայց ան կեանքը հաճութեան և վայելմունքի։ Աս հանգիստը որուն կատարութեանցն ալ շատ յարմար է, ինչպէս նաև իրենց բնութեանը և փափաքանացը։ Անիկայ կը պատասխանէ ինչ բանի որ ճշմարտապէս կը կարօտին, ոչ թէ տալով անոնց թանձր նիւթական երջանկութիւններ, որոնք Մաւուղին զէնքերուն պէս՝ աւելի խոր են Գրաւքթին վրայ, քան թէ օգուտ։ Անոնց ամենքն աւելի կարօտած բանը Քրիստոս և կատարեալ սրբութիւնն էր, և ասոնցմով պիտի լեցուէին։

8. Նաև աս հանգիստը բացարձակապէս կատարեալ պիտի ըլլայ։ Ան ատենը ուրախութիւն պիտի ունենանք՝ առանց տրտմութեան, և հանգիստ՝ առանց ձանձրութեան։ Մեր շնորհքներուն հետ ապականութեան խառնուրդ պիտի չըլլայ, և ոչ ալ մեր մխիթարութեանը հետ վիշտ։ Ան նաւահանգիստին մէջ չկայ ան ալիքներէն մէկը որ հիմա մեզ ասանկ վեր վար կը տարուբերեն։ Այսօր աղէկ ենք, վաղը հիւանդ. այսօր պատուոյ մէջ՝ վաղը անարգութեան. այսօր բարեկամներ ունինք՝ վաղը չունինք. այս՛ հիմա մեր գինին ու քացախը մէկ ամանի մէջ են։ Իսկ թէ որ յայտնութիւնները մեզ երրորդ երկինքն ալ հանեն՝ Սատանային հրեշտակը շուտ մը մեզ պիտի հրէ, և մարմինին խայթոցը մեզ վար պիտի բերէ։ Բայց աս անհաստատութիւններէն մէկն ալ չկայ երկինքը։ Եթէ կատարեալ սէրը՝ վախը մէկ դի կ'ընէ, արդէն կատարեալ ուրախութիւնն ալ հարկաւ տրտմութիւնը մէկ դի պիտի ընէ, և կատարեալ երջանկութիւնը՝ թշուառու-

պէտք ընթանալ Աստուծմով՝ որուն լոյսը մթութիւն պիտի չթողու մեր մէջ։ Նոր երեսը պիտի ըլլայ մեր Սուրբ Գիրքը՝ ուր պիտի կարդանք ճըշմարտութիւնը։ Շատ անգամ կ'ըլլայ հոն՝ որ բարեպաշտ մարդ մը սխալ նախանձաւորութիւնովը պատճառ կ'ըլլայ իր եղբայրները խաբելու և զանոնք մոլորցունելու. և երբ որ ինք իր սխալը կը տեսնէ, չգիտէր ինչ ընելու է որ անոնք ուղղէ։ Իսկ հոն միայն պիտի ըլլանք ճշմարտութեան վրայ՝ ինչպէս նաև մէկ եղած ըլլալով անոր հետ որ ճշմարտութիւն է։ Պիտի դադարինք նաև մեր կամքին ու զգացումներուն և վարուցը մեղքերէն։ Նաև պիտի չպահենք աս աշխատամքութեան հոգին՝ որ հիմա մեզ Աստուծմէ հեռացունել կը ջանայ, ալ պիտի չզգանք մոլութեանց զօրութիւնը, և ոչ ալ պիտի տառապինք անոնց ազդեցութենէն. Հըպարտութիւն՝ բարկութիւն՝ ծուլութիւն ու անզգայութիւն պիտի չըլլայ մեր քովը. ոչ Աստուծմէ ու Աստուծոյ բաներէն օտարութիւն՝ ոչ զգացումներու պաղութիւն ոչ ալ սրտի մէջ անկատարութիւն պիտի ըլլայ. ոչ անկարգ ընթացք՝ ոչ ալ Սուրբ Հոգին տրտմեցընել. ոչ ամօթալի գործքեր՝ ոչ ալ պիղծ խօսակցութիւններ, բայց ասոնցմէ յաւիտեան պիտի դադարինք և հանգչինք։ Ան ատենը՝ ինչպէս որ երկու երեսի նման է հայելիին մէջ, անանկ ալ մեր կամքը պիտի համաձայնի Աստուածային կամացը, որմէ իբրև մեր օրէնքը և կանոնը՝ բնաւ խոտորելու չենք։ "Վասն զի ան որ անոր հանգիստը մտաւ, ալ ինքը հանգչեցաւ իր գործքերէն, ինչպէս որ Աստուած ալ իրիններէն"։

Մեր նեղութիւնները լոկ մեր մեղանչելուն արդիւնքն էին. և երկուքն ալ երկինքին մէջ միան-

դամայն պիտի դադարին ։ Պիտի հանգչինք Աստուծոյ սիրոյն վրայի բոլոր մեր տարակոյսներէն ։ Ալ պիտի չըսուի ան տունը թէ "Տարակոյսները տատանողներու պէտ են, որ թէպէտ չար բոյսեր են, բայց բարի երկրի մէջ ալ կը բուսնին" ։ Ան ատենը պիտի ջնջուին անոնք և ալ պիտի չնեղեն ան երանելի հոգին ։ Ալ պիտի չլսենք ասանկ խօսք թէ "Ի՞նչ ընեմ որ իմ վիճակս գիտնամ ։ Ինչէ՞ն գիտնամ որ Աստուած իմ Հայրս է, սիրտս ուղիղ է, դարձս արդեամբ և ճշմարտութենով է, և հաւատքս անկեղծ է. կը վախնամ որ մեղքերս ներուած չեն, և բոլոր ըրածս կեղծաւորութիւն է, և կը վախնամ որ՝ Աստուած պիտի մերժէ զիս և աղօթքներս չլսէ" ։ Բոլոր ասոնք փառաբանութեան պիտի դառնայ հոն ։

Պիտի հանգչինք Աստուծոյ մեզի բարկացած ըլլալուն բոլոր վախերէն ։ Դժոխքը՝ արքայութեան հետ պիտի չխառնուի ։ Երբեմն երանելի հոգին զԱստուած միտքը կը բերէր և կը նեղուէր, կը գանգատէր և կը խռովէր ու չէր ուզեր մխիթարուիլ. Աստուածային բարկութիւնը՝ վրան կը ծանրանար և Աստուած բոլոր իր ալիքներովը կը պաշարէր զանիկայ. Իսկ ան օրհնեալ օրը՝ պիտի ցուցընէ մեզի որ թէպէտ Աստուած իր երեսը վայրկեան մը կը ծածկէ մեզմէ, սակայն յաւիտենական մարդասիրութեամբ ողորմութիւն պիտի ընէ մեզի ։

Պիտի հանգչինք Սատանային բոլոր փորձութիւններէն ։ Ի՜նչ վիշտ է քրիստոնեային որ կը թելադրուի իր Տէրը ուրանալու, թէև փորձողին մօտիկ չընէ ալ ։ Ի՜նչ տանջանք է ասանկ սոսկալի զգացումներ իր հոգւոյն ազդուիլը, ասանկ հայհոյական գաղափարներ իր երևակայութեանը

ներկայանալը. երբեմն խիստ խորհուրդներ Աստուծոյ վրայ՝ անարգ խորհուրդներ Քրիստոսի վրայ, անհաւատութեան խորհուրդներ Սուրբ Գրքոց վրայ՝ կամ նախատալից խորհուրդներ Նախախնամութեան վրայ: Ի՜նչ տանջանք է փորձուիլ երբեմն՝ ներկայ բաներուն դառնալու, մեղաց որոգայթներուն հետ խաղալու, մարմնաւոր ցանկութեանց մէջ մտնել համարձակելու, և երբեմն բուն անաստուածութեան՝ մանաւանդ երբոր գիտենք թէ մեր սիրտը որքան խաբեբայ է. որ աբեթի պէս պատրաստ է բռնկելու՝ ան կայծերէն մէկը իրեն դպածին պէս: Սատանան՝ իշխանութիւն ունի մեզ փորձել հոս՝ բայց Սուրբ Քաղաքը չմտներ. կրնայ մեզ տաճարին աշտարակին վրայ կեցունել երկրաւոր Երուսաղեմին մէջ, իսկ Նոր Երուսաղեմին չկրնար մտնել, կրնայ մեզ շատ բարձր լեռ մը հանել, բայց Սիոն լեռը չկրնար ելլել. և եթէ ելլէր՝ ուցուցնէր աշխարհի բոլոր թագաւորութիւնները և անոնց փառքը, առիկայ անարգ խայծ մը պիտի ըլլար մեր Տէրոջը թագաւորութիւնը ժառանգող հոգիին: Ալ զուր է Սատանային մեզ փորձելը:

Աշխարհէն և մարմինէն եղած մեր փորձութիւններուն ալ պիտի դադարին: Ի՜նչ վտանգներ կան հոս՝ որոնց մէջ կը քալենք ամէն ժամանակ: Ամէն զգայարան և ամէն անդամնիս մէյմէկ որոգայթ են. ամէն արարած՝ ամէն բարիք և ամէն պարտաւորութիւն որոգայթ են մեզի: Հազիւ թէ կրնանք աչքերնիս բանալ առանց փորձութեան մէջ իյնալու, կամ մեզմէ վեր եղողներուն նախանձելու, կամ մեզմէ վար եղողները անարգելու, ոմանց պատւոյն ու հարստութեանը ցանկալու, այ-

լոյս աղքատութեանը և Հնդկի հանդերձներուն նա-
յելու հպարտութեանը և անզգամութեանը ։ Եթէ
գեղեցկութիւն ունինք՝ ցանկութեան փափուկ
կայ. եթէ ազնուութիւն՝ զզուանաց և անարգու-
թեան ։ Ի՛նչ շուտով նախատական ծաղրա-
կանութիւնները՝ սնոտի կատակները՝ խնդալի
խօսակցութիւնները կը սպրդին կը մտնեն մարդուն
միտքը ։ Ի՛նչ յարատեւ ու զօրաւոր հսկողութիւն
մը կը պահանջեն մեր ախորժակները ։ Եթէ վա-
յելչութիւն ու գեղեցկութիւն ունենանք, հպար-
տութեան ի՛նչ մեծ գրգիռ մը կ'ըլլայ ։ Տգեղ
ենք. ահա՛ քէրզի տրտնջելու տժգոհելու պատճառ ։
Եթէ միայն կարողութիւն և ուսմանց ձիրքեր
ունենանք, որչափ ենթակայ կ'ըլլանք հպարտա-
նալու և գովութիւն փնտռելու և մեր եղբայրքը
անարգելու ։ Եթէ անուս ըլլանք՝ որչափ հա-
կամիտ կ'ըլլանք արհամարհել ինչ որ մենք չու-
նինք ։ Եթէ իշխանութեան տէր ենք, փորձու-
թիւնը որչափ զօրաւոր կ'ըլլայ մեր պաշտօնը չա-
րաչար գործածելու, կամքերնիս օրէնք ընե-
լու, և ուրիշներուն վայելքները մեր հաճութեանն
ու մեր խելքին կանոններովը ձեւելու ։ Եթէ
ստորին աստիճանի անձինք ենք՝ որչափ հակեալ
կ'ըլլանք այլոց բարձր աստիճանին վրայ տժգոհե-
լու և անոնց գործքերը մեր դատողութեան տա-
կանը բերելու ։ Եթէ հարուստ ըլլանք՝ չե՞նք հը-
պարտանար. աղքատ ըլլանք չե՞նք տրտնջեր ։ Մեր
պարտաւորութեանցը մէջ ծոյլ չե՞նք, կամ եթէ
ժիր ըլլանք՝ զանոնք մեր Քրիստոսը չե՞նք ըներ բոլոր
յոյսերնիս անոնց վրայ դնելով ։ Բայց ոչ թէ Աստ-
ուած աս բաները մեզի որոգայթ ըրաւ, այլ մեր
ապականութիւնովը որոգայթ եղան անոնք մեզի ։
Մենք մեր անձանց ամենամեծ որոգայթներն

որչափ պիտի ամանչային տեսնելով որ մենք Տէրը կը փառաբանենք և կ'ուրախանանք երբ իրենք կը գոռան ու կ'ողբան ։ Դուք որ՝ եղբարք՝ չէք կըրնար հիմա Աստուծոյ մէկ գործը ընել, առանց մարդոց սէրը կորսնցունելու, մտածեցէք որ երկինքը մէկը պիտի չգտնուի որ ձեր գործին ձեռնտու չըլլայ, և սիրտն ու ձայնը ձերինին հետ չմիացընէ՝ ձեր յաւիտենական ուրախութեանը և գոհաբանութեանը մէջ ։ Մինչև այն ատենը՝ ձեր հոգիները համբերութեան մէջ պահեցէք ։ Բոլոր նախատինքները իբրև պսակ գլուխնիդ կապեցէք ։ Աշխարհիս գանձերէն՝ մեծագոյն հարստութեան համբերեցէք ։ «Քանզի «Աստուծոյ առջևը իրաւունք է՝ ձեզի նեղութիւն տուողներուն նեղութիւն հատուցանել . և ձեզի նեղութիւն քաշողներուդ հանգիստ Տէր Յիսուսին երկինքէն յայտնուելու ատենը ։ ( Բ Թեսա. Ա. 7 ։ ) Պիտի հանգչինք այն ատենը բոլոր մեր ցաւալի հերձուածներէն, և իրարու հետ եղած քրիստոնէութեան անվայել կռիւներէն ։ Ի՞նչ սիրով կը բնակին հազարաւորներ մէկտեղ երկինքը, որոնք երկրի վրայ իրարու հետ հակառակութիւնով ապրեցան ։ Կռիւ չկայ, վասն զի աս հպարտութիւնը՝ տգիտութիւնը և ուրիշ խանգարումները չկան ։ Դաւաճանութիւն չկայ՝ մեր կողմը զօրացունելու համար, և ոչ մեր եղբարցը դէմ նենգաւոր հընարքներ ։ Եթէ երբէք տրտմութիւն և ամօթ կընար ըլլալ երկինքը, անշուշտ երկրի վրայի բոլոր աս ընթացքնիս միտք բերելով պիտի տրտմինք և ամչնանք, ինտոր որ Յովսեփին եղբայրները՝ երբոր զանիկայ տեսնելով միտք կը բերէին իրենց առջի անողորմ ընթացքը ։ Բաւական չէ՞ որ բոլոր աշխարհ մեզի դէմ է, մենք ալ իրարու դէմ

ըլլալու ենք արդեօք ։ Ի՞նչ երջանիկ օրեր են հալածման օրերը, որ մեզ սիրով մեկտեղ կը կապեն, իսկ ազատութեան ու յաջողութեան ճառագայթը մեր անմիաբանութիւններովը կը ցրուէ մեզ ։ Ի՞նչ երջանիկ է սրբոց փառաւորեալ հանգիստին օրը, որ տեսնեն ինչպէս մէկ Աստուած մը կայ՝ մէկ Քրիստոս՝ մէկ Սուրբ Հոգի, անանկ ալ մենք պիտի ունենանք մէկ սիրտ՝ մէկ եկեղեցի՝ մէկ գործ յաւիտեան ։

Պիտի հանգչինք այն ատենը մեր եղբարցը չարչարանքներուն մասնակցութենէն ։ Եկեղեցին՝ երկրի վրայ լոկ հիւանդանոց մըն է ։ Ոմանք կը հեծեն խաւար միտքի մը տակ, ոմանք անզգայ սրտի մը · ոմանք կը նուաղին անպտուղ տկարութեան տակ՝ և ոմանք կը տանջուին ծուռ ընթացքի և կամակորութեան համար․ ոմանք կ՚աղաղակեն իրենց աղքատութեանը պատճառաւ, ոմանք կը հեծեն ցաւերու ու հիւանդութիւններու տակ․ և ոմանք կ՚ողբան բազմադիմի տառապանքներ ունենալով ։ Բայց ատոնցմէ խիստ աւելի մեծ վիշտ է տեսնել մեր ամենասիրելի և խիստ մտերիմ բարեկամներուն՝ Քրիստոսի ճշմարտութենէն մէկդի կենալը՝ շարունակելով իրենց զանցառութիւնը առ Քրիստոս՝ և իրենց հոգիներուն ունեցած պարտաւորութիւնը, անանկ որ բան մը չկրնար արթընցունել զիրենք՝ իրենց կարծեցեալ ապահովութենէն և՝ անհոգութենէն ․—Նայիլ ամբարիշտ հօր մը կամ մօր մը՝ եղբօր մը կամ քրոջ մը՝ կնկան մը կամ էրկան մը՝ զաւկի մը կամ բարեկամի մը վրայ և խորհիլ թէ յաւիտեան դժոխքի մէջ պիտի մնան՝ եթէ իրենց ներկայ վիճակին մէջ մեռնին․ խորհիլ թէ Աւետարանին հեռանալուն՝ փառքը մեր Իսրայէլէն առնուելուն՝ խեղճ հոգւոց կամովին խա-

ւոր ու զուրկ մնալուն, և զիրենք փրկութեան առաջնորդող լոյսը մարելնուն վրայ: Մ՝եր հանգստին օրը՝ ասոնց ամենէն մեզ պիտի ազատէ. սուգի օրերը պիտի վերջանան, ան ատենը Տէրոջը ժողովուրդին ամէնը արդար պիտի ըլլան, ու երկիրը յաւիտեան պիտի ժառանգեն. իր տնկած տունկը՝ իր ձեռքերուն գործքը՝ իր փառքին համար պիտի ըլլայ:

Ա՛ն ատենը պիտի հանգչինք բուն մեր բոլոր անձնական տանջանքներէն ալ: Ա՛սիկայ կրնայ պըզտիկ բան մը երևնալ անոնց՝ որ հանգստութեան ու յաջողութեան մէջ կ՚ապրին. բայց հանապազ տառապեալ հոգիին երկինքին վրայ խորհիլը ուրախալից կ՚ընէ: Մ՝եր հիւանդութեան կեանքը կեանք չէ՝ մահ է. այնքան տառապանքով լեցուած՝ որքան որ օր և ժամ ունի: Մ՝եր Փրկիչ այս նեղութիւնները թողուց մեր վրայ որ գիտնանք մեր ընդունած շնորհքներուն յարգը և չմոռնանք զանոնք. որ ծառայեն իր իմաստուն և մարդասէր նըպատակացը, և օգտակար ըլլան մեր կատարեալ և վերջին փրկութեանը: Վ՝իշտը կը մտնէ ամէն զգայարանաց մէջ, և կը գրաւէ մարմնոյն ու հոգւոյն ամէն մասերն ու զօրութիւնները: Ո՞ր ազնիւ մասը կայ, որ իր ցաւը կամ կոտուսը մինակ կը կրէ: Բ՝այց մեղքն ու մարմինը և ամէն ցաւը ամէնը մէկէն հոս ետ պիտի ձգուին: Ո՛հ ինչ երջանիկ անդորրութիւն ան տեղ, ուր որ չկայ ուրիշ բան, այլ քաղցր և մշտատև խաղաղութիւն: Ի՛նչ առողջարար օթևան, ուր բնաւ հիւանդ մը չկայ: Ո՛հ երջանիկ երկիր, ուր ամէնը թագաւոր են: Ո՛հ սուրբ ժողովք, ուր ամէնը քահանայ են: Ո՛հ ազատ գաւառ, ուր օր բնաւ մէկը ծառայ չըլլար, բայց միայն իրենք

գերագոյն Խնքնակալին ։ Աղքատը ալ պիտի չյոգնի իր աշխատութիւններէն. ալ ոչ անօթութիւն՝ ոչ ծարաւութիւն՝ ոչ ցուրտ կամ մերկութիւն՝ ոչ դառն սառնամանիք և ոչ ալ տօչորող տաքութիւն. ալ երբեմնի դեղնած կամ տխուր պիտի չըլլայ, ալ ոչ բարեկամութեան դրժումն և ոչ ալ բարեկամաց բաժանում. ալ ոչ նեղութիւն պիտի ըլլայ մեր ազգականներուն մէջ՝ ոչ ալ ողբ ու լաց պիտի լսուի մեր բնակարաններուն մէջ. Աստուած պիտի սրբէ մեր աչքերէն բոլոր արտասուքը ։ Ո՛վ իմ հոգիս՝ քու երկրաւոր շինուածքիդ ցաւերը համբերութեամբ կրէ, ալ քիչ մը ատեն ասանկ պիտի քշէ. քու փրկչիդ ոտիցը ձայնը կը լսուի ։

Պիտի հանգչինք նաև պարտաւորութեանց բոլոր ծանրութիւններէն. խղճմտանքաւոր դատաւորը՝ կամ ծնողքը՝ կամ քարոզիչը կ'աղաղակէ, "Ո՜ս ի՛նչ բեռ է վրաս" ։ Մարդուն ամէն առընչութիւնները՝ վիճակը՝ հասակը զատ զատ պարտականութիւններ ունին, անանկ որ ամէն արթուն քրիստոնեայ կ'աղաղակէ, "Ո՜ս ի՛նչ բեռ է, ինչ տկա՛ր եմ, որ իմ պարտաւորութիւններս ինծի ծանըր կու գան" ։ Բայց մեր ապագայ հանգիստը պիտի հանգչեցունէ մեզ աս բեռներէն ։

Ալ ան ատենը պիտի հանգչինք բոլոր աս ծանր նեղութիւններէն՝ որ մեր Աստուծմէ հեռանալէն հարկաւորապէս հետևած է ։ Ան նեղութիւնը՝ որ խառնուած է մեր փափաքներուն և յոյսերուն մէջ՝ մեր բաղձանքներուն և ակնկալութիւններուն մէջ, բոլորը պիտի դադարի ։ Ալ պիտի չըլլայ որ մեր գանձարանին մէջ նայինք, ու մեր գանձը չտեսնենք, ոչ ալ մեր սիրտերուն մէջ նայինք, ու մեր Քրիստոսը հոն չտեսնենք. ալ ոչ թէ շնորհաց մէկ միջոցէն ուրիշի մը դիմելով Քրիստոսը պիտի փնտռ-

ռենք, այլ ասոնց ամէնը պիտի վերջանայ, զէնքը կատարելապէս վայելելով։

Թ. Մեր Թագին վերջին գոհարը աս է՝ որ յաւիտենական հանգիստ մը պիտի ըլլայ ան։ Առանց ատոր՝ բաղդատաբար բոլորը ոչինչ կ'ըլլային։ Օտանիկայ ձգելու խորհուրդը անգամ՝ պիտի դառնացունէր բոլոր մեր ուրախութիւնները։ Արքայութեան մէջ դժոխք մը պիտի ըլլար՝ խորհիլը, թէ վերջը պիտի կորսնցունենք աս արքայութիւնը՝ ինչպէս որ դատապարտելոց վիճակը իրենց տեսակ մը արքայութիւն պիտի ըլլար՝ եթէ երբէք ազատութեան յոյսը ունենային։ Արեւուն ներքեւը եղած բոլոր զուարճութեանց անարգութիւնն է անցաւոր ըլլալը։ Ի՞նչպէս կը խանգարէ մեր ուրախութիւնը՝ երբ որ կը տեսնենք թէ անիկայ ձեռքերնիս անցած ատենը աներեւոյթ կ'ըլլայ։ Բայց՝ ո՜վ երջանիկ յաւիտենականութիւն, ուր մեր կենցաղը սանկ խորհուրդներով չշփոթիր, եւ ոչ մեր ուրախութիւնները ինչ եւ իցէ սանկ երկիւղներով կ'ընդմիջահատի. ուր "Աստուծոյ տաճարին սիւներ պիտի ըլլանք, ու ալ դուրս պիտի չելլենք"։ Երբ ծառայ էինք, հաստատուն ժառանգութիւն չունէինք. ունեցածնիս ալ անցաւոր կեանքի մը համար էր, "բայց Որդին յաւիտեան կը մնայ տանը մէջ"։ Ո՜վ իմ հոգիս մէկ դի՛ ձգէ ներկայ զուարճութեանց վրայի քու երազներդ. թո՛ղ տուր աշխարհն ու մարմինը։ Շա՛տ անգամ սերտէ, կատարեալ սորվէ աս միակ բառը — Յաւիտենականութիւն։ Ի՞նչ. ապրիլ ու յաւիտեան չմեռնի՜լ. ուրախանալ եւ միշտ ուրախանա՜լ։ Ո՛հ՝ որչափ երջանիկ պիտի ըլլային դժոխքին մէջի հոգիները, թէ որ միլիօնաւոր դարերէն վերջն ալ կարող ըլլային ազատիլ անկէ։ Եւ որչափ ապերջանիկ

պիտի ըլլայի՞ն հոգիներնիս երկինքի մէջ՝ թէ որ միլիօնաւոր աշխարհքներուն դարերէն ետքն ալ անկէ զրկուէին։ Սա Յաւիտենականութիւն բառը, կը պարունակէ անանց տանջանացը ու մեր փառացը կատարելութիւնը։ Երանի՛ թէ մեղաւորը սա բառը սորվէր, կարծեմ պիտի յանկարծ արթընցունէր զինքը իր մահուան քունէն։ Երանի՛ թէ երանելի հոգին սորվէր անիկայ, կարծեմ պիտի կենդանացունէր զինքը իր դառն տագնապին մէջ։ Վա՜յ ա՜հ. Տէր ես առանց յաւիտեան պիտի ապրիմ։ Ուրեմն յաւիտեան ալ պիտի սիրեմ։ Իմ ուրախութիւններս անմահ պիտի ըլլան՝ ու իմ շնորհակալութիւններս անմահ պիտի չըլլա՞ն։ Անշուշտ՝ եթէ ես բնաւ իմ փառքս կորսնցունելու չեմ, բնաւ ալ իմ գոհաբանութիւններս դադրեցունելու չեմ։ Եթէ դուն կատարեալ պիտի ըլնես և պիտի յորդորես զիս և իմ փառքս, ինչպէս որ ես քուկդ պիտի ըլլամ. և ոչ իմս, անանկ ալ իմ փառքս քուկդ պիտի ըլլայ։ Եւ ինչպէս որ քու փառքդ էր քու վերջին նպատակդ իմ փառքիս մէջ, անանկ պիտի ըլլայ իմ վախճանս ալ, երբ կը պսակես զիս ան փառքը որ վախճան չունի։ Ո՜ն յաւիտենական թագաւորին՝ որ անեղծ ու աներևոյթ է, ան մէկ Աստուծոյն փառք ու պատիւ յաւիտեանս յաւիտենից՝։"

Այսպէս ջանացի ցուցընել քեզի մէկ թեթև տեսարան մը ապագայ փառաց վրայ։ Բայց ո՜րչափ տկար են իմ խօսքերս՝ անոր գերազանցութիւնը ցուցընելու։ Ընթերցող, թէ որ դուն մէկ խոնարհ ու անկեղծ հաւատացեալ մը ըլլաս, և անձկանօք ու ջանքով սպասես սա հանգիստին, քիչ ատենէն պիտի տեսնես և զգաս բոլոր անոր ճշմարտութիւնը։ Անանկ բարձր գաղափար մը

պիտի ունենաս աս երջանիկ վիճակին վրայ ; որ քեզի խղճալ տայ պիտի մահկանացուաց ազատութեանը՝ ու յաւիտենական հանգստութենէն հեռացողներուն վրայ, և պիտի ծանուցանէ քեզի թէ ան վիճակին վրայ ամէն ան անդի զրուցուածները հազարապատիկ պակաս են քուն ճշմարիտէն։ Ուրեմն այսչափը բաւական ըլլայ քեզի բաղձանքներդ գրգռելու և ջանքերդ արթնցունելու։ Ե՛լ և գործէ, վազէ՛ և ջանք ըրէ, պատերազմէ՛ և համառօտ կեցիր, վասն զի քու առջևդ ստոյգ ու փառաւոր մրցանակ մը ունիս։ Աստուած քեզ չխաբեր. դուն ինքզինքդ մի խաբեր, և ոչ օրէ օր ուշացունելով քու հոգիդ մատներ. և ահա ամէն բան քովդ է։ Ինչ անտակ անձինք կը կարծես թէ պիտի ըլլային քրիստոնեաները իրենց վարուցը և պարտաւորութեանցը մէջ՝ թէ որ միշտ իրենց խորհուրդներուն մէջ անթառամ պահէին աս փառքը. ի՞նչ վիճակի մէջ պիտի ըլլային իրենց զգացումները՝ թէ որ երկնից վրայ իրենց ունեցած խորհուրդները կենդանի ըլլային, ու հաւատքնին հաստատ։ Ասանկ ծանրացած պիտի ըլլա՞ր անոնց սիրտը, և երեսնին ասանկ տխուր. կամ թէ կարօտ պիտի ըլլայի՞ն իրենց մխիթարութիւնը աս երկրաւոր բաներէն հանել։ Այնքան պիտի սոսկայի՞ն նեղութիւն քաշելէն. այնքան պիտի վախնայի՞ն մեռնելէն՝ կամ թէ մինչև անիկայ վայելելնին ամէն մէկ օրը մէյմէկ տարի պիտի չգա՞ր իրենց։ Տէրը բժշկէ մեր մոլորեալ սիրտերը՝ որ չըլլայ թէ աս հանգիստը չմտնենք մեր անհաւատութեան պատճառաւ։



## ԳԼՈՒԽ Գ.

### Այն անձանց որպիսութիւնը՝ որոնց համար որ է սա հանգիստը:

Թաբոր լեռանը վրայ էի, և սրբոց հանգստեանը գերապանցութիւնները կ՚ստորագրէի, կ՚զգայի թէ աղէկ է հոն ըլլալը. փափաքոյս իմ հոն կենալս երկարեցի. և եթէ իմ ըմբռնումներուս ու տարակոյսին մէջ խիստ մեծ անհամեմատութիւն չըլլար, շատ աւելի պիտի երկարէի: Այն երջանիկ երկրին վրայ եղած հայեցողութիւնը ձանձրալի կրնա՞յ ըլլալ: Ասանկ գերազանց ու անճառելի փառքի մը վրայ կարդալով՝ չգիտցողը պիտի զարմանայ թէ ինչ հաղուագիւտ էակներու համար եղած պիտի ըլլայ սա երևելի պատրաստութիւնը. և պիտի ակնկալէ թէ՝ մէկ փառաւոր արեգակ մը պիտի ծագի. բայց ահա՝ ափ մը հող՝ մէկ անտեսանելի, բանական հոգւով մը կենդանացած և շնորհաց նոյնպէս աներևոյթ զօրութեամբը նորոգուած. և սա է այն էակը որ ասանկ փառք պիտի ժառանգէ: Պիտի կարծես թէ մէկ արժանաւոր ու արժանայարգ մէկը ըլլալու է. բայց ահա մէկը՝ որ բան մը չունի, և բանի մը արժանի չէ. մանաւանդ որ հակառակին արժանի է, և սա արժէքը պիտի առնէր՝ թէ որ չարգիլուէր. բայց սիրով բռնուած ըլլալով՝ Անոր քաշուեցաւ, որ ամէնը և ամէն բանի մէջն է. (Կողոս. Գ. 11.) և եռանդուն սիրով ընդունելով զանիկայ, ու անոր վրայ հաստատուելով, կ՚ընդունէ անով և անոր ձեռօքը ամէն սա բաները: Աւելի մանաւորապէս խօսելով, սա անձինքը՝ որոնց համար որ է,

աս Հանգիստը, Աստուծմէ ընտրուած են 'ի յաւիտենից, Քրիստոսի տրուած են իբրև իրենց փրկչին, վերստին ծնած են, խորունկ զգացած են մեղաւորաց վիճակին չարութիւնն ու թշուառութիւնը և արարածներուն ունայնութիւնն ու Քրիստոսի ամենաբաւականութիւնը, կամքերնին նորոգուած է, ինքզինքնին ուխտով Քրիստոսի նուիրած են, և ան նուիրումը կը յարատևեն մինչև վերջը։

1. Ան անձինքը՝ որոնց համար որ է աս Հանգիստը, զորոնք բնաբանը “Աստուծոյ ժողովուրդը” կը կոչէ, “Աստուծմէ ընտրուած են աշխարհը ըլլալէն առաջ, որ սուրբ ու անարատ ըլլան անոր առջևը սիրով”։ Անոնց մարդկային ազգին մէկ փոքր մասը ըլլալը՝ Սուրբ Գիրքէն և փորձառութենէն ալ կ'երևի։ Ասոնք ան պզտիկ հօտն են, որոնց “իրենց Հայրը հաճեցաւ որ թագաւորութիւնը տայ”։ Աշխարհին կարծածէն ալ քիչ են. և սակայն ոչ այնչափ քիչ՝ որչափ որ ոմանք նեղացեալ հոգիք կը կարծեն, որոնք կը կասկածին թէ Աստուած յօժար չէ իրենց Աստուածն ըլլալ, թէպէտև իրենք ինքզինքնին յօժար գտնեն անոր ժողովուրդն ըլլալու։

2. Աս անձինքը՝ Աստուծմէ Քրիստոսի տրուած են, որ անով փրկուին իրենց կորսուած վիճակէն և աս փառացը հասնին։ Աստուած ամէն բան իր Որդւոյն տուած է, բայց ոչ թէ ան յատուկ կերպով որ իր ընտրեալները անոր տուած է. “Աստուած անոր իշխանութիւն տուաւ բոլոր մարմիներուն վրայ, որպէս զի յաւիտենական կեանք տայ ան ամէնուն՝ որ իրեն տուաւ”։ Աս տարբերութիւնը յայտնի կ'ըսէ առաքեալը. “Ամէն բան անոր ոտքին տակը հնազանդեցուց, և զանիկայ ամէն բաներու վրայ եկեղեցիին գլուխ ըրաւ”։

(Յովհ. Ա. 22:) Աս թէպէտ Քրիստոս մէկ միջոցով մը ամենուն համար փրկանք մըն է, սակայն ոչ թէ ան մասնաւոր կերպովը՝ ինչպէս որ է իր ժողովրդեանը համար:

3. Աս անձանց մէկ մեծ յատկութիւնն աս է, որ վերստին ծնած են: Աստուծոյ ժողովուրդը ըլլալ առանց նորէն ծնանելու, այնքան անկարելի է՝ որքան որ առանց ծնանելու մարդոց զաւակն ըլլալը: Որովհետև մենք ծնած ենք թշնամի Աստուծոյ, վասնորոյ նորէն ծնանելու ենք՝ իրեն որդի. եթէ ոչ անանկ թշնամի պիտի մնանք: Մինչև որ աս նոր կեանքը հոգւոյն մէջ յառաջ չըգայ, մարդ որչափ որ վարքը շիտկէ, կրնայ իր անձը խաբել, բայց ոչ երբեք փրկուիլ:

4. Աստուծոյ ժողովրդեանը մէջ աս նոր կեանքը յայտնի կ'ըլլայ Աստուածային բաներուն վրայ մէկ խորին զգացումով մը: Անոնք զգացած են մեղաց ծանրութիւնը: Մեղաւորը Սուրբ Հոգւոյն շնորհօքը կը գիտնայ և կ'զգայ թէ մեղքը՝ որ իր հաճութիւնն էր, օձէն դառնելի բան մըն է, և ժանտախտէն ու սովէն աւելի մեծ չարիք մըն է, և Բարձրեալ Աստուծոյ արդար օրինաց զանցառութիւնը ըլլալով, Անոր նախատինք և մեղաւորին վնաս է: Հին մեղաւորը՝ մեղաց յանդիմանութիւնը ալ անհոգութեամբ չլսեր, ու թէև երբոր մէկը իր մեղքը երեսին տայ՝ սրտին կը դպչի ան խօսքը, սակայն կ'ուզէ իր ամենէն մեծ մեղքը անգամ յայտնուի: Առաջ կը զարմանար թէ ինչու համար մարդիկ այսչափ մեղքի դէմ կը պատերազմին. ի՞նչ կ'ըլլայ թէ որ մարդ քիչ մը արգիլեալ զուարճութիւն վայելէ: Առաջ մեղքին մէջ այնքան մեծ գէշութիւն մը չէր տեսներ, որ պէտք ըլլար Քրիստոս անոր համար մեռնիլ, և առանց

Քրիստոսի մնացողները դժողքի մէջ յաւիտեան տանջուիլ։ Բայց հիմա բանը փոխուած է. Աստուած բացած է անոր աչքերը, որ տեսնէ մեղաց անպատմելի վատթարութիւնը։

Անոնք զգացած են իրենց թշուառութիւնն ալ մեղաց պատճառովը։ Անոնք որ առաջ անանկ կը կարդային Աստուծոյ օրինաց սպառնալիքը՝ ինչպէս որ մարդիկ կը կարդան դուրսի պատերազմաց պատմութիւնը, հիմա կը տեսնեն որ իրենց պատմութիւնն է ան, և կ'զգան որ իրենց վճիռը կը կարդան՝ որպէս թէ բուն իրենց անունները անէծքին մէջ գրուած է, կամ թէ կը լսեն օրէնքը որ "Նաթանին պէս կ'ըսէ "Դուն ես ան մարդը"։ Առաջ Աստուծոյ բարկութիւնը իրենց կ'երևէր ինչպէս որ փոթորիկն ու անձրևը իր տանը մէջ ապահով կեցած մարդու մը կ'երևայ. և ինչպէս հիւանդին ցաւերը կ'երևան քովը կեցող առողջին. բայց հիմա կը տեսնէ որ հիւանդութիւնը բուն իրն է, և ինքզինքը դատապարտուած մարդ մը կ'զգայ. կ'զգայ որ ինք մեռած ու դատապարտուած է օրէնքով. և բացարձակապէս ու անդառնալի կերպով թշուառ ըլլալուն բան չէ մնացեր, այլ միայն մեռնելուն կը նայուի։ Ասիկայ Սուրբ Հոգւոյն գործն է՝ որ ամէն նորոգուածներուն մէջը քիչ շատ եղած է։ Ան մարդը ի՞նչպէս պիտի մօտենայ Քրիստոսի՝ անկէ թողութիւն գտնելու համար, որ առաջ ինքզինքը մեղաւոր դատապարտուած չզգար. կամ ինտո՞ր կրնայ անկէ կեանք խնդրել, ան որ տակաւին ինքզինքը հոգևորապէս մեռած չգիտեր։ "Առողջներուն բժիշկ պէտք չէ, այլ հիւանդներուն"։ Թշուառութիւնը իմացուածին պէս՝ դարմանն ալ գտնելը, նեղութեան մեծ մասը անշուշտ կ'արգիլ-

չէ։ Ու գուցէ Աստուածային ողորմութեան ու-րախալից խորհուրդները շուտով մոռցունել կու-տան թշուառութեան զգացումը։

Զգացած են նաև արարածներուն ունայնու-թիւնը և անբաւականութիւնը։ Ամէն մարդ բնա-կանաբար կռապաշտ է։ Մեր սիրտերը Աստուծ-մէ խոտորեցան՝ մեր առաջին անկմանը ատենը, և անկէ հետէ արարածը մեր աստուածը եղած է։ Անիկայ է մարդկային բնութեան գլխաւոր մեղքը։ Ամէն չնորոգուած մարդ՝ Աստուածային սորու-գելիք կու տայ արարածին. ու նաև իր հոգւոյն մէջ ամենաբարձր տեղը արարածի կու տայ. կամ թէ որ թշուառութիւն զգայ, անոր կը դիմէ՝ իբ-րև փրկիչ։ Յիսուսի զԱստուած՝ ու անոր Օծ-եալը Տէր և փրկիչ կը կոչէ, բայց ակնկալու-թիւնը արարածէն է, և Աստուծոյ գործն ալ ա-րարածին կու տայ։ Հեշտութիւնը՝ շահը ու պատիւը, ընչաւոր; այսինքն աշխարհասէր մարդուն պաշտած երրորդութիւնն է. և ասոնք միաւորուած են իր մարմնաւոր անձին մէջ։ Մեր առաջին մեղքն էր աստուածներու պէս ըլլալուն ցանկալը, և մեր բնութեանը մէջ ազգէ ազգ տարածուած ամենէն մեծ մեղքն ալ ան է։ Աստուած մեզ ա-ռաջնորդելուն տեղը, մենք ինքզինքնիս կ'առաջ-նորդենք, ան մեր Խնամակալը ըլլալուն տեղը, մենք կ'իշխենք մեր անձերուն, Աստուծոյ տուած օրէնքներուն դէմ գանգատ կ'ընենք, և կ'ուզենք շիտկել մեր քմացը յարմար կերպով. և թէ որ մեզի մնար, անանկ օրէնք հաստատելը պիտի չու-զէինք. անոր մեզի հոգ տանելուն տեղը, (որ ա-ռանց անոր հոգ տանելուն կը կորսուինք,) մենք կ'ու-զենք որ մեր անձին համար հոգ տանինք. մեր պիտոյից համար անկէ կախում ունենալնուս տե-

ղը՝ ամէն օր անոր ձեռքէն ընդունելով զանոնք, մենք մեր բաժինը մեր ձեռքը կ'ուզենք ունենալ. անոր Նախախնամութեանը հպատակելնուս տեղը, շատ անգամ կ'ապստամբինք անոր դէմ. և կը կարծենք թէ մենք Աստուծոյ ըրածէն աղէկ կըրնայինք կարգադրել: Մենք զԱստուած սիրելու՝ պատուելու և անոր ապաւինելու տեղը, մեր մարմնաւոր անձերը կը սիրենք ու կը պատուենք և անոնց կ'ապաւինինք: Ամէն մարդոց աչքերն ու ապաւինութիւնը Աստուծոյ վրայ ըլլալուն տեղը, կ'ուզենք որ մե՛ր վրայ ըլլայ, և ամէն մարդոց շընորհակալութիւնները մեզի դառնան. և շատ պիտի ուրախանայինք որ երկրի վրայ ամէնը մեր վրայ միայն զմայլին և մեզ միայն գովեն: Այսպէս 'ի բնէ մենք մեր կուռքերն ենք: Բայց երբոր Աստուած հոգին կը նորոգէ՝ Դագոնը* շուտով գետինը կ'իյնայ կը կործանի: Աս մեծ գործին գըլխաւոր նպատակն է սիրտը դարձունել Աստուծոյ: Ան կը համոզէ մեղաւորը՝ թէ արարածը ոչ կրնայ իր Աստուածն ըլլալ՝ որ զինքը երջանիկ ընէ, ոչ ալ կրնայ իր Քրիստոսն ըլլալ՝ որ զինքը փրկէ իր թշուառութենէն և հաշտեցունէ Աստուծոյ հետ՝ որ ճշմարիտ երջանկութեան աղբիւրն է: Աստուած ասիկայ կ'ընէ ոչ միայն իր խօսքովը, այլ Նախախնամութիւնովն ալ: Ասոր համար է որ շատ անգամ նեղութիւնը կ'օգնէ մարդիկ դարձի բերելու գործին մէջ: Ան զօրաւոր ապացոյց մըն է մարդիկները համոզելու, երբոր ամենէն զօրաւոր խօսքեր ազդեցութիւն մը չեն ըներ: Եթէ մեղաւորը՝ իր համարումն ու պատիւը իր աստուածն ըրած է, և Աստուած յետին անարգու-

* Ա Թագ. Ե. 2—7:

*թեան մէջ կը ձգէ զինքը, կամ իր հարստութիւնը պաշտողը անանկ վիճակի մը մէջ կը ձգէ՝ ուր որ հարստութիւնը չկրնար օգնել իրեն, կամ անանկ կ'ընէ որ թեւ կ'առնեն ու կը թռչին իր հարստութիւնները, ի՛նչ օգնութիւն կ'ըլլայ աս արարածոց ունայնութիւնը զգացընելու ան մարդուն: Եթէ մէկը՝ իր աստուածը ըրած է հեշտութիւնը, այսինքն թափառող աչքին՝ հետաքրքիր ականջին՝ անյագ ախորժակին՝ կամ ցանկասէր սրտին ամէն ցանկութիւնը, և Աստուած կ'առնէ անկէ ան բաները, և զանոնք թոյնի ու դառնութեան կը դարձունէ, ի՛նչ մեծ օգնութիւն կ'ըլլայ անոր որ զգայ արարածոց ունայնութիւնը: Երբ որ Աստուած մէկը վհատեցունող հիւանդութեան մէջ ձգէ, և սրտին մէջ խոցեր բանայ, ու բուն իր խղճմտանքը իրեն դէմ դատախազ հանէ, և նոյն միջոցին որպէս թէ ըսէ "փորձէ՝ նայէ քու պատիւք, հարստութիւնդ և հեշտութիւնդ կրնա՞ն քեզի օգնել. կրնա՞ն բժշկել քու վիրաւորուած խղճմտանքդ. հիմա կրնա՞ն անոնք քու դողդոջուն աշտարակդ կանգուն պահել. քու շնչասպառ ըլլալու հոգիդ կրնա՞ն մարմնիդ մէջ պահել, կամ իմ յաւիտենական բարկութենէս քեզ փրկել, կամ ազատել քու հոգիդ մշտավառ բոցերէն. բարձրաձայն աղաղակէ անոնց, և տես թէ հիմա քեզի՝ անոնք Աստուծոյ և Քրիստոսի տեղը պիտի բանե՞ն": Ա՛հ ինչպէս կ'ազդէ ան տեսնը մեղաւորին աս: Զգայարանքը անգամ ճշմարտութիւնը կը խոստովանին, և մինչև անգամ մարմինը համոզուած է ու կը վկայէ արարածոց ունայնութիւնը:*

*Աստուծոյ ժողովուրդը նոյնպէս զգացած է Յի-սուս Քրիստոսի [illegible] հաղորդութիւնը՝ [illegible] [illegible]ութիւնը և [illegible]ութիւնը, ինչպէս*

որ մարդ մը սովի ատեն կ'զգայ ուտելիքի հարկաւորութիւնը, կամ իր դատապարտութեան վճիռը ընդունած մարդ մը կ'զգայ ներման շնորհուելուն բացարձակ հարկաւորութիւնը, կամ պարտքի համար բանտը պառկողը կ'զգայ իր երաշխաւորի մը կարօտ ըլլալը։ Հիմա մեղաւորը անտանելի բեռ մը կ'զգայ իր վրայ, և կը տեսնէ որ մէկը չկայ որ կրնայ իրմէ վերցունել անիկայ՝ բայց միայն Քրիստոս. կը տեսնէ որ Օրէնքը զինքը ապստամբ կը կոչէ, և Քրիստոսէ 'ի զատ հաշտեցունող մէկը չկայ. առիւծէն հալածուած մարդու պէս է, որ անշուշտ պիտի կորսուի՝ եթէ շուտով ապաստանարան մը չգտնէ. Հիմա աս երկուքէն մէկը 'ի հարկէ պիտի ընտրէ, կամ՝ Քրիստոս զինքը արդարացունելու է, կամ յաւիտեան դատապարտուելու է. կամ Քրիստոս զինքը փրկելու է, կամ դժոխքի մէջ յաւիտեան այրելու է. կամ Քրիստոս զինքը Աստուծոյ բերելու է, կամ յաւիտեան մերժուելու է անոր ներկայութենէն։ Ու զարմանք չէ թէ որ աղաղակէ մարտիրոս եղող մէկուն պէս. "Ո՛չ մէկը, այլ միայն Քրիստոս՝ միայն Քրիստոս"։ Ո՛չ թէ ոսկին, այլ հացը կը կշտացունէ անօթին. Նոյնպէս ալ ներումէն զատ ուրիշ բան մը չմխիթարեր դատապարտեալը։

Հիմա ամէն բան աղտեղութիւն կը համարի, որ Քրիստոսը շահի. Նաև ինչ որ օգուտ էր իրեն՝ անիկայ Քրիստոսի համար վնաս կը համարի։ Ինչպէս որ մեղաւորը կը տեսնէ թէ խեղճ է, և թէ ո՛չ ինք և ոչ ուրիշ բան մը կարող է զինքը հանգչեցունել, նոյնպէս ալ կը տեսնէ որ Քրիստոսէն դուրս փրկարար ողորմութիւն չկայ։ Կը տեսնէ որ թէպէտ արարածները չեն կրնար իրեն օգնել և ինքը չկրնար իր անձին օգնել, սակայն Քրիստոս կրնայ։ Թէպէտ բուն մեր ար-

դարութեան տերեւները կարճ կու գան մեր մերկութիւնը ծածկելու, սակայն Քրիստոսի արդարութիւնը բաւական մեծ է. մերինը Օրէնքին պահանջած արդարութեանը հետ համեմատութիւն չունի, բայց Քրիստոսին արդարութիւնը Օրէնքին ամէն մասը անվրէպ կը կատարէ։ Եթէ ան բարեխօսէ, անհնար է որ չընդունուի. անանկ բարձր պատիւ մը ունի և անանկ արժանաւորութեան յարգ մը, որ անոր ամէն ուզածը Հայրը կը շնորհէ։ Առաջ մեղաւորը Քրիստոսի գերապանցութիւնը գիտեր՝ ինչպէս որ կոյրը արեւուն լոյսը գիտէ. բայց հիմա գիտէ՝ անոր փառքը տեսնողի մը պէս։

5. Աս բաներուն վրայ խորին զգացում մը առնալէն ետքը, կամքն ալ կը յայտնէ իր փոփոխութիւնը։ Զոր օրինակ՝ որովհետեւ միտքը կը դատէ թէ մեղքը չար է, կամքը գարշելով կը հեռանայ անկէ։ Ու թէ զգայական ախորժակը փոխուած է՝ կամ բան մը եղած է որ գարշի իր առարկայէն, այլ երբոր Սուրբ Գիրքը կանոն՝ բանականութիւնը տէր՝ և զգայութիւնը հպատակ ըլլալու տեղ, զգայական ախորժակը բանականութեան դէմ կ'ելլէ և մեղանչել կու տայ մեզի Աստուծոյ դէմ, աս անկարգութենէն ու չարիքէն կամքը կը գարշի։ Մեղքին յառաջ բերած թշուառութիւնն ալ ոչ միայն կը նշմարէ, այլ և կ'ողբայ վրան։ Հիմա հոգին՝ Աստուծոյ դէմ ըրած օրինազանցութեանը, և բուն իր ձեռօքը իր գլխուն բերած տառապանքը տեսնելով անհնար է որ սրտին մէջ չցաւի։ Ան որ ճշմարտապէս կ'զգայ թէ ինք Քրիստոս և իր անձը սպաննած է, անշուշտ քիչ շատ պիտի վիրաւորուի սրտին մէջ։ Եթէ չկրնար լալ, կրնայ սրտանց հառաչել. և մտքէն տեսած բանը՝ սիրտը

կ՚զգայ ։ Անձնայնութիւն կը համարի արարածները, ու զարշելով կը մերժէ սրտէն ։ Ոչ թէ անոնց յարգը չգիտեր կամ չգործածեր զանոնք, այլ անոնց կռապաշտական ծուռ գործածութիւնը և մեր սիրտը գրաւելը կը մերժէ ։ Միթէ հնա՞ր է որ Քրիստոս միջոց ըլլայ, երբ արարածն է վախճանը ։ Կրնա՞նք Քրիստոսի դիմել որ մեզ Աստուծոյ հետ հաշտեցունէ, քանի որ մեր սրտերուն մէջ արարածը անկէ վեր կը բռնենք ։ Ամէն չնորոգուած մարդուն հոգւոյն մէջ արարածն է Աստուած և Քրիստոս ։ Ինչպէս որ առանց Քրիստոսի միջնորդութեանը արարածէն Աստուծոյ դառնալը ճշմարիտ դարձ չէ, այնպէս ալ Քրիստոսի հաւատալը ճշմարիտ հաւատք չէ՝ թէ որ տակաւին արարածները գրաւած են սրտերնիս ։ Մեղքէն դառնալնիս՝ մեր կուռքերէն հրաժարելնիս և Քրիստոսը ուղիղ սրտով ընդունելնիս ամէնը մէկ գործ է զոր Աստուած միշտ կը կատարէ որու վրայ որ սկսի ։ Մի և նոյն ժամանակը կամքը որ Աստուծոյ և Քրիստոսի կը յարի ։ Ան ատենը մեղաւորը՝ համոզուելով որ իր երջանկութիւնը ուրիշ բան չկրնար ըլլալ, կը տեսնէ որ Աստուծով կրնայ արդեամբ երջանիկ ըլլալ ։ Նմանապէս համոզուելով որ միայն Քրիստոս կարող և կամեցող է իրեն խաղաղութիւն տալու, մեծ սիրով կ՚ընդունի Քրիստոս իբրև Տէր և փրկիչ ։ Պօղոս Առաքելոյն քարոզութիւնն էր “ապաշխարութիւն դէպ ՚ի Աստուած, և հաւատք մեր Տէր Յիսուս Քրիստոսի վրայ” ։ Ու յաւիտենական կեանքն է նախ “ճանչնալ միակ ճշմարիտ Աստուածը”, և երկրորդ “Յիսուս Քրիստոսը՝ որ ան ղրկեց” ։ Տէրը մեր Աստուածը ընելը դաշինքին բնական մասն է. իսկ դերբնական մասը՝ զՔրիստոս մեր փրկիչը ընելն

է ։ Առաջինը՝ առաջ հարկաւոր է, և վերջինին մէջ կը պարունակուի ։ Առանց զգացման և սիրոյ զՔրիստոս ընդունիլը՝ արդարացունող հաւատք չէ․ և սէրը՝ ոչ թէ իբրև պտուղ կը հետևի, այլ անմիջապէս 'ի միասին կու գայ․ վասն զի հաւատքը բոլոր հոգւով զՔրիստոս ընդունիլն է ։ "Ով որ հայրը կամ մայրը Քրիստոսէն աւելի կը սիրէ, անոր արժանի չէ". և ոչ ալ անով արդարացած է ։ Հաւատքը կ'ընդունի զանիկայ իբրև Փրկիչ և իբրև Տէր․ վասն զի ան կրկին յարաբերութեամբ միայն կրնայ ընդունուիլ ։ Հաւատքը ոչ միայն անոր չարչարանքը կը դաւանի, և թողութիւն ու փառք կ'ընդունի անկէ, հապա նաև անոր գերագոյն իշխանութիւնը կը դաւանի ու անոր կառավարութեանն ու փրկութեան կերպին կը հնազանդի ։

6․ Աստուծոյ ժողովրդեան որպիսութեանը մէկ էական մասն է որ հիմա Քրիստոսի հետ անկեղծ ուխտի մը կը մտնէ ։ Մեղաւորը տակաւին սէրտին ու զուարթութեամբ Քրիստոսի հետ ուխտ մը ըրած չէր ։ Հիմա ան ձրի շնորհքներէն մեղաւորը ալ ստոյգ է թէ Քրիստոս այնպիսի ուխտ մը ընելու յօժար է․ ուստի և ինքն ալ մտադիւր կը յօժարի, ու այսպէս դաշնադրութիւնը լիով կը կատարուի ։ Այս դաշնադրութեամբ Քրիստոս ամէն մխիթարական առնչութիւններով ինքզինքը մեղաւորին կը մատուցանէ, մեղաւորն ալ իր անձը կ'ընծայէ Քրիստոսով փրկուելու ու կառավարուելու ։ Այդ հոգին սրտի մտօք կը խոստովանի թէ "Ես իսկ երկար ատեն, և գրեթէ իմ յետին կորստեամբս, մարմնոյ ու ցանկութեան, աշխարհի ու դևին կուրութեամբ մատնուեցայ, բայց այսուհետև ես զիս բոլորովին իմ Տէրոջս կամքին կը

կանչնեմ․ ան գնեց զիս իր արիւնովը ու իր փառ-քին ալ զիս պիտի հասցունէ" ։

7․ Եւ ոչ միայն այսչափ․ Աստուծոյ ժողովուր-դը [illegible]։ Հաւատացեալը թէպէտ կը փորձուի, սակայն բնաւ իր Տէրը չուրանար, իր հաստատակութիւնը չզլանար, ոչ ալ իր ուխտին վրայ կը զզջայ․ և ուխտադրուժ չկրնար ըլլալ, քանի որ հաւատքը կը տեւէ, որ ան ուխտին պայմանն է։ Արդարեւ՝ անոնք որ բանիւ և ոչ թէ սրտով ուխտ ըրած են, կրնան անմա-քուր բանի մը պէս ոտքի տակ առնել ուխտին արիւնը որով սրբուեցան, բայց ընտրեալները չեն կրնար այսպէս խաբուիլ։ Թէեւ ասոնց յարա-տեւութիւնը ստոյգ և հաւաստի է ճշմարիտ հա-ւատացեալներու, բայց և այնպէս տակաւին ի-րենց փրկութեանը մէկ թերութիւնն է, կամ մա-նաւանդ իրենց անընդհատ կեանքին ու պաղարե-րութեանը, և իրենց արդարութեանը շարունակ-ուելուն պայման մըն է, թէպէտև ոչ իրենց բուն առաջին արդարացուցմանը։ Բայց յաւիտեան օրհնեալ ըլլայ ան սիրոյ ձեռքը որ գրեց, տո-րագրեց ու կնքեց ան ձրի խոստմունքը որ կ՚ա-պահովցունէ մեզի թէ՛ շնորհքը որուն որ պայմանն է, և թէ՛ թագաւորութիւնը՝ որ ան պայմանով կը տրուի։

Ասոնք Աստուծոյ ժողովրդեան էական բա-ներն են, բայց անոր ամէն գերազանցութիւննե-րուն բովանդակ նկարագիրը ասոնք չեն, և ոչ ան ամէն նշաններն են որոնցմով Աստուծոյ ժողո-վուրդը կ՚որոշուի։ Կ՚աղաչեմ քեզի ընթերցող․ դուն որ Քրիստոնէի մը յոյսը կամ չափահաս մարդու մը բանականութիւնը ունիս, ինքզինքդ դատէ այնպէս՝ որպէս թէ քիչ ատենէն արդար

Աստուծմէ մը պիտի դատուիս, և անկեղծութեամբ պատասխան տուր աս հարցումներուն ։ Այս հարցունելու չեմ քեզի թէ արդեօք Սուրբ Հոգիին աս ներգործութիւններուն ժամանակն ու կարգը կը միշտե՞ս ։ Ատ բաներուն մէջ շատ անստուգութիւն և սխալմունք կրնայ ըլլալ ։ Ատոնց երբ կամ ինչպէս ըլլալը գիտնալու , կրնաս ստոյգ ըլլալ թէ ան բաները քու մէջդ գործուեցան . բայց աս մեծ բան մը չէ ։ Այլ՝ զգուշութեամբ քննելու ու հետամուտ ըլլալու ես, թէ արդեօք լիովլ կ՚ըզգա՞ս թէ քու բոլոր հոգւոյդ մէջ ապականութիւն մը կը տիրէ , և թէ բոլոր կեանքիդ մէջը չարութիւն մը զօրացեր բռնացեր է ։ Կը ճանչնա՞ս թէ ինչ գարշելի բան է մեղքը , և թէ՝ ուխտին մէջը զանցառութիւն ըրեր , և թէ՝ ամենափոքր մեղքն ալ յաւիտենական մահու արժանի է ։ Պ մտառե՞ր թէ բնաւ արարած մը ամենևին կարող չէ քեզ երջանիկ ընել՝ կամ քեզ քու թշուառութենէդ ազատել ։ Կը հաճի՞ս Աստուծոյ օրէնքին՝ խոստովանելով թէ ճշմարիտ և արդար է , և կ՚իմանա՞ս թէ անիկայ քեզ մահուան կը դատապարտէ ։ Համոզուեցա՞ր թէ քու երջանկութիւնդ միայն Աստուծմով է , որ է քու վերջին վախճանդ , և Քրիստոսով՝ որ ան վախճանին հասնելու ճամբան է , և թէ միայն Քրիստոսով կրնաս գալ առ Աստուած , ապա թէ ոչ յաւիտեան կը կորսուիս ։ Համոզուեցա՞ր թէ քեզի բացարձակապէս հարկաւոր է զՔրիստոս ստանալ , և թէ անիկայ միայն կատարելապէս բաւական է քու վիճակիդ պահանջածը քեզի ընելու ։ Իմացա՞ր որ աս մարգարիտը այնչափ պատուական է որ արժանի է ամէն բան ծախել անիկայ գնելու համար ։ Քու աս խորհուրդներդ ծարաւած մարդու մը փափաքին պէ՞ս

է, թէ կարդալէ կամ դաստիարակութենէ յառաջ եկած լոկ կարծեաց փոփոխութիւն մը։ Ասկէ զատ, քու մեղքդ ու թշուառութիւնդ քու հոգւոյդ զզուանքն ու բեռը եղա՞ծ են։ Եթէ չես կրնար լալ, կրնա՞ս սրտանց հառաչել երկուքին ալ անտանելի ծանրութեանը տակը։ Քու բոլոր արդարութենէդ յոյսդ կտրա՞ծ ես։ Կուռքերդ սրտէդ հանեցի՞ր, այնպէս որ ալ արարածը չիշխեր անոր, այլ ծառայ է հիմա անիկայ Աստուծոյ և Քրիստոսի։ Ընդունի՞ս զՔրիստոս իբրև քու միակ Փրկիչդ, և՛ քու արդարութիւնդ՝ նորոգութիւնդ և փառքդ միայն անկէ կը յուսա՞ս։ Անոր օրէնքները քու վարքիդ ու հոգւոյդ վրայ ամենէն զօրաւոր իշխող բա՞նն է։ Աս օրէնքները քեզի սովորաբար մարմնին հրամաններէն, քու համարմանդ, շահուդ, զուարճութեանդ ու կեանքիդ օգուտներէն վեր ու պատուակա՞ն են։ Քրիստոս քու սրտիդ մէջ ամենէն բարձր տեղը ունի՞, այնպէս որ թէև ուզածիդ չափ չկարենաս սիրել զինքը, սակայն ուրիշ բան մը անոր չափ սիրելի չըլլայ քեզի։ Աս դիտաւորութեամբ անոր հետ սրտանց ուխտ ըրած և ինքզինքդ իրեն նուիրա՞ծ ես։ Ամենամեծ հոգդ ու արթուն ջանքդ ա՞ն է թէ հաւատարիմ գտնուիս աս ուխտին մէջ. և թէ՝ մեղքի մէջ ալ իյնալու ըլլաս, տակաւին ուխտադրուժ չըլլաս, ոչ Տէրդ փոխես՝ և ոչ ալ ինքզինքդ որ և իցէ ուրիշ կառավարութեան մը տակը դնես, թէպէտև բոլոր աշխարհ շահիլ կարելի ըլլայ։ Եթէ արդարև այսպէս ըլլայ, դուն բընաբանիս մէջ ըսուած Աստուծոյ ժողովուրդէն մէկն ես, և որչափ ճշմարիտ է Աստուծոյ խոստմունքը, նոյնչափ ստոյգ է թէ աս երջանիկ հանգ՚ստը կը մնայ քեզի։ Միայն նայէ որ «Քրիստոսի մէջ

կենաս", և "մինչև մեռնիլը համբերեն", քանզի "եթէ մէկը ետ քաշուի, անոր հոգին անոր չհաճիր"։ Բայց եթէ անանկ գործ մը չգտնուիր քու մէջդ, ինչ որ քու խաբուած սրտոդ խորհի, կամ որչափ զօրաւոր որ ըլլան քու սուտ յոյսերդ, քու միաոտքդ (եթէ կատարեալ դարձ մը չկանխեր) պիտի իմանաս որ սրբոց հանգիստը քեզի համար չէ եղեր։ "Երանի թէ իմաստուն ըլլայիր, ու աս բանը հասկընայիր, և քու վախճանդ նկատէիր", որպէս զի մինչդեռ հոգիդ մարմնոյդ մէջն է, ու ձեռքդ գին մը կայ, և տակաւին պատեհութիւն ու յոյս կայ, ականջներդ բաց ըլլան ու սիրտդ զիջանի Աստուծոյ յորդորանացը որ այսպէս հանգչին անոր ժողովրդեանը մէջ՝ և "լուսոյ մէջ բնակող սրբոց վիճակին մասնակից ըլլաս"։

Իսկ աս հանգիստը Աստուծոյ ժողովուրդը պիտի վայելէ, ճշմարտութիւն մըն է զոր Սուրբ Գիրքը (եթէ այլ ևս վկայութիւն պէտք է անկէ) յայտնապէս կը հաստատէ այլ և այլ խօսքերով. զոր օրինակ թէ՝ անոնք "առաջուց սահմանուած են անոր՝ ու ան ալ անոնց։ Աստուած ամօթ չըհամարիր անոնց Աստուածը կոչուելու. ինչու որ ինք անոնց համար քաղաք մը պատրաստեց"։ Անոնք կը կոչուին "ողորմութեան ամաններ փառաց համար պատրաստուած"։ "Որդեգրութեան ժառանգութիւն առած են, առաջուց հրաւիրուած ըլլալով Աստուծոյ նախասահմանութիւնովը, ան որ ամէն բան իր կամքին խորհրդովը կը յաջողէ"։ "Եւ որոնք որ նախասահմանեց, նաև փառաւորեց զանոնք"։ Ո՞վ կրնայ զրկել անոր ժողովուրդը աս հանգիստէն, որ Աստուծոյ յաւիտենական խորհրդովը անոնց սահմանուած է։ Սուրբ Գիրքը մեզի կ'ըսէ թէ անոնք "աս հանգիստին հա-

միայն անոնց համար է, այնպէս որ ուրիշ միջոցին անոր մէջ բաժին պիտի չունենան։ «Աստուծոյ արքայութեան ոչ որ կրնայ տեսնել Տէրը։ Թէ որ մէկը նորէն չծնանի չկրնար Աստուծոյ թագաւորութիւնը տեսնել։ Ան որ Որդիին չհաւատար, կեանք պիտի չտեսնէ, այլ Աստուծոյ բարկութիւնը կը մնայ անոր վրայ։ Մէկն պոռնիկ կամ պիղծ կամ՝ ագահ որ կռապաշտ է, Քրիստոսի ու Աստուծոյ թագաւորութեանը մէջ ժառանգութիւն չունի։ Ամբարիշտները և ամէն զԱստուած մոռցող ազգերը պիտի կորսուին։ Անոնք որ ճշմարտութեան չհաւատացին, այլ անիրաւութիւնը սիրեցին՝ պիտի դատապարտուին։ Տէր Յիսուս պիտի գայ բորբոքած կրակով վրէժ առնելու անոնցմէ՝ որոնք զԱստուած չեն ճանչնար, ու մեր Տէր Յիսուս Քրիստոսի Աւետարանին չեն հնազանդիր. որոնք պիտի պատժուին յաւիտենական սատակումով Տէրոջը երեսէն ու անոր զօրութեանը փառքէն»։ Եթէ ամբարիշտները՝ կեանքերնին չվերջացած, դառնային և սրտանց յօժարէին Քրիստոս իբրև իրենց Փրկիչը և իրենց Թագաւորը ընդունելու, և անով փրկուելու՝ անոր դրած միջոցներուն ու արդար կարգադրութիւններուն համեմատ, պիտի կարենային փրկուիլ։ Աստուած անոնց ձրի կեանք խոստացաւ, բայց անոնք չուզեցին ընդունել։ Մարմնոյ հեշտութիւնները որոնց փառքէն աւելի փափաքելի երեցան իրենց։ Սատանան՝ հեշտութիւնները առջևնին դրաւ, Աստուած ալ փառքը. անոնք բոլորովին ազատ էին մէկը կամ միւսը ընտրելու. և աւելի ընտրեցին մեղաց ժամանակաւոր զուարճութիւնը վայելել, քան թէ Քրիստոսի հետ յաւիտենական հանգիստ ունենալ։ Իսկ արդար չէ՞ որ չարերուն անոնց ան բանը՝ զոր ընդու-

նել չուզեցին ։ Երբոր Աստուած զանոնք ստի-պեց ու յորդորեց այնքան թախանձանօք որ ներս գան, և անոնք չանսացին, ու՞ր պէտք է որ ըլլան անոնք, եթէ ոչ դուրսը շուներուն մէջ ։ Ինչպէս և մարդը այնպէս չար է, որ մինչև որ շնորհաց հզօր զօրութիւնը վրան չզօրանայ՝ չզիջանիր, բայց և այնպէս ճշմարտութեամբ կրնանք ըսել՝ որ եթէ ուզէ, կրնայ փրկուիլ Աստուծոյ պայմաններովը ։ Որովհետև իր անկարողութիւնը բարոյական է, և չարութիւնը կամաւոր ըլլալու մէջ կը կայանայ՝ չկրնար անպատիժ ըլլալ, ինչպէս որ շնացող մը չկրնար ինքզինքը արդարացունել՝ ըսելով թէ իր կնիկը չկըր-նար սիրել, կամ չարասիրտ մարդ մը՝ ըսելով թէ իր եղբայրը չկրնար չատել ։ Այսպիսի մարդը աւելի չար ու աւելի դառն պատժոյ արժանի չէ՞ ։ Մե-ղաւորները դժոխքին մէջ յաւիտեան իրենց կամքին մեղադիր պիտի ըլլան ։ Մարդը բնութեամբ բանաւոր ըլլալուն, դժոխքը անոր մտաւոր տանջանք մը պիտի ըլլայ իր խղճին մէջը ։ Եթէ մեղաւորները կարող ըլլային ըսել թէ, յանցանքը Աստուծոյ է և ոչ թէ մերը, անշուշտ խիղճերնին կը հանդարտէր, և տանջանքնին կը մեղմանար՝ ու դժոխքը ալ ա-նոնց դժոխք չէր ըլլար ։ Սակայն այնպէս չէ, կամաւ մեղանչած ըլլալնուն յիշատակը անոնց կը-րակը պիտի արծարծէ ու պիտի պատճառէ ան խղճմտանքին որդը՝ որ "երբէք չմեռնիր" ։

Աստուծոյ կամքը աս է որ աս հանգիստը տակա-ւին մնայ իր ժողովրդեանը, ու մինչև որ հանդերձեալ աշխարհը չերթայ, անիկայ չվայելէ ։ Ո՞վ կարող է ա-րարածները իր կամքին ծառայեցունել, եթէ ոչ անոնց Արարիչը ։ Եթէ կրնաս հարցունել թէ ին-չո՞ւ համար տարւոյն ձմեռը գարուն ու աշուն չըլ-լար, կամ թէ ինչո՞ւ երկիրը վար է, ու երկինքը

մէջ մատուցուեցաւ Աստուծոյ, Քրիստոսով եղած փրկանքին, հաշտութեանն ու փրկութեանը համար եղած. և սոր պատճառը մեր ապաքէն մարդուն թշուառութիւնն է։ Իսկ երբ Աստուած իր շնորհքները 'ի գործ դնելու պատեհութիւնը կորսնցունէ, մարդիկ ալ պիտի ստիպուին զանոնք վայելելու երջանկութիւնը կորսնցունել։ Երբոր Աստուած իր փառաբանութիւնը կը կորսնցունէ, մարդն ալ հարկաւ իր մխիթարութիւնները կը կորսնցունէ։ Ի՛նչ մեծ մխիթարութիւն է զոր սուրբերը իրենց աղօթքներուն փոխարէն վայելեցին։ Թէ որ անառակին պէս երկրաւոր զուարճութիւններու և շահերու եղջիւրներէն զուրկ չմնայինք, ինչպէս պիտի ճանչնայինք թէ այնպիսի խանդաղակաթ Հայր մը ունինք։ Մենք Քրիստոսին գթած սիրտը երբէք չէինք ճանչնար, եթէ նախ չզգայինք մենք զմեզ "վաստակեալ ու բեռնաւոր, անօթի ու ծարաւ, աղքատ ու բեկեալ"։ Ազատութիւն է զինուորի մը կամ ճանապարհորդի մը, եթէ անգամ մը տունն դառնայ նայի այն վտանգներուն որոնցմէ զերծաւ. և սուրբի մը՝ երկինքէն իր երկրի վրայի մեղքերուն ու անձկութիւններուն, երկիւղներուն ու արտասուքներուն, թշնամիներուն ու վտանգներուն, կարօտութիւններուն ու աղէտքներուն դառնալ նայիլը՝ անոր ուրախութիւնը աւելի բերկրալի պիտի ընէ։ Ասանորոյ երանելները Գառնուկը փառաւորելու առեններն կը յիշատակեն՝ անոր զիրենք "բոլոր ազգերէն, ժողովուրդներէն ու լեզուներէն փրկելը", ուստի և իրենց թշուառութեններէն, կարօտութիւններէն ու մեղքերէն, և զիրենք "Աստուծոյ թագաւորներ ու քահանաներ ընելը"։ Բայց թէ որ երկրի վրայ միայն հանգիստ ու հեշտութիւն ունեցած ըլլայինք,

յանձնեմ. ան գնեց զիս իր արիւնովը ու իր փառքին ալ զիս պիտի հասցունէ"։

7. Ու ոչ միայն այսչափ. Աստուծոյ ժողովուրդը աս աշխարհին մէջ մինչև ի վախճան կը յարատևէ։ Հաւատացեալը թէպէտ կը փորձուի, սակայն բնաւ իր Տէրը չուրանար, իր հաստատակութիւնը չզլանար, ոչ ալ իր ուխտին վրայ կը զղջայ. և ուխտադրուժ չկրնար ըլլալ, քանի որ հաւատքը կը տևէ, որ ան ուխտին պայմանն է։ Արդարև՝ անոնք որ բանիւ և ոչ թէ սրտով ուխտ ըրած են, կրնան անմաքուր բանի մը պէս ոտքի տակ առնել ուխտին արիւնը որով սրբուեցան, բայց ընտրեալները չեն կրնար այսպէս խաբուիլ։ Թէև աս յարատևութիւնը ստոյգ և հաստատ է ճշմարիտ հաւատացեալներու, բայց և այնպէս տակաւին իրենց փրկութեանը մէկ թէութիւնն է, կամ մանաւանդ իրենց անընդհատ կեանքին ու պտղաբերութեանը, և իրենց արդարութեանը շարունակութեանը պայման մըն է, թէպէտև ոչ իրենց բուն առաջին արդարացուցմանը։ Բայց յաւիտեան օրհնեալ ըլլայ ան սիրոյ ձեռքը որ գրեց, ստորագրեց ու կնքեց ան ձրի խոստմունքը որ կ՚ապահովցունէ մեզի թէ շնորհքը ուն որ պայմանն է, և թէ թագաւորութիւնը՝ որ ան պայմանով կը տրուի։

Ասոնք Աստուծոյ ժողովրդեան էական բաներն են, բայց անոր ամէն գերազանցութիւններուն բովանդակ նկարագիրը ասոնք չեն, և ոչ ան ամէն նշաններն են որոնցմով Աստուծոյ ժողովուրդը կ՚որոշուի։ Կ՚աղաչեմ քեզի ընթերցող. դուն որ Քրիստոնէի մը յոյսը կամ չափահաս մարդու մը բանականութիւնը ունիս, ինքզինքդ դատէ այնպէս՝ որպէս թէ քիչ առենէն արդար

Աստուծմէ մը պիտի դատուիս, և անկեղծութեամբ պատասխան տուր այս հարցումներուն: Այս հարցունելու չեմ քեզի թէ արդեօք Սուրբ Հոգիին այս ներգործութիւններուն ժամանակն ու կարգը կը գիտե՞ս: Այս բաներուն մէջ շատ անստուգութիւն և սխալմունք կրնայ ըլլալ: Առանց երբ կամ ինչպէս ըլլալը գիտնալու, կրնաս ստոյգ ըլլալ թէ ան բաները քու մէջդ գործուեցան. բայց այս մեծ բան մը չէ: Այլ՝ զգուշութեամբ քննելու ու հետամուտ ըլլալու ես, թէ արդեօք լիով կ'ըզգա՞ս թէ քու բոլոր հոգւոյդ մէջ ապականութիւն մը կը տիրէ, և թէ բոլոր կեանքիդ մէջը չարութիւն մը զօրացեր բռնացեր է: Կը ճանչնա՞ս թէ ինչ գարշելի բան է մեղքը, և թէ՝ ուխտին մէջը զանցառութիւն ըրիր, և թէ՝ ամենափոքր մեղքն ալ յաւիտենական մահու արժանի է: Գիտե՞ս թէ բնաւ արարած մը ամենևին կարող չէ քեզ երջանիկ ընել՝ կամ քեզ քու թշուառութենէդ ազատել: Կը հաճի՞ս Աստուծոյ օրէնքին՝ խոստովանելով թէ ճշմարիտ և արդար է, և կ'իմանա՞ս թէ անիկայ քեզ մահուան կը դատապարտէ: Համոզուեցա՞ր թէ քու երջանկութիւնդ միայն Աստուծմով է, որ է քու վերջին վախճանդ, և Քրիստոսով՝ որ ան վախճանին հասնելու ճամբան է, և թէ միայն Քրիստոսով կրնաս գալ առ Աստուած, ապա թէ ոչ յաւիտեան կը կորսուիս: Համոզուեցա՞ր թէ քեզի բացարձակապէս հարկաւոր է զՔրիստոս ստանալ, և թէ անիկայ միայն կատարելապէս բաւական է քու վիճակիդ պահանջածը քեզի ընելու: Իմացա՞ր որ այս մարգարիտը այնչափ պատուական է որ արժանի է ամէն բան ծախել անիկայ գնելու համար: Քու այս խորհուրդներդ ծարւած մարդու մը փափաքին պէ՞ս

է, թէ կարդալէ կամ դաստիարակութենէ յառաջ եկած լոկ կարծեաց փոփոխութիւն մը։ Ասկէ զատ, քու մեղքդ ու թշուառութիւնդ քու հոգւոյդ զզուանքն ու բեռը եղա՞ծ են։ Եթէ չես կրնար լալ, կրնա՞ս սրտանց հառաչել երկուքին ալ անտանելի ծանրութեանը տակը։ Քու բոլոր արդարութեանդ յոյսդ կորա՞ծ ես։ Կուռքերդ սրտէդ հանեցի՞ր, այնպէս որ ալ արարածը չիշխեր անոր, այլ ծառայ է հիմա անիկայ Աստուծոյ և Քրիստոսի։ Ընդունի՞ս զՔրիստոս իբրև քու միակ փրկիչդ, և՛ քու արդարութիւնդ՝ նորոգութիւնդ և փառքդ միայն անկէ կը յուսա՞ս։ Անոր օրէնքները քու վարքիդ ու հոգւոյդ վրայ ամենէն զօրաւոր իշխող բա՞ն է։ Աս օրէնքները քեզի սովորաբար մարմնին հրամաններէն, քու համարմանդ, շահուդ, զուարճութեանդ ու կեանքիդ օգուտներէն վեր ու պատուակա՞ն են։ Քրիստոս քու սրտիդ մէջ ամենէն բարձր տեղը ունի՞, այնպէս որ թէև ուզածիդ չափ չկարենաս սիրել զինքը, սակայն ուրիշ բան մը անոր չափ սիրելի չըլլայ քեզի։ Աս դիտաւորութեամբ անոր հետ սրտանց ուխտ ըրած և ինքզինքդ իրեն նուիրա՞ծ ես։ Ամենամեծ հոգդ ու արթուն ջանքդ ա՞ս է թէ հաւատարիմ գտնուիս աս ուխտին մէջ. և թէ՝ մեղքի մէջ ալ իյնալու ըլլաս, տակաւին ուխտադրուժ չըլլաս, ոչ Տէրդ փոխես՝ և ոչ ալ ինքզինքդ որ և իցէ ուրիշ կառավարութեան մը տակը դնես, թէպէտև բոլոր աշխարհ շահիլ կարենալի ըլլայ։ Եթէ արդարև այսպէս ըլլայ, դուն ընաբանիս մէջ ըտուած Աստուծոյ ժողովուրդէն մէկն ես, և որչափ ճշմարիտ է Աստուծոյ խոստմունքը, նոյնչափ ստոյգ է թէ աս երջանիկ հանգ՛ստը կը մնայ քեզի։ Միայն նայէ որ "Քրիստոսի մէջ

կենաս», և «մինչև վերջը համբերեն», քանզի «ե-
թէ մէկը ետ քաշուի, անոր հոգին անոր չհաճիր»:
Բայց ըլլէ սատանի գործ մը չգտնուիր քու մէջդ,
ինչ որ քու խաբուած սիրտդ խորհի, կամ որչափ
զօրաւոր որ ըլլան քու սուտ յոյսերդ, քու միա-
տքդ (եթէ կատարեալ դարձ մը չկանխեր) պիտի
իմանաս որ որչափ հանգիստը քեզի համար չէ ե-
ղեր: «Նորաձի թէ իմաստուն ըլլայիր, ու սա
բանը հասկընայիր, և քու վախճանդ նկատէիր»,
որպէս զի մինչդեռ հոգիդ մարմնոյդ մէջն է, ու
ձեռքդ գին մը կայ, և տակաւին պատեհութիւն
ու յոյս կայ, ականջներդ բաց ըլլան ու սիրտդ զի-
ջանի Աստուծոյ յորդորանացը որ այսպէս հանգ-
չիս անոր ժողովրդեանը մէջ՝ և «լուսոյ մէջ բնա-
կող սրբոց վիճակին մասնակից ըլլաս»:

Իսկ սա հանգիստը Աստուծոյ ժողովուրդը
պիտի վայելէ, ճշմարտութիւն մըն է զոր Սուրբ Գիր-
քը (եթէ այլ ևս վկայութիւն պէտք է անկէ)
յայտնապէս կը հաստատէ այլ և այլ խօսքերով.
զոր օրինակ թէ՝ անոնք «առաջուց սահմանուած
են անոր՝ ու ան ալ անոնց: Աստուած ամօթ չը-
համարիր անոնց Աստուածը կոչուելու. ինչու որ
ինք անոնց համար քաղաք մը պատրաստեց»: Ա-
նոնք կը կոչուին «ողորմութեան անօթներ փառաց
համար պատրաստուած»: «Քրիստոսով ժա-
ռանգութիւն առած են, առաջուց հրաւիրուած
ըլլալով Աստուծոյ նախասահմանութեանը, ան
որ ամէն բան իր կամքին խորհրդովը կը յաջո-
ղէ»: «Եւ որոնք որ նախասահմանեց, նաև փա-
ռաւորեց զանոնք»: Ո՞վ կրնայ զրկել անոր ժո-
ղովուրդը սա հանգիստէն, որ Աստուծոյ յաւի-
տենական խորհրդովը անոնց սահմանուած է: Սուրբ
Գիրքը մէջ կ'ըսէ թէ անոնք «սա հանգիստին հա-

մար փրկուեցան"։ "Յիսուսի արեամբը համար-
ձակութիւն ունինք մտնելու սրբութիւն սրբու-
թեանցը"․ որ թէ՛ հոս հաւատքով և աղօթքով
մտնելը կը նշանակէ, և թէ ՚ի հանգերձեալն կա-
տարեալ ժառանգութեամբ ։ Վասնորոյ սուրբերը
երկինքը նոր երգ մը կ'երգեն Անոր՝ որ զիրենք "ա-
մէն ցեղերէ, լեզուներէ, ժողովուրդներէ ու ազ-
գերէ Աստուծոյ ծախու առաւ իր արիւնովը, ու
Աստուծոյ թագաւորներ ու քահանաներ ըրաւ"։
Ուրեմն կամ Քրիստոս իր արիւնն ու չարչարանք-
ները պիտի կորսնցունէ, ու բնաւ "իր անձին աշխա-
տութեանը պտուղը պիտի չտեսնէ", և կամ "Աս-
տուծոյ ժողովրդեանը հանգիստ մը կը մնայ"։ Աս
հանգիստը անոնց Սուրբ Գրոց մէջ խոստացուած
է։ Ինչպէս որ սուրբերը երկնից կամարին վրայ,
այնպէս ալ աս Աստուածային խոստմունքները սըր-
բազան մատեաններուն մէջ սփռուած են։ Քրիս-
տոս կ'ըսէ․ "Մի՛ վախնար փոքրիկ հօտ, վասն զի
ձեր Հայրը հաճեցաւ ձեզի թագաւորութիւնը տա-
լու"։ "Ձեզի թագաւորութիւն մը կ'ուխտեմ, ինչ-
պէս որ իմ Հայրս ինծի ուխտեց․ որ դուք իմ սե-
ղանս ուտէք ու ըմպէք իմ թագաւորութեանս մէջ"։
Բոլոր շնորհաց միջոցները, Սուրբ Հոգւոյն՝ հո-
գիին վրայ ըրած ազդեցութիւնները, և սուրբե-
րուն շնորհալի գործքերը, ամէն ան պատուէր-
ները որոնք կը յորդորեն զղջալ, հաւատալ, ծա-
մապահել, աղօթք ընել, բաղխել, խնդրել, ջա-
նալ, աշխատիլ, ընթանալ ու պատերազմիլ՝ կ'ա-
պացուցանեն թէ Աստուծոյ ժողովրդեանը համար
հանգիստ մը կայ։ Ինչու՞ շա Հոգին երկինքի հա-
մար այսպիսի սաստիկ փափաք մը՝ և Յիսուս Քրիս-
տոսի համար այնպիսի սէր մը մեր սրտերուն մէջ
բորբոքելու չէր, եթէ փափաքած ու սիրած բա-

ներելու պէտք չըզգանենք։ Ան որ «մեր ոտքե-րը խաղաղութեան ճամբուն մէջ ուղղէ», ան-տարակոյս մեզ պէտք հասցունէ ան խաղաղութեան վախճանին։ Ի՛նչպէս երբոր հետ կից կապուած են մեղքերնիս ու վախճանը։ «Ներքին թագաւո-րութիւնը կը բռնաբարուի, և ուժովները անկից բռ-նի կը յափշտակեն»։ Անոնք որ «վերստին ծննդեամբ Քրիստոսի կը հետևին, փառաց աթոռներու վրայ պիտի նստին»։ Սուրբ Գիրքը մեզ հաւատք կ'ընէ որ արդարները հոս ալ ան հանգիստին սկըզբ-նաւորութիւնը, առհաւատչեան ու կնիքը ու-նին։ «Աստուծոյ թագաւորութիւնը անոնց մէջն է»։ «Թէպէտև Քրիստոսը տեսած չեն, բայց անիկից սիրելով ու անոր հաւատալով կ'ուրախանան՝ անճառ և փառաւորեալ խնդութեամբ, իրենց հաւատքին կատարումը ընդունելով, այսինքն հոգիներնուն փրկութիւնը»։ «Աստուծոյ փառաց յոյսովը կը պարծին»։ «Աստուած որ կը կնքէ զանոնք ան խոս-տացուած Սուրբ Հոգիով՝ որն որ անոնց ժառանգ-ըլլալուն առհաւատչեան է», մի՞ թէ կրնա՞յ զրկել զանոնք կատարեալ ժառանգութենէն։ Սուրբ Գիր-քը յականէ յանուանէ կը յիշէ զանոնք որ առ հանգիստը մտած են, ինչպէս Ենովք, Աբրահամ, «Քրիստոսի հետ խաչուած աւազակը և ուրիշները։ Ոչ եթէ անոնց հանգիստ եղաւ, անշուշտ ամէն հաւատացեալներուն ալ պէտք ըլլայ։ Բայց ասոր համար Սուրբ Գիրքէն վկայութիւններ գիզելը աւելորդ է, տեսնելով որ Սուրբ Պօղոսի քանի նը-պատակը մեզ այս վիճակին առաջնորդել է, ու մեր ձեռքը մուրհակ կամ ձեռնագիր մըն է որով մեր ան ժառանգութեանը վրայ իրաւունք ունենալնիս կը ցուցընենք։ Սուրբ Գիրքը կը ցուցընէ թէ Աստու-ծոյ ժողովրդեանը համար ալ հանգիստը կայ, և թէ

միայն անոնց համար է, այնպէս որ ուրիշ մարդիկ անոր մէջ բաժին պիտի չունենան։ Աստուծոյ արքայութեան ոչ որ կրնայ տեսնել Տէրը։ Եւ որ մէկը նորէն չծնանի չկրնար Աստուծոյ թագաւորութիւնը տեսնել։ Ան որ Որդին չհաւատար, կեանք պիտի չտեսնէ, այլ Աստուծոյ բարկութիւնը կը մնայ անոր վրայ։ Ամէն պոռնիկ կամ պիղծ կամ՝ ագահ որ կռապաշտ է, Քրիստոսի ու Աստուծոյ թագաւորութեանը մէջ ժառանգութիւն չունի։ Ամբարիշտները և ամէն զԱստուած մոռցող ազգերը պիտի կորսուին։ Անոնք որ ճըշմարտութեան չհաւատացին, այլ անիրաւութիւնը սիրեցին՝ պիտի դատապարտուին։ Տէր Յիսուս պիտի գայ բորբոքած կրակով վրէժ առնելու անոնցմէ՝ որոնք զԱստուած չեն ճանչնար, ու մեր Տէր Յիսուս Քրիստոսի Աւետարանին չեն հնազանդիր. որոնք պիտի պատժուին յաւիտենական սատակումով Տէրոջը երեսէն ու անոր զօրութեանը փառքէն"։ Եթէ ամբարիշտները՝ կեանքերնին չվերջացած, դառնային և սրտանց յօժարէին Քրիստոսին իրենց փրկիչը և իրենց թագաւորը ընդունելու, և անով փրկուելու՝ անոր դրած միջոցներուն ու արդար կարգադրութիւններուն համեմատ, պիտի կարենային փրկուիլ։ Աստուած անոնց ձրի կեանք խոստացաւ, բայց անոնք չուզեցին ընդունել։ Մարմնոյ հեշտութիւնները. որոնց փառքէն աւելի փափաքելի երեւցան իրենց։ Սատանան՝ հեշտութիւնները աշխարհին դրաւ, Աստուած ալ փառքը. անոնք բոլորովին ազատ էին մէկը կամ միւսը ընտրելու. և աւելի ընտրեցին մեղաց ժամանակաւոր զուարճութիւնը վայելել, քան թէ Քրիստոսի հետ յաւիտենական հանգիստ ունենալ։ Իրաւ արդար չէ՞ որ տրուի անոնց ան բանը՝ զոր ընտրե-

նել չուզեցին։ Ահաւոր Աստուած զանոնք սաս-տակեց ու յորդորեց այնքան թախանձանօք որ ներս գան, և անոնք չանսացին, ո՞ւր պէտք է որ ըլլան անոնք, եթէ ոչ դուրսը շուներուն մէջ։ Ինչպէս և մարդը այնպէս չար է, որ մինչև որ շնորհաց հզօր զօրութիւնը վրան չզօրանայ՝ չզիջանիր, բայց և այնպէս ճշմարտութեամբ կրնանք ըսել՝ որ եթէ ուզէ, կրնայ փրկուիլ Աստուծոյ պայմաններովը։ Արտահեան իր անկարողութիւնը բարոյական է, և չարութիւնը կամաւոր ըլլալու մէջ կը կայանայ՝ չկրնար անքասիր ըլլալ, ինչպէս որ շնացող մը չկրնար ինքզինքը արդարացունել՝ ըսելով թէ իր կնիկը չկրնար սիրել, կամ չարասիրտ մարդ մը՝ ըսելով թէ իր եղբայրը չկրնար չատել։ Այսպիսի մարդը աւելի չար ու աւելի դատն պատժոյ արժանի չէ՞։ Մեղաւորները դժոխքին մէջ յաւիտեան իրենց կամքին մեղադիր պիտի ըլլան։ Մարդը բնութեամբ բանաւոր ըլլալուն, դժոխքը անոր մտաւոր տանջանք մը պիտի ըլլայ իր խղճին մէջը։ Եթէ մեղաւորները կարող ըլլային ըսել թէ, յանցանքը Աստուծոյ է և ոչ թէ մերը, անշուշտ խիղճերնին կը հանդարտէր, և տանջանքնին կը մեղմանար՝ ու դժոխքը ալ անոնց դժոխք չէր ըլլար։ Սակայն այնպէս չէ, կամաւ մեղանչած ըլլալնուն յիշատակը անոնց կըրակը պիտի արծարծէ ու պիտի պատճառէ ան խղճմտանքին որդը՝ որ «երբէք չմեռնիր»։

Աստուծոյ կամքը աս է որ աս հանգիստը տակաւին մնայ իր ժողովրդեանը, ու մինչև որ հանդերձեալ ուխտերը չեն նուազ, անիկայ չմտնէ։ Ո՞վ կարող է արարածները իր կամքին ծառայեցունել, եթէ ոչ անոնց Արարիչը։ Եթէ կրնաս հարցունել թէ ինչո՞ւ համար առանց ձմեռի գարուն ու աշուն չըլլար, կամ թէ ինչո՞ւ երկիրը վար է, ու երկինքը

վէր է, ապա կրնաս հարցունել նաև թէ ինչու համար սա հանգիստը երկրի վրայ չենք վայելեր ։ Ամէն բան աստիճան աստիճան իր կատարելութեանը կու գայ ։ Ամենէն զօրաւոր մարդն ալ պէտք է որ նախ տղայ ըլլայ ։ Ամենէն հմուտ գրագէտը առաջ այբուբենէն կը սկսի ։ Երկնաբերձ կաղնիներն անգամ երբեմն սերմի հատ մըն էին ։ Աս կեանքը մեր տղայութիւնն է. և կ՚ուզենք արգանդի մէջէ՞ն կատարեալ ըլլալ կամ յարբունս հասած ծնանիլ ։ Եթէ մեր հանգիստը հոս ըլլար, Աստուծոյ խնամքներուն մեծ մասը աւելորդ կ՚ըլլային ։ Միթէ արժա՞ն էր որ Աստուած իր եկեղեցւոյն սքանչելի ազատութեանը փառքը ու իր թշնամիներուն կործանումը զանց ընէր, որ մարդիկ իրենց երանութիւնը հոս վայելեն ։ Եթէ ամէնքս երջանիկ, անմեղ և կատարեալ ըլլայինք, ի՞նչ հարկ կը մնար այնուհետև մեր սրբանալուն, մեր արդարանալուն ու ապագայ փրկութիւններնուս փառաւոր գործքերուն ։ Եթէ բանի մը կարօտութիւն չունենայինք, ան ատենը այնպէս սերտ կապ մը չէինք ունենար Աստուծոյ հետ, և ոչ ալ մտադիւր անոր կ՚աղաղակէինք ։ Հապա ուրեք մեր աղերսները անոր ականջին պիտի հասնէին, թէ որ ամէն ուզածնիս արդէն ունենայինք ։ Աստուած երբէք այնպիսի փառաբանութեան երգեր պիտի չլսէր Մովսէսէն Կարմիր ծովուն մօտ ու անապատին մէջ, կամ Դեբորայէն, Աննայէն, Դաւիթէն ու Եզեկիայէն, եթէ իրենց վիճակին ընտրողները իրենք ըլլային ։ Ո՛ւր սա Աստուած ամենաջերմ գովաբանութիւններուդ ալ առիթ՝ վտանգներդ ու վիշտերդ չեղա՞ն, ով ընթերցող ։ Ան ամենամեծ փառաբանութիւններն ու օրհնութիւնները, որ աշխարհի

մէջ մատուցուեցաւ Աստուծոյ, Քրիստոսով եղած փրկանքին, հաշտութեանն ու փրկութեանը համար եղան. և տար պատճառը ո՛չ ապաքէն մարդուն թշուառութիւնն է։ Եւ եթէ Աստուած իր շընորհքները 'ի գործ դնելու պատեհութիւնը կորսնցունէ, մարդիկ ալ պիտի ստիպուին զանոնք վայելելու երջանկութիւնը կորսնցունել։ Երբոր Աստուած իր փառաբանութիւնը կը կորսնցունէ, մարդն ալ հարկաւ իր մխիթարութիւնները կը կորսնցունէ։ Ի՛նչ մեծ մխիթարութիւն է զոր սուրբերը իրենց աղօթքներուն փոխարէն վայելեցին։ Թէ որ անառակին պէս երկրաւոր զուարճութիւններու և շահերու եղջիւրներէն զուրկ չմնայինք, ինչպէս պիտի ճանչնայինք թէ այնպիսի խանդակաթ հայր մը ունինք։ Մենք Քրիստոսին գըթած սիրտը երբէք չէինք ճանչնար, եթէ նախ չզգայինք մենք զմեզ "վաստակեալ ու բեռնաւոր, անօթի ու ծարաւ, աղքատ ու բեկեալ"։ Ուրախութիւն է զինուորի մը կամ ճանապարհորդի մը, եթէ անգամ մը եւս դառնայ նայի ան վտանգներուն որոնցմէ զերծաւ. և սուրբի մը՝ երկինքէն իր երկրի վրայի մեղքերուն ու անձկութիւններուն, երկիւղներուն ու արտասուքներուն, թշնամիներուն ու վտանգներուն, կարօտութիւններուն ու աղէտքներուն դառնալ նայիլը՝ անոր ուրախութիւնը աւելի բերկրալի պիտի ընէ։ Մասնաւոր երանեալները Գառնուկը փառաւորելու՝ առենին կը յիշատակեն՝ անոր զիրենք "բոլոր ազգերէն, ժողովուրդներէն ու լեզուներէն փրկելը", ուստի և իրենց թշուառութեներէն, կարօտութիւններէն ու մեղքերէն, և զիրենք "Աստուծոյ թագաւորներ ու քահանաներ ընելը"։ Բայց թէ որ երկրի վրայ միայն հանգիստ ու հաճութիւն ունեցած ըլլայինք,

անցքին ան ուրախութիւնները ինչպէս, տեղն ալ-ւոք ունենային։

Դարձեալ՝ երկրի վրայ մենք հանգստեան ընդունակ չենք։ Հոգի մը որ այսքան տկար է շնորհքին մէջ՝ այնքան հակեալ մեղքի, ու աս մարմինին հետ երբև ընկերի մը հետ այնպէս սերտ կապուած, միթէ կրնա՞յ կատարեալ գոհ՞ ու հանգիստ ըլլալ աս վիճակին մէջ։ Հոգիին հանգիստը ինչ է, եթէ ոչ մեղքէ, անկատարութիւններէ ու թշնամիներէ ազատութիւն։ Եւ ան հոգին որ աս ամէն բաներով կը նեղուի անընդհատ, կրնա՞յ հանգիստ ունենալ։ Ինչո՞ւ համար քրիստոնեաները ստէպ կ'աղաղակեն Պօղոսին խօսքերովը "Ո՜նչ տառապեալ մարդ եմ ես, ո՞վ պիտի ազատէ զիս"։ Եթէ իրենց աս ներկայ վիճակին մէջ հանգիստ ունենալ կարող են, ինչո՞ւ համար ուրեմն "միտ դնելով կ'ընթանան դէպ 'ի կոչման կէտը. և այնպէս կ'ընթանան որ հասնին, ու մտնելու կը ջանան"։ Եւ ինչպէս որ հոգինիս, նոյնպէս ալ մարմիննիս անընդունակ է։ Այժմեան մարմինները ան արեգական պէս պայծառ մարմինները չեն. այլ այնպէս պիտի ըլլան՝ երբոր "աս ապականացուն անապականութիւն հագնի, ու աս մահկանացուն անմահութիւն զգենու"։ Մեր մարմինները հիմա մեզի բանտ ու բեռն են, այնպէս լի տկարութիւններով ու թերութիւններով, որ ժամանակներնուս մեծագոյն մասը՝ զանոնք դարմանելով ու հանապազօրդ կարօտութիւննին լեցունելով անցունելու ստիպուած ենք։ Միթէ հնա՞ր է որ անմահ հոգի մը այսպիսի խանգարուած բնակարանի մէջ հանգիստ ունենայ։ Հանգստեան ընդունակ ըլլալու համար՝ անշուշտ հարկ է որ աս ախտաւոր, տկար ու պղծելի մարմինները փոխուին ու պայծառանան։ Ըն ա-

ւարդանները որ հոս կը վայելենք՝՝ բաւական չեն մե-
զի հանգիստ շնորհելու ։ Աւա՛ղ, բոլոր աշխարհի
մէջ մեզի հանգիստ տալու ինչ բան կայ ։ Ամենէն
աւելի աշխարհը վայելողները՝ ամենէն աւելի
տաղտկութիւն ունին ։ Աշխարհ ամենէն աւելի մեծ
համարողներն ու անոր մէջ մեծամեծ ուրախութիւն-
ներ վայելողներն ալ, կը փափաքին անոր ունայնու-
թեանն ու զրկանացը վրայ կը գանգատին ։ Մա՛ր-
դիկ երկրի վրայ երկինք մը գտնելու անհնարութիւ-
նով խաբուած, երբոր վայելելու կը մտնեն,
կը տեսնեն որ իրենցմէ կը փախչի ։ Թէ որ մէկը
անգամ մը Տէրոջը գործքերը դիտէ, դիւրաւ պի-
տի տեսնէ թէ անոնց վախճանը ճիշդ մեր կուռքե-
րը կործանել, մեզի աշխարհը տաղտկալի ընել ու
մեզի մեր հանգիստը իր քովը փնտռել տալ է ։
Ո՞ւր մեզի աւելի խաղաղ կ'ըլլայ, ո՞չ ապաքէն հոն՝
ուր որ մենք աւելի հաճութիւն կը յուսայինք ։ Ե-
թէ զաւակ մը ունիս, որուն վրայ կը խանդաղատիս,
անիկայ քու տրտմութիւնդ կ'ըլլայ ։ Եթէ բարե-
կամ մը ունիս, որուն ապաւիներ ես ու անփոփոխ
կը կարծես, ան քեզի պատուհաս մը կ'ըլլայ ։ Արդ՝
հանգստեան տեղ կամ վիճա՞կ է ասիկայ ։ Հոս
վայելած բաներնիս մեր հանգստեանը անբաւա-
կան են, իսկ Աստուած բաւական է. բայց զինքը
քիչ կը վայելենք հոս ։ Անիկայ իր փառքին սրա-
հը հոս պատրաստած չէ ։ Մեր ու իր մէջը վա-
րագոյրը քաշած է ։ Մենք իբրև արտաքսած իրմէ
հեռու ենք. իբրև եղծանելի մահկանացուներ՝ աւ-
ելի հեռու ենք. իսկ իբրև մեղաւոր՝ բացէ 'ի բաց
հեռու ենք անկէ ։ Երբեմն երբեմն մխիթարութեան
խօսք մը կը լսենք իրմէ և իր սիրոյն նշանները կ'ըն-
դունինք, սրտերնիս և յոյսերնիս վեր բռնելու
համար. բայց աս չէ մեր կատարեալ վայելումը ։

Այս հոգի մը որ զԱստուած իր բաժինն ըրած է, (ինչպէս որ ամէն անով փրկուածներն ըրած են,) կրնա՞յ հանգիստ գտնել, այնքան հեռու մնալով անկէ և այնպէս դուն ուրիշ ու տակաւ վայելելով զանիկայ: Կատարեալ հիմա չենք կրնար հանգստեան ընդունակ ըլլալ, մինչև որ նախ արժանաւորութիւն մը չունենանք: Քրիստոս պսակը միայն արժանաւորներուն կու տայ: Արդ՝ ի՞նչպէս կրնանք արժանի ըլլալ պսակի, եթէ նախ չյաղթենք. կամ ի՞նչպէս կրնանք մրցանակն առնել, եթէ նախ ասպարէզը չմտանենք. կամ վարձք ընդունիլ, մինչև որ այգիին մէջ չգործենք. կամ տասը քաղաքներու վրայ իշխանութիւն ունենալ, եթէ նախ տասը քանքարը չյորդենք. կամ ի՞նչպէս կրնանք մեր Տէրոջը ուրախութիւնը մտնել, թէ որ իբրև բարի ու հաւատարիմ ծառաներ, պաշտօննիս աղէկ չկատարենք: Աստուած մեզի հանգիստ տալու համար, արդարութեան ընթացքը չփոխեր, թէ որ մենք չաշխատինք. ոչ ալ դեռ յաղթութիւն տանելէն առաջ, փառքին պըսակը կը շնորհէ: Աստի բաւական պատճառ կայ՝ որ մեր հանգիստը մնայ մինչև հանգերձեալ կեանքը: Զգո՛յշ եղիր ուրեմն, քրիստոնեայ ընթերցող, ինչպէս կը համարձակիս հնարքներ փնտռելու որ երկրի վրայ հանգիստ մը վայելես. կամ մարմնի մէջ ունեցած նեղութիւններուդ, տագնապներուդ ու կարօտութիւններուդ համար Աստուծոյ դէմ տըրտընջել: Ի՞նչ է որ կը վարանեցունէ քեզ, աղքատութի՞ւնդ, հիւանդութիւննե՞րդ, ոխերիմ թըշնամինե՞րդ, բարեկամներուդ անարգութի՞ւնը: Այո՛, հոս այսպէս պիտի ըլլայ: Թէպէտև ժամանակին ապականութիւնը, անունով միայն քրիստոնեայ եղողներուն մեղքերը, չարերուն խստասրտու-

թիւնը կը վշտացունեն քեզ. բայց հարկ է այսպէս ըլլալ, քանի որ դուն տակաւին քու հանգիստէդ հեռու ես։ Գուցէ մեղքերդ, չար ու ապականեալ սիրտդ զքեզ կը տագնապեն։ Թո՛ղ ու վիշտերդ աւելնան օր քան զօր։ Միայն թէ դուն այս ամէն վիշտերուդ մէջ կը փափաքի՞ս երթալ առ Աստուած քու հանգիստդ. զինուորութիւնդ կատարել, ընթացքիդ ու աշխատութեանդ վախճան տալ։ Ապա թէ ոչ, գանգատ ըրէ ստեպ քու սրտիդ, ու այնչափ թախանձէ որ վերջապէս հանգիստը փափաքելի երևնայ։

Ուրիշ բան մ՚ալ աւելցունեմ հոս, ու այնուհետև վերջացունեմ աս գլուխը. այսինքն թէ հաւատացելոց հոգիները նաև ան միջոցին որ իրենց մարմիններէն բաժնուած են, այնպիսի երջանկութիւն մը կը վայելեն՝ որ մարդուս հասողութենէն վեր է։ Պօղոս Առաքեալին սա խօսքէն աւելի յայտնի ինչ կրնայ ըլլալ։ “Ամէն ատեն վստահութիւն ունինք, և գիտենք՝ թէ որչափ որ մարմնի մէջ կը կենանք, Տէրոջմէ հեռու ենք. ինչու որ հաւատքով կը քալենք, ու չէ թէ երևոյթով. Ուստի վստահութիւն ունինք՝ և ալ աւելի կ՚ուզենք մարմինէն հեռանալ, ու Տէրոջը քովը կենալ”։ Դարձեալ կ՚ըսէ, “Երկու կողմանէ ալ նեղի մէջ եմ, մեռնելու ու Քրիստոսի հետ ըլլալու փափաք ունենալով. քանզի ան՝ շատ աւելի աղէկ է”։ Եթէ Պօղոս յարութենէ յառաջ Քրիստոս վայելելու ակնկալութիւն չունէր, ինչո՞ւ համար ուրեմն նեղի մէջ պիտի ըլլար, կամ մեռնելու՝ այսինքն մարմինէն ելլելու պիտի փափաքէր։ Մանաւանդ թէ ասոր հակառակ պէտք էր փափաքիլ որ մարմինէն չելլէ. ինչու որ մարմնով եղած ատենը, գոնէ քիչ մը կրնար զՔրիստոս վա-

յնլել ։ Քրիստոսի աւազակին ըսածն ալ բաւական յայտնի է ։ «Այսօր իմ հետս դրախտին մէջ պիտի ըլլաս» ։ Նոյնպէս Քրիստոս ալ, Մեծատանն ու Ղազարոսին առակին մէջ, հոգիներուն անմիջապէս մահուընէ ետքը ունենալու երանութիւնը կամ թշուառութիւնը այնպէս յայտնի չէր ցուցըներ կամ ենթադրեր, եթէ ստուգիւ այնպէս չըլլար ։ Մեր Տէրոջը յարութեան համար ըրած առարկութենէն կը հետևի, թէ «Աստուած կենդանիներու և ոչ թէ մեռածներու Աստուած ըլլալով», ուրեմն Աբրահամ, Իսահակ ու Յակոբ հոգւով կենդանի են ։ Եթէ «ի Տէր ննջող մեռելին երանութիւնը» լոկ գերեզմանին մէջ հանգչիլը ըլլար, անասունը կամ քարն ալ նոյնչափ երջանիկ պիտի ըլլային. ասիկայ մանաւանդ անէծք է քան թէ երանութիւն ։ Ինչու որ կեանքը մեծ շնորհք մը չէ՞ ։ Աստուծոյ ծառայելն ու բարի գործելը, կենաց ամէն մխիթարութիւնները, սրբոց ընկերակցութիւնը, խորհուրդներու մխիթարութիւնը և աս ամէն բաներուն մէջ Քրիստոս վայելելը, գերեզմանին մէջ փտած մնալէն աւելի մեծ շնորհք մը չէ՞ ։ Ուրեմն ուրիշ երանութիւն մը խոստացուած ըլլալու է ։ Ապա թէ ոչ՝ ինչպէս կ'ըսուի թէ «կատարեալ եղած արդարոց հոգիներուն մօտեցեր ենք» ։ Նոյնպէս յարութեան ատենը մարմինն ալ այնպէս կատարեալ պիտի ըլլայ ինչպէս հոգին ։ Սուրբ Գիրքը մեզի կ'ըսէ թէ Ենովքն ու Եղիան արդէն երկինք փոխուած են ։ Կրնա՞նք այնպէս համարիլ թէ ան փառքը անոնք միայն կը վայելեն ։ Պետրոս, Յակոբոս ու Յովհաննէս լեռանը վրայ Մովսէսն ալ չտեսա՞ն Քրիստոսի հետ, սակայն Սուրբ Գիրքը կ'ըսէ թէ Մովսէս մեռաւ ։ Եւ հաւանակա՞ն է որ Քրիստ-

տես անոնց զգայութիւնները խաբեց ցուցընելով անոնց Մովսէսը, թէ որ անիկայ մինչև ցյարութիւն փառաց Հողոյդ պիտի չըլլար ։ Ո՞չ ապաքէն Աստւածային խօսքն ալ ուզածնուս չափ պարզ է “Տէր Յիսուս ընդունէ իմ հոգիս” ։ Արդարև եթէ Տէրը կ'ընդունի հոգին, ապա ոչ քուն է անիկայ՝ ոչ մեռած, և ոչ ալ ոչինչ կ'ըլլայ . այլ հոն է՝ ուր որ Տէրն է, և կը տեսնէ անոր փառքը ։ Իմաստունին խօսքն ալ նոյնպէս նշանաւոր է . “Հոգին Աստուծոյ պիտի դառնայ որ անիկայ տուաւ” ։ Եթէ այնպէս երկայն ժամանակ՝ այսինքն մինչև ցյարութիւն կեանքերնիս պիտի ընդհատի, ուրեմն ինչո՞ւ համար մեզի զրուցուած է թէ “յաւիտենական կեանք ունիք”. և թէ “զԱստուած ճանչնալը յաւիտենական կեանք է”. և թէ ով որ կը հաւատայ “Որդիին՝ յաւիտենական կեանք ունի”. և դարձեալ թէ “Աստուծոյ թագաւորութիւնը ձեր մէջն է” ։ Սոդոմ ու Գոմոր քաղաքներուն համար ըսուած է թէ, “յաւիտենական կրակին դատապարտութիւնը ընդունեցին” ։ Ու եթէ չարերը արդէն կը կրեն յաւիտենական կըրակը, ապա ուրեմն աստուածապաշտներն ալ յաւիտենական երանութիւնը կը վայելեն ։ Յովհաննէս Աւետարանիչը իր փառաւոր յայտնութիւնները տեսած ատենը, կ'ըսէ թէ “հոգիով էր”, և թէ “տարուեցաւ հոգիով” ։ Ու երբոր Պօղոս Առաքեալ “յափշտակուեցաւ մինչև երրորդ երկինքը, չէր գիտեր թէ մարմնով էր՝ եթէ առանց մարմինի” ։ Աս կը ցուցընէ որ հոգիները ընդունակ են աս փառաւոր բաներուն, առանց իրենց մարմիններուն օգնութեանը ։ Նոյնը կ'իմացուի երբ որ Յովհաննէս Աւետարանիչ կ'ըսէ թէ, “սեղանին տակը տեսայ ան մարդոց հոգիները, որ

սպաննուած էին Աստուծոյ խօսքին համար»: Ու երբոր Քրիստոս կ՚ըսէ, «մի՛ վախնաք անոնցմէ՝ որ մարմինը կը սպաննեն, ու չեն կրնար հոգին սպաննել», յայտնապէս կ՚իմացուի որ երբոր չար մարդիկ մեր մարմինները կը մեռցունեն, այսինքն զանոնք հոգիներէն կը բաժնեն, տակաւին հոգիները կենդանի կը մնան: Երբոր Քրիստոսի մարմինը մեռած էր, հոգին կենդանի էր. մերիններն ալ այնպէս պիտի ըլլան: Ասիկայ կ՚երեւայ ան խօսքէն ալ որ աւազակին ըսաւ, «այսօր ինծի հետ դըրախտին մէջ պիտի ըլլաս»: Դարձեալ խաչին վրայ ըսած խօսքէն, «Հայր, քու ձեռքդ կ՚աւանդեմ իմ հոգիս»: Եթէ «Նոյի օրերը ապստամբ եղածներուն հոգիները բանտի մէջ են», այսինքն կենդանի՝ բայց տառապանաց մէջ, ուրեմն անոր հակառակը արդարներուն մարմինէ բաժնուած հոգիներն ալ ստուգիւ երանութեան վիճակի մէջ են: Ապա ուրեմն հաւատացեալ հոգիները իրենց մարմնոյ բանտերէն ելածնուն պէս, հրեշտակները անոնց ուղեկից, Քրիստոս բոլոր արդարներուն կատարեալ հոգիներուն հետ անոնց ընկեր, երկինքը անոնց բնակութիւնը եւ Աստուած անոնց երջանկութիւնը պիտի ըլլայ: Երբոր այսպիսիներ մեռնին, համարձակութեամբ եւ հաւատով կրնան ըսել սուրբ Ստեփաննոսին պէս, թէ «Տէր Յիսուս ընդունէ իմ հոգիս», եւ Քրիստոսի պէս աւանդել անիկայ Հօրը ձեռքը:



# ԳԼՈՒԽ Ե

Արքայ հանգիստը կորսնցնողներուն մէջ Երկնա-ւորութիւնը։

Ընթերցող՝ եթէ տակաւին օտար ես դուն Քրիստոսի և անոր ժողովրդեանը սուրբ բնութեանն ու կենացը՝ որ վերը նկարագրեցինք, ու աս վիճակին մէջ ապրելու ու մեռնելու ըլլաս, կը համարձակիմ ըսելու քեզի թէ դուն բնաւ երկինքին ուրախութիւններուն բաժանորդ պիտի չըլլաս, և ոչ ալ սրբոց յաւիտենական հանգստեան դրդին ճաշակը պիտի առնենաս։ Կրնամ ըսել քեզի ինչպէս որ Եհովդ Եգղոնին ըսաւ թէ «Աստուծմէ պատգամ մը ունիմ քեզի», որ եթէ Աստուծոյ խօսքը ճշմարիտ է, դուն երբեք ուրախութեամբ պիտի չտեսնես Աստուծոյ երեսը։ Հրամայուեցաւ ինծի որ քեզի համար աս վճիռը տամ։ Աթէ կամիս ընդունէ, և եթէ կրնաս՝ փախիր անկէ։ Գիտեմ որ Քրիստոսի խոնարհ և սրբտանց հպատակութիւնդ՝ քու ազատութեանդ հնարքը կը գտնէ. ան ատենը Քրիստոս քեզ իրրև իր ժողովուրդէն մէկը կը ճանչնայ, ու քեզի բաժին կու տայ իր ընտրեալներուն ժառանգութեանը մէջ։ Եթէ իմ պատգամաւորութիւնս այսպիսի յաջող ելք մը ունենայ, չէ թէ միայն պիտի չտրտմիմ ես՝ ինչպէս Յովնան տրտմեցաւ, Աստուծոյ սպառնալիքները քու վրադ չկատարուելուն համար, հապա պիտի օրհնեմ այն օրը որ Աստուած զիս այսպիսի երջանիկ պատգամաւոր մ՚ըրաւ։ Իսկ թէ որ քու օրերդ չնորոգուած վիճակիդ մէջ լմնցունես, որչափ ստոյգ է որ երկինքը գլխուդ վրայ է ու երկիրը ոտքիդ տակը, նոյն-

չափ ստուգութեամբ դուն ալ սրբոց Հանգիստը պիտի չմոռնես, ու բաժինդ յաւիտենական Հրոյն մէջ պիտի ընդունիս ։ Գուցէ դառնաս ըսես ինծի թէ, Աստուած ե՞րբ ցուցուց քեզի Կենաց Գիրքը, կամ ե՞րբ յայտնեց քեզի թէ որոնք պիտի փրկուին և որոնք դուրս պիտի մնան ։ Պատասխան կու տամ թէ ես քու և ուրիշ ո՛և իցէ մէկու մը անունը չեմ տար. այլ ընդհանրապէս չնորոգուածներուն վրայ աս դատաստանը կ'ընեմ. ուստի և քու վըրայ ալ՝ եթէ դու ալ այնպէս ես ։ Ինչ որ ալ կը ջանամ որոշել թէ ո՛վ պիտի զղջայ, և ո՛վ ոչ. չեմ պնդեր ալ թէ դուն բնաւ պիտի չզղջաս ։ Մանաւանդ թէ կ'ուզեմ ցուցընել քեզի թէ ինչ յոյսեր ունիս առջևդ, միայն թէ անհոգ կենալով չկորսնցունես զանոնք ։ Ինչ կ'ուզեմ մանաւանդ յորդորել քեզ որ դեռ դուռը քեզի չգոցուած՝ ժամանակին խօսք մտիկ ընես, քան թէ ըսել թէ քու զղջալուդ և դարձի դալուդ յոյս չկայ ։ Բայց թէ Աստուծոյ ժողովրդեանը վրայ վերը ըրած նկարագիրս քու հոգւոյդ վիճակին հետ չհամաձայնիր, ան ատենը դըժուարին խնդիր մը կ'ըլլայ թէ՝ դուն պիտի փրկուիս արդեօք թէ ոչ ։ Պէ՞տք է որ երկինք ելլեմ գիտնալու համար թէ "առանց սրբութեան ոչ ոք պիտի տեսնէ Տէրը", և թէ միայն "սրտով սուրբ եղողները պիտի տեսնեն զԱստուած". և թէ եթէ մէկը նորէն չծնի՝ չկրնար Աստուծոյ թագաւորութիւնը մտնել" ։ Պէ՞տք է որ երկինք ելլեմ Քրիստոսի հարցունելու համար ան բանը՝ զոր որ մեզի ըսելու համար ինք երկրիս վրայ իջաւ և իր Առաջին Առաքեալներուն վրայ թողեց մեզի իմացունելու համար, և ինք ու անոնք աս բաներուն յիշատակը թողուցին բոլոր աշխարհի ։ Ինչ թէպէտ

ես քու սրտիդ գաղտնիքը չեմ գիտեր, և ան պատճառաւ քեզի յանուանէ չեմ կրնար ըսել թէ քու վիճակդ ա՞ս պիտի ըլլայ թէ չէ, սակայն եթէ միայն յօժար ու ժիր ըլլաս, դուն ինքնին կրնաս գիտնալ թէ արդեօք երկինքին մէկ ժառա՞նգն ես թէ ոչ ։ Իմ գլխաւոր փափաքս ան է որ՝ եթէ տակաւին թշուառ ես, իմանաս և ազատիս անկէ ։ Բայց ի՞նչպէս կրնաս ազատիլ, եթէ Քրիստոսի ու փրկութեան վրայ անհոգ կ՚ըլլաս ։ Ապա թէ ոչ՝ այնպէս անհնարին կ՚ըլլայ քեզի փրկուիլ, ինչպէս անհնարին է դեւերուն ։ և Աստուած ալ աւելի պարզաբար և աւելի յաճախ խօսած է ասոր վրայ Սուրբ Գրոց մէջ քեզի պէս մեղաւորներուն համար, քան թէ դիւաց համար ։ Ինծի կ՚երևի որ եթէ անգամ մը քու վիճակիդ վրայ նայիս՝ ապշութիւնով ու սոսկումով պիտի պաշարուիս ։ Երբոր Բաղդասար Թագաւորը “տեսաւ մարդու մը ձեռքի մատուըները որ պատին վրայ կը գրէին, գոյնը փոխուեցաւ, ու խորհուրդները խռովեցան . այնպէս որ մէջքին յօդուածները կը քակուէին, ու ծունկերը իրարու կը զարնէին”։ Ուրեմն ի՞նչ դող ու սարսափ պիտի պատէ քեզ, որ քեզի դէմ ունիս բուն իսկ Աստուծոյ ձեռքը, որն որ չէ թէ մէկ կամ երկու վճռով, այլ բոլոր Սուրբ Գրոց խօսքերովը՝ յաւիտենական արքայութիւնը կորսնցունելդ քեզի կը սպառնայ ։ Որովհետև կը փափաքիմ որ սրտիդ մէջ հաստատես աս բանը, վասնորոյ պիտի ցուցընեմ քեզի նախ՝ արքայութիւնը կորսընցունելուն բնութիւնը, և երկրորդ՝ ան կորստեան ծանրութիւնը ։

Նախ ։ Ամբարիշտները արքայութիւնը կորսնցունելով, կը կորսնցունեն՝ սրբոց անձնական կատարելութիւնը, —զԱստուած ինքը—դէպ առ Աստուած

եղած ամէն բերկրալի զգացումները, — և հրեշտակներուն ու սուրբերուն երջանիկ ընկերութիւնը ։

1. Ամբարիշտներուն մեծ կորուստը ան փառաւոր անձնական կատարելութիւնն է որ երկնից մէջ սուրբերը կը վայելեն ։ Ասոնք կը կորսնցունեն մարմնոյն ան փայլուն պայծառութիւնը՝ որ կէս օրուան արեւուն պայծառութիւնը կը գերազանցէ ։ Թէպէտ չարերուն մարմինները երկրի վրայ եղածէն աւելի հոգեղէն պիտի ըլլան յարութեան ատենը, սակայն ասիկայ աւելի եւս ընդունակ պիտի ընէ զանոնք սաստիկ տանջանքի ։ Վասն որոյ պիտի ուրախանային եթէ ամէն անդամներնին մեռած անդամներ ըլլային՝ որ չզգային իրենց վրայ դրուած պատիժը, և կամ եթէ ամբողջ մարմինը փտած դի մը ըլլար, և կամ կրկին հողին տակը թաղուէր ։ Շատ յետնեալ են ան բարոյական կատարելութենէն՝ որն որ փրկեալները կը վայելեն. այսինքն Աստուծոյ կամքը ընելու ան սուրբ յօժարամտութենէն, զուարթամիտ պատրաստականութենէն, և բոլոր իրենց գործքերուն մէջ ան կատարեալ ուղղութենէն. փոխանակ ասոնց՝ ունին ան կամակորութիւնը, ան բարիէն զզուելը, ան չարը սիրելը, ան կիրքերու բանութիւնը, որոնք երկրի վրայ ունէին ։ Ճշմարիտ է որ անոնց իմացողութիւնը աւելի սուր պիտի ըլլայ, նախկին փորձութեանց դադարելովը և առջի պատրանքներուն ստութեանը յայտնուելովը, բայց տակաւին նոյն բնաւորութիւններուն տէրն են, և ուրախութեամբ նոյն մեղքերը պիտի ընէին, եթէ կարող ըլլային՝ եթէ պատեհութիւն ունենային ։ Աս թշուառականներուն ու փառաւորեալ քրիստոնէից մէջ աւելի մեծ տարբերութիւն պիտի ըլլայ, քան թէ ճճիի մը ու արեգական մէջ ։ Մեծատունին

քեհերը՝ ծիրանին և ազնիւ համադամները զինքը իր դրանը առջևը ինկած վիրաւոր Ղազարոսէն այնչափ չմեծցուցին ։

2. Աստուծոյ հետ քաղցր յարաբերութեան և հաղորդակցութեան պիտի չունենան ։ "Որովհետև չուզեցին զԱստուած իրենց գիտութեանը մէջ պահել", այլ անոր ըսին "Հեռու գնա մեզմէ, ինչու որ քու ճամբաներդ գիտնալ չենք ուզեր", Աստուած ալ պիտի գարշի զանոնք իր ընտանութեանը մէջ պահելու ։ Երբեք պիտի չընդունի զանոնք իր սուրբերուն ժառանգութեանը, և պիտի չթողու որ իր առջևը կենան. այլ պիտի ըսէ անոնց, "Ես ձեզ բնաւ չեմ ճանչնար. մէկ դի գացէք ինծմէ դուք ամէնքդ որ անօրէնութիւն կը գործէք" ։ Հիմա պատրաստ են այնպէս վստահութեամբ յոյս ունենալու Քրիստոսի և արքայութեան վրայ, որպէս թէ ճշմարիտ հաւատացեալ սուրբեր են ։ Հայհոյիչը, գինեմոլը, անառակութիւն ընողը, աշխարհասէրը հիմա կրնայ ըսել թէ՝ Աստուած մեր հայրը չէ՞, այնպէս՝ ինչպէս որ ձերն է ։ Բայց երբոր Քրիստոս իր աշակերտները՝ իր հակառակորդներէն, և իր հաւատարիմ բարեկամները՝ իր խաբուած շողոքորթներէն բաժնէ, ո՞ւր պիտի մնայ ան ատենը անոնց յանձնապաստան յոյսը ։ Ան ատենը պիտի տեսնեն որ Աստուած իրենց Հայրը չէ, ինչու որ իրենք անոր ժողովուրդը ըլլալ չուզեցին ։ Որովհետև չուզեցին որ Աստուած իր Սուրբ Հոգիովը իրենց մէջ բնակի, անոր համար չարութեան ժողովքը անոր հետ հաղորդակցութիւն պիտի չունենայ և չարերը Աստուծոյ քաղաքը բնակելու չեն ։ Միայն անոնք՝ որ հոս Աստուծոյ հետ քալեցին, պիտի ապրին և երջանիկ ըլլան անոր հետ երկինքը ։ Աշխարհ չը-

ջնջել։ Քրիստոսի աւազակին ըսածն ալ բաւական յայտնի է։ "Այսօր իմ հետս դրախտին մէջ պիտի ըլլաս"։ Նոյնպէս Քրիստոս ալ, Մեծատանն ու Ղազարոսին առակին մէջ, հոգիներուն անմիջապէս մահուընէ ետքը ունենալու երանութիւնը կամ թշուառութիւնը այնպէս յայտնի չէր ցուցըներ կամ ենթադրեր, եթէ ստուգիւ այնպէս չըլլար։ Մեր Տէրոջը յարութեան համար ըրած առարկութենէն կը հետեւի, թէ "Աստուած կենդանիներու և ոչ թէ մեռածներու Աստուած ըլլալով", ուրեմն Աբրահամ, Իսահակ ու Յակոբ հոգւով կենդանի են։ Եթէ "Ի Տէր ննջող մեռելին երանութիւնը" լոկ գերեզմանին մէջ հանգչիլը ըլլար, անասունը կամ քարն ալ նոյնչափ երջանիկ պիտի ըլլային. ասիկայ մանաւանդ անէծք է քան թէ երանութիւն։ Ինչու որ կեանքը մեծ շնորհք մը չէ՞։ Աստուծոյ ծառայելն ու բարի գործելը, կենաց ամէն մխիթարութիւնները, սրբոց ընկերակցութիւնը, խորհուրդներու մխիթարութիւնը և աս ամէն բաներուն մէջ Քրիստոս վայելելը, գերեզմանին մէջ փտած մնալէն աւելի մեծ շնորհք մը չէ՞։ Ուրեմն ուրիշ երանութիւն մը խոստացուած ըլլալու է։ Ապա թէ ոչ՝ ինչպէս կ'ըսուի թէ "կատարեալ եղած արդարոց հոգիներուն մօտեցեր ենք"։ Նոյնպէս յարութեան ատենը մարմինն ալ այնպէս կատարեալ պիտի ըլլայ ինչպէս հոգին։ Սուրբ Գիրքը մեզի կ'ըսէ թէ Ենովքն ու Եղիան արդէն երկինք փոխուած են։ Կրնա՞նք այնպէս համարիլ թէ ան փառքը անոնք միայն կը վայելեն։ Պետրոս, Յակոբոս ու Յովհաննէս լեռանը վրայ Մովսէսն ալ չտեսա՞ն Քրիստոսի հետ, սակայն Սուրբ Գիրքը կ'ըսէ թէ Մովսէս մեռաւ։ Եւ հաւանակա՞ն է որ Քրիս-

տու անոնց զգայութիւնները խաբեց ցուցընելով անոնց Մովսէսը, թէ որ անիկայ մինչև ցյարութիւն փառաց հաղորդ պիտի չըլլայ։ Ո՛չ առաքեալն Ստեփանոսին խօսքն ալ ուզածնուս չափ պարզ է «Տէր Յիսուս ընդունէ իմ հոգիս»։ Արդարև եթէ Տէրը կ'ընդունի հոգին, ապա ոչ քուն է անիկայ՝ ոչ մեռած, և ոչ ալ ոչինչ կ'ըլլայ. այլ հոն է՝ ուր որ Տէրն է, և կը տեսնէ անոր փառքը։ Իմաստունին խօսքն ալ նոյնպէս նշանաւոր է. «Հոգին Աստուծոյ պիտի դառնայ որ անիկայ տուաւ»։ Եթէ այնպէս երկայն ժամանակ՝ այսրինքն մինչև ցյարութիւն կեանքերնին պիտի ընդհատի, ուրեմն ինչո՞ւ համար մեզի զրուցուած է թէ «յաւիտենական կեանք ունիք». և թէ «զԱստուած ճանչնալը յաւիտենական կեանք է». և թէ ով որ կը հաւատայ «Որդիին՝ յաւիտենական կեանք ունի». և դարձեալ թէ «Աստուծոյ թագաւորութիւնը ձեր մէջն է»։ Սոդոմ ու Գոմոր քաղաքներուն համար ըսուած է թէ, «յաւիտենական կրակին դատապարտութիւնը ընդունեցին»։ Ու եթէ չարերը արդէն կը կրեն յաւիտենական կրակը, ապա ուրեմն աստուածապաշտներն ալ յաւիտենական երանութիւնը կը վայելեն։ Յովհաննէս Աւետարանիչը իր փառաւոր յայտնութիւնները տեսած ատենը, կ'ըսէ թէ «Հոգիով էր», և թէ «տարուեցաւ հոգիով»։ Ու երբոր Պօղոս Առաքեալ «յափշտակուեցաւ մինչև երրորդ երկինքը, չէր գիտեր թէ մարմնով էր՝ եթէ առանց մարմնի»։ Աս կը ցուցընէ որ հոգիները ընդունակ են աս փառաւոր բաներուն, առանց իրենց մարմիններուն օգնութեանը։ Նոյնը կ'իմացուի երբ որ Յովհաննէս Աւետարանիչ կ'ըսէ թէ, «սեղանին տակը տեսայ ան մարդոց հոգիները, որ

սպաննուած էին Աստուծոյ խօսքին համար"։ Եւ երբոր Քրիստոս կ'ըսէ, "մի՛ վախնաք անոնցմէ՝ որ մարմինը կը սպաննեն, ու չեն կրնար հոգին սպաննել", յայտնապէս չի՞մացուիր որ երբոր չար մարդիկ մեր մարմինները կը մեռցունեն, այսինքն զանոնք հոգիներէն կը բաժնեն, տակաւին հոգիները կենդանի կը մնան։ Երբոր Քրիստոսի մարմինը մեռած էր, հոգին կենդանի էր. մերիններն ալ այնպէս պիտի ըլլան։ Ասիկայ կ'երեւայ ան խօսքէն ալ որ աւազակին ըսաւ, "այսօր ինծի հետ դրախտին մէջ պիտի ըլլաս"։ Դարձեալ խաչին վրայ ըսած խօսքէն, "Հայր, քու ձեռքդ կ'աւանդեմ իմ հոգիս"։ Եթէ "Նոյի օրերը ապստամբ եղածներուն հոգիները բանտի մէջ են", այսինքն կենդանի՝ բայց տառապանաց մէջ, ուրեմն անոր հակառակը արդարներուն մարմինէ բաժնուած հոգիներն ալ ստուգիւ երանութեան վիճակի մէջ են։ Ապա ուրեմն հաւատացեալ հոգիները իրենց մարմնոյ բանտերէն ելածնուն պէս, հրեշտակները անոնց ուղեկից, Քրիստոս բոլոր արդարներուն կատարեալ հոգիներուն հետ անոնց ընկեր, երկինքը անոնց բնակութիւնը և Աստուած անոնց երջանկութիւնը պիտի ըլլայ։ Երբոր այսպիսիներ մեռնին, համարձակութեամբ և հաւատով կրնան ըսել սուրբ Ստեփաննոսին պէս, թէ "Տէր Յիսուս ընդունէ իմ հոգիս", և Քրիստոսի պէս աւանդել անիկայ Հօրը ձեռքը։

## ԳԼՈՒԽ Ե

### Սրբոց հանգիստը կորսընցընողներուն մեծ թշուառութիւնը։

Ընթերցող՝ եթէ տակաւին օտար ես դուն Քրիստոսի և անոր ժողովրդեանը սուրբ բնութեանն ու կենացը՝ որ վերը նկարագրեցինք, ու սա վիճակին մէջ ապրելու ու մեռնելու ըլլաս, կը համարձակիմ ըսելու քեզի թէ դուն բնաւ երկինքին ուրախութիւններուն բաժանորդ պիտի չըլլաս, և ոչ ալ սրբոց յաւիտենական հանգստեան դղրդին ճաշակը պիտի ունենաս։ Կրնամ ըսել քեզի ինչպէս որ Աւոդ Եգղոնին ըսաւ թէ «Աստուծմէ պատգամ մը ունիմ՝ քեզի», որ եթէ Աստուծոյ խօսքը ճշմարիտ է, դուն երբեք ուրախութեամբ պիտի չտեսնես Աստուծոյ երեսը։ Հրամայուեցաւ ինծի որ քեզի համար աս վճիռը տամ։ Եթէ կամիս ընդունէ, և եթէ կրնաս՝ փախիր անկէ։ Գիտեմ որ Քրիստոսի խոնարհ և սըրտանց հպատակութիւնդ՝ քու աղաւաղութեանդ հընարքը կը գտնէ․ ան ատենը Քրիստոս քեզ իրրև իր ժողովուրդէն մէկը կը ճանչնայ, ու քեզի բաժին կու տայ իր ընտրեալներուն ժառանգութեանը մէջ։ Եթէ իմ պատգամաւորութիւնս այսպիսի յաջող ելք մը ունենայ, չէ թէ մինակ պիտի չտրտմիմ ես՝ ինչպէս Յովնան տրտմեցաւ, Աստուծոյ ողորմութիւնները քու վրադ չկատարուելուն համար, հապա պիտի օրհնեմ այն օրը որ Աստուած զիս այսպիսի երջանիկ պատգամաւոր մ՚ըրաւ։ Բայց թէ որ քու օրերդ չնորոգուած վիճակիդ մէջ լմնցունես, որչափ ստոյգ է որ երկինքը գլխուդ վրայ է ու երկիրը ոտքիդ տակը, նոյն-

չափ ստուգութեամբ դուն ալ սրբոց հանգիստը պի-
տի չմտնես, ու բաժինդ յաւիտենական հրոյն
մէջ պիտի ընդունիս ։ Կուցէ դառնաս ըսես ին-
ծի թէ, Աստուած ե՞րբ ցուցուց քեզի Կենաց
Գիրքը, կամ ե՞րբ յայտնեց քեզի թէ որոնք պիտի
փրկուին և որոնք դուրս պիտի մնան ։ Պատասխան
կու տամ թէ ես քու և ուրիշ ո՛ և իցէ մէկու մը անունը
չեմ տար. այլ ընդհանրապէս շնորհուածներուն
վրայ աս դատաստանը կ'ընեմ. ուստի և քու վը-
րադ ալ՝ եթէ դուն ալ այնպէս ես ։ Նաև ոչ
ալ կը ջանամ որոշել թէ ո՛վ պիտի զղջայ, և
ո՛վ ոչ. չեմ պնդեր ալ թէ դուն բնաւ պի-
տի չզղջաս ։ Մանաւանդ թէ կ'ուզեմ ցուցընել
քեզի թէ ինչ յոյսեր ունիս առջևդ, միայն թէ
անհոգ կենալով չկորսնցունես զանոնք ։ Նաև կ'ու-
զեմ մանաւանդ յորդորել քեզ որ դեռ դու-
ռը քեզի չգոցուած՝ ժամանակին խօսք մտիկ ը-
նես, քան թէ ըսել թէ քու զղջալուդ և դարձի
գալուդ յոյս չկայ ։ Բայց թէ Աստուծոյ ժողո-
վրդեանը վրայ վերը ըրած նկարագիրս քու հոգ-
ւոյդ վիճակին հետ չհամաձայնիր, ան ատենը դը-
ժուարին խնդիր մը կ'ըլլայ թէ՝ դուն պիտի փրկուիս
արդեօք թէ ոչ ։ Պէ՞տք է որ երկինք ելլեմ գիտ-
նալու համար թէ "առանց սրբութեան ոչ ոք
պիտի տեսնէ Տէրը", և թէ միայն "սրտով սուրբ
եղողները պիտի տեսնեն զԱստուած". և թէ "եթէ
մէկը նորէն չծնի՝ չկրնար Աստուծոյ թագաւորու-
թիւնը մտնել" ։ Պէ՞տք է որ երկինք ելլեմ Քրիս-
տոսի հարցունելու համար ան բանը՝ որն որ մեզի
ըսելու համար ինք երկիրս վրայ իջաւ և իր Հո-
գին Առաքեալներուն վրայ ղրկեց մեզի իմացու-
նելու համար, և ինք ու անոնք աս բաներուն յի-
շատակը թողուցին բոլոր աշխարհի ։ Նաև թէպէտ

Ես քու սրտիդ գաղտնիքը չեմ գիտեր, և ան պատճառաւ քեզի յանուանէ չեմ կրնար ըսել թէ քու վիճակդ ա՞ս պիտի ըլլայ թէ չէ, սակայն եթէ միայն յօժար ու ժիր ըլլաս, դուն ինքնին կրնաս գիտնալ թէ արդեօք երկինքին մէկ ժառա՞նգն ես թէ ոչ ։ Իմ գլխաւոր փափաքս ան է որ՝ եթէ տակաւին թշուառ ես, իմանաս և ազատիս անկէ ։ Բայց ի՞նչպէս կրնաս ազատիլ, եթէ Քրիստոսի ու փրկութեան վրայ անհոգ կ'ըլլաս ։ Ապա թէ ոչ՝ այնպէս անհնարին կ'ըլլայ քեզի փրկուիլ, ինչպէս անհնարին է դեւերուն. և Աստուած ալ աւելի պարզաբար և աւելի յաճախ խօսած է ասոր վրայ Սուրբ Գրոց մէջ քեզի պէս մեղաւորներուն համար, քան թէ դիւաց համար ։ Ինծի կ'երևի որ եթէ անգամ մը քու վիճակիդ վրայ նայիս՝ ապշութիւնով ու սոսկումով պիտի պաշարուիս ։ Երբոր Բաղտասար թագաւորը "տեսաւ մարդու մը ձեռքի մատուըները որ պատին վրայ կը գրէին, գոյնը փոխուեցաւ, ու խորհուրդները խռովեցան. այնպէս որ մէջքին յօդուածները կը քակուէին, ու ծունկերը իրարու կը զարնէին"։ Ուրեմն ի՞նչ դող ու սարսափ պիտի պատէ քեզ, որ քեզի դէմ ունիս բուն իսկ Աստուծոյ ձեռքը, որն որ չէ թէ մէկ կամ երկու վճռով, այլ բոլոր Սուրբ Գրոց խօսքերովը՝ յաւիտենական արքայութիւնը կորսնցունելդ քեզի կը սպառնայ ։ Որովհետև կը փափաքիմ որ սրտիդ մէջ հաստատես աս բանը, վասնորոյ պիտի ցուցընեմ քեզի նախ՝ արքայութիւնը կորսընցունելուն բնութիւնը, և երկրորդ՝ ան կորստեան ծանրութիւնը ։

Նախ ։ Ամբարիշտները արքայութիւնը կորսնցունելով, կը կորսնցունեն՝ սրբոց անձնական կատարելութիւնը, —զԱստուած ինքը—դէպ առ Աստուած

եղած ամէն բերկրալի զգացումները, — և հրեշտակներուն ու սուրբերուն երջանիկ ընկերութիւնը ։

1. Ամբարիշտներուն մեծ կորուստը ան փառաւոր անձնական կատարելութիւնն է որ երկնից մէջ սուրբերը կը վայելեն ։ Անոնք կը կորսնցունեն մարմնոյն ան փայլուն պայծառութիւնը՝ որ կէս օրուան արեւուն պայծառութիւնը կը գերազանցէ ։ Թէպէտ չարերուն մարմինները երկրի վրայ եղածէն աւելի հոգեղէն պիտի ըլլան յարութեան ատենը, սակայն ասիկայ աւելի եւս ընդունակ պիտի ընէ զանոնք սաստիկ տանջանքի ։ Ա ան որոյ պիտի ուրախանային եթէ ամէն անդամներնին մեռած անդամներ ըլլային՝ որ չզգային իրենց վրայ դրուած պատիժը, և կամ եթէ ամբողջ մարմինը փտած դի մը ըլլար, և կամ կրկին հողին տակը թաղուէր ։ Շատ յետնեալ են ան բարոյական կատարելութենէն՝ որն որ փրկեալները կը վայելեն. այսինքն Աստուծոյ կամքը ընելու ան սուրբ յօժարամտութենէն, զուարթամիտ պատրաստականութենէն, և բոլոր իրենց գործքերուն մէջ ան կատարեալ ուղղութենէն. փոխանակ ասոնց՝ ունին ան կամակորութիւնը, ան բարիէն զզուելը, ան չարը սիրելը, ան կիրքերու բռնութիւնը, որոնք երկրի վրայ ունէին ։ Ճշմարիտ է որ անոնց իմացողութիւնը աւելի սուր պիտի ըլլայ, նախկին փորձութեանց դադարելովը և առջի պատրանքներուն ստութեանը յայտնուելովը, բայց տակաւին նոյն բնաւորութիւններուն տէրն են, և ուրախութեամբ նոյն մեղքերը պիտի ընէին, եթէ կարող ըլլային՝ եթէ պատեհութիւն ունենային ։ Աս թշուառականներուն ու փառաւորեալ քրիստոնէից մէջ աւելի մեծ տարբերութիւն պիտի ըլլայ, քան թէ ճճիի մը ու արեգական մէջ ։ Մեծատունին

բեհեղը՝ ծիրանին և ազնիւ համադամները զինքը իր դրանը առջևը ինկած վիրաւոր Ղազարոսէն այնչափ չմեծցուցին ։

2. Աստուծոյ հետ ճշմարիտ յարաբերութիւն և հաղորդակցութիւն պիտի չունենան ։ "Որովհետև չուզեցին զԱստուած իրենց գիտութեանը մէջ պահել", այլ անոր ըսին "Հեռու գնա մեզմէ, ինչու որ քու ճամբաներդ գիտնալ չենք ուզեր", Աստուած ալ պիտի գարշի զանոնք իր ընտանութեանը մէջ պահելու ։ Երբեք պիտի չընդունի զանոնք իր սուրբերուն ժառանգութեանը, և պիտի չթողու որ իր առջևը կենան. այլ պիտի ըսէ անոնց, "Ես ձեզ բնաւ չեմ ճանչնար. մէկ դի գացէք ինծմէ դուք ամէնքդ որ անօրէնութիւն կը գործէիք" ։ Հիմա պատրաստ են այնպէս վստահութեամբ յոյս ունենալու Քրիստոսի և արքայութեան վրայ, որպէս թէ ճշմարիտ հաւատացեալ սուրբեր են ։ Հայհոյիչը, գինեմոլը, անառակութիւն ընողը, աշխարհասէրը հիմա կրնայ ըսել թէ՝ Աստուած մեր հայրը չէ՞, այնպէս՝ ինչպէս որ ձերն է ։ Բայց երբոր Քրիստոս իր աշակերտները՝ իր հակառակորդներէն, և իր հաւատարիմ բարեկամները՝ իր խաբուած շողոքորթներէն բաժնէ, ո՞ւր պիտի մնայ ան ատենը անոնց յանձնապաստան յոյսը ։ Ան ատենը պիտի տեսնեն որ Աստուած իրենց Հայրը չէ, ինչու որ իրենք անոր ժողովուրդը ըլլալ չուզեցին ։ Որովհետև չուզեցին որ Աստուած իր Սուրբ Հոգիովը իրենց մէջ բնակի, անոր համար յաւիտեան ժողովքը անոր հետ հաղորդակցութիւն պիտի չունենայ և չարերը Աստուծոյ քաղաքը բնակելու չեն ։ Միայն անոնք՝ որ հոս Աստուծոյ հետ քալեցին, պիտի ապրին և երջանիկ ըլլան անոր հետ երկինքը ։ Աշխարհ չը-

գիտեր թէ ինչ է այն կորուստը զոր որ զԱստուած կորսնցուցող հոգին կ'ընէ ։ Ի՛նչ խաւարին բանտ կ'ըլլար երկիրը, թէ որ արեգակը կորսնցունէր. ի՞նչ զզուելի դիակ կ'ըլլայ մարմինը՝ եթէ կորսընցունէ հոգին ։ Բայց աս ամէնը՝ զԱստուած կորսընցունելու քով ոչինչ է ։ Ինչպէս որ զԱստուած վայելելը սուրբերուն երկինք է, նոյնպէս ալ զԱստուած կորսնցունելը ամբարիշտներուն դժոխք է. և զոր օրինակ զԱստուած վայելելը ամէն բան վայելել է, նմանապէս զԱստուած կորսնցունելը ամէն բան կորսնցունել է ։

3. Այլ կորսընցունեն նաև բոլոր բերկրանք շնորհումները առ Աստուած. այն զմխիթարեցուցիչ գիտութիւնը, իր փառաւոր դէմքին այն զուարթ տեսութիւնը, զինքը սիրելու այն անպատմելի հաճութիւնը, մեզի ցուցուցած անհուն սիրոյն ծանօթութիւնը, սուրբերուն միայն ուրախութիւնները և զանոնք յագեցունող մխիթարութեան գետերը ։ Փո՞քր բան է աս ամէն բաները կորսնցունելը ։ Տէրութեան մը վրայ իշխող թագաւորին զբաղմունքը անարգ գերիի մը գործքէն այնչափ գերազանց չէ, որչափ գերազանց է աս երկնային զբաղմունքը երկրաւոր թագաւորի մը գործքերէն ։ Աստուած մարդոց զբաղմունքը իրենց բնութեանը կը յարմարցունէ ։ Մեղաւորներ, ձեր սիրտերը բնաւ Աստուծոյ վրայ չհաստատուեցան ձեր կենացը մէջ, և անոր սիրովը բնաւ չտաքցան, և ոչ ալ երբեք զԱնիկայ վայելել փափաքեցան ։ Անոր վրայ խօսել և լսել չէք ախորժեր. եթէ կարող ըլլայիք՝ աւելի կ'ուզէիք երկրի վրայ մնալ, քան թէ Աստուծոյ փառաւոր գովաբանութեանցը մասնակից ըլլալ ։ Արժա՞ն է արդեօք որ դուք երկնային խումբին անդամ ըլլաք ։

Դ. Պիտի զրկուիս հրեշտակներուն ու փառաւոր-եալ սուրբերուն երջանիկ ընկերութենէն: Աս եր-ջանիկ հոգիներուն ընկեր՝ ու աս յաղթող թա-գաւորներուն թիւին մէջ ըլլալու փոխարէն, գժո-խային ընկերութեան անդամներ պիտի ըլլան, ուր բնութեամբ ու տեսակով բոլորովին տարբեր ըն-կերներ պիտի ունենան: Սուրբերը արհամարհելն ու նախատելը, զանոնք ատելն ու անոնց թշուա-ռութիւններուն վրայ ուրախանալը, անոնց երջան-կութիւնը ստանալու միջոց չէ: Հիմա ան ընկե-րութենէն մերժուած ես՝ որմէ նախ դուն քեզ մերժեցիր, և բաժնուած ես անոնցմէ՝ որոնց հետ դուն ընկերանալ չուզեցիր: Տաղտկալի էր քեզի զանոնք քու տանդ, քաղաքիդ, գաւառիդ մէջ անգամ տեսնել: Ազգը խռովեցունող կը համա-րէիր զանոնք, ինչպէս որ Աքաաբ՝ Եղիան. և կամ առաքեալներուն պէս, որոնք "աշխարհը տակն-ուվրայ ըրին" մարդիկ ըսուեցան. Ինչ չարիք որ պատահէր, բոլորը անոնց պատճառովն է կ'ըսէիր: Երբոր կը սպաննուէին կամ կ'աքսորուէին, կ'ու-րախանայիր որ պակսեցան, ու կ'ըսէիր թէ երկիրը ասոնց ձեռքէն ազատեցաւ: Քեզի նեղութիւն է-ին, ինչու որ անաչառ կը յանդիմանէին մեղքե-րըդ: Անոնց սուրբ կենցաղավարութիւնը քու խըղճ-մտանքդ կը խռովեցունէր, տեսնելով որ քեզմէ շատ գերապանց են: Իրենց ընտանեաց մէջն ալ անոնց աղօթք ընելն ու երգելը լսել քեզի տան-ջանք էր: Աս այսպէս ըլլալով, զարմանալի՞ բան է որ դուն անոնցմէ բաժնուեցար: Հիմա մօտ է ան օրը որ ալ նեղութիւն պիտի չտան քեզի: Քու և անոնց մէջ տեղը մեծ վիհ մը պիտի ըլլայ: Աս կեանքին մէջ անգամ որ "անարգուած՝ զրկուած նեղուած ու չարչարուած" են, և տակաւին իրենց

անձնական անկատարութիւններուն ունին, Սուրբ Հոգւոյն վկայութեամբը այնպիսի անձինք են որ "աս աշխարհքս անոնց արժանի չէ": Հոս ա-ռաւել անարժան պիտի ըլլայ աշխարհս անոնց սիառքով եղած ընկերութեանը:

Երկրորդ: Գիտեմ որ շատերը պիտի խորհին թէ աս աշխարհիս մէջ առանց աս բաներուն կ'ըլ-լար, ու գալու աշխարհքին մէջ ինչու չըլլար. ի՞նչ կ'ըլլայ ատոնք կորսնցունելով: Անոնց ցու-ցընելու համար որ արքայութեան կորուստը մեծ վնաս պիտի ըլլայ իրենց, թող մտածեն հիմա թէ ան ատենը իմացողութիւններնին պիտի յստակի՝ իրենց ըրած կորուստը գիտնալու և անոր վրայ ընդար-ձակ տեսութիւն ունենալու: Խղճմտանքնին պիտի արթննայ ալ բանին վրայ. զգացումներնին ալ թմրած պիտի չմնայ, և ոչ յիշողութիւննին զիրենք կարող պիտի ըլլայ խաբել:

1. Մեղաւորներուն իմացողութիւննին ան ատենը պի-տի յարմարի իրենց կորսնցուցածին արժէքը ճանչնալու: Հիմա զԱստուած կորսնցունելնուն վրայ չեն ող-բար, ինչու որ տակաւին անոր գերազանցութեանը տեղեակ չեն, ոչ ալ ան սուրբ պաշտօնին ու ըն-կերութեանը կորուստին վրայ, ինչու որ բնաւ չեն ճանչնար անոնց արժէքը: Եթէ մէկը անդամանդ մը կորսնցունէ որն որ հասարակ քար մը կը կար-ծէր, ամենևին չցաւիր ըրած կորուստին վրայ, բայց երբոր կորսնցուցած բանին ինչ ըլլալը իմա-նայ, ան ատենը կը սկսի անոր վրայ ողբալ: Թէ-պէտև դատապարտեալներուն իմացողութիւնը սուրբ պիտի չըլլայ, բայց բազմաթիւ սխալմունքներէ ազա-տի մաքրուին: Հիմա կը կարծեն թէ պատիւնին, ստացուածքնին, հեշտութիւննին, առողջութիւննին աւելի արժանի են իրենց աշխատութեանը՝ քան

թէ հանդերձեալ աշխարհին բաները. բայց երբոր աս բաները զիրենք թշուառութեան մէջ ձըգեն, երբոր տեսնեն ան բաներուն փորձը՝ որոնց վրայ լոկ կը կարդային և հեռուէն կը լսէին, ան ատենը շատ տարբեր պիտի խորհին։ Մինչև որ ծովը չիյնան, պիտի չհաւատան թէ ջուրը կը հեղձուցանէ. և մինչև որ կրակի մէջ չիյնան, պիտի չզգան թէ հուրը կ'այրէ։ Փորձառութիւնը պիտի հերքէ և ուղղէ մտքին ան ամէն մոլորութիւնները՝ որոնցմով մարդը զԱստուած կ'արհամարհէ, անոր ծառայութենէն կը փախչի, անոր ժողովուրդը կ'անարգէ։ Գիտութիւններն աւելնալու է որ անձկութիւններն ալ աւելնայ։ Ազգօրմելի՛ հոգիներ՝ շատ աւելի երջանիկ պիտի ըլլային՝ եթէ իմացողութիւններն բոլորովին իրենցմէ առնուէր, եթէ անմիտներու ու անբաններու պէս ըլլային. կամ թէ որ գիտութիւններն հոն երկրի վրայ եղածէն աւելի չըլլար, ըրած կորուստներնուն վրայ այնչափ չէին մորմոքեր։ Որչափ երջանիկ պիտի համարէին զիրենք, եթէ երկինքի պէս տեղ մը ըլլալը չգիտնային։ Հիմա որ իրենց գիտութիւնը կրնայ օգնել զիրենք փալու չարիքէն ազատելու, չեն ուզեր գիտութիւն ունենալ, կամ չեն ուզեր կարդալ և ուսանիլ, որ գիտութիւն ստանան. բայց երբոր իրենց գիտութիւնը զիրենք ապառող կրակին ճարակ տայ, ան ատենը ուզեն չուզեն պիտի գիտնան։ Հիմա խորին քունի մը մէջ են, ու այնպէս կ'երազեն թէ աշխարհիս մէջ ամենէն երջանիկ մարդը իրենք են. բայց երբոր մահը զիրենք արթնցունէ, ինչպէս 'ի քթթել ական գատուածին պիտի փոխուի, և անոնք որ չէին ուզեր տեսնել, ան ատենը պիտի տեսնեն և ամչնան։

2. Անոնց ճանաչումը ինչպէս որ պիտի յըս-տակի, նոյնպէս աւելի ուժով ընդարձակէ և աւելի ընդունակ պիտի ըլլայ կորանցուցած փառքերնուն արժէքը ճանչնալու ։ Գաղափարներնուն յստա-կութիւնն ու ճշդութիւնը պիտի աւելնայ ։ Աս-տուծոյ բարկութեանը, մեղանչելուն յիմարութեա-նը, մեղաւորներուն թշուառութեանը վրայ ի՛նչ խորին ճանաչում ունին՝ հիմա նոյն թշուառու-թիւնը կրող հոգիները, համեմատութեամբ երկրի վրայ եղող հոգիներուն՝ որոնք միայն կը լսեն ան թշուառութեանը վրայով ։ Մեռնելու դատապար-տուած մարդ մը՝ որուն մահուանը վճիռը պիտի կա-տարուի, ի՛նչ զգացում կ'ունենայ կեանքին պատ-ուականութեանը վրայ, որն որ չունէր տակաւին յա-ջողութեան մէջ եղած ատենը ։ Իսկ յաւիտենա-կան երջանկութեան բուն կորուստը, դատապար-տուած մարդուն՝ շատ աւելի ազդու կերպով զգալ պիտի տայ նոյն կորստեան մեծութիւնը. և ինչպէս որ մեծ ամանը աւելի ջուր կ'առնէ քան թէ փոք-րը, նոյնպէս ալ անոնց ընդարձակուած իմացողու-թիւնը՝ իրենց տագնապը աւելցունելու աւելի նիւթ պիտի պարունակէ, քան թէ երկրի վրայ ունեցած նուազ ընդունակութիւններին ։

3. Խիղճերնին ալ պիտի ցուցընէ թէ աս վարդապետութիւնը ճիշդ իրենց վրայ է, և աս բանը իրենց ցաւերուն աւելի զայրանալուն պատ-ճառ պիտի ըլլայ ։ Ան ատենը խիստ պիտի չերևի իրենց ըսել " Ա՛ս է իմ կորուստս, ա՛ս է իմ յա-ւիտենական ու անդարմանելի թշուառութիւնս" ։ Աս թշուառութիւնը իրենց վրայ մերձեցունել չուզելնին է պատճառը որ հիմա հոգ չեն ը-ներ ։ Դժուարաւ յանձն կ'առնուն հաւատալ թէ կայ այսպիսի թշուառութեան վիճակ մը, բայց

եւ աւելի դժուարաւ կը հաւատան թէ իրենց պիտի հանդիպի աս վիճակը ։ Ասոր համար այնչափ քարոզները անօգուտ. ու ամէն սպառնալիք և խրատ ընդունայն կ'ըլլան ։ Թող Քրիստոսի պաշտօնեան ցուցընէ անոնց իրենց թշուառութիւնը՝ ամէն պարզութեամբ ու հաւատարմութեամբ. անոնք չին համոզուիր որ այնպէս ողորմելի են ։ Թող ցուցընէ անոնց կորսնցունելու փառքերնին ու կրելու չարչարանքնին. անոնք կը կարծեն թէ իրենց համար չեն անոնք, այլ ուրիշ անուանի մեղաւորներու համար ։ Չար մարդու մը իր չար ըլլալը իրեն իմացունելը կամ բարկութեան ու դատապարտութեան տակ ըլլալը իրեն ճանչցունել տալը՝ աշխարհի մէջ խիստ դժուարին բաներէն մէկն է ։ Թէպէտև դիւրին է իրենց իմանալը թէ վերստին ծննդենէ օտար՝ ու սրբութեան թշնամի ըլլանուն համար բնաւ մասնակից չեն անոնց, բայց և այնպէս զԱստուած տեսնելու ու փրկուելու այնչափ ակնկալութիւն ունին՝ որպէս թէ աշխարհիս ամենէն սուրբ մարդիկը ըլլային ։ Որչափ դժուարաւ յանձն կ'առնին մարդիկ, իրենց վիճակը յայտնի տեսնելէն ետև ալ, խոստովանիլ թէ "նոյն մարդն են" և ճանչնալ որ " եթէ աս վիճակին մէջ մեռնելու ըլլան, յաւիտեան պիտի կորսուին"։ Բայց երբոր յանկարծ իրենք զիրենք խաւարին երկիրը ու լափող բոցերուն մէջ գտնեն, և տեսնեն որ Աստուծոյ ներկայութենէն յաւիտեան մերժուած են, ան ատենը շատ դիւրին բան պիտի ըլլայ Աստուծոյ բարկութիւնը իրենց վրայ ըլլալը խոստովանիլ. ան ատենը պիտի ստիպուին աղաղակել ու ըսել. Ո՜վ իմ թշուառութեանս. ո՜վ յիմարութեանս. ո՜վ անբաւ ու անգիւտ կորստեանս ։

Է. Դարձեալ ան ատենը ղեկոցումներնին ալ

աւելի զօրաւոր պիտի ըլլան ։ Սրտին կարծրութիւնն է որ հիմա երկինքն ու դժոխքը թեթև բաներ կարծել կուտայ ։ Մենք անոնց յաւիտենական փառք ու յաւիտենական թշուառութիւն կը ցուցընենք, անոնք քնացող մարդիկներու պէս են. խօսքերնիս պատի զարնուած քարերու նման նորէն դէպ'ի մեզ ետ կը ցատկեն ։ Ահարկու բաներու վրայ կը խօսինք, բայց իբր թէ մեռած մարդոց ականջին. վէրքերնին կը քերենք, ու բնաւ չեն զգար. քարերու կը խօսինք մանաւանդ՝ քան թէ մարդոց. եթէ երկիրը կրնայ դողալ, անոնք ալ կը դողան ։ Բայց երբոր աս մեռած հոգիները կենդանանան, ի՛նչ սաստիկ զգացողութիւն, ի՛նչ աշխոյժ կիրքեր, ի՛նչ ահարկու սարսափ, ի՛նչ խորին տրամութիւն պիտի ունենան ան ատենը ։ Ո՛րչափ դառնութեամբ պիտի նախատեն իրենք զիրենք. ո՛րչափ սաստիկ պիտի բարկանան իրենց առջի ըրած յիմարութեանը վրայ ։ Խիստ սիրով՝ վառուած կնկան մը կոծը՝ իր ամուսնոյն մահուան վրայ, կամ շատ խանդակաթ մօր մը իր զաւկըներուն մահուանը վրայ ըրած ողբը բան մը չէ՝ ասոնց երկինքը կորսնցունելնուն համար ընելու ողբին նայելով ։ Ո՛րպիսի կատաղութեամբ աս յուսահատեալ հոգիները իրենք զիրենք պիտի ամբաստանեն ու ծեծկուին ։ Ո՛րչափ պիտի ծակեն իրենք իրենց սիրտերը, և իրենց անձին համար իրենք պիտի ըլլան Աստուծոյ դահիճները ։ Ինչպէս որ իրենց տանջուելուն պատճառը իրենք են, այնպէս ալ իրենց անձին գլխաւոր դահիճը իրենք պիտի ըլլան ։ Ու որովհետև իրենց մեղանչելուն բուն պատճառը աւելի իրենք են քան թէ Սատանան, անոր համար իրենց տանջանքներուն ալ գլխաւոր միջոց աւելի իրենք պիտի ըլլան քան թէ

Աստուածն : Ուստի որչափ երջանիկ պիտի համարէին զիրենք, եթէ կարելի ըլլար ապառաժի փոխուիլ, կամ՝ ուրիշ բանի մը որ ոչ կիրք և ոչ զգայութիւն ունի : Որչափ երջանիկ պիտի ըլլային եթէ կարող ըլլային այնպէս թեթև զգալ նոյն չարերը, որոնք հոս այնչափ թեթևութեամբ մըտիկ կ՚ընէին, կամ թէ որ կարող ըլլային քունով անցունել այն տանջանքներուն ժամանակը, ինչպէս որ անոնցմէ զգուշացունելու համար՝ տրուած քարոզներուն ատենը կ՚անցունէին : Բայց թշուառութիւննին անցաւ, ալ այն բանը չէին կրնար ըլլալ :

5. Դատապարտեալներն ալ՝ իրենց իմացողութեանն ու զգայութիւններուն չափ ընդարձակ ու զօրաւոր պիտի ըլլայ : Եթէ իրենց յիշողութեանը կիրառութիւնը կորսնցունէին՝ երկինքը կորսնցունելնին մոռնալով՝ շատ քիչ կը խռովէին : Արդարև բնաւ չէինք ըլլալը մեծ շնորհք պիտի սեպէին, բայց իրենց էութեանը բնաւ մէկ փոքր մասն անգամ՝ չեն կրնար կորսնցունել : Իմացողութիւնը՝ խիղճը՝ զգայութիւնքը՝ յիշողութիւնը՝ բոլորն ալ ողջ պիտի մնան զիրենք տանջելու համար, ուր որ աս կարողութիւնները նպաստամատոյց պիտի ըլլային իրենց երջանկութեանը : Զոր օրինակ՝ պէտք էր որ տանցմով մնունդ գտնէին Աստուծոյ սիրոյն մէջ, և անոր ներկայութեանը ուրախութիւնները մըշտընջենաւորապէս վայելէին, նոյնպէս տանցմով անոր բարկութիւնը պիտի ճաշակեն, և խաղաղ անոր երեսէն զրկուելնուն կսկիծը յաւիտեան պիտի կրեն : Հիմա պարապ ժամանակ չունին խոկալու, և ոչ ալ գալու աշխարհին բաներուն համար իրենց յիշողութեանը մէջ տեղի կայ : Բայց ան ատենը ուրիշ բան պիտի չունենան ընելու, և յիշողութիւննին տանցմէ զատ ուրիշ զբաղմունք պի-

տի չունենայ։ Աստուած կ՚ուզէր որ իրենց յաւիտենական վիճակին վարդապետութիւնը «տուներնուն սեմերուն, ձեռուըներնուն ու սրտերնուն վրայ գրուած ունենային»․ կ՚ուզէր որ զանիկայ խորհէին ու «թէ պառկած ատենին և թէ ելած ատեննին, թէ տան մէջ նստած ատեննին և թէ ճամբան գացած ատեննին զանիկայ յիշէին»։ Արդ՝ որովհետև Տէրոջը խրատը մերժեցին, անոր համար իրենց դատապարտութեանը մէջ՝ անիկայ միշտ աչքերնուն առջևը պիտի գրուի․ այնպէս զի որ կողմ որ նային՝ միշտ զանիկայ պիտի տեսնեն։ Կորսնցուցած փառքերնուն մեծութեանը վրայ խորհիլը՝ իրենց տանջանք պիտի ըլլայ։ Եթէ ստանալու բաներնին փոքր բան մ՚ըլլար, և կամ ուրիշ բանով մը ան կորուստը նորոգուիլ հնար ըլլար, մեծ բան մը չէր ըլլար։ Եթէ առողջութիւն, հարստութիւն, բարեկամ, կեանք ըլլար, կորուստը ոչինչ էր։ Բայց ո՜հ, ինչ կորուստ է ան անչափ յաւիտենական փառքին մեծութեանը կորուստը։ Դարձեալ մեծապէս պիտի տանջուին՝ երբոր խորհին թէ աս փառքը ստանալու հնարաւորութիւնը ատեն մը իրենց ձեռքն էր։ Ան ատենը պիտի յիշեն ըսելով թէ՝ «Ժամանակ եղաւ որ ես ուրիշներուն չափ յաջող էի արքայութեան համար։ Ես աշխարհի մէջ փորձի տակ դրուեցայ․ եթէ իմաստութեամբ ու հաւատարմութեամբ վարուէի, ես ալ հիմա ժառանգութիւնը առած կ՚ըլլայի։ Ես որ հիմա աս դատապարտուած դևերուն հետ կը տանջուիմ, հոն երանելի սուրբերուն հետ եղած կ՚ըլլայի։ Տէրը կեանքն ու մահը իմ առջևս դրաւ, իսկ ես մահը ընտրելով, անիկայ կրելու արժանի եղայ։ Մրցանակը առջևս դրուեցաւ․ եթէ աղէկ վազած ըլլայի, անշուշտ անիկայ ձեռք բերած

կ'ըլլայի․ եթէ ճգնած ըլլայի, յաղթութիւնը իմս եղած պիտի ըլլար․ եթէ քաջութեամբ պատերազմած ըլլայի, պսակուած պիտի ըլլայի"։ Ու աւելի աս բանը պիտի տանջէ զիրենք որ պսակը ընդունիլը ոչ միայն կարելի՝ հապա շատ հաւանական ալ էր։ Իրենց սրտին մէջը մ'ալ աս մտածութիւնը պիտի ըլլայ, որ "Ես ատեն մը Սուրբ Հոգւոյն ազդեցութիւնները ինծի օգնելու պատրաստ ունէի։ Ուրիշ մարդ ըլլալու, Քրիստոսի յարելու ու աշխարհէ հրաժարելու դիտաւորութիւնն ունէի։ Ինքզինքս բոլորովին Աստուծոյ տալու գրեթէ որոշած էի։ Ատեն մը իմ անարգ ու հրապուրիչ ցանկութիւններէս դառնալու յօժար էի․ հին ընկերներս ձգեր ու աստուածապաշտներու հետ ընկերանալ սկսեր էի։ Սակայն ետ դարձայ, թուլցայ ու դըրժեցի խոստմանս։ Արդարեւ քրիստոնեայ մը ըլլալու գրեթէ համոզուեր էի, բայց աս համոզմանս հակառակ գործեցի։ Ինչ ազդեցութիւն եղաւ սրտիս մէջ, երբոր հաւատարիմ պաշտօնեայ մը ճշմարտութիւնը կը ջատագովէր։ Որչափ մօտ էի ես երբեմն երկինքին, գրեթէ ձեռքս էր, բայց հիմա կորսնցուցած եմ։ Եթէ յարատեւած ըլլայի Տէրը խնդրելու, հիմա երջանիկ պիտի ըլլայի սուրբերուն մէջ"։ Դարձեալ մեծ ցաւ պիտի ըլլայ իրենց կորսնցուցած պատեհութիւններնին յիշելը։ "Քանի քանի շաբաթներ, ամիսներ և տարիներ կորսնցուցի, որ եթէ յօգուտ գործածէի, հիմա երջանիկ եղած կ'ըլլայի։ Ի՜նչ թշուառ եմ եղեր, չէ՞ի կրնար ժամանակ գտնել սորվելու ան գործը որուն համար ինծի տրուած էր բոլոր իմ ժամանակս․ իմ բոլոր աշխատութիւններուս մէջ չէ՞ի կրնար գտնել ժամանակ մը որ յաւիտենականութեան համար աշխատէի։ Ժամանակ ունէի ու-

ուտելու, խմելու, քնանալու. իսկ հոգիս փրկելու ժամանակ չունէի՞։ Զբօսանքի և ունայն խօսքերու ժամանակ ունէի, բայց աղօթքի համար ատեն չունէի՞։ Աշխարհը շահելու համար բաւական ժամանակ գտայ, իսկ երկնաւոր ժառանգութեանս համար ջանք ընելու ատեն չգտայ՞։ Ո՜վ պատուական ժամանակ։ Ատեն մը քսա բաւականին ունէի, հիմա՝ այլ ես պիտի չունենամ։ Ատեն մը այնչափ ժամանակ ունէի, որ չէի գիտեր ինչպէս անցունեմ. բայց հիմա գնաց ու ալ ետ չդառնար։ Երանի՜ թէ ան տարիներուն միայն մէկը նորէն ունենայի՝ կրկին ապրելու համար. ինչպէս շուտով զղջում պիտի ընէի, ինչպէս մտադիւր պիտի աղօթէի, որչափ յօժարութեամբ ունկնդրութիւն պիտի ընէի, ինչպէս զգուշութեամբ իմ վիճակս պիտի քննէի, ինչ ճշդութեամբ պիտի ապրէի. բայց աւա՜ղ, հիմա շատ ուշ է, շատ ուշ"։ Աս ալ պիտի աւելցունէ իրենց տառապանքը երբ որ մտքերնին բերեն թէ քանի քանի անգամ դարձի գալու խրատուեցան։ Ինչպէս կը փափաքէր Աւետարանին պաշտօնեան որ ես աս տանջանքներէն զերծ ըլլայի. որչափ սիրով ու կարեկցութեամբ կ'աղաչէր ինծի, ու ես ծաղր կ'ընէի. որչափ ստէպ կը յաղթահարեր զիս, բայց ես ան ապացոյցներուն դէմ կ'ըմբոստանայի. ինչպէս իմ առջևս կը դնէր իմ սիրտս, բայց ես իմ վատթարութիւնս ճանչնալու կը դժկամակէի։ Ինչ ուրախ պիտի ըլլար, եթէ տեսնելու ըլլար իմ մտադիւր Քրիստոսի դառնալս։ Իմ բարեպաշտ բարեկամներս խրատեցին զիս. անոնք ըսին ինծի թէ աս իմ յամառութեանս ու հեղգութեանս վերջը ինչ պիտի ըլլայ. բայց ես ոչ հաւատացի՝ ոչ ալ բանի տեղ դրի։ Որչափ ատեն Աստուած ին-

քը զիջու իզմէ խնդրելու որ իրեն դառնամ։ Սուրբ Հոգին կը կռուէր իմ սրտիս հետ երբ թէ կը դժուարէր իզմէ հրաժարիլ։ Ի՛նչպէս Քրիստոս դուռը կեցած կը զարնէր շաբաթէ շաբաթ աղաղակելով 'բա՛ց մե՛ղաւոր, բա՛ց սիրտդ քու փրկչիդ, ներս մտնեմ ու քեզի հետ ընթրիք ընեմ և դուն ինծի հետ'։ Ինչո՞ւ կը յապաղիս. տակաւին ո՞րչափ ատեն քու ունայն խորհուրդներդ տեղի պիտի ունենան քու վրադ։ Չե՞ս ուզեր որ թողութիւն գտնես, սրբանաս ու երջանիկ ըլլաս։ Ե՞րբ արդեօք պիտի ըլլայ աս բանը"։ Ա՛հ, այսչափ Աստուածային յորդորանքներու յիշատակը ինչպէս անհնարին ցաւամբ պիտի զայրացունէ դատապարտեալները իրենց անձին դէմ։ "Մի՞թէ արժա՞ն էր ինծի որ Քրիստոսի երկայնմտութիւնը սպառել տայի։ Կը վայլէ՞ր որ երկնաւոր Աստուածը վայրապար ետեւէս աղաղակէր՝ զիջա՛, դարձի՛ր, մինչև որ ալ ձանձրանար իզմէ։ Ա՛վ՝ ի՛նչպէս արդարութեամբ ան համբերութիւնը հիմա դարձած է 'ի բարկութիւն, զորն որ անհակառակելի ուժգնութեամբ վրաս կը հեղու։ Երբոր Տէրը կ'աղաղակէր ինծի, 'Չե՞ս ուզեր մաքուր ըլլալ՝, ե՞րբ պիտի ըլլայ ուրեմն ասիկայ. իմ սիրտս կամ մանաւանդ գործքերս կը պատասխանէին, բնաւ։ Եւ հիմա երբոր ե՛ս կ'աղաղակեմ, 'Ե՞րբ պիտի ազատիմ աս տանջանքէն', ո՛րչափ իրաւամբ նոյն պատասխանը կ'ընդունիմ, բնա՛ւ, բնա՛ւ"։

Մեծ ցաւ պիտի ըլլայ դարձեալ յիշելը թէ ինչ դիւրին միջոցներով կրնային աս թշուառութենէ ազատիլ։ Աս գործքը լեռներ դղրդել չէր՝ և ոչ թագաւորութիւններու տիրել, ոչ օրէնքը ամենէն փոքր պայմաններովը կատարել՝ կամ ըրած օրինազանցութիւններնուն փոխարէն արդարութիւնը ը-

նուլ։ «Խաղցր էր ան լուծը ու թեթև ան բե-
ռը» զորն որ Քրիստոս կ՚ուզէր վրանին դնել. բանը՝
զղջալ ու գինքը իբրև իրենց Փրկիչը մտադիւր
ընդունել էր. ուրիշ ամէն երջանկութիւններէ
հրաժարիլ, ու Տէրը իրենց գերագոյն բարին ընել.
աշխարհն ու մարմինը լքանել, ու անոր հեզ և բա-
րի կառավարութեանը հպատակիլ. իրենց մտքին
ճամբաները ձգել, ու անոր սուրբ ու զուարճալի
ճամբուն մէջ քալել։ «Ա՛հ» կ՚ըսէ տառապեալ
թշուառականը «ի՛նչպէս իրաւամբ կը կրեմ աս ա-
մէն բաները՝ ես որ և ոչ փոքր մի նեղութիլ յանձն
կ՚առնէի աստնցմէ ազատ մնալու համար։ Խել-
քըս ո՞ւր էր երբոր ան շնորհալի կոչմանը անփոյթ
էի, երբոր զԱստուած 'խիստ Տէր' կը կոչէի, անոր
քաղցր ծառայութիւնը՝ գերութիւն, ու Սատանային
ու մարմնին ծառայութիւնը միայն ազատութիւն
կը համարէի։ Նիւրապատիկ վատթար չէ՞ր յիմա-
րէ մը՝ երբոր Աստուծոյ սուրբ ճամբաները իբրև
անպիտան ճշդութիւններ կ՚անարգէի, Քրիստո-
սի օրէնքները չափէ դուրս խիստ կը կարծէի, իսկ
իմ ըրածներս հանդերձեալ կենաց համար՝ շատ
ու բաւական։ Քրիստոսի և բարեգործութեան
համար ամէն նեղութիւն ի՞նչ պիտի ըլլայ համե-
մատութեամբ աս տանջանքներուն, որոնք հի-
մա յաւիտեան պիտի կրեմ։ Մի՞թէ կորսնցու-
ցած երկինքս բոլոր իմ վնասներուս փոխարէն
վճարք մը չէ՞ր ըլլար։ Եւ իմ բոլոր նեղութիւն-
ներս հոն պիտի չմոռցուէի՞ն։ Ի՞նչ կրնայի ընել
եթէ Քրիստոս ինծի աւելի մեծ բան մը ընել
հրամայած ըլլար. զոր օրինակ անդադար երկիւղի
ու տրտմութեան մէջ ապրիլ՝ կամ բիւր անգամ
մահ կրել. աս բաները ընելու չէի՞։ Ուրեմն որ-
չափ և ս առաւել երբոր միայն կ՚ըսէր. 'Հաւատա

և փրկուէ․ խնդրէ՛ իմ երեսս, ու քու հոգիդ պիտի ապրի։ Խաչդ ա՛ռ և իմ ետևէս եկուր, և ես քեզի յաւիտենական կեանք տամ'։ Ո՜վ քաղցր հրաւէր։ Ի՜նչ դիւրին պայման։ Ո՜վ թշուառութեանս, որ չէի ուզեր համոզուիլ զանոնք ընդունելու"։

Դառնակսկիծ խորհրդածութիւն մ'ալ պիտի ըլլայ յիշելը թէ ինչ գնով ծախեցին իրենց յաւիտենական բարօրութիւնը։ Երբոր մեղքին հաճոյքներուն արժէքը՝ "վարձքին հատուցմանը" արժէքին հետ համեմատեն, ան մեծ անհամեմատութիւնը որչափ պիտի զարմացունէ զիրենք։ Ա՛րտածելով մարմնոյ նուաստ հեշտութիւնները՝ կամ մարդիկներուն գովութեան շունչը՝ կամ դեղ դեղ ոսկի ունենալը՝ յետոյ յաւիտենական փառքն ալ խորհելով, ամէն մէկը պիտի ըսէ․ "Հոգիս, Աստուծոյս ու երանութեան յոյսերուս տեղը աս բաները ունէի"։ Աննկարելի է բացատրել թէ որչափ պիտի դառնացունեն սիրտը աս խորհուրդները։ Ատենը իրենց յիմարութեանը մեղադիր պիտի ըլլան, ըսելով․ "Ո՜վ ողորմելի յիմար՝ այսպիսի նուաստ գնով վաճառելո՞ւ էի հոգիս։ Քիչ մը հողի ու ժանկի համար իմ Աստուածս տալո՞ւ էի․ և իմ փրկիչս Յուդայի պէս քիչ մը արծաթի վաճառելո՞ւ էի։ փոխանակ երկնաւոր յոյսերուս, հեշտալի երազ մը տեսայ․ հիմա արթնցայ՝ և ահա բոլորն ալ անհետ եղաւ։ Աներակուրս թոյնի դարձաւ, ու բաժակս դառնութեան։ Երբոր ճաշակելս անցաւ, հաճութիւնն ալ վերջացաւ։ Ա՞ս է ուրեմն բոլոր ունեցածս ան անգին գանձին փոխարէն։ Ի՜նչ յիմարական առուտուր էր որ ըրի։ Բոլոր աշխարհ ալ շահէի՝ ի՜նչ օգուտ էր, երբոր հոգիս կորսնցուցի։ Բայց եղո՜ւկ․ աշխարհիս շատ փոքր մասին

համար տունի իմ փառքի մէջ ունենալու մասս"։ Երանի՛ թէ մեղաւորները խորհին աս բանը մինչ-գեռ մարմնոյ հեշտութիւններուն մէջ կը լողան, աշխարհի մէջ հարուստ ու պատուաւոր ըլլալու կը ջանան, յուսահատաբար կամովին օրինազանցու-թիւններ կ'ընեն ու խղճերնուն դէմ կը մեղանչեն։

Դարձեալ՝ աւելի եւս պիտի սոսկանայ իրենց սրտին մտմտքը երբոր խորհին թէ իրենք իրենց յօ-ժար կամքովը իրենց կործանումը բերին։ Եթէ բռնադատուած ըլլային մեղանչելու, սրտերնուն զայ-րոյթը այնչափ սաստիկ պիտի չըլլար. կամ եթէ ու-րիշի մը յանցանքներուն համար պատժուէին, կամ եթէ իրենց կործանմանը գլխաւոր պատճառը ու-րիշ մը եղած ըլլար Իրենց յատուկ կամքին ընտ-րութեանը՝ եւ ոչ թէ ուրիշի մը ստիպելովը մեղք գոր-ծեցին, աս խորհուրդը զիրենք կարեվէր պիտի խո-ցէ։ Ան ատենը տառապելով՝ հոգին պիտի խորհի ը-սելով. "Աշխարհի մէջ բաւական թշնամի չու-նէի՞ որ ես ինքնին իմ թշնամիս եղայ։ Աստուած այնպիսի կարողութիւն մը չտուաւ իմ վրաս՝ ոչ Սա-տանային եւ ոչ աշխարհի՝ որ կարող ըլլային փոքր զանցառութիւն մ'անգամ ընելու զիս բռնա-դատել. Անոնք կրնային զիս դրդել, բայց ես ինքս էի որ հաւանութիւն կուտայի ու չար կը գործէի։ Պէ՞տք էր որ ես հոգիս չխնայելով իմ յատուկ արիւնովս շաղախէի իմ ձեռքս Ոչ ոք իզմէ աւելի մեծ թշնամի եղած է ինծի։ Ինչ բարի բան որ առաջարկեց Աստուած ինծի, անո-նուն դէմ կեցայ. Աստուած իմ վրաս ողորմու-թիւններ կուտեց, փրկութիւն փրկութեան վրայ աւելցուց սիրտս իրեն ձգելու համար։ Դարձեալ մեղմ կերպով մը պատժեց զիս, ու իմ անհնազան-դութեանս արդիւնքներուն տակը հեծել տուաւ

իս և Թէպէտև վիշտերուս մէջ մեծամեծ խոստումներ ըրի, սակայն երբեք անկեղծութեամբ իրեն ծառայել չուզեցի": Այսպէս պիտի հալի ու մաշի այս մեղաւորներուն սիրտը, յիշելով թէ իրենց կորըստեանը պատճառը իրենք եղան. ու կամաւ և յամառութեամբ իրենց ապստամբութեանը մէջ մնացին, բայց Սատանային ծառայութեանը յօժարամիտ էին:

Խղճերնուն մէջ եղած վէրքը աւելի խորունկ պիտի ըլլայ՝ երբոր յիշեն թէ ոչ միայն իրենք ըրին այս բանը, հապա նաև շատ ջանք ու ներողութիւններ յանձն առին իրենց դատապարտութեանը համար: Ի՞նչ մեծամեծ գործքերու ձեռնամուխ եղան իրենց կորուստը գլուխ հանելու համար: Աստուծոյ Սուրբ Հոգւոյն հակառակելով, ողորմութեան, դատաստանի, Աստուծոյ Խօսքին անգամ ներգործութիւնը խափանելով, բանականութեան զօրութեանը յաղթելով ու խղճերնին լռեցունելով: Բոլոր այս բաներն ընելու ձեռնամուխ եղան ու գլուխ տարին: Թէպէտ Աստուծոյ բարկութեանը հանապազորդ վտանգին մէջ կը քալէին, և գիտէին թէ վայրկեանի մը մէջ կարող է զիրենք հողը դնել ու դժոխք նետել, 'ի վերայ այսր ամենայնի ուզեցին կորսուիլ: Ի՞նչ աշխատութիւն է որ մեղաւորները դատապարտուելու համար յանձն կ'առնեն: Զափաւորութիւնը՝ առողջութեան ու հանգստութեան հետ աւելի դիւրագին կրնային ստանալ, սակայն յաւէտ որկրամոլութիւնն ու արբեցութիւնը ընտրեցին՝ աղքատութեան, անարգանաց ու հիւանդութեան հետ: Կրնային գոհութիւն ունենալ՝ ու հանգիստ ու զուարթ ըլլալ. բայց անոնք առաւել ագահութիւնն ու փառասիրութիւնը սիրեցին, թէև իրենց հո-

գերու և երկիւղներու, մարմնոյ խոնջութեան ու
մտքի տատամսութեան պատճառ եղան։ Թէ-
պէտև ոխակալութիւնը իրենք զիրենք կը տանջէ,
ու վրէժխնդրութիւնն ու նախանձը մտքերնին կը
մաշեցունէ, թէպէտև ողջութիւնը մարմիննին,
ստացուածքնին ու բարի անուննին կ'եղծանէ,
բայց և այնպէս աւելի կ'ընտրեն աս բաներն ընել
ու ան վիշտերը կրել, քան թէ թողուլ որ հոգի-
նին փրկուի։ Որպիսի կատաղութեամբ պիտի ող-
բան իրենց յիմարութիւնն ու ըսեն, «Այսչափ տա-
ռապանք ու հոգ կ'աժէ՞ր արդեօք դատապարտու-
թիւնը։ Ձրի չէ՞ր կրնար կորսուիլ, որ այսչափ
ծանրագնի տուի իմ դատապարտութիւնս։ Ես
կը կարծէի որ առանց այսչափ աշխատութեան կըր-
նայի փրկուիլ, չէ՞ր կրնար առանց այսչափ աշխա-
տութեան կորսուիլ։ Այսչափ աշխատութիւն յանձն
առնել պէ՞տք էր իմ դատապարտութիւնս գործե-
լու համար, երբոր Աստուած կը պատուիրէր ին-
ծի որ 'իմ փրկութիւնս գործեմ'։ Եթէ գժոխքի
համար ըրածիս չափ երկինքի համար ըրած ըլլա-
յի, անշուշտ ստացած կ'ըլլայի։ Ես որ Աստուած-
պաշտութեան ձանձրալի ճամբէն, ու անձնու-
րացութեան տաժանելի ընթացքէն կը գանգա-
տէի, շատ աւելի աշխատութիւն յանձն առի
Սատանային ու մահուան համար։ Եթէ այնպէս
սերտիւ սիրած ըլլայի Քրիստոսը՝ որչափ որ իմ
հեշտութիւններս, շահս ու պատիւս սիրեցի, և
որչափ ասոնց համար կը խորհէի ու կը ջանայի՝
նոյնը անոր համար ըրած ըլլայի, ո՜հ, որչափ երջա-
նիկ պիտի ըլլայի հիմա։ Ինչպէս իրաւամբ կը
կրեմ ես գժոխքին բոցերը՝ զանոնք այնչափ թան-
կագնի առած ըլլալուս համար, աւելի զանոնք
ընտրելով քան թէ երկինքը՝ որն որ արդէն ինծի

համար ծախու առնուած էր"։

Երանի թէ Աստուած համոզէր քեզ՝ ընթերցող, որ հիմա աս բաներուն վրայ մտածեցիր. չըլլայ թէ դժոխքի մէջ անոնց վրայ խորհելու անհնարին տառապանքը վրադ գայ, ուր աս մտածութիւնները քեզի պատիժ պիտի ըլլան։ Մի՛ ըսեր թէ ասոնք լոկ երեւակայական են։ Արդեամբ, ահա ինչ խորհեցաւ մեծատունը երբոր տանջանքներուն մէջն էր։ Բնական հոգին բանական կարողութիւններով ինչպէս որ երկինքին ուրախութիւնները կը վայելէ, նոյնպէս ալ դժոխքին տառապանքները պիտի զգայ։ Ինչպէս որ միշտ մարդիկ են, նոյնպէս ալ մարդու պէս պիտի զգան ու մարդու պէս պիտի գործեն։



## ԳԼՈՒԽ Զ.

Անոնց թշուառութիւնը, որոնք բոլ՚ի կորսնցունելէն երկնից հանգիստը, ժամանակաւոր վայելքներն ալ կը կորսնցունեն ու դժոխքին տանջանքները կը կրեն։

Զոր օրինակ աստուածպաշտութիւնը այժմեան ու հանդերձեալ կենաց խոստումները ունի, ու թէ որ մենք "նախ Աստուծոյ թագաւորութիւնը խնդրենք և անոր արդարութիւնը" ուրիշ ամէն [illegible] "բաները մեզի պիտի տրուին", նոյնպէս ալ ամբարիշտներուն սպառնալիք կայ որ պիտի զրկուին թէ՛ հոգեւոր և թէ մարմնաւոր օրհնութիւններէ. և [illegible] "նախ Աստուծոյ թագաւորութիւնն

11 Թ

ու արդարութիւնը չխնդրեցին", վասնորոյ պիտի կորսնցունեն զանի ալ ու խնդրածնին ալ, և հոն իրենց "ունեցած քիչն ալ պիտի առնուի իրենցմէ" ։ Եթէ իրենց ներկայ վայելումները կարող ըլլային պահել, երկինքը կորսնցուցած ըլլալնուն այնչափ հոգ պիտի չընէին ։ Եթէ ամէն "բանէ զրկուած ու ամէն բան թողուցած" ըլլային Քրիստոսի համար, ամէն բան կրկին պիտի գտնէին անով, ինչու որ ան պիտի ըլլար իրենց ամենայն յամենայնի ։... Բայց իրենք Քրիստոսը թողուցին ուրիշ բաներու համար, անոր համար ալ պիտի զրկուին Քրիստոսէն և բոլոր ան բաներէն ալ որոնց համար Քրիստոսը թողուցին, այսինքն դժոխքին տանջանքը կրելէն զատ ժամանակաւոր վայելումներն ալ պիտի կորսնցունեն ։

Նոյն. պիտի կորսնցունեն ժամանակաւոր վայելումները մասնաւորապէս, այսինքն Քրիստոսի արժանաւորութեանը և Աստուծոյ շնորհացը մէջ իրենց մասն ու բաժին ունենալուն յանձնապաստան ակնկալութիւնը, բոլոր յոյսերնին, խիղճերնուն սուտ խաղաղութիւնը, բոլոր իրենց մարմնաւոր ուրախութիւնները, ու բոլոր զգայական հեշտութիւնները ։

1. Պիտի կորսնցունեն Քրիստոսի արժանաւորութեանը և Աստուծոյ շնորհացը մէջ իրենց մասն ու բաժին ունենալուն յանձնապաստան ակնկալութիւնը ։ Այս սուտ ակնկալութիւնը հիմա կը պահէ իրենց հոգին՝ ու կը պաշտպանէ ան տագնապներէն որոնք պիտի պաշարէին զիրենք՝ եթէ ան ակնկալութիւնը չունենային ։ Բայց ինչ բան պիտի թեթեւցունէ իրենց վիշտը, երբոր ալ կարող չըլլան ան ակնկալութիւնը ունենալ և ուրախ ըլլալ ։ Եթէ մէկը մեծ ձախորդութեան մը մէջ ըլլայ, ամենայն հաւա-

տաս կարծէ թէ տարաՀոլութեան մէջ է, այնչափ զուարթ կ'ըլլայ որչափ եթէ ամէն բան յաջող ըլլար ։ Եթէ մարդը երջանիկ ըլլալու Համար ուրիշ բան մը չպաՀանջուէր՝ բայց եթէ կարծել թէ երջանիկ է կամ պիտի ըլլայ, երջանկութիւնը շատ աւելի Հասարակ բան մը պիտի ըլլար քան որչափ է ։ Ինչպէս որ ճշմարիտ Հաւատքը Նորոգուածներուն գլխաւոր շնորՀքն է, այնպէս ալ սուտ Հաւատքը չնորոգուածներուն գլխաւոր մոլութիւնն է ։ Որչափ բազմութիւն՝ որ կարող էին ներում գտնել, ինչո՞ւ Համար այնպէս Հանդարտ կը կենան ։ որովՀետեւ կը կարծեն թէ իրօք ներում գտած են ։ Եթէ դժոխքի մէջ Հազարաւոր մարդկան Հարցուի, թէ ի՞նչ յիմարութիւն զիրենք Հոն բերաւ, անոնցմէ խիստ շատը պիտի ըսեն թէ, "Մենք մեր փրկուած ըլլալուն վստաՀ էինք, մինչեւ որ ինքզինքնիս դատապարտուած գտանք ։ Աւելի եռանդով պիտի փնտռէինք աստուածպաշտութեան զօրութիւնը եւ վերստին ծնունդը, բայց մենք մեզ արդէն ճշմարիտ քրիստոնեաներ կը կարծէինք ։ Ինքզինքնիս խաբելով աս տանջանքներուն Հասանք, եւ Հիմա ալ դարման չկայ"։ Ընթերցող, իմ պարտքս է Հաւատարմութեամբ քեզի ըսել, որ ան վստաՀ Համարումը որով անՀոգ, անտարբեր ու բարձրամիտ բազմութիւնը տարապարտ կը պարծենայ թէ աղէկ վիճակի մէջ են, Հոգեկորուստ խաբէութեան մը մէջ ըլլալնին կը ցուցընէ ։ Աս Համարումը չկայ դժոխքին մէջ ։ Սատանային որոգայթն էր ան, որպէս զի կուրանալով աւելի Համարձակ իրեն Հետեւին, բայց երբ աչուըննին պիտի բանայ եւ ուր ըլլալնին պիտի տեսնեն ։

Զ. Պիտի կորսնցունեն նաեւ բոլոր յոյսերնին ։

Աս կեանքիս մէջ թէպէտ Աստուած իր բարկու-
թիւնը սպառնացած էր անոնց, սակայն անկէ ա-
զատելու յոյսը տակաւին կը զօրացունէր սիրտեր-
նին : Ամենէն յետին գինեմոլը կամ հայհոյիչը
կամ ծաղրածուն, հետը խօսելու ըլլանք, կը տես-
նենք՝ որ բոլոր աս մեղքերուն թողութիւն գտնել
և փրկուիլ կը յուսայ : Երջանիկ կ'ըլլար աշխարհ
եթէ փրկութիւնը աս յոյսին չափ հասարակ ե-
ղած ըլլար : Մանաւանդ այնչափ զօրաւոր են
մարդոց աս յոյսերը, որ Քրիստոսի հետ անգամ
պիտի վիճին դատաստանին օրը . ու "անոր առջևը ու-
տելնին ու խմելնին, անոր անունովը մարգարէա-
նալնին ու դևեր հանելնին" պատճառանք պիտի
բերեն . և բոլոր ուժովնին պիտի ուրանան թէ
մենք երբեք զՔրիստոս անօթութեան, մեր-
կութեան կամ բանտի մէջ լքեալ չթողուցինք .
բայց Քրիստոս անոնց դատապարտութեանը վճ-
ռովը վանոնք յամօթ պիտի ընէ : Ի՞նչ տխուր
պիտի ըլլայ աս մարդիկներուն վիճակը, երբոր ի-
րենց բոլոր յոյսերէն հրաժարելու ստիպուին : "Եր-
բոր չարը մեռնի, անոր ակնկալութիւնն ալ հետը
պիտի կորսուի . և անօրէններուն յոյսը կը կոր-
սուի : Ամբարիշտներուն աչուըները պիտի նուա-
ղին, պիտի չկրնան ազատիլ, ու յոյսերնին հոգե-
վարութիւն պիտի ըլլայ" : Հոգեվարութիւնը մէկ
յարմար բայց ահարկու նմանութիւն մըն է անզգամ
մարդուն իր յոյսերէն զրկուելուն : Ինչպէս որ
հոգին մարմինէն առանց մեծ ցաւի չբաժնուիր,
անզգամին յոյսն ալ այնպէս պիտի ըլլայ : Հո-
գին յանկարծ վայրկենի մը մէջ կ'ելլէ ան մար-
մինէն ուր այնչափ տարի ուրախութեամբ բնա-
կեր էր . ճիշդ այսպէս կը բաժնուի անզգամին ալ
յոյսը : Հոգին երբեք պիտի չդառնայ ապրելու

մարմիններն հեռու այս աշխարհիս մէջ. անզգամին յոյսն ալ յաւիտենական հրաժեշտով կը մեկնի հոգիէն ։ Յարութեան սքանչելիքը դարձեալ պիտի միաւորէ հոգին ու մարմինը, բայց այսպիսի սքանչելի յարութիւն մը պիտի չըլլայ դատապարտելոց յոյսին ։ Ինծի կ՚երևի թէ այս աշխարհիս ամենէն ողորմելի տեսարանը ամբարիշտ մարդուն մահը տեսնելն ու անոր հոգւոյն ու յոյսերուն միատեղ անհետ ըլլալուն վրայ խորհելն է ։ Ի՛նչ տխուր փոփոխութեան մէջ պիտի տեսնուի միւս աշխարհին մէջ ։ Այն ատենը եթէ մարդ կարող ըլլար հարցունել ան յուսակտուր հոգիին, թէ "փրկութեան վրայ հիմա՛ նոյն վստահութիւնը ունի՞ս այն որ երբեմն ունէիր", որպիսի տխուր պատասխան պիտի տանէր ։ Երանի՜ թէ անհոգ մեղաւորները ժամանակին արթննային ու խորհէին այս բանին վրայ ։ Ը՛նթերցող՝ մի՛ հանգչիր մինչև որ կարող ըլլաս Սուրբ Գրոց խոստմունքներուն վրայ հիմնուած ապացոյց ունենալ բոլոր յոյսերուդ, այսինքն երբոր քու սիրտդ մաքրուի, աստուածպաշտութեան մէջ ըրած ջանքերըդ զօրանան, ու որչափ աւելի յուսաս՝ այնչափ քիչ մեղանչես և հնազանդութիւնդ աւելի ճիշդ ըլլայ ։ Եթէ քու յոյսերդ այսպէս ըլլան, յառա՜ջ գնա Տէրոջը զօրութեամբը, ամուր բռնէ յոյսդ, և "ան բնաւ պիտի չամըչցունէ քեզ" ։ Բայց եթէ շնորհքին քու հոգւոյդ վրայ ազդեցութիւն ընելուն ստոյգ վկայութիւն մը չունիս՝ մեկդի՛ ըրէ յոյսերդ ։ Մի՛ յուսար ամենևին որ պիտի փրկուիս եթէ "վերստին չծնանիս", և ոչ յոյս ունենաս թէ "պիտի տեսնես զՏէր առանց սրբութեան" կամ թէ "Քրիստոսի հաճելի կրնաս ըլլալ, թէ որ անփիկայ հօրմէդ մօրմէդ ու քու կեանքէդ աւելի չսիրես. այս ունայն յոյսերդ

կարէ ։ Սա տեսակ յուսահատութիւնը երկինք եր-
թալուն առաջին քայլն է ։ Եթէ մէկը իր ճամ-
բէն խոտորած ըլլայ, նորէն ճամբան բռնելու հա-
մար անիկայ՝ աղէկ բանը ինչ է ։ Սա գացած
ճամբուն իր ճանապարհորդութեան վախճանին
հասնելէն յուսահատելու է ։ Եթէ իր հայրենի-
քը արեւելք է, ու ինքը դէպ արեւմուտք կ՚երթայ,
քանի որ կը կարծէ թէ իր գացած ճամբան շի-
տակ է, յառաջ կ՚երթայ. և որչափ նոյն յուսով
յառաջ կ՚երթայ, նոյնչափ աւելի կը մոլորի ։ Իսկ
երբ որ կը յուսահատի տեսնելով թէ առանց ետ
դառնալու այլեւս չկրնար հայրենիքը հասնիլ՝ ետ
կը դառնայ, ու կրնայ նորէն յուսալ ։ Ճիշդ այս-
պէս է ո՛վ մեղաւոր քու հոգիդ ալ ։ Երկինքին
ճամբէն խոտորած ես, և սարփներով ան մոլար
ճամբով յառաջ գացած ես ։ և այնպէս կը շա-
րունակես ու կը յուսաս որ ուրիշ շատերու պէս
չար չըլլալուդ համար պիտի փրկուիս ։ Եթէ ան
յոյսերը մէկդի չձգես և չտեսնես որ երկինք տա-
նող ճամբէն բոլորովին խոտորած ես, բնաւ պի-
տի չդառնաս որ փրկուիս ։ Չկայ բան մը աշխար-
հիս մէջ որ քու հոգիդ երկինքին ճամբէն այնպէս
ետ բռնէ, ինչպէս ան սուտ յոյսը որ ունիս թէ
փրկութեան ճամբէն խոտորած ըլլալով պիտի փըր-
կուիս ։ Տես ուրեմն որչափ ատ բանը պիտի սաստ-
կացունէ դատապարտելոց թշուառութիւնը, որ
երկինքը կորսնցունելով պիտի կորսնցունեն նաև
բոլոր յոյսերնին, որ հիմա զիրենք կը մխի-
թարէ ։

3. Պիտի կորսնցունեն իրենց ան սուտ խաղաղու-
թիւնն ալ որ իրենց ներկայ կեանքը անցաւալի կ՚ընէ ։
Տեսնելով որ ամբարիշտներու բարգաւաճութիւնը հան-
գըստութեամբ կ՚անցնի, ո՛վ կը կարծէ թէ քիչ

ժամանակէ եւեւ յաւիտենական բացերու պիտի մնանանք։ Հնազանդ հաւատացեալներու պէս դժոխքին երկիւղէն անկասկած են ու հաստատակարէն մտքերնուն առաջնորդը՝ փրկութեան մանրքննե-րուն անցած առաջնորդէն շատ նուազ է։ Նրա-նցի էին՝ եթէ աս խաղաղութիւնը հաստատուն ու տեւական ըլլայ։ “Կրօնը ըսելու ըլլամ՝ թէ խաղաղութիւն ու ապահովութիւն է, ան ատենը կորուստը յանկարծակի անոնց վրայ պիտի հասնի յղիին երկունքը պէս, ու պիտի չազատին”։ Ի՜նչ անգութ խաղաղութիւն, որուն վախճանը այսպիսի պատերազմ է։ Այն մարդուն հոգին ՚ի բընէ Սատանայէն առնուցն է. անոր բան խաղաղ է այնպիսի մարդու մը մէջ մինչեւ որ Քրիստոս կու գայ, եւ դատաստանի ու դժոխքի ահը կու տայ, կը ջախջախէ անիկայ իր սպառնալիքներուն ու սոսկումներուն թնդանօթներովը, կը բանադատէ զինջանիլ լոկ իր ողորմութեանը եւ անիկայ ճանչնալ իբրեւ իր իշխանը. երբը Սատանան անկէ կը վանէ եւ “անիկայ յաղթելով անոր զէնքերը կ'առնէ՝ որոնց կինքը յուսացեր էր, եւ անկէ առած կողոպուտը կը բաժնէ”. եւ ան ատենը հաստատուն ու տեւական խաղաղութիւն մը կը հաստատէ։ Ուստի թէ որ տակաւին ան աղէկ խաղաղութեան մէջն ես, բնաւ մի՛ յուսար որ պիտի տեւէ։ “Քանզի որ թշնամի ես Քրիստոսի՝ քու հոգիդ մշտական խաղաղութիւն մը կրնա՞յ ունենալ։ Կրնա՞յ խաղաղութիւն ունենալ ան՝ որուն դէմ Աստուած պատերազմ կը հրատարակէ։ Չեմ կրնար քեզի մեծագոյն բարիք մը մաղթել, բայց եթէ որ Աստուած քու անհոգ սրտիդ վրայ յարձակի ու ան սուտ խաղաղութիւնը խախտէ, եւ տայ քեզի Քրիստոսի ոտքն իյնալ ըսելով, “Տէր՝ ի՞նչ կ'ուզես որ ընեմ”, եւ

այսպէս ընդունիս անկէ այնպիսի լաւագոյն ու անկասկած խաղաղութիւն մը, որ երբէք չքայքայի, այլ քու յաւիտենական խաղաղութեանդ սկզբնաւորութիւնն ըլլայ, ու աշխարհի անհիմն խաղաղութեանը պէս քու մահուանդ ատենը չկորսուի։

4. Գիտի կորսնցունեն բոլոր իրենց մարմնաւոր ուրախութիւնները։ Իրենք իրենցմէ պիտի ըսեն «ծիծաղին համար թէ յիմար է, և ուրախութեան համար թէ ասոր ըրածը ինչ է»։ «Կաթսային տակը շառաչող փուշերուն պէս է»։ Քիչ մը ատեն կը փայլի, բայց շուտ կ'անցնի, ու ալ ետ չդառնար։ Մահուան ու դատաստանի վրայ խօսիլը անհաճոյ էր անոնց, ինչու որ ուրախութիւննին կը սանձէր։ Իրենց մեղքին ու վտանգին վրայ խորհիլ չէին ուզեր, ինչու որ աս խորհուրդները հոգինին կը նուաղեցունէին։ Մեղքի համար լալը, կամ ինքզինքը Աստուծոյ կարող ձեռքին տակը խոնարհեցունելն ինչ է չէին գիտեր։ Տրամութեան վրայ կը ծիծաղէին, հոգերը կը ծաղրէին, այսպիսի սեւամաղձոտ խորհուրդները կը վանէին։ Կը կարծէին թէ մտածութիւնն ու աղօթքը զիրենք թշուառ պիտի ընէ ու յիմարեցունէ։ Խեղճ հոգիներ, ի՛նչ թշուառ պիտի ըլլայ ան կեանքը, ուր ուրիշ բան պիտի չունենաք, բայց եթէ տրտմութիւն, սաստիկ՝ սրտառուչ ու բազմապատիկ տրտմութիւն, ուր ոչ սրբոց ուրախութիւնը պիտի ունենաք և ոչ ձեր առջի մեղկութիւնները։ Կը կարծէք թէ կը գտնուի՞ գժոխքի մէջ ուրախ սիրտ մը, կամ զուարթ դէմք մը, կամ զուարճախօս լեզու մը։ Հիմա կ'աղաղակէք թէ «քիչ մը ուրախութիւնը շատ տրտմութիւն կ'արժէ»։ Բայց անշուշտ քիչ մը ըստ Աստուծոյ տրտմութիւնը, որուն վերջը յաւիտենական ուրախութիւն է, աւելի կ'արժէ

քան թէ ձեր բոլոր յիմարական ուրախութիւն-ները, քանզի այնպիսի ուրախութեան վերջը տըրտ-մութիւն է։

5. Պիտի կորսնցունեն նաև բոլոր իրենց շքե-ղական հեշտութիւնները։ Ան բանն որ իրենց գե-րագոյն բարին՝ իրենց երկինքը՝ իրենց Աստուածը կը համարէին, պիտի կորսնցունեն, նաև զԱստ-ուած գլխովին։ Ի՛նչպիսի անկում պիտի ունե-նայ հպարտ ու փառասէր մարդը իր պատիւներուն բարձրութենէն։ Ինչպէս որ գերեզմանին մէջ իր փոշին ու ոսկրները ամենէն աղքատ մուրացկա-նին փոշիէն ու ոսկրներէն պիտի չզանազանուին, նոյնպէս ալ հոգին մուրացկանին հոգիէն աստի-ճան մը աւելի պատիւ պիտի չունենայ։ Քանի՛ քանի մեծեր, աղնուականներ ու գիտուններ Քրիստոսի երեսէն պիտի մերժուին. պիտի չգտնեն հոն իրենց հոյակապ շէնքերը, փափուկ անկողին-ները և հանգիստ բազմոցները։ Պիտի չտեսնեն ի-րենց գեղեցիկ պարտէզները, զուարճալի դաշտե-րը և առատ հունձքերը. և ոչ ալ խորտիկներով զարդարուած սեղանները, ու սպասաւորները։ Հոն մեծատունը "քեհեղն ու ծիրանին պիտի չկրնայ հագ-նիլ, և ոչ ալ հանապազօրեայ խրախութիւնները ընել"։ Հոն լոյս չկայ որ իրեն հետեւողները իր վրայ պիտի զարմանան։ Ժամանակնին սգով պի-տի անցունեն և ոչ թէ ուրախութիւններով ու խաղերով։ Ի՛նչ փոփոխութիւն պիտի տեսնեն ան ատենը։ Իրենց ցանկութեան բորբոքը մա-րած պիտի ըլլայ։ Ի՛նչպէս միւսերնին պիտի ցաւի երբոր իրարու երես տեսնեն։ Ի՛նչ տե-սութիւն պիտի ըլլայ, երբոր անիծեն ան օրը որ իրար տեսան։ Երանի՛ թէ մեղաւորները հիմա մտածէին ու ըսէին. "Ո՛ւր զուարճութիւնները մե-

գի հեռ պիտի երթա՞ն հանդերձեալ աշխարհը ։ Ան ատենը անոնց յիշատակը մեզի տանջանք պիտի չըլլա՞ն ։ Ո՛չ, մարդիս բարեկամութեան տեղը պիտի բռնէ՞ աս մեր մոլութեան մէջ բրած ընկերութիւնը ։ Ինչո՞ւ համար այսպիսի տեւական ու անպատմելի ուրախութիւնները աներեւոյթ հաճութեան մը ճաշակին համար վաճառենք ։ Ընկե՛ր. ինչպէս որ մէկտեղ մեղանչեցինք, նոյնպէս մէկտեղ ալ աղօթք ընենք որ Աստուած մեզի ներէ. ու փոխանակ իրար խաբելու և իրար ապականելու, երկինք դիմելու իրարու օգնական ըլլանք" ։ Երանի՛ թէ մարդիկ ամէն բան մարմնոյ ցանկութիւններուն նպաստաւոր ըլլալը փափաքած ատեննին գիտնային թէ ի՞նչ բանի կը փափաքին ։ Անիկայ ուրիշ բան չէ՝ եթէ ոչ փափաքիլ որ փորձութիւններնին աւելնան, ու հրապոյրքներնին սաստկանայ ։

Երկրորդ. ինչպէս սրբոց հանդստեան կորուստը ժամանակաւոր վայելմանց կորուստովը պիտի սաստկանայ, նոյնպէս շատ աւելի պիտի սաստկանայ դժոխքին տանջանքները կրելով ։ Աս տանջանքներուն անչափ մեծութիւնը յայտնի կ'ըլլայ եթէ որ մտածենք անոնց գլխաւոր պատճառը ո՛վ ըլլալը՝ որ է Աստուած ։ տանջանքին ուր կամ ինչպէս ըլլալը, և թէ աս տանջանքները Աստուածային վրէժխնդրութեանը արդիւնքն են. և թէ Ամենակարողը անոնցմով կը հաճի. և թէ բուն իսկ Սատանան ու մեղաւորը Աստուծոյ դահիճը պիտի ըլլան. թէ աս տանջանքները ընդհանուր են առանց մեղմանալու ու առանց վախճանի ։

1. Դժոխքին տանջանաց գլխաւոր պատճառը Աստուած ինքն է ։ Ինչպէս որ մեղաւորներուն բարկացուցածը Աստուած էր և ոչ ուրիշը,

Նոյնպէս ալ Աստուած է և ոչ ուրիշը որ պի-
տի պատժէ զանոնք իրենց յանցանացը համար։
Ինք պատրաստեց ան տանջանքները իր թշնամի-
ներուն համար։ Իր մշտական բարկութիւնը շա-
րունակ պիտի լափէ զանոնք։ Իր ցասման շունչը
պիտի բորբոքեցունէ զայն։ Անոր սրտմտութիւնը
անտանելի բեռ մը պիտի ըլլայ իրենց հոգիներուն։
Եթէ իրենց գործը արարածի հետ ըլլար, դիւրաւ
պիտի տանէին։ Վա՜յ անոր որ Ամենակարո-
ղին հարուածներուն տակը կ'իյնայ։ «Սաստիկ ա-
հաւոր բան է կենդանի Աստուծոյ ձեռքը իյնա-
լը»։ Եթէ բոլոր աշխարհ իրենց դէմ ըլլար՝ կամ
եթէ բոլոր արարածներուն զօրութիւնը միաբանէր
զանոնք պատուհասելու, ասոր համեմատութեամբ
ոչինչ էր։ Հիմա՛ աւելի կը յանդգնին Աստուծոյ
անհաճոյ եղած բանը ընել, քան թէ գժգոհ ընել
իրենց տանտէրը կամ տէրը կամ բարեկամը կամ
դրացին և կամ բուն իրենց մարմինը. բայց ան տենը
հազար անգամ պիտի փափաքին, թէպէտ 'ի զուր,
որ բոլոր աշխարհքի ատելի եղած ըլլային՝ քան թէ
Աստուծոյ երեսէն իյնային։ Ի՛նչ սպառող կրակ
է անոր բարկութիւնը։ Եթէ քիչ մը բորբո-
քի հոս՝ «ի՞նչպէս կը ցամքինք խոտի պէս»։ Ո՛ր-
չափ շուտ մեր զօրութիւնը կը նուաղի ու տկարու-
թեան կը դառնայ, և մեր գեղեցկութիւնը տգե-
ղութեան։ Բոցը այնչափ դիւրաւ չտարածուիր
չոր յարդին մէջ, որչափ Աստուծոյ բարկութիւնը
պիտի սպառէ աս անզգամները։ Անոնք որ չեն
կրնար բանտի, կախաղանի կամ կրակի մը համ-
բերել Քրիստոսի համար, և կամ քիչ մը
ծաղր ըլլալու համբերել, Աստուածային բար-
կութեան լափող բոցերուն ի՛նչպէս պիտի տա-
նին։

2. Տանջանքին տեղն ու վիճակը մասնաւորապէս Աստուծոյ արդարութիւնը փառաւորելու համար սահմանուած է։ Երբոր Աստուած իր զօրութիւնը փառաւորել կ'ուզէր՝ տիեզերը ստեղծեց։ Անոր բոլոր արարածներուն գեղեցիկ կարգաւորութիւնը անոր իմաստութիւնը կը յայտնէ։ Անոր նախախնամութիւնը ամէն բաները հաստատ պահելուն մէջ կը տեսնուի։ Երբոր իր բարկութեան մէկ կայծը բորբոքի երկրի վրայ, ութը հոգիէն զատ բովանդակ աշխարհ կը խեղդուի։ Սոդոմ, Գոմոր, Ադմա ու Սեբոյիմ երկինքէն իջած կրակով կը տոչորին, ոմանց վրայ ծովը իր բերանը կը դոցէ, երկիրը կը բացուի ու կը կլէ ուրիշները, ժանտախտը հազարաւորներ կը ջարդէ։ Ի՞նչ մինայուն վկայութիւն մըն է Աստուծոյ բարկութեանը Հրէից այժմեան ողորմելի վիճակը։ Բայց Աստուծոյ ողորմութիւնն ու արդարութիւնը պիտի փառաւորուի գլխաւորաբար հանդերձեալ կենաց մէջ։ Ինչպէս որ Աստուած ան տանը այնպիսի կերպով մը պիտի փառաւորէ իր ողորմութիւնը, որ անհասնելի է ուրբերուն անգամ՝ որ անիկայ պիտի վայելեն, այնպէս ալ պիտի յայտնէ թէ իր արդարութիւնը յիրաւի Աստուածային արդարութիւն է։ Դժոխքին յաւիտենական բոցերը շատ պիտի չհամարուին ան ապստամբներուն, և երբոր միլիոնաւոր դարեր հոն այրին, Աստուած պիտի չզղջայ անոնց գլխուն եկած չարիքին վրայ։ Ա՛յն ան հոգին որ Աստուծոյ բարկութեանը նետերուն նշաւակ եղած է. կամ մորենիին նման եղած է որ Աստուծոյ նախանձին բոցերովը պիտի վառի ու բնաւ չսպառի։

3. Դատապարտելոց տանջանքը մեղքին ծանրութեան չափին պիտի ըլլայ. վասն զի Աստուածային

վրէժխնդրութեան արդիւնքներն են : Բարկու-թիւնը ահարկու է և վրէժխնդրութիւնը անողո-քելի : Երբոր մեծն Աստուած ըսէ, թէ "իմ ա-պստամբ արարածներս հիմա իմ համբերութիւնս չարաչար՝ գործածելնուն հատուցումը կրելու են. յիշեցէք ինչպէս վայրապար սպասեցի ձեր պատեհ ժամանակին. ինչպէս զիջայ ձեզ համո-զելու և աղաչելու. կը կարծէիք որ միշտ այնպէս պի-տի արհամարհուէի՞". ան ատենը վրէժ պիտի առ-նուի անոնցմէ Աստուծոյ ողորմութիւնը չարաչար գործածելնուն համար, և Քրիստոսի ու անոր շը-նորհացը վրայ անհոգ ըլլալնուն համար : Երա-նի թէ մարդիկ նախատես ըլլային աս բանին և Աստուծոյ կամացը համեմատ ան վայրկեն ապահով մնային :

Է. Մտածէ նաև որ թէպէտ Աստուած մեծա-պէս կը բաղձայ որ մարդիկ զՔրիստոս և անոր ողորմութիւնը ընդունին. բայց երբոր անոնք ի-րենց ապստամբութեանը մէջ կը յամառին, ինքն ալ կը հաճի անոնց դատապարտութեանը : Ան կ'ըսէ մեղի թէ "Ես բարկութիւն չունիմ", սա-կայն աս ալ կ'ըսէ թէ, "Երանի թէ ցախերը ու փուշերը ինծի դէմ պատերազմէին. ես անոնց վրայ պիտի քալէի, ու զանոնք մէկէն պիտի այ-րէի" : Թշուառ արարածներ. զանոնք ստեղծո-ղը անոնց վրայ պիտի չգթայ, և արարիչնին իրենց հակառակ պիտի ըլլայ : "Որչափ որ Տէրը անոնց բարութիւն ընելով անոնց վրայ ուրախացաւ, նոյն-չափ ալ զանոնք եղծանելով ու բնաջինջ ընելով անոնց վրայ պիտի ուրախանայ" : Վա՜յ ան հո-գիներուն՝ զորոնք պատժելով Աստուած կ'ուրա-խանայ : "Անոնց թշուառութեանը վրայ պիտի ծիծաղիմ, ու անոնց վախը հասնելուն ծաղր պի-

տի ընեմ․ Երբոր անոնց փառքը հեղեղի պէս հասա-նի, անոնց թշուառութիւնը մրրիկի պէս պատա-հի, և նեղութիւն ու տրտմութիւն գայ վրանին։" Ահարկու բան. երբոր ոչ օդ՝ ոչ երկինքը և ոչ երկրի վրայ բաց յԱստուծոյ անոնց օգնութիւն ընելու կարող է․ իսկ Աստուած ալ անոնց թշուառութեա-նը վրայ պիտի ուրախանայ։ Ինչպէս Սուրբ Գր-քոց՝ Աստուած պիտի խնդայ և ծաղր ընէ ըսելը ոչ թէ ներկայացական է, այլ ըստ սովորութեան մարդկան զրուցուած է, սակայն Աստուծոյ մեղա-ւորները տանջելու մէջ ըրած գործը այնպիսի է, որ ասկէ աւելի յարմար կերպով մը չկրնար բա-ցատրուիլ։

5. Մտածէ որ Սատանան ու իրենէ [illegible] ելլան Աստուծոյ թշնամիները։ Ան որ հոս այնչափ յաջո-ղակ էր զիրենք Քրիստոսէն հանելու, հոն ալ իր փորձութեանցը զիջանելնուն համար իրենց պատի-ժին գործիքը պիտի ըլլայ։ Ատ է ան հատուցումը որ պիտի տայ անոնց՝ բոլոր իրենց ծառայութեա-նը, Աստուծոյ հրամանները մէկդի ձգելնուն, Քրիստոս մերժելնուն ու իր թելադրութեամբը ի-րենց հոգիներնուն վրայ անհոգ ըլլալնուն համար։ Եթէ այնչափ հաւատարմութեամբ Քրիստոսի ծառայած ըլլային, որչափ որ ըրին Սատանային, ա-նիկայ լաւագոյն վարձք կու տար իրենց։ Ուղղա-կին արդար է նաև որ իրենք իրենց չարչարողներն ըլլան, որպէս զի տեսնեն թէ բոլոր իրենց կոր-ծանումը իրենց ձեռքէն է, և ալ ոչ մէկ կրնան դանգատիլ, եթէ ոչ իրենցմէ։

6. Մտածէ նաև որ իրենց տանջանքը ընդհա-նուր պիտի ըլլայ։ Ինչպէս որ մարդուն ամէն մա-սերը մեղքին հաղորդ եղան, այնպէս ալ տանջանք-ներուն՝ ամէնը միանգամայն մասնակից պիտի ըլ-

բախտաւորութիւններուն վախճանը ան է եղեր"։ Այն ականջները որ սովորած էին երաժշտութեան ու նուագներու, պիտի լսեն իրենց ընկերներուն գոչումն ու աղաղակը. ձագուկները կ'աղաղակեն իրենց ծնողացը դէմ" որոնք քաջալերութիւն ու օրինակ եղան անոնց չարութեան. երիկները ու կնիկները, տէրերն ու ծառաները, քարոզիչներն ու ժողովուրդը, իշխաններն ու հպատակները ամէնը իրենց Թշուառութեան յանցանքը իրարու վրայ կը ձգեն, պարտաւորութեան մէջ իրար վհատեցունելնուն, մեղքը անտես ընելնուն և բան մը չխօսելնուն համար, ուր որ պարտական էին յայտնապէս զրուցել ու զգուշացունել վտանգէն։ Այսպէս հոգին և մարմինը պիտի ընկերանան վայերու մէջ։

7. Շատ աւելի մեծ պիտի ըլլայ աս տանջանքը, մխիթարութեան չըլլալուն համար։ Աս կենաց մէջ երբոր իրենց խօսուէր դժոխքի վրայ կամ եթէ խղճմտանքը խռովէր իրենց հանգստութիւնը, ունէին մխիթարիչներ քովերնին, իրենց աշխարհաւոր բարեկամները՝ իրենց զբաղմունքը՝ իրենց ընկերութիւնը և ուրախութիւնը։ Կը խմէին՝ կը խաղային՝ կամ կը քնանային և այսպէս կը խափանէին իրենց տրտմութիւնը։ Բայց հիմա բոլոր աս դարմանները աներևոյթ եղան։ Իրենց կարծր, մեծամիտ ու անհաւատ սիրտը պատ մը եղած էր զիրենք մըտքի ամբոխումներէն պաշտպանելու։ Սատանան ինքը՝ ինչպէս մեր Նախամօրը՝ այնպէս ալ անոնց մխիթարիչն էր. "Իրաւ Աստուած ըսա՞ւ՝ թէ դըրախտին ամէն ծառէն պիտի չուտէք։ Չէ՛ թէ՛ անշուշտ պիտի մեռնիք։ Դժո՞խք պիտի երթաք կ'ըսէ ձեզի Աստուած. տանիկ բան չկայ. Աստուած գթած է աս բանը ընելու. և եթէ կայ ալ դժոխք՝ ձեզի պէտք չէ վախնալ. Դուք

Քրիստոնեայ չէք ։ Քրիստոսի արիւնը ձեզի համար չթափուեցաւ"։ Այսպէս՝ զոր օրինակ Քրիստոսի հոգին մխիթարիչ է սուրբերուն, նոյնպէս ալ Սատանան մխիթարիչ է չարերուն ։ Երբեք գող մը տուն մը կողոպտած ատենը այնչափ զգոյշ եղած չէ որ մէջի մարդիկը չարթնցունէ, որչափ Սատանան կը զգուշանայ, որ մեղաւորը քունէն չարթննայ ։ Բայց երբոր մեղաւորը մեռնի, ան ատենը Սատանան ալ կը դադրի շողոքորթելէ ու մխիթարելէ։ Ան ատենը կորսուած հոգին մխիթարութեան համար ի՜նչ ճամբայ պիտի գտնէ ։ Անոնք որ զինքը որոգայթի մէջ ձգեցին ու ապահովութիւն կը խոստանային իրեն, հիմա երեսէ ձգեցին զինքը և բուն իրենք ալ երեսէ ձգուած են։ Իր մխիթարութիւնները անցան, և արդար Աստուածը՝ որուն նախազգուշութիւնները բանի տեղ չդրին, հիմա իր խօսքը մինչև վերջին կէտը պիտի կատարէ անոր դէմ։

8. Բայց այս տանջանքներուն ամենէն մեծ սաստկութիւնը անոնց յաւիտենականութիւնը պիտի ըլլայ ։ Հազարաւոր միլիոն դարեր ալ անցնին, տակաւին նոր սկսածի պէս պիտի ըլլան, իբրև թէ առաջին օրն է ։ Եթէ վախճանի մը յոյս ըլլար, այս յոյսը դատապարտեալին դիւրութիւն մը կ'ըլլար, բայց Յաւիտեա՜նը՝ անտանելի խորհուրդ մըն է ։ Ոչ անոնք կը ձանձրանային մեղք գործելէն, և ոչ ալ Աստուած պիտի ձանձրանայ զիրենք պատժելէն ։ Իրենք բնաւ սրտանց չզղջացին իրենց մեղքերուն վրայ, Աստուած ալ պիտի չզղջայ զիրենք տանջելուն համար ։ Յաւիտենական Աստուծոյ օրէնքները կոտրեցին, վասնորոյ յաւիտենական պատիժ պիտի կրեն ։ Գիտէին որ յաւիտենական թագաւորութիւն մըն էր իրենց մերժածը, և ի՞նչ զարմանք՝ եթէ յաւիտեան անկէ զրկուին ։ Ան յան-

ցանքները գործողը իրենց անմահ հոգին էր, ուստի և առանց մեռնելու տանջանքն ալ պիտի կրեն ։ Ի՜նչ երջանիկ պիտի համարէին զիրենք, եթէ գերեզմանին մէջ մնացած ըլլային, կամ կրկին գերեզման մտնելու կարող ըլլային ։ Ի՜նչպէս պիտի գոչեն ու աղաղակեն. "Ո՛վ մահ, ուր գացիր ։ Եկո՛ւր արդ և վերցուր աս ցաւալից կեանքը ։ Երանի՜ թէ աս ցաւերը սպառս բեկանէին ու գոյութիւնս վերջացունէին ։ Երանի՜ թէ հնար ըլլար վերջապէս մեռնիլ ։ Երանի՜ թէ ըլնաւ եղած չըլլայի" ։ Յաւիտենականութեան խորհուրդը աս հառաչանքները հանել պիտի տայ անոնց սրտերէն ։ Քարոզներն ու աղօթքները երկայն ու ձանձրալի կ'երեւային իրենց, հիմա որչափ աւելի երկայն պիտի երեւին իրենց աս անվախճան տանջանքները ։ Ի՜նչ մեծ տարբերութիւն կայ իրենց հեշտութիւններուն երկայնութեանն ու ցաւերնուն երկայնութեանը մէջ ։ Մէկը հազիւ թէ րոպէ մը տեւեց, իսկ միւսը կը տեւէ բոլոր յաւիտենականութիւնը ։ Ո՛վ մեղաւոր, մտածէ թէ ինչպէս կ'անցնի ժամանակը ։ Յաւիտենականութեան դուռը կեցեր ես. և մահը կ'սպասէ որ դուռը բանայ և քեզ ներս դնէ ։ Գնա՛ քանի մը գիշեր ալ քնացիր, քանի մը օր ալ երերեալ տատանեալ պտըտէ երկրի վրայ, բայց վերջապէս գիշերներդ ու ցորեկներդ պիտի վերջանան. բոլոր խորհուրդներդ, հոգերդ ու հաճոյքներդ պիտի կլլէ յաւիտենականութիւնը. պիտի մտնես ան վիճակին մէջ որ բնաւ փոփոխելիք չունի ։ Ինչպէս որ երկնից ուրախութիւնները մեր մտքէն վեր են, անանկ ալ դժոխքին վիշտերը ։ Յաւիտենական տանջանքը անհասանելի տանջանք է ։

Բայց ինծի կ'երեւի թէ յամառած մեղաւորը

յուսահատած պիտի ըսէ. «Այժմէ պիտի դատապարտուիմ, ուրեմն դարման չկայ ։ Աւաղ թող ինչ որ կ'ուզէ ըլլայ, Սուրբ Գրքին պատուիրածին պէս պէտք չարչրիմ. ուրիշ ընկերներս ինչպէս որ ազատեցան, ես ալ նոյնպէս կ'ազատիմ. որչափ որ կարող ենք՝ պիտի դիմանանք»։ Նուա՜զ, խե՜ղճ արարած, սա կը խնդրեմ քեզմէ որ առանց յանդուգն որոշում մը չըրած, քանի մը հարցումներաս մտադրութիւն ընես, ու իբրև բանական մարդ կշռես ։ Դուն ո՞վ ես որ Աստուծոյ ցասմանը պիտի հանդուրժես ։ Քու ուժդ ի՞նչ է ։ Մոմին՝ կրակին դէմ՝ դիմանալու զօրութեանը պէս չէ՞, կամ մեղրին՝ հովին դէմ կենալուն, և կամ ինչպէս որ փոշին սաստիկ փոթորկին առջեւն է ։ Թէև ուժդ երկաթի պէս ըլլար և ոսկորներդ պղինձի պէս, Թէև հաստատութիւնդ երկրի պէս ըլլար և կարողութիւնդ երկինքի պէս, տակաւին անոր բարկութեան բորբոքած առջևը կը կորսուէիր ։ Նա՛ որչափ աւելի՝ քանի որ դուն կտոր մը շնչաւոր հող ես, ու քիչ մը ժամանակ որդնակեր ըլլալէն կը պահուիս, միայն անոր օգնութեամբն ու շնորհքովը, որուն այսպէս կը հակառակիս ։ Ինչո՞ւ կը սարսափիս ամենակարող զօրութեան և բարկութեան նշաններէն. որոտման գոռալէն ու փայլակին կայծակունքէն. կամ ան անհերևոյթ զօրութենէն՝ որ բարձր կաղնիները կը խորտակէ, և հզօր շէնքերն ալ կը կործանէ. կամ ժանտախտէն՝ երբոր անոր քու բոլորտիքդ պայթանալը կը տեսնես ։ Այժմէ տեսնէիր Եգիպտոսի հարուածները, կամ գետնին բացուիլն ու Դաթանին ու Աբիրոնը կլլելը, կամ Եղիային երկինքէն կրակ իջեցունելն ու յիսնապետներն և անոնց մարդիկը ջնջելը, աս բաները քեզ պիտի չզարհուրեցունէի՞ն ։

2. Տանջանքին վերջն ու վիճակը մանաւորապէս Աստուծոյ արդարութիւնը փառաւորելու համար սահմանուած է։ Երբոր Աստուած իր զօրութիւնը փառաւորել կ'ուզէր՝ տիեզերը ստեղծեց։ Անոր բոլոր արարածներուն գեղեցիկ կարգաւորութիւնը անոր իմաստութիւնը կը յայտնէ։ Անոր նախախնամութիւնը ամէն բաները հաստատ պահելուն մէջ կը տեսնուի։ Երբոր իր բարկութեան մէկ կայծը բորբոքի երկրի վրայ, ութը հոգիէն զատ բովանդակ աշխարհ կը խեղդուի։ Սոդոմ, Գոմոր, Ադմա ու Սեբոյիմ երկինքէն իջած կրակով կը տոչորին, ոմանց վրայ ծովը իր բերանը կը գոցէ, երկիրը կը բացուի ու կը կլլէ ուրիշները, ժանտախտը հազարաւորներ կը ջարդէ։ Ի՞նչ մնայուն վկայութիւն մըն է Աստուծոյ բարկութեանը Հրէից այժմեան ողորմելի վիճակը։ Բայց Աստուծոյ ողորմութիւնն ու արդարութիւնը պիտի փառաւորուի գլխաւորաբար հանդերձեալ կենաց մէջ։ Ինչպէս որ Աստուած ան ատենը այնպիսի կերպով մը պիտի փառաւորէ իր ողորմութիւնը, որ անհասանելի է սուրբերուն անգամ՝ որ անիկայ պիտի վայելեն, այնպէս ալ պիտի յայտնէ թէ իր արդարութիւնը յիրաւի Աստուածային արդարութիւն է։ Դժոխքին յաւիտենական բոցերը շատ պիտի չհամարուին ան ապստամբներուն, և երբոր միլիոնաւոր դարեր հոն այրին, Աստուած պիտի չզղջայ անոնց գլխուն եկած չարիքին վրայ։ Այս ան հոգին որ Աստուծոյ բարկութեանը ներքեւ նշաւակ եղած է. կամ մորենիին նման եղած է որ Աստուծոյ նախանձին բոցերովը պիտի վառի ու բնաւ չսպառի։

3. Դատապարտելոց տանջանքը վերջին աստիճան սաստիկ պիտի ըլլայ. վասն զի Աստուածային

վրէժխնդրութեան արդիւնքներն են ։ Բարկութիւնը ահարկու է և վրէժխնդրութիւնը անողոքելի ։ Երբոր մեծն Աստուած ըսէ, թէ "իմ ապստամբ արարածներս հիմա իմ համբերութիւնս չարաչար՝ գործածելնուն հատուցումը կրելու են . յիշեցէք ինչպէս վայրապար սպասեցի ձեր պատեհ ժամանակին ինչպէս զիջայ ձեզ համոզելու և աղաչելու . կը կարծէիք որ միշտ այնպէս պիտի արհամարհուէի". ան ատենը վրէժ պիտի առնուի անոնցմէ Աստուծոյ ողորմութիւնը չարաչար գործածելնուն համար, և Քրիստոսի ու անոր շընորհացը վրայ անհոգ ըլլալնուն համար ։ Երանի թէ մարդիկ նախատես ըլլային այս բանին և Աստուծոյ կամացը հաւնէին այն վայրկեն ապահով մնային ։

Է. Մտածէ նաև որ թէպէտ Աստուած մեծապէս կը բաղձայ որ մարդիկ զՔրիստոս և անոր ողորմութիւնը ընդունին . բայց երբոր անոնք իրենց ապստամբութեանը մէջ կը յամառին, ինքն ալ կը հաճի անոնց դատապարտութեանը ։ Ան կ'ըսէ մեղի թէ "Ես բարկութիւն չունիմ", սակայն աս ալ կ'ըսէ թէ, "Երանի թէ ցախերը ու փուշերը ինծի դէմ պատերազմէին . ես անոնց վրայ պիտի քալէի, ու զանոնք մէկէն պիտի այրէի" ։ Թշուա՛ռ արարածներ . զանոնք ստեղծողը անոնց վրայ պիտի չգթայ, և արարիչնին իրենց հակառակ պիտի ըլլայ ։ "Որչափ որ Տէրը անոնց բարութիւն ընելով անոնց վրայ ուրախացաւ, նոյնչափ ալ զանոնք եղծանելով ու բնաջինջ ընելով անոնց վրայ պիտի ուրախանայ" ։ Ա՜յ այն հոգիներուն՝ զորոնք պատժելով Աստուած կ'ուրախանայ ։ "Անոնց թշուառութեանը վրայ պիտի ծիծաղիմ, ու անոնց վախը հասնելուն ծաղր պի-

ափ ընեմ . Երբոր անոնց վախը հեղեղի պէս հասա-
նի , անոնց թշուառութիւնը մրրիկի պէս պատա-
հի , և նեղութիւն ու տրտմութիւն գայ վրանին :”
Ահարկու բան . երբոր ոչ ոք՝ ոչ երկինքը և ոչ երկրի
վրայ բաց յԱստուծոյ անոնց օգնութիւն ընելու
կարող է · իսկ Աստուած ալ անոնց թշուառութեա-
նը վրայ պիտի ուրախանայ : Ինչպէս Սուրբ Գր-
քոց՝ Աստուած պիտի խնդայ և ծաղր ընէ ըսելը
ոչ թէ նկարագրական է , այլ ըստ սովորութեան
մարդկան գրուցուած է , սակայն Աստուծոյ մեղա-
ւորները տանջելու մէջ ըրած գործը այնպիսի է ,
որ ասկէ աւելի յարմար կերպով մը չկրնար բա-
ցատրուիլ :

5 . Մտածէ որ Սատանան ու իրենք պիտի ըլլան
Աստուծոյ դահիճները : Ան որ հոս այնչափ յաջո-
ղակ էր զիրենք Քրիստոսէն հանելու , հոն ալ իր
փորձութեանցը զիջանելնուն համար իրենց պատի-
ժին գործիքը պիտի ըլլայ : Ա՛ս է ան հատուցումը
որ պիտի տայ անոնց՝ բոլոր իրենց ծառայութեա-
նը , Աստուծոյ հրամանները մէկդի ձգելնուն ,
Քրիստոս մերժելնուն ու իր թելադրութեամբը ի-
րենց հոգիներնուն վրայ անհոգ ըլլալնուն համար :
Եթէ այնչափ հաւատարմութեամբ Քրիստոսի
ծառայած ըլլային , որչափ որ ըրին Սատանային , ա-
նիկայ լաւագոյն վարձք կուտար իրենց : Իրաւա-
ցին արդար է նաև որ իրենք իրենց չարչարողներն
ըլլան , որպէս զի տեսնեն թէ բոլոր իրենց կոր-
ծանումը իրենց ձեռքէն է , և ալ ումէ կրնան
գանգատիլ , եթէ ոչ իրենցմէ :

6 . Մտածէ նաև որ իրենց տանջանքը ընդհա-
նուր պիտի ըլլայ : Ինչպէս որ մարդուն ամէն մա-
սերը մեղքին հաղորդ եղան , այնպէս ալ տանջանք-
ներուն՝ ամէնը միանգամայն մասնակից պիտի ըլ-

բախտութիւններուն վախճանը ան է եղեր» ։ Ան ականջները որ սովորած էին երաժշտութեան ու նուագներու, պիտի լսեն իրենց ընկերներուն գոչումն ու աղաղակը. զաւակները կ'աղաղակեն իրենց ծնողացը դէմ՝ որոնք քաջալերութիւն ու օրինակ եղան անոնց չարութեան. երիկները ու կնիկները, տէրերն ու ծառաները, քարոզիչներն ու ժողովուրդը, իշխաններն ու հպատակները ամէնը իրենց մեղսակցութեան յանցանքը իրարու վրայ կը ձգեն, պարտաւորութեան մէջ իրար վհատեցունելնուն, մեղքը անտես ընելնուն և բան մը չխօսելնուն համար, ուր որ պարտական էին յայտնապէս զրուցել ու զգուշացունել վտանգէն ։ Այսպէս հոգին և մարմինը պիտի ընկերանան վայերու մէջ ։

7. Շատ աւելի մեծ պիտի ըլլայ աս տանջանքը, մեղաւորին [illegible] համար ։ Աս կենաց մէջ որքան իրենց խօսուէր դժոխքի վրայ կամ եթէ խըղճմտանքը խռովէր իրենց հանգստութիւնը, անէին մխիթարիչներ քովերնին, իրենց աշխարհասէր բարեկամները՝ իրենց զբաղմունքը՝ իրենց ընկերութիւնը և ուրախութիւնը ։ Կը խմէին՝ կը խաղային՝ կամ կը քնանային և այսպէս կը խափանէին իրենց տրտմութիւնը ։ Բայց հիմա բոլոր աս դարմանները աներևոյթ եղան ։ Իրենց կարծր, մեծամեծ ու անհաւատ սիրտը պատ մը եղած էր զիրենք մըտքի ամբոխումներէն պաշտպանելու ։ Աստուածն ինքը՝ ինչպէս մեր նախամօրը՝ այնպէս ալ անոնց մխիթարիչն էր. «Միթէ Աստուած ըսա՞ւ՝ թէ դըրախտին ամէն ծառէն պիտի չուտէք ։ Չէ թէ՝ անշուշտ պիտի մեռնիք ։ Դժո՞խք պիտի երթաք կ'ըսէ ձեզի Աստուած. տատանկ բան չկայ. Աստուած գթած է աս բանը ընէր. և եթէ կայ ալ դժոխք՝ ձեզի պէտք չէ վախնալ ։ Դուք

Քրիստոնեայ չէք : Քրիստոսի արիւնը ձեզի համար չթափուեցաւ" : Այսպէս՝ զոր օրինակ Քրիստոսի հոգին մխիթարիչ է սուրբերուն, նոյնպէս ալ Սատանան մխիթարիչ է չարերուն : Երբեք գող մը տուն մը կողոպտած ատենը այնչափ զգոյշ եղած չէ որ մէջի մարդիկը չարթնցունէ, որչափ Սատանան կը զգուշանայ, որ մեղաւորը քունէն չարթըննայ : Բայց երբոր մեղաւորը մեռնի, ան ատենը Սատանան ալ կը դադրի շողոքորթելէ ու մխիթարելէ : Ան ատենը կորսուած հոգին մխիթարութեան համար ի՞նչ ճամբայ պիտի գտնէ : Անոնք որ զինքը որոգայթի մէջ ձգեցին ու ապահովութիւն կը խոստանային իրեն, հիմա երեսէ ձգեցին զինքը և բուն իրենք ալ երեսէ ձգուած են : Իր մխիթարութիւնները անցան, և արդար Աստուածը՝ որուն նախազգուշութիւնները բանի տեղ չդրին, հիմա իր խօսքը մինչև վերջին կէտը պիտի կատարէ անոր դէմ :

8. Բայց աս տանջանքներուն ամենէն մեծ սաստկութիւնը անոնց յաւիտենականութիւնը պիտի ըլլայ : Հազարաւոր միլիոն տարեր ալ անցնին, տակաւին նոր սկսածի պէս պիտի ըլլան, իբրև թէ առաջին օրն է : Եթէ վախճանի մը յոյս ըլլար, աս յոյսը դատապարտեալին դիւրութիւն մը կ՚ըլլար, բայց Յաւիտեա՜նը՝ անտանելի խորհուրդ մըն է : Ոչ անոնք կը ձանձրանային մեղք գործելէն, և ոչ ալ Աստուած պիտի ձանձրանայ զիրենք պատժելէն : Իրենք բնաւ սրտանց չզղջացին իրենց մեղքերուն վրայ, Աստուած ալ պիտի չզղջայ զիրենք տանջելուն համար : Յաւիտենական Աստուծոյ օրէնքները կոտրեցին, վասնորոյ յաւիտենական պատիժ պիտի կրեն : Գիտէին որ յաւիտենական թագաւորութիւն մըն էր իրենց մերժածը, և ի՞նչ զարմանք՝ եթէ յաւիտեան անկէ զրկուին : Ան յան-

ցանքները գործողը իրենց անմահ հոգին էր, ուստի և առանց մեղնելու տանջանքն ալ պիտի կրեն ։ Ի՛նչ երջանիկ պիտի համարէին զիրենք, եթէ գերեզմանին մէջ մնացած ըլլային, կամ կրկին գերեզման մտնելու կարող ըլլային ։ Ի՛նչպէս պիտի գոչեն ու աղաղակեն . « Ո՜վ մահ, ուր գացիր ։ Եկո՛ւր արդ և վերցուր այս ցաւալից կեանքը ։ Երանի՜ թէ այս ցաւերը սկսու բեկանէին ու գոյութիւնս վերջացունէին ։ Երանի՛ թէ հնար ըլլար վերջապէս մեռնիլ ։ Երանի՜ թէ ընդնաւ եղած չըլլայի » ։ Յաւիտենականութեան խորհուրդը այս հառաչանքները հանել պիտի տայ անոնց սրտերէն ։ Քարոզներն ու աղօթքները երկայն ու ձանձրալի կ'երեւային իրենց, հիմա որչափ աւելի երկայն պիտի երեւին իրենց այս անվախճան տանջանքները ։ Ի՛նչ մեծ տարբերութիւն կայ իրենց հեշտութիւններուն երկայնութեանն ու ցաւերնուն երկայնութեանը մէջ ։ Մէկը հազիւ թէ րոպէ մը տեւեց, իսկ միւսը կը տեւէ բոլոր յաւիտենականութիւնը ։ Ո՜վ մեղաւոր, մտածէ թէ ինչպէս կ'անցնի ժամանակը ։ Յաւիտենականութեան դուռը կեցեր ես . և մահը կ'սպասէ որ դուռը բանայ և քեզ ներս դնէ ։ Դեռ քանի մը գիշեր ալ քնացիր, քանի մը օր ալ երերեալ տատանեալ պտըտէ երկրի վրայ, բայց վերջապէս գիշերներդ ու ցորեկներդ պիտի վերջանան . բոլոր խորհուրդներդ, հոգերդ ու հաճոյքներդ պիտի կլլէ յաւիտենականութիւնը . պիտի մտնես ան վիճակին մէջ որ բնաւ փոխուելիք չունի ։ Ինչպէս որ երկնից ուրախութիւնները մեր մտքէն վեր են, անանկ ալ դժոխքին վիշտերը ։ Յաւիտենական տանջանքը անհատանելի տանջանք է ։

Բայց ինծի կ'երեւի թէ յամառած մեղաւորը

յուսահատած պիտի ըսէ. «Եթէ պիտի դատապարտուիմ, ուրեմն դարման չկայ։ Աւելի թող ինչ որ կ՚ուզէ ըլլայ, Սուրբ Գրքին պատուիրածին պէս պիտի չապրիմ. ուրիշ ընկերներս ինչպէս որ ազատեցան, ես ալ նոյնպէս կ՚ազատիմ. որչափ որ կարող ենք՝ պիտի դիմանանք»։ Աւա՜ղ, խեղճ արարած, սա կը խնդրեմ քեզմէ որ առանց յանդուգն որոշում մը չըրած, քանի մը հարցումներուս մտադրութիւն ընես, ու իբրեւ բանական մարդ կշռես։ Դուն ո՞վ ես որ Աստուծոյ ցասմանը պիտի հանդուրժես։ Քու ուժդ ի՞նչ է։ Մոմին՝ կրակին դէմ դիմանալու զօրութեանը պէս չէ՞, կամ մոխրին՝ հովին դէմ կենալուն, և կամ ինչպէս որ փոշին սաստիկ փոթորիկին առջեւն է։ Թէեւ ուժդ երկաթի պէս ըլլար և ոսկորներդ պղնձի պէս, թէև հաստատութիւնդ երկրի պէս ըլլար և կարողութիւնդ երկինքի պէս, տակաւին անոր բարկութեան բորբոքած առջեւը կը կորսուէիր։ Ալ որչափ աւելի՝ քանի որ դուն կտոր մը շնչաւոր հող ես, ու քիչ մը ժամանակ որդնակեր ըլլալէն կը պահուիս, միայն անոր օգնութեամբն ու շնորհքովը, որուն այսպէս կը հակառակիս։ Ինչո՞ւ կը սարսափիս ամենակարող զօրութեան և բարկութեան նշաններէն. որոտման գոռալէն ու փայլակին կայծակունքէն. կամ ան աներեւոյթ զօրութենէն՝ որ բարձր կաղնիները կը խորտակէ, և հզօր շէնքերն ալ կը կործանէ. կամ ժանտախտէն՝ երբոր անոր քու բոլորտիքդ վայրանալը կը տեսնես։ Եթէ տեսնէիր Եգիպտոսի հարուածները, կամ գետնին բացուիլն ու Դաթանին ու Աբիրոնը կլլելը, կամ Եղիային երկինքէն կրակ իջեցունելն ու յիսնապետները և անոնց մարդիկը լափելը, աս բաները քեզ պիտի չզարհուրեցունէի՞ն։

Ի՞նչպէս կրնաս ուրեմն տոկալ դժոխքին հարուած-ներուն ։ Երկրի վրայ քեզի պատճառած թեթև վիշտերէն ինչո՞ւ կը վհատիս․ զոր օրինակ՝ ակռայի կամ յօդուածի մը ցաւէ, խեղդութենէ կամ յետին անանկութենէ ու մարդիկներուն երեսէն իյնալէ ։ Սակայն օր պիտի գայ որ ատոնց ամէնը դժոխքին տանջանքներուն համեմատութեամբ երջանկութիւն պիտի համարիս ։ Ինչո՞ւ համար մահուան մօտե-նալը քեզ այնչափ կը վախցունէ ։ Ի՛նչպիսի դող ու սարսափ կու գայ վրադ ։ Իսկ չէ՞ որ դերեզմա-նը դրախտ պիտի սեպուի համեմատութեամբ ան տանջանքներու տեղւոյն զորն որ դուն արհամար-հեցիր ։ Ո՞չ ապաքէն անտանելի բան է մարմնոյդ մէկ մասը կրակին մէջ բռնելով այրելը ։ Ուրեմն ի՞նչ պիտի ըլլայ երբոր դժոխքին մէջ անկէ բիւ-րապատիկ աւելին կրես յաւիտեան ։ Թէ որ դը-ժոխքին լոկ խորհուրդը կամ յիշատակութիւնը սիրտդ կը խռովեցունէ, ի՞նչպէս կարող պիտի ըլ-լաս դիմանալ բուն տանջանքներուն ։ Ինչո՞ւ համար մեծատունը կը գանգատէր հայր Աբրահամին դը-ժոխքին մէջ կրած նեղութիւններուն համար․ կամ ինչո՞ւ քու ընկերներէդ մեռնողները իրենց մահուան ժամանակը կը կորսնցունեն քաջասրտութիւննին ու կը փոխեն իրենց ամբարտաւան բերանը ։ Ին-չո՞ւ համար չեն կրնար քեզի պէս դժոխքը թեթև բանի մը տեղ դնել ։ Նաև չտեսա՞ր յուսահա-տութեան մէջ ինկող մարդ մը կամ հետը չխօ-սեցա՞ր ։ Ի՛նչպէս տխուր են խօսքերը, ո՛րչափ ծանրաբեռն է իր կեանքը ։ Իր ունեցածներուն մէկն ալ զինքը չեն հաճեցուներ, ոչ կերածին և ոչ խմածին մէջ քաղցրութիւն ունի․ բարե-կամներ տեսնելն անգամ իրեն նեղութիւն է ։ Կեանքէն ձանձրացած է, ու մահէն կը սոսկայ ։

Եթէ դատապարտուածներուն խղճմտութեամբ մարդ կրնայ դիմանալ, ինչո՞ւ աւելի դիւրաւ պիտի չկարենայ դիմանալ դժոխքին տառապանքներուն։ Ի՞նչ պիտի ըլլայ եթէ տեսնես որ Աստուծոյ անհաճոյ կերպարանքով մը կ'երեւի քեզի։ Միթէ պիտի չնուաղիս, պիտի չքաշուիս։ Եւ ինչպէ՞ս պիտի դիմանաս յաւիտեան տարբերու այնպիսի տեղ մը ուր ուրիշ ընկեր պիտի չունենաս, բայց եթէ դեւերն ու դատապարտեալները. եւ ոչ միայն պիտի տեսնես զանոնք, այլ եւ պիտի տանջուիս անոնց հետ ու անոնց ձեռքովը։ Ո՜ ալ հարցանեմ, որ եթէ Աստուծոյ բարկութիւնը այնքան թեթեւ բան մըն էր, ինչո՞ւ համար Աստուծոյ Որդին անիկայ այնչափ մեծ բանի տեղ դրաւ։ Ան էր որ իրեն արիւն քրտինք թափել տուաւ։ Կենաց Տէրը աղաղակեց թէ, «Իմ անձս մահու չափ տրտում է». եւ դարձեալ խաչին վրայ, «Աստուած իմ Աստուած իմ՝ զիս ինչո՞ւ թողուցիր»։ Եթէ ան չարչարանքները դիւրութեամբ կրել մարդու մը հնար ըլլար, անշուշտ Յիսուսը պիտի ըլլար ան։ Անիկայ քու ունեցածէդ աւելի զօրութիւն ունէր դիմանալու։ Այս է քեզի, մեղաւոր, անձիդ ապահովութեանդ համար։ Կը կարծես որ թեթե՞ւ պիտի ըլլայ քեզի ան բանը, որ այնքան ծանր էր Քրիստոսի։ Այո՛, Աստուծոյ Որդին այնպէս դառն տագնապ կրեց եւ արիւն քրտինք թափեց, միայն օրէնքին անէծքին տակը. իսկ դուն տկար՝ յիմար արարած ոչինչ բան կը համարիս Աւետարանին ալ անէծքին տակը իյնալը, որ աւելի խիստ պատիժ կը պահանջէ։ Արդարեւ Տէրը ատոր քեզի զգաստանալ զղջմամբ, որ չըլլայ թէ առ մոլորութիւնդ խիստ շատ նոր քեզի։ Եւ հիմա՝ ընթերցող, կ'ուզեմ որ որոշում մը ընես։

խիթարութիւն պիտի ըլլայ քեզի և ոչ թէ տակում։ Իսկ եթէ տակաւին Նորոգուած չես, կարծեմ թէ այնչափ երկիւղ պարտիս ունենալ երկինքի անունը լսելէն՝ որչափ դժոխքինը, թէ որ համոզուած ես թէ երկինքին կամ փրկութեան լոկ անունը բաւական չէ։ Երկինք և թողութիւն քարոզելը քեզի գրգիռ մըն է զանոնք փնտռելու ոչ թէ զանոնք մերժելու։ Իսկ դժոխք քարոզելը միայն համոզելու համար է քեզ որ փախչիս անկէ։ Եթէ ամենևին հնար չըլլար քեզի անկէ ազատելու, ան ատենը ընդունայն էր քեզի խօսիլ դժոխքի վրայ. բայց քանի որ կենդանի ես, յոյս կայ քեզի ազատութեան, վասն որոյ ամէն միջոց 'ի գործ դրուելու է քեզ քու թմրութենէդ սթափեցունելու համար։ Աւա՜ղ, ո՞ր միտք հիմա ըստ արժանւոյն կրնայ իմանալ, կամ ո՞ր լեզու կրնայ բացատրել ան հոգիներուն ցաւերը որոնք Աստուծոյ բարկութեան տակն են։ Ան ատենը՝ մեղաւորներ, պիտի աղաղակեն Քրիստոսի, "ողորմութիւն, գթութիւն, գթա՛ աս խեղճ հոգիին". բայց ես հիմա քեզի կ'աղաղակեմ Տէր Յիսուսի անունովը, թէ "ողորմէ՛, գթա՛ մարդ քու հոգիիդ". Ինչպէս գթայ քեզի Աստուած, երբ որ դուն հիմա չես ուզեր համոզուիլ քու անձիդ վրայ գութ ունենալու։ Եթէ ձիուդ աչքը փուշ մը հանդիպի, չես կրնար մղել որ մէջն կենայ. և ինչպէս կրնաս այսպէս յամառութեամբ հոգիդ դժոխք նետել, քանի որ վտանգը առաջուց զգուցուած է քեզի։ "Տէրոջը բարկութեանն առջև ո՞վ կրնայ կենալ, և անոր սաստիկ բարկութեանը ո՞վ կրնայ դէմ դնել"։ Կարծեմ այլ ևս խօսիլ հարկաւոր չէ քեզի, թո՛ղ ուրեմն քու հոգեկործանս մեղքերդ, և ինքզինքդ բարերարին

Քրիստոսի տուր ։ Շուտով որոշէ աս բանը և կատարէ որ քու երեսդ ալ սուրբերուն հետը տեսնեմ սրբոց հանգստեանը մէջ ։ Տէրը հաճոյէ՛ քու սիրտդ որ աս ուխտը ընես առանց յապաղելու ։ Բայց եթէ խոստանաս մինչև 'ի մահ, ու ալ հետք չըլլայ, վաղը չելլես ըսես թէ հաւատարմաբար ինծի խրատ տուող չեղաւ, և մէկ բարեկամ մը չունէի որուն սաստիկ փափաքը ըլլար զիս աս դատապարտութենէն ազատել ։

## ԳԼՈՒԽ Է.

### Սրբոց հանգիստը անդանդաղ խնդրելու հարկաւորութիւնը ։

Եթէ սանկ առոյգ ու փառաւոր հանգիստ մը կայ սուրբերուն համար, ինչու՞ համար աւելի ժրութեամբ չփնտռուիր անիկայ ։ Անշուշտ պիտի խորհինք որ, եթէ մարդ մը լսելու ըլլար անգամ մը թէ այսպիսի անպատմելի փառք մը կայ ստանալու, և հաւատար թէ լուրը ճշմարիտ է, խելքը գլխէն պիտի երթար ուրախութենէն և աս բանին սաստիկ փափաքէն, և գրեթէ ուտելը ու խմելը պիտի մոռնար և ուրիշ բան պիտի չհոգար և ուրիշ բան պիտի չխօսէր ու ուրիշ բան չխնդրէր, բայց միայն թէ ինչ կերպով ստանայ աս գանձը ։ Բայց ան մարդիկը որ անիկայ ամէն օր կը լսեն, և կը դաւանին թէ իբրև իրենց հաւատքին հիմնական մասը կը հաւատան անոր, այնպէս քիչ կը խորհին անոր վրայ և այնպէս քիչ

կ'աշխատին անոր համար, որպէս թէ բնաւ այնպիսի բան մը լսած չեն, կամ թէ լսած խօսքերնէն և ոչ մէկուն կը հաւատան ։ Այս յանդիմանութիւնը մասնաւորապէս կը յարմարի աշխարհասէրներուն՝ անկրօններուն, երևութաբար կրօնքը դաւանողներուն և բուն աստուածապաշտներուն անգամ ։

Աշխարհասէրները այնպէս զբաղած են աշխարհային բաներ փնտռելու՝ որ ոչ սիրտ ունին ոչ ժամանակ սա հանգիստը խնդրելու ։ Ո՛վ յիմար մեղաւորներ, ո՛վ ձեզ ցնորեցուց ։ Աշխարհ մարդիկը անբան գազաններէ աւելի ապուշ կ'ընէ, և յիմարութենէ ալ քանի մը աստիճան անդին անցնիլ կու տայ ։ Տե՛ս ինչ ջանք՝ ինչ վազել՝ ինչ աղաղակ չնչին բանի մը համար, մինչդեռ յաւիտենական հանգիստը զանց եղած կը մնայ ։ Ի՛նչ աշխատութիւն՝ ինչ հոգ աշխարհի մէջ իրենց ընկերներէն աստիճան մը վեր ըլլալու, երբոր զանց ըրած են սրբոց թագաւորական փառաւորութիւնը ։ Ի՛նչ անկյագ տենչ մարմնաւոր զուարճութեանց, ուր Աստուծոյ փառաբանութիւնը և հրեշտակներուն ուրախութիւնը ծանր բեռ մը կը համարին ։ Ի՛նչ անխոնջ փոյթ իրենց զաւակներուն և ստացուածքնին աւելցունելու վրայ, (որն որ թերևս միայն օրըստօրական ապրուստ մըն է,) երբոր գիտեն թէ դատաստանը կը մօտենայ. բայց թէ ան ատենը իրենց վիճակը ինչպէս պիտի ըլլայ, անոր վրայ ոչ ժամ մը կը խորհին ։ Ի՛նչ կանուխ ելլել ու շատ ուշ հանգչիլ, ու բոլոր տարին աշխատիլ, իրենց՝ ու իրենց ընտանեացը պատիւը մինչև 'ի մահ պահելու համար. բայց թէ ետքը ինչ պիտի պատահի, ան ոչ ով կը խորհի ։ Այս երբոր փրկութեան համար ըլլալու ջանքին

վերջ խօսք ըլլայ, կ'աղաղակեն. չե՞նք կրնար փըր-
կուիլ առանց այնչափ աշխատութեան: Որչափ
կանուխ կ'արթնցունեն անոնք իրենց սպասաւոր-
ները որ ելլեն գործեն, բայց ո՞րչափ քիչ կը հը-
րաւիրեն զանոնք աղօթքի կամ Սուրբ Գիրք կար-
դալու: Ինչ ըրած է արդեօք աս աշխարհս զին-
քը սիրողներուն և իր բարեկամներուն՝ որ այնպէս
եռանդով անոր կը հետևին և այնչափ տառա-
պանքով կը խնդրեն անիկայ, ուր Քրիստոս և
երկինք մէկ դի մնացած են, ու քիչերը փոյթ ու-
նին անոնց համար. կամ ի՞նչ պիտի ընէ արդեօք
աշխարհ իրենց համար հանդերձեալին մէջ: Աշ-
խարհք գալը ընդհանրապէս նեղութիւնով ու
տրտմութիւնով է: Անցքը շարունակ հոգով
և աշխատութեամբ: Իսկ անկէ դուրս ելլելը ա-
մէն բանէ աւելի դառն է: Ո՜վ անմիտ խելա-
ցընոր մարդ: Ուրախութիւնն ու հեշտութիւնը
միշտ հե՞տդ պիտի մնայ: Ոսկին ու աշխարհային
փառքը սերտ բարեկամներ պիտի ըլլա՞ն քեզի քու
յետին կարօտութեանդ ատենը: Քու նեղու-
թեանդ օրը քու աղաղակիդ պիտի լսե՞ն: Քու
մահուանդ ժամուն քեզի պատասխան մը կամ բա-
րոփանք մը պիտի շնորհե՞ն: Քեզի հետ հան-
դերձեալ աշխարհը պիտի գա՞ն. ու կամ թէ կարող
պիտի ըլլա՞ս զանոնք իբրև կաշառ դատաւորին տա-
լով ինքզինքդ արդարացունել ու օրհնեալներուն
մէջ քեզի տեղ մը գտնել: Ու՛է որ աղբանը ընել հնա-
րաւոր է, ու ըսէ ինչո՞ւ համար մեծատունը “կաթիլ մը
ջուր” կը խնդրէր “իր լեզուն զովացունելու համար”:
Կամ թէ ներկայ հաճոյքներուն ու պատիւներուն
անոյշ պտուղները աւելի՞ կ'արժեն քան զյաւի-
տենական հանգիստը. կամ ան մնայուն գանձին
կորսնցանքը փոխարէն մը կրնա՞ն ըլլալ: Ա[illegible]

փոքր ակնկալութիւն մը անգամ կրնար ունենալ որ ատ բաներուն մէկը ըլլայ։ Ո՜հ ցած և խաբեբայ աշխարհ, քանի՜ քանի՜ անգամ լսեցինք որ քու ամենէն հաւատարիմ ծառաներդ վերջապէս գանգատեցան թէ «աշխարհը զիս խաբեց և կործանեց։ Իմ յաջողութեանս ատենը զիս կը շողոքորթէր, բայց հիմա իմ կարօտութեանս ատենը զիս երեսէ կը ձգէ։ Եթէ անոր ծառայածիս չափ հաւատարմաբար Աստուծոյ ծառայած ըլլայի, զիս այսպէս անմխիթար ու անյոյս թողուցած չէր ըլլար»։ Անոնք այսպէս կը գանգատին, բայց և այնպէս ուրիշ մոլորեալները անոնցմէ խրատ չեն առներ։

Իսկ կրօնական պարտաւորութիւնները ընկողներն ալ չեն համոզուիր իրենց հոգիներուն փրկութիւնը տանելու համար՝ կրօնքին սովորական արտաքին պարտաւորութիւնները կատարելու յանձնառու ըլլալ։ Եթէ իրենց բնակած քաղաքին մէջ Աւետարան քարոզուի, թերևս օրուան մէկ մասը անիկայ լսելու երթան, ու միւս մասը տունը նստին. կամ եթէ տանը մօտը երթայ, մնացած ընտանիքը տունը կենան։ Բայց թէ որ Աւետարանին պարզ ու ազդու քարոզութիւնը չունենան, բոլոր քաղաքին կամ գիւղին մէջ որչափ քիչ մարդ կը գտնուի որ մէկ երկու մղոն տեղ երթայ Աստուծոյ բանին քարոզութիւնը ուրիշ տեղ լսելու, թէպէտ շատ մարդիկ հեռու վաճառանոցներ կ'երթան իրենց մարմնաւոր ապրուստին համար։ Գիտեն որ Սուրբ Գիրքը Աստուծոյ օրէնքն է՝ որով պիտի արդարանան կամ դատապարտուին դատաստանին օրը. և գիտեն ար «երանի» է «ան մարդուն որուն կամքը Աստուծոյ օրէնքին մէջն է», ու գիշեր ցորեկ

անոր օրէնքին վրայ կը մտածէ”. բայց և այնպէս չեն ուզեր օրը գլուխ մը կարդալ Սուրբ Գիրքէն: Բոլոր շաբաթը չեն կարդար, և թէ ոչ Կիրակի օրը հետերնին եկեղեցի տանին Սուրբ Գիրքը՝ այնչափ է կարդացածնին». Թէպէտ իրենց պատուիրուած է անդադար աղօթք ընել և միշտ աղօթք ընել, բայց և այնպէս ոչ իրենց ընտանիքին մէջ՝ ոչ ալ առանձին շարունակ աղօթք կ՚ընեն: Դանիէլ աւելի կ՚ընտրէր առիւծներուն գուբը նետուիլ, քան թէ ետ կենալ օրը իրեք անգամ՝ աղօթք ընելէն իր տանը մէջ՝ ուր իր թշնամիները կրնային լսել. իսկ ասոնք աւելի կ՚ընտրեն Սատանային՝ ան մռնչող առիւծին յաւիտենական որս ըլլալ, քան թէ աս կերպով իրենց ապահովութիւնը խնդրել: Կամ ցուրտ և սրտէ չբղխած աղօթքներնին կը ստիպեն զԱստուած որ խնդրածնին չկատարէ, վասն զի ամէն մարդ կ՚ընդունի որ եթէ մէկը թեթևութեամբ և քիչ անգամ կը խնդրէ՝ շատ հոգ չունի խնդրածին վրայ: Անոնք որ ինքզինքնին անարժան կը դատեն երկինքին, այնպէս կը համարին որ իբր թէ երկինք իրենց աւելի տեական ու աւելի եռանդուն խնդրուածներուն արժանի չէ: Եթէ առաքելական եռանդուն աղօթքով Տէրը չխնդրող ամէն տուներուն դուռներուն վրայ նշան դրուած ըլլար, և Աստուծոյ բարկութիւնը թափուէր ան տուներուն վրայ, մեր քաղաքները հարուածով կործանած տեղեր պիտի ըլլային, ներսէն մեռած մարդիկներ՝ դուրսէն դատապարտութեան նշաններ: Կը վախնամ որ եթէ տուն մը փրկուէր, տասը տուն մահուան նշանը պիտի ընդունէր. և ան ատենը իրենց դուռներուն սովորցունելու էին աս աղօթքը ընել թէ՝ “Տէր, ողորմէ՛ մեզի”, ինչու որ մէջի մարդիկը չեն ուզեր

աղօթք ընել։ Բայց մասնաւորապէս եթէ տեսնէինք թէ ինչ կ'ընեն մարդիկ իրենց առանձնական սենեակներուն մէջ, որչափ քիչերը պիտի գըտնէիր ամբողջ քաղաքի մը մէջ որ առտու իրիկուն քառորդ մը ժամ՝ անցունեն իրենց հոգւոյն համար Աստուծոյ եռանդուն խնդրուածքներ մատուցանելու։ Որչափ՝ չնչին բան կը համարին աս մարդիկը յաւիտենական հանդիստը։ Այսպէս անհոգութեամբ զանցառութիւն կ'ընեն իրենց բարելաւութեանը համար ջանք ընելու, մինակ ժողովքներու մէջ քանի մը հրապարակական պարտաւորութիւններ կը կատարեն, ան ալ սովորութենէ՝ կամ իրենց պատուոյն համար ընելու ստիպուած են։ Դանա՛ համոզել որ բարեպաշտական գիրքեր կարդան, իրենց հաւատքին ապացոյցները սորվին, և Տէրոջը օրը սուրբ պահեն աղօթքով՝ մտածութեամբ՝ Աստուծոյ խօսքը լսելով, ու հրաժարելով բոլոր աշխարհային խորհուրդներէն և խօսակցութիւններէն. ինչ ձանձրալի կեանք պիտի համարին ասիկայ, իբր թէ երկինքի համար այնչափ աշխատութիւն կրել չարժեր։

Ուրիշ կարգ մըն ալ կրօնքը արտաքին կերպով փառաւորողներն են. որոնք պատրաստ են որ և իցէ արտաքին պարտաւորութեան, բայց կրօնքին ներքին գործքերը կատարելու բնաւ չեն համոզուիր։ Երկինքի վրայ կը քարոզեն, մտիկ կ'ընեն, կը կարդան, կը խօսին իրենց ընտանեացը մէջ, կ'աղօթեն անոր համար, բարի գործքերու ու բարեպաշտներու կողմնակից կ'ըլլան, և կը փափաքին աստուածապաշտներուն կարգէն սեպուիլ, բայց բնաւ չեն կրնար զանոնք կրօնքին աւելի հոգևոր պարտաւորութիւններուն ուղղել, ինչպէս է

առանձին աղօթքի ու մտածութեան մէջ յարատեւ ու եռանդուն, ու անձնաքննութեան մէջ արդարադատ. երկնաւոր բաները խորհող ըլլալ. իրենց սրտերուն խօսքերուն և վարքին վրայ հսկել, մարմինը մահացունել ու մարմնոյ խնամ չտանիլ ցանկութեան համար, թշնամին սիրել ու անոր սրտանց ներել և իրենց եղբայրները իրենցմէ լաւ համարիլ, բոլոր իրենց ունեցածը և ըլլածը Քրիստոսի ոտքը ձգել, և անոր ծառայութիւնը ու սէրը ամէն բանէ վեր դասել, պատրաստ ըլլալ մեռնելու և յօժարութեամբ ամէն բան թողելու Քրիստոսի երթալու համար: Կեղծաւորները ատոնց մէկն ալ չէին ուզեր ընել: Եթէ կեղծաւոր մը Աւետարանը ուրախութեամբ ընդունի՝ վեր'ի վերոյ է և ոչ թէ բոլոր սրտով. սերմին բնաւ խորունկ հող չտար: Կարծիքները կը փոխուին, բայց սիրտը հալելով նորէն չձուլուիր. և ոչ զՔրիստոս կը հաստատէ հոն կատարեալ զօրութեամբ և իշխանութեամբ: Ինչպէս այնպիսւոյն կրօնքը՝ նոյնպէս գլխաւոր զբաղումն ու խօսակցութիւնը կարծիքի վրայ կը կայանայ: Այսպիսինները ընդհանրապէս տգէտ, համարձակ ու փառասէր վիճաբանողներ են մանաւանդ, քան թէ հլու ընդունողներ յայտնուած ճշմարտութիւններուն սիրով ու հնազանդութեամբ: Ուրիշներուն անձն ու դատողութիւնը արհամարհելնուն՝ ու հազիւ երբեք Քրիստոսի վսեմ խորհուրդներուն վրայ հաւատեաւ ու խոնարհութեամբ խօսելնուն համար, յայտնի կ'ընեն որ իրենց աստուածպաշտութիւնը ուղեղին մէջ կը կայանայ՝ և ոչ թէ սրտին: Փորձութեան հովը փետուրի մը պէս կը թռցունէ զիրենք, ինչու որ սիրտերնին հաստատուած չէ Քրիստոսով և շնորհքով: Անոնք իրենց առանձին

խոստակցութեանը մէջ խոնարհութեամբ չեն ողբար իրենց հոգւոյն անկատարութիւնները, և ոչ սրտի ցաւով կը խոստովանին իրենց Քրիստոսի ըրած ապերախտութիւնը. այլ այս ինչ գաղափարի կամ կազմակցութեան տէր ըլլալնին իրենց մեծագոյն մխիթարութիւնը կը համարին։ Նոյնը կրնայ ըսուիլ աշխարհասէր կեղծաւորին վրայ, որ կը խեղդէ Աւետարանը աշխարհային հոգերու և բաղձանքներու փուշերուն մէջ։ Համոզուած է որ պարտի կրօնասէր ըլլալ, ապա թէ ոչ՝ չկրնար փրկուիլ. վասնորոյ կը կարդայ, կը լսէ, աղօթք կ'ընէ և իր առջի ընկերները և ընթացքը կը ձգէ, բայց միանգամայն ապշած է որ աժամանակեայ բաներն ալ հաստատ բռնէ։ Թէև իր դատողութիւնը կ'ըսէ՝ թէ Աստուած է գերագոյն բարին, բայց իր սիրտն ու զգացմունքները բնաւ այսպէս ըսած չեն։ Աշխարհ աւելի գրաւած է իր զգացմունքները, քան թէ Աստուած. ուստի աշխարհն է իր Աստուածը։ Թէպէտ աշխարհային մարդոց պէս ընդհանուր ընդունուած գաղափարներու և նորութիւններու ետևէ չէ, սակայն կը յարի այն կարծիքին որ իր աշխարհային օգտին աւելի կը նպաստէ։ Եւ մահաբեր հիւանդութեամբ տկարացած մարդու մը մտքին պէս, իր միտքն ալ աշխարհային յօժարութիւններու հարուածով զարնուած է։ Որչափ տկար է առանձին աղօթքի մէջ, ինչպէս հարևանցի իր խղճի քննութեան ու մտածութեան մէջ. որչափ անբաւական սրտի վրայ հսկողութիւն ընելու մէջ, և բոլորովին ոչի՞նչ զԱստուած սիրելու՝ անոր հետ քալելու՝ անով ուրախանալու և անոր փափաքելու մասին։ Այնպէս որ թէ՛ աս և թէ ուրիշ տեսակ կեղծաւորները թէպէտ քեզի հետ միաբան

կ'երթան կրօնքին արտաքին դիւրին մասին մէջ, սակայն ներքին և հոգևոր պարտաւորութիւնները կատարելու համար աշխատութիւնը յանձն առնուլ չեն ուզեր։

Եւ քանի աստուածապաշտներն անգամ իրենց յաւիտենական հանգիստը շատ ծոյլ փնտռողներ են։ Աւա՜ղ, ի՜նչ անհամեմատութիւն կայ մեր լոյսին ու ջերմութեանը մէջ, այսինքն՝ մեր դաւանութեանն ու ջանքին մէջ։ Ո՞վ ունի այն փոյթը, որն որ երկինքի համար ունենալ պէտք է։ Ի՜նչպէս հանդարտ կը կենանք, ո՛րչափ ծուլութեամբ կը գործենք, ինչպիսի խօսքերով, խաղերով ու կատակներով կ'անցունենք ժամանակնիս. ի՛նչ խաբեբայ կերպերով կը կատարենք Աստուծոյ գործը։ Այնպէս կը լսենք որպէս թէ չլսեցինք, և այնպէս կ'աղօթենք որպէս թէ բնաւ աղօթք չըրինք. այնպէս կը քննենք սրտերնիս, կը խոկանք, և կը յանդիմանենք մեղքը իբրև թէ ասոնց մէկը չըրինք. և այնպէս կը սիրենք Քրիստոս որպէս թէ չենք սիրեր. այնպէս սորվեր ենք երկնային բաները գործածել, ինչպէս որ Առաքեալը կը հրամայէ մեզի գործածել աշխարհին բաները։ Ի՞նչ սառուցեալ պաղութիւն է որ թմրեցուցեր է մեզ։ Մեռնելու վրայ ենք և գիտենք մեր վիճակը, բայց և այնպէս չենք արթըննար. յաւիտենական երջանկութեան կամ յաւիտենական թշուառութեան դուռներուն առջևը կայներ ենք, ու չենք զգար. մահը դուռներնիս կը զարնէ, ու մենք չենք լսեր. Աստուած և Քրիստոս կը կանչեն և կ'աղաղակեն մեզի, "Այսօր թէ որ իմ ձայնիս կը լսէք սրտերնիդ մի խստացունէք. գործեցէք քանի որ ցորեկ է, վասնզի գիշերը կու գայ, երբ մէկը չը կրնար գործել"։ Հիմա ձեր գործին պարապե-

ցէք, աշխատեցէք ձեր կեանքին համար, հիմա բոլոր զօրութիւններդ ու ժամանակներդ 'ի գործ դըրէք. թէ որ հիմա չընէք, երբէք կարող պիտի չըլլաք ընել. բայց մենք այնպէս թմրած կը կենանք, որպէս թէ կէս քուն ենք։ Ի՜նչպէս կ'աճապարեն մահն ու դատաստանը. ի՜նչպէս արագ կու գան. դրեթէ քովերնիս հասած են, բայց մենք ի՜նչպէս յամր կը շարժինք։ Ո՛վ Տէր, ի՜նչ անզգայ, երկրաւոր, դժոխային բան է կարծր սիրտը։ Ո՞ւր է ան մարդը որ արդեամբք և ճշմարտութեամբ քրիստոնեայ է։ Ինծի կ'երևի թէ՝ մարդիկ ամէն տեղ իրենց յաւիտենական վիճակը ոչինչ բանի մը տեղ կը դնեն։ Շատ քիչ և վեր 'ի վերոյ հոգ ունին անոր. անիկայ իրենց կեանքին մէկ յատուկ գործը չեն համարիր։ Եթէ ես ալ նոյն աչքով ախտացած չըլլայի, ի՜նչ դառն արտասուօք պիտի լայի ես մեղանը, ի՜նչ հառաչանքով պիտի խօսէի ես դանդաղները. և ի՜նչ սրտի ցաւով պիտի ողբայի ես ընդհանուր մեռելութեանը վրայ։

Իշխանները ըստ պատշաճի կը կատարե՞ն իրենց պաշտօնը։ Անոնք նախանձաւո՞ր են Աստուծոյ համար։ Աստուծոյ տունը կը շինե՞ն։ Զգուշութեամբ կը դիտե՞ն Աստուծոյ պատիւը։ Կը նպաստե՞ն խօսքին, և արիաբար կը յանդիմանե՞ն մեղքն ու մեղաւորները, որոնք մեր խաղաղութիւնը խռովող՝ ու մեր ամէն թշուառութեանը գլխաւոր պատճառն են։ Բոլոր իրենց կարողութիւնը, հարստութիւնը, պատիւն ու բոլոր իրենց ազդեցութիւնը Քրիստոսի թագաւորութեանը յառաջադէմ զարգանալուն կը գործածե՞ն իբրև այնպիսիներ՝ որ քիչ ատենէն իրենց տնտեսութեան հաշիւը պիտի տան։

Որչափ քիչ են ան պաշտօնեաները, որ իրենց

պաշտօնին մէջ զգոյշ ըլլան։ Ամենէն ընտիրներն անգամ սա բանիս մէջ որչափ պակաս են։ Մ՛արդիկներուն՝ Աւետարանին ըրած անհնազանդութեանը դէմ "Սուրբ Հոգիին վկայութիւնովը" կը բողոքե՞նք. մեր քաղաքներուն մէջ ապականիչ կրակի մը պէս մեղքին դէմ կը կռուի՞նք, ու մարդիկ անոր մէջէն բռնութեամբ դուրս կորզելու կը ջանա՞նք։ Մ՛եր ժողովուրդը "Տէրոջը վախը գիտցողներու" պէս կը համոզե՞նք։ Ազդու կերպով կը քարոզե՞նք Քրիստոսը՝ վերստին ծնունդը՝ հաւատքն ու սրբութիւնը, հաւատալով թէ առանց ասոնց մարդիկ կեանք չեն կրնար ունենալ։ Մ՛եր աղիքները կը գալարի՞ն տգէտ՝ անհոգ և խստապարանոց բազմութեան վրայ։ Երբոր երեսնին կը նայինք սիրտերնիս կը ցաւի՞ անոնց վըրայ, որ գուցէ հանգստեան մէջ պիտի չտեսնենք զանոնք։ Պօղոս Առաքեալին պէս "լալով կը խօսի՞նք անոնց" իրենց մարմնաւոր ու երկրաւոր վիճակին վրայ. և "կ՚ուսուցանե՞նք զանոնք հրապարակաւ ու տուներու մէջ, քանի որ պատեհութիւն կ՚ունենանք, և շատ արցունքով"։ Կ՚աղաչե՞նք կը պաղատի՞նք անոնց իրենց հոգիներուն փրկութեանը համար։ Կամ թէ լոկ կը ջանանք հաճոյ ըլլալ ան ունկնդիրներուն՝ որոնք մեր խօքերուն վրայ կրնան դատաստան ընել, որպէս թէ պաշտօնէի մը բոլոր գործը ուրիշ բան չէ՝ բայց եթէ ելլել ժամ մը գեղեցիկ ատենաբանութիւն մը ընել, ու այնուհետև ժողովրդեան հոգ չըտանիլ մինչև յաջորդ քարոզը։ Ո՞չ ապաքէն մարմնաւոր խոհեմութիւնը մեր եռանդը կը չափաւորէ ու շատ սրտաշարժ նիւթերու վրայ ըրած ատենաբանութիւններնիս անհոգի կ՚ընէ։ Ի՞նչպէս մեղմով կը խօսինք ան մեղքերուն վրայ՝ որոնք այնպէս

անգթութեամբ՝ պիտի վարուին ժողովրդոց հոգիներուն հետ։ Մէկ խօսքով, երկնից բաներուն վրայ մեր խորունկ զգացում չունենալը պատճառ կ'ըլլայ որ մարդիկ բարեպաշտութեան արտաքին երեւոյթին միայն կը կապուին, և այսպէս ժողովուրդը կը սովորի անհոգ ունկնդրութիւն մը ընել իբրև սովորութիւն, որն որ իրենց հոգևոր կործանում է։ Տէրը ներէ պաշտօնեաներուն աս մեծ մեղքը, և մասնաւորապէս ինձ։

Ո՞ւր թէ ժողովուրդը իշխաններէն ու պաշտօնեաներէն աւելի զգայո՞ւն է. ի՞նչպէս կարելի է յուսալ աս բանը։ Քու անձիդ վրայ նայէ ընթերցող և լուծէ աս խնդիրը։ Խղճմտանքիդ հարցո՛ւր և թո՛ղ որ ճշմարիտը ըսէ քեզի։ Քու յաւիտենական հանգիստդ՝ աշխարհիս վրայ քու ընելու գործքերուդ իբրև ամենէն մեծը աչքիդ առջևը դրա՞ծ ես։ Բոլոր քու զօրութեամբդ հսկեցի՞ր և աշխատեցա՞ր որ "մէկը չառնէ քու թագդ"։ Աճապարեցի՞ր որ չըլլայ թէ ուշ մնաս և գործդ չկատարած մեռնիս։ Բազմաթիւ արգելքներուն յաղթելով՝ ջանացի՞ր "դիմել դէպ 'ի Աստուծոյ կոչման կէտը Քրիստոս Յիսուսով", մինչև որ "առջևը եղած բաներուն հասնիս"։ Խիղճդ կըրնա՞յ վկայել քու ծածուկ աղաղակներուդ՝ հառաչանքներուդ ու արցունքներուդ համար։ Քու ընտանիքդ կրնա՞յ վկայել որ Տէրոջը վախը սորվեցուցիր անոնց, և զգուշացուցիր զանոնք որ "չըլլայ թէ ան չարչարանքին տեղը երթան"։ Քու երէցդ կրնա՞յ վկայել թէ կ'աղաղակէիր "Ինչ ընեմ որ փրկուիմ", և թէ իրեն հետ կը գանգատէիր քու սրտիդ ապականութեանը վրայ, ու եռանդուն ոգւով Տէրը կը փնտռէիր։ Քու դրացիներդ կրնա՞ն վկայել քեզի համար որ դուն ամբարիշտ-

ները կը յանդիմանէիր և քու եղբայրներուդ հոգիները փրկելու համար կ'աշխատէիր։ Թող բոլոր աս վկայութիւնները դատաստան ընեն այսօր Աստուծոյ և քու մէջդ թէ անկեղծութեամբ հետամո՞ւտ ես յաւիտենական հանգստեան՝ թէ ոչ։ Դուն քու սպասաւորիդ ծուլութիւնը կրնաս իմանալ իր գործքերէն, թէպէտ և ծոյլ կենալը տեսած չըլլաս. այնպէս ալ քու գործքերէդ կրնաս իմանալ քու վիճակդ։ Քու սէրդ դէպ ՚ի Քրիստոս՝ քու հաւատքդ՝ նախանձդ և ուրիշ շնորհքներդ զօրաւո՞ր են թէ տկար։ Ի՞նչ են քու ուրախութիւններդ։ Ի՞նչ է քու վստահութիւնդ։ Ամէն գործերդ ի կարգի՞ են։ Պատրա՞ստ ես մեռնելու, եթէ այսօր ըլլար մեռնելուդ օրը։ Ան անձինքը որոնց հետ կը կենցաղավարիս, կ'օրհնե՞ն քեզ։ Աս ըսածներէս գնա՛ դատաստան ըրէ, և շուտով պէտի ճանչնաս թէ արգեօք աշխատո՞ղ ես թէ ծոյլ։

Ո՜վ երջանիկ հանգիստ՝ ինչպէս չարաչար անփոյթ ես՝ մարդիկ քեզի համար։ Ո՜վ փառաւոր արքայութիւն, ինչպէս չճանչցուիր քու արժէքդ։ Չեն գիտեր մարդոց անհոգ որդիները թէ ինչ է ան վիճակը՝ որ այնչափ կ'արհամարհեն։ Եթէ մէյմը դիտնան՝ անտարակոյս ուրիշ կերպ պիտի խորհին։ Կը յուսամ ով ընթերցող, որ դուն կ'զգաս թէ ինչ չարիք է յաւիտենական հանգիստը անարգհամարելը, և թէ դուն ալ չարաչար աս յանցանքին տէրը եղած ես։ Կը յուսամ՝ նաև թէ պիտի չթողուս որ աս ճանաչումդ անարդիւն մեռնի։ Եթէ բժիշկը ըսէր քեզի, "Թէ որ աս մէկ բանը ընես տարակոյս չունիմ որ պիտի բժշկուիս", չէի՞ր ըներ։ Արդ ես ալ կ'ըսեմ քեզի, եթէ քու հոգիիդ համար աս մէկ բանը ընես, ամենևին

տարակոյս չունիմ որ պիտի փրկութիւն գըտնես։ Եթէ դանդաղութիւնդ ձգես, ու բոլոր ուժդ քեզի ժողվելով՝ Քրիստոնէից ըլլալու արդեանցը ու ճշմարտութեանցը, ան ատենը չեմ գիտեր թէ ինչ բան քու երջանկութիւնդ կրնայ արգիլել։ Որչափ հեռացած ըլլաս Աստուծմէ, խնդրէ՛ անիկայ բոլոր սրտով, և անտարակոյս պիտի գտնես։ Որչափ դաժանութիւն ալ որ ցուցուցած ես Յիսուս Քրիստոսի՝ բոլոր սրտովդ խընդրէ անիկայ, անյապաղ հնազանդէ անոր և քու փրկութիւնդ արդէն եղածի պէս ստոյգ կ'ըլլայ։ Ինչպէս Քրիստոսի քաւութիւնը կատարեալ է՝ թէպէտ խոստմունքը ձրի է՝ թէպէտ Աստուծոյ ողորմութիւնը մեծ է, բայց թէ որ լոկ կը խօսիս աս բաներուն վրայ և ոչ թէ եռանդով կ'ընդունիս զանոնք՝ երբեք օգուտ պիտի չգտնես անոնցմէ. և թէ որ աշխատելու տեղ՝ դանդաղ կ'ըլլաս, պըտուղը կը կորսնցունես։ Աշխատէ՛ ուրեմն ժրութեամբ և սրտի մտօք և Աստուծմէ գոհացիր որ տակաւին ժամանակ կը շնորհէ քեզի աս բաներուն համար։

Քեզ առանց պատճառի չտխրելու ցուցունելու համար, հոս քանի մը ազդու խորհրդածութիւններ պիտի աւելցունեմ։ Արթնցիր և ինչպէս Մովսէս ըսաւ Իսրայելացւոց, “Քու սրտիդ մէջը դիր ամէն աս խօսքերը, որոնք այսօր վկայութիւն բերի. քանզի ասիկայ քեզի պարապ բան մը չէ որովհետև քու կեանքդ է”։ Տէրը քու սիրտդ բանայ և հաստատէ իր խորհուրդները քու մէջդ քու սրտիդ ներգործելով։

1. Խորհէ՛ թէ ո՛րչափ հարկ է որ՝ մեր ծուլանալութեանը համար ըլլայ մեր ունեցած նեղութիւնն, ընելու գործերնուս, մեր ժամանակին կորուստեանը և ան-

առաջադրութեանը, և մեր ընտանեացը հոգևոր ժողովա-նութեանը: Պրիտանիէին փափաքներուն և ջան-քերուն նպատակները այնչափ մեծ են, որ երկ-րի վրայ որ և իցէ մարդկային հանճար չկրնար ըմ-բռնել զանոնք: Ի՞նչ բան մը այնչափ գերազանց՝ այնչափ հարկաւոր՝ որչափ զԱստուած փառաւո-րելն ու մեր ու այլոց հոգիներուն փրկութիւնը գոր-ծել, դժոխքին տանջանքներէն ազատելով ու եր-կինքին փառքը տանելով: Եւ այսպիսի կա-րևոր բաներու արդիւնաւորութիւնը որչափ աւելի ալ ըլ-լայ, կրնա՞յ չափազանց ըսուիլ: Որչափ եռան-դով փափաքելու ըլլանք կամ որչափ սաստիկ սի-րելու ըլլանք, տակաւին քիչ չէ՞. կամ թէ որ մէ-կը անոնց համար ժրութեամբ աշխատելու ըլլայ՝ կրնա՞յ ըսուիլ որ չափէն աւելի աշխատեցաւ: Չե՞նք գիտեր որ եթէ մեր աղօթքները չզօրանան և մեր աշխատութիւնները չյաջողին, յաւիտեան պիտի կորսուինք: Երկրի վրայ քրիստոնէի մը գործը շատ մեծ ու բազմատեսակ է: Հոգին նորո-գուելու է, ապականութեան գործքերը մահա-ցունելու է, սովորութիւնները՝ փորձութիւններն ու աշխարհային շահախնդրութիւնը յաղթուելու են. մարմինը նուաճելու է, կեանքը՝ բարեկամնե-րը՝ պատիւը արհամարհուելու են. բանաւոր պատ-ճառներով խղճմտանքը խաղաղելու է, և թողու-թեան ու փրկութեան վստահութիւնը ձեռք ձը-գուելու է: Յիրաւի Աստուած պիտի տայ մեզի ասոնք առանց մեր արժանաւորութեանը, սակայն պիտի չտայ առանց մեր եռանդով խնդրելուն և աշխատելուն: Ասկէ զատ շատ գիտութիւն կայ ստանալու, շատ կարգադրութիւններ կան 'ի գործ դրուելու և շատ պարտաւորութիւններ կատար-ուելու. ամէն հասակ, տարի ու օր որոնց կը հաս-

նինք, ամէն տեղ որ կ՚երթանք, ամէն մարդ ո-րուն հետ գործ կ՚ունենանք, և մեր վիճակին ամէն փոփոխութիւնները նոր աշխատութիւն կը պահանջեն. կնիկներ, զաւկըներ, ծառաներ, դրացիներ, բարեկամներ, թշնամիներ, ամէնը պարտաւորութիւններ կը դնեն մեր վրայ: Դժուար է ուրեմն որ ան մարդը որն որ այսչափ պարտաւորութիւններ ունի կատարելու՝ ջանք ընելու չէ՞. Միթէ խելացութիւն է յապաղելն ու դանդաղելը: Ժամանակը կ՚անցնի: Քանի մը օրէն՝ այլ հոս պիտի չգտնուինք: Շատ հիւանդութիւններ պատրաստ են մեր վրայ յարձակելու: Մենք որ հիմա կը քալենք, մտիկ կ՚ընենք, կը խօսինք, կը պտըտինք, քիչ ատենէն հողը պիտի դրուինք և հոն որդերուն պիտի թողուինք խաւարի ու ապականութեան մէջ, գրեթէ հոն հասած ենք արդէն. չենք գիտեր ուրիշ քարոզ մ՚ալ պիտի լսե՞նք, ուրիշ Կիրակի մը կամ ուրիշ ժամու մ՚ալ պիտի հասնի՞նք: Որչափ գործունեայ ըլլալու են անոնք որոնք գիտեն թէ այնչափ կարճ միջոց մը ունին այնպիսի մեծ գործի համար: Նաև թշնամիներ ալ ունինք որ միշտ դարան կը գործեն և կ՚աշխատին մեր կործանման համար: Որչափ ճարպիկ է Սատանան մեզ ամէն կերպով փորձելու մէջ: Առաքելոյ "արթո՛ւն կեցէք, հսկեցէք, վասն զի ձեր հակառակորդը Սատանան, մռնչող առիւծի պէս, կը պտըտի ու կը փնտռէ թէ ո՛վ պիտի կլլէ. որուն դէմ կեցէք հաւատքով հաստատուած": Որչափ ճարպիկ են "Սատանային պաշտօնեաները, սուտ ուսուցիչները, ծաղր ընողները, հալածիչները". բայց ամենէն աւելի գործունեայ ու ճարպիկ մեր ներքին ապականութիւնները են: Տկար ընդդիմութիւն մը ընելը կրնա՞յ

բաւական ըլլալ տար ։ Մե՛նք աւելի գործունեայ ըլլալու չե՞նք մեր յաջողութեանը համար, քան որչափ մեր թշնամիները մեր կործանմանը համար են ։

2. Նաեւ մեզ ալ գործունեայ ըլլալու յորդորուելու ենք, երբոր խորհինք մեր պարգեւները, մեր ընդունած ողորմութիւնները՝ մեր Աստուծոյ հետ ունեցած յարաբերութիւնը. եւ անոր մեզի տուած խորհուրդները ։ Ս. պարգեւները՝ որ մենք ընդունեցինք շատ են ու մեծ ։ Երկրի՛ երեսին վրայ օդ չնչող ո՞ր ժողովուրդը աւելի պարզ խրատներ ընդունեց, կամ աւելի աղդու պատճառներ, աւելի հաստատուն յորդորանքներ, առեններ և առնեն դուրս. այնչափ քարոզներ՝ որ ալ կը ձանձրանանք, և այնչափ Աւետարաններ՝ որ ալ կ՚ուրենք զանոնք, այնչափ շատ աղնիւ գիրքեր՝ որ օրը կարդալնիս չենք գիտեր ։ Ո՞ր ժողովուրդը զԱստուած այնչափ իրեն մօտ ունեցաւ կամ այնչափ շատ անդամ Քրիստոսը խաչուած իր աչքին առջեւը. կամ երկինքն ու դժոխքը իր առջեւը բացուած ։ Ի՞նչպէս միայն ըլլալու է ասանկ ժողովուրդ մը երկինք երթալու. այսպիսի թեւեր ունենալէն ետքը ի՞նչպէս թռչելու են. հոսանքն ու հովը իրենց նպաստաւոր ըլլալէն ետեւ, ի՞նչպէս արագ նաւարկելու են ։ Պէտք չէ որ քիչ շնորհք ունենայ այսպիսի ժողովուրդ մը, և ո՛չ Աստուծոյ գործին մէջ հասարակ ժրաջանութիւն մը կ՚աղատէ զինքը պարտքէ ։

Բոլոր մեր կեանքը լեցուած է ողորմութիւններով ։ Աստուած մեծ ողորմութիւնով առատացուցած է մեր վրայ ծովուն և ցամաքին՝ երկնի ու երկրի պարգեւները ։ Ներսէն ողորմութիւններ՝ դուրսէն ողորմութիւններ ։ Զանոնք համբերը աստղերը կամ ծովուն եզերքը եղած աւազը

համրել է։ Եթէ դժոխքին ու երկրին մէջ տարբերութիւն մը կայ, կամ մանաւանդ երկնի ու երկրի մէջ, ուրեմն անշուշտ ողորմութիւն ընդունած ենք։ Եթէ Աստուծոյ Որդւոյն արիւնը ողորմութիւն է, ուրեմն ողորմութիւնով Աստուծոյ մօտեցած ենք։ Կ'ուզենք որ Աստուած ինչ շնորհք՝ ինչ բարիք որ ընէ մեզի համար, շատ ըրած չհամարի. իսկ մենք ինչ որ Աստուծոյ համար ընենք շատ բա՞ն ըրած համարելու ենք։ Երբ կը բաղդատեմ իմ դանդաղ և անշահ կեանքս հանապազ ընդունած զարմանալի ողորմութիւններուս հետ, ամօթով ափիբերան կ'ըլլամ ու անպատասխանի կը մնամ։

Դարձեալ մեր առ Աստուած ունեցած յարաբերութիւնները խիստ սիրալիր են։ Եթէ անոր զաւկըներն ենք, ուրեմն խիստ խանդակաթ սէր մը և հլու հնազանդութիւն մը պարտաւոր չե՞նք անոր։ Եթէ «Քրիստոսի խօսուած» ենք, պէտքը չէ՞ որ հնազանդինք իրեն ու սիրենք զինքը։ Եթէ Հայր է, ո՞ւր է իր պատիւը. և եթէ Տէր է՝ ո՞ւր է իր երկիւղը։ Մենք «վարդապետ ու Տէր կը կոչենք զանիկայ և աղէկ կ'ըսենք», բայց եթէ մեր գործունէութիւնը համեմատ չըլլայ մեր յարաբերութիւններուն, ինքըզինքնիս կը դատապարտենք անոր զաւկըները կամ անոր ծառան ենք ըսելով։ Ծառաներուն իրենց տէրերը հաճեցունելու համար կրած ծանր աշխատանքն ու հանապազօրեայ վաստակը ի՞նչպէս պիտի դատէ ու դատապարտէ ան մարդիկը՝ որոնք նոյնչափ ժրութեամբ չեն աշխատիր իրենց մեծ Տէրոջը համար։ Անտարակոյս Աստուծոյ նման տէր մը չկայ, և ոչ ալ ծառայ մը կրնայ իր աշխատութիւններուն համար իր տէրոջմէն այնչափ վարձատրութիւն յուսալ, որ-

չափ Աստուծոյ ծառաները անկէ կրնան ակըն-կալել : Եւ եթէ խոտորինք Աստուծոյ ճամբէն կամ դանդաղինք անոր մէջ , ամէն արարած պատ-րաստ է Աստուծոյ գաւազանն ըլլալու մեզ ուղիղ ճամբան բերելու կամ յառաջ վարելու համար : Մեր ընդունած ամենաքաղցր ողորմութիւնները մեզի տրտմութիւն պիտի ըլլան : Ուրիշ գաւա-զան հարկաւոր չէ , Տէրը մեզ գաւազան պիտի ը-նէ մեր անձերուն . մեր ախտաւոր մարմինները մեզի հառաչել պիտի տան . տատանեալ միտքերնիս մեզ անհանգիստ պիտի ընեն . մեր խիղճը կարիճ պիտի ըլլայ մեր ծոցը : Աւելի դիւրին չէ՞ աշխատու-թիւն յանձն առնուլ քան թէ խիթան : Միթէ աւելի ընտրելի՞ է ծոյլ կենալ ու տառապիլ , քան թէ ելլել աշխատիլ : Եւ թէև վիշտեր պատա-հելու ըլլան շատ աշխատողին , անշուշտ անոր բա-ժակին դառնութիւնը կը մեղմանայ իր խղճին հան-գարտութեանն ու առ Քրիստոս հաւատարմու-թեանը համեմատ :

3 . Մեր գործին մէջ ժրաջանութիւննիս կենդա-նացնելու համար խորհելու ենք թէ ինչ օգնութիւն-ներ ունինք , ինչ օգնականներ կը գտանենք . Եւ ստորագե-գիտնալու ենք թէ ինչ որ ընենք , պէտք եղածէն ա-ւելի ըրած չենք ըլլար : Բոլոր աշխարհ մեր ծա-ռան է Աստուծոյ ծառայութեանը մէջ մեզի օգ-նական ըլլալու համար : Երկինքը , լուսինը և աստղերը մեզի կը ծառայեն իրենց լուսովը ու ազ-դումներովը : Երկիրը իր ամէն զարդերովը , այ-սինքն՝ բոյսերովը՝ ծաղիկներովը՝ պտուղներովը՝ թռչուններովը ու չորքոտանիներովը . ծովը իր բնակիչներովը . օդը , հովը , ցուրտն ու ձիւնը , ջերմութիւնն ու կրակը , ամպերն ու անձրևը , ա-մէնը մեր սպասաւորներն են , երբոր մենք մեր գործը

կը կատարենք ։ Եւ ոչ այնչափ միայն այլեւ "բոլոր հրեշտակները մեզի սպասաւորող հոգիներ են" ։ Եւ դարձեալ Աստուծոյ համբերութիւնը մեզի կը սպասէ . Տէր Յիսուս Քրիստոս մեզի կը սպասէ իր արիւնը նուիրելով , Սուրբ Հոգին կը սպասէ մեր խստապարանոց սրտերուն հետ ճըգնելով . ասկէ զատ Աւետարանին պաշտօնեաները սրբելով , քարոզելով , աղօթելով կը սպասեն անհոգ մեղաւորներուն ։ Արդեօք աններելի մեղք մը չէ՞ մեզի անհոգ ըլլալ եւ արհամարհել , քանի որ հրեշտակներն ու մարդիկ , մանաւանդ Տէրը ինքնին քովերնիս կեցած մեզի կը նայի եւ որպէս թէ ճրագ կը բռնէ մեզի , երբոր մենք բան մը չենք ըներ ։ Կը խնդրեմ քեզմէ ո՛վ քրիստոնեայ եղբ որ աղօթք կ'ընես , կամ յանցաւոր մը կը յանդիմանես , կամ որ եւ իցէ պարտաւորութիւնդ կատարելու վրայ ես , յիշէ թէ ի՛նչ օգնութիւն ունիս քու գործիդ , եւ ապա դատէ թէ ինչպէս կատարելու ես զանիկայ ։ Մեր դաւանած սկզբունքները սուրբ են . Աստուած է գերագոյն բարի , բոլոր մեր երջանկութիւնը անոր սիրոյն վրայ կը կայանայ , փառքոյ ամէն բանէ վեր դասելու եւ ամէն բանէ աւելի խնդրելու ենք անոր սէրը . Աստուած մեր միակ Տէրն ըլլալով գերագոյն պաշտօն եւ ծառայութիւն ընդունելու արժանի է մեզմէ . սիրելու ենք զինքը բոլոր մեր սրտովը , հոգիովը եւ զօրութիւնովը . երկրի վրայ մեր մեծ գործը զԱստուած փառաւորել եւ փրկութիւն ստանալն է ։ Աս վարդապետութիւնները մեր վարքին մէջ կ'երեւի՞ն , կամ թէ ընդհակառակն գործքով չե՞նք ուրանար ինչ որ բերնով կը դաւանինք ։ Բայց որչափ ալ որ մեր օգնութիւններն ու սկզբունքները մեզ զօրացունեն մեր գործին մէջ , տակաւին գիտենք որ բնաւ պէտք է-

զածեն առնելի մէկ կրնար ըլլալ։ Եթէ «ամէն բան կատարենք, տակաւին անպիտան ծառաներ ենք», ապա որչափ աւելի երբոր գիտենք թէ ամէն բանի մէջ պակաս գտնուած ենք։ Ով որ կարող է հնազանդիլ կամ ծառայել Աստուծոյ՝ պէտք եղածէն աւելի։ Ինչպէս մարդիկ բոլոր սնապաշտութիւնները կամ մարդկային մտքէ հնարած ծառայութիւնները կատարելով չափէն աւելի արդարութիւն գործած կը սեպուին, բայց մենք որ ճշդութեամբ Աստուծոյ խօսքին կը հետեւինք՝ չենք կրնար հաւատալ թէ երբէք մեր պարտաւորութենէն աւելի արդարութիւն գործած կրնանք ըլլալ։ Աշխարհ չարութիւնով յիմարած է. երբոր կը կարծէ թէ Քրիստոսի ծառայութեանը մէջ հաւատարիմ ժրաջանութիւն ընելը յիմարական բան մըն է։ Բայց մօտ է այն ժամանակը երբ դիւրաւ պիտի իմանան, թէ Աստուած որչափ որ սիրուի և որչափ որ իրեն ծառայութիւն ըլլայ՝ պէտք եղածէն աւելի չկրնար ըլլալ. և թէ մարդ որչափ փոյթ ընէ իր հոգւոյն փրկութեանը համար, չկրնար չափէն աւելի ըրած ըլլալ։ Աշխարհի համար շատ դիւրաւ չափէն աւելի բան կ՚ընենք, բայց Աստուծոյ համար բնաւ չենք կրնար։

4. Մտածենք դարձեալ՝ թէ ամէն շնորհքին քննութիւնն է որ փոյթը կ՚աւելցունէ, թէ երկնից թագաւորութեան մէջ անոնց քանիցս կ՚ըլլայ նորոգական աշխատութիւն է, թէ շատ պարապական ժամանակներ ուրէն կորսուած են, և թէ մեր աշխատութեանը համեմատ պիտի ըլլայ մեր վարձքը։ Տես ամէն մէկ շնորհքին բնութիւնն ու բերումը։ Եթէ զԱստուած սիրէիր, բնաւ աւելի բան մը ըրած պիտի չհամարէիր, թէ և անոր ծառայելու ու եւս քան զեւս անոր հաճոյ ըլլալու համար բոլոր ձեռքէդ եկածը

ըրած ըլլայիր։ Սէրը արագ է և անհամբեր, գործունեայ և զգուշաւոր։ Եթէ Քրիստոսը սիրէիր, անոր հրամանները կը պահէիր, և չէիր գանգատեր թէ չափէն աւելի խիստ են իր պատուէրները։ Եթէ հաւատք ունենայիր, ան պիտի կենդանացունէր և քաջալերէր քեզ։ Եթէ փառաց յոյսը ունենայիր, անիկայ ժամացոյցին զըսպանակին պէս՝ հոգւոյդ բոլոր անիւներուն շարժում կու տար։ Եթէ Աստուծոյ վախը ունենայիր, ան կը սթափեցունէր քեզ քու ծուլութենէդ։ Եթէ նախանձ ունենայիր, նախանձդ կը բորբոքէր և կ'ուտէր քեզ։ Ինչ աստիճանի սրբութիւն որ ստացած ես, նոյն աստիճանի ալ հոգ և աշխատութիւն կ'ունենաս Աստուծոյ գործին մէջ։ Անոնք որ անհոգ կ'ըլլան, իրենց աշխատութիւնը կը կորսնցունեն։ Շատերը որ Ագրիպպասին պէս շատ մօտ են Քրիստոնէութեան ու Քրիստոնեայ չեն, վերջապէս պիտի տեսնեն որ շատ մօտ էին փրկուելու՝ բայց պիտի չփրկուին։ Եթէ երկու հոգի ասպարէզի մը մէջ ընթանան, ան որ կամաց կ'ընթանայ, կը կորսնցունէ մրցանակն ալ՝ աշխատութիւնն ալ։ Ծանր բան մը վերցունելու համար աշխատող մարդը՝ եթէ բաւական ուժ չտայ անոր, բնաւ ուժ չտուածի պէս կ'ըլլայ։ Քանի՛ քանի պարտաւորութիւններ կորսնցուցած են քրիստոնեաները, զանոնք անթերի կատարած չըլլալնուն համար։ "Շատերը մըտնել պիտի ուզեն, և պիտի չկրնան", որոնք եթէ ջանային, կարող պիտի ըլլային։ Ուստի քիչ մը աւելի ջանք և ուժ բանեցուր որ քու արդէն բոլոր ըրածդ վայրապար եղած չըլլայ։ Մանաւանդ որ արդէն շատ մը պատրաստական ժամանակներ կորսուած են։ Մեր մէջէն ոմանց տղայութեան և պա-

տանեկութեան ժամանակները արդէն անցած են, և ոմանց միջակ հասակն ալ. և տակաւին առջենիս եղած ժամանակը շատ անստոյգ է։ Որչափ ժամանակ քունով, խօսելով, խաղալով կամ աշխարհային խորհուրդներով ու հոգերով անցուցած ենք։ Մեր գործին որչափ սակաւ մասը կատարուած է։ Կորսնցուցած ժամանակնիս ետ չենք կրնար դարձունել, ուրեմն մնացած քիչ ժամանակը շահելու և օգտակար կերպով գործածելու չե՞նք։ Եթէ ճամբորդ մը օրուան մեծ մասը քնանալով կամ ոչինչ բաներու զբաղելով անցունէ, իրիկունը նոյն համեմատութեամբ աւելի արագ ճամբայ ընելու է, ապա թէ ոչ իր ճանապարհորդութեանը վախճանէն ետ կը մնայ։ Այս անտարակոյս կէտերը [illegible] ուշադրութեամբ հա[illegible] [illegible] ըլլայ։ Ան սերմը որ կը թաղուի ու կը մեռնի՝ առատ հունձ կը բերէ։ Ինչ որ ընես կամ կրես, յաւիտենական հանգիստը պիտի տայ ամենուն փոխարէնը։ Երբոր երկինք երթաս, աշխատութիւններուդ կամ կրած վիշտերուդ համար պիտի չզղջաս։ Մէկը չկայ որ ըսէ թէ "Երանի թէ այնչափ աշխատանք չքաշէի և աւելի քիչ աղօթք ընէի, կամ այնքան ճշդութեամբ չվարուէի և ուրիշներուն պէս ընէի"։ Ընդհակառակն՝ պիտի ուրախանան, երբոր նային իրենց աշխատութիւններուն ու նեղութիւններուն վրայ. խորհին և մտածեն թէ ինչպէս Աստուծոյ կարող զօրութիւնը ազատեց զիրենք ամենէն։ Մենք կրնանք ըսել Պօղոս Առաքեալին հետ, "ինծի աւանկ կ'երևայ՝ որ աս ժամանակիս չարչարանքները" և աշխատութիւնները "բան մը չեն գալու փառքերուն քովը, որ մեզի պիտի յայտնուի"։ Աշխատինք դրեթէ բոպէ մը, բայց պիտի հանգ-

չինք յաւիտեան : Ո՞վ չաշխատեր բոլոր ուժով ժամ՝ մը, երբոր ան ժամուն գործին պատճառովը բոլոր կեանքին մէջ իշխան մը կրնայ ըլլալ՝ "Ոչ թէ Աստուած անիրաւ է, որ ձեր գործքերը մոռնայ՝ ու ան սէրը, որ իր անունին համար ցուցիք" : "Բոլոր արցունքները մեր աչքերէն պիտի չորցուի՞ն". և բոլոր մեր պարտաւորութիւններուն տրտմութիւնները ան ատենը պիտի չմոռցուի՞ն :

5. Նաև արժան է մտածել թէ քանի՛ Աստուծոյ սահմանելով ծածկած է փրկութեան, թէ ան մարդ կը հաւատայ կամ պէտք հաւատայ անոր. Թէ աննալու տրամադրութիւնները մարդուն որքան կ՚ողբան իրենց ընդդիմութիւնը, և թէ երկինքը շատ անգամ կը հոգայ քանի՛ պաշտպանութիւնն, բայց բնաւ փրկութեան պայմաններով չէ տուեր : Աստուծոյ ծածկագոյն իմաստութիւնը փրկութեան հարկաւոր միջոց մը ըրաւ ջանքը : Երկինքին Աստուծմէն աւելի աղէկ ո՞վ կրնայ գիտնալ երկինքին ճամբան : Երբոր մարդիկ մեզ խստակեաց կը կոչեն զո՞վ կ'ամբաստանեն, զԱստուա՞ծ թէ մեզ : Եթէ պակասութիւն է, յանցանքը անորն է՝ որ կը հրամայէ, և ոչ թէ մերը՝ որ կը հնազանդինք : Անոնք ան մարդիկն են որ մեզի կը հարցունեն թէ դուք աշխարհի բոլոր ուրիշ մարդերէն իմաստո՞ւն էք. բայց աս ըսելով զիրենք Աստուծմէ աւելի իմաստուն կը դնե՞ն : Իրենց ըսածները ինչպէս կրնան Աստուծոյ օրէնքին հետ համաձայնեցունել : "Երկնից Թագաւորութիւնը ուժով կ'առնուի, և ուժովները կը յափշտակեն անիկայ : Ջանք ըրէք որ նեղ դռնէն մտնէք. ինչու որ շատերը մտնել պիտի ուզեն և պիտի չկրնան : Ինչ որ կը գտնէ ձեռքդ ընելու՝ ըրէ քու բոլոր ուժովդ, ինչու-

որ գերեզմանին մէջ՝ ուր որ կ՚երթաս, ոչ գործ կայ, ոչ խորհուրդ, ոչ գիտութիւն և ոչ իմաստութիւն : Ահով ու դողով ձեր անձին փրկութիւնը գործեցէք : Ջանք ըրէք հաստատ պահել ձեր կոչումը և ընտրութիւնը : Եթէ արդարը դժուարաւ պիտի փրկուի, ամբարիշտն ու մեղաւորը ո՞ւր պիտի գտնուին" : Թող անոնք՝ որչափ որ կրնան՝ 'ի վկայութիւն բերեն իրենց երևելի պատճառները ան սուրբ ջանքին դէմ՝ զորն որ սուրբերը կ՚ընեն : Զանոնք ամէնը հերքելու համար ինծի բաւական է սա մինակ՝ որ Աստուած ուրիշ խորհուրդ ունի, և ըրածէս շատ աւելին ընել հրամայեց ինծի, և թէև ուրիշ պատճառ չկրնամ տեսնել, անոր կամքը բաւական պատճառ է : Ո՞վ օրէնք պիտի շինէ մեզի համար, եթէ ոչ ան՝ որ ստեղծեց մեզ. և ո՞վ պիտի ցուցընէ մեզի երկնից ճամբան, եթէ ոչ ան՝ որ մեզ հոն պիտի տանի : Եւ ո՞վ պիտի դնէ փրկութեան պայմանները, եթէ ոչ ան՝ որ կը շնորհէ փրկութեան պարգևը : Ինչպէս որ թող աշխարհ, մարմինը և սատանան խօսին սուրբ և աշխատասէր կեանքի մը դէմ, իմ պատասխանըս աս է, Աստուած այսպէս հրամայեց : Նաև եղած չէ և պիտի չըլլայ մարդ մը որ չհաւանի ասանկ կեանքի մը, և օր մը չարդարացունէ սըրբոց ջանքը : Եւ ո՞վ չուզեր երթալ ան ճամբէն զորն որ ամէն մարդ վերջապէս պիտի գովէ : Ճըշմարիտ է որ հիմա ամէն մարդ աս ճամբուն դէմ կը խօսի. բայց ներեցէք որ ըսեմ՝ թէ անոր դէմ խօսողներէն շատերը իրենց մտքին մէջ կը հաւանին անոր. և անոնք որ հիմա անոր դէմ են քիչ մը ետքը ուրիշ կերպ պիտի խորհին : Եթէ երկինք երթան, դեռ հոն չհասած պիտի սկսին ուրիշ կարծիք ունենալ : Եթէ դժոխք երթան ան ա-

տեսնեն ալ ուզեն չուզեն իրենց դատումը պի-տի փոխուի ։ Յիշեցէք այս բանը որ Հասարակու-թեան կարծիքն ու ընթացքը կը սիրէք ։ Արդեօք ինչո՞ւ համար չէք ուզեր ան կարծիքը ունե-նալ, զորն որ ամէն մարդ վերջապէս պիտի ու-նենայ ։ Ինչո՞ւ ունենաք այնպիսի դատում մը զորն որ վստահ էք թէ ամէնքդ ալ քիչ ատե-նէն պիտի փոխէք ։ Երանի՛ թէ այս բանին մէջ գժոցքի մէջ եղողներուն չափ իմաստուն ըլլայիք ։ Ամենէն [illegible] անգամ մեռնելու ատեն-նին [illegible] կ'ողբան իրենց զանցառութեանը վրայ ։ Ամէն մարդ պիտի ըսէ ան ատենը " Երանի թէ հազար անգամ աւելի սուրբ, աւելի երկնային և աւելի աշխատասէր եղած ըլլայի իմ հոգւոյս հա-մար ։ Աշխարհը կ'ամբաստանէ զիս թէ իմ հոգ-ւոյս համար չափէն աւելի բան կ'ընեմ, բայց իմ խիղճս կ'ամբաստանէ զիս չափէն աւելի քիչ ընե-լուս համար ։ Շատ դիւրին է աշխարհի մէջ ծաղր ու ծանակ ըլլալ, քան թէ խղճին յանդի-մանութիւնը կրել ։ Աւելի կ'ընտրեմ Աստուա-ծէն նախատուիլ փրկութիւնը փնտռելուս համար, քան թէ փրկութեան փոյթ չտանելուս համար Աստուծմէ յանդիմանուիլ" ։ Ինչպէս կը վի-րաւորուէին ու կը խռովէին իրենց պակսութիւ-ներուն համար անոնք՝ որոնք աշխարհին զբա-մանք եղած էին իրենց երկնային փառմունքին հա-մար ։ [illegible] է որ [illegible] կը [illegible] ։ Եթէ անոնք որ "խօսքը լսեցին և շատ մը ուրախութեամբ ընդունեցին", և շատ բաներ կ'ընէին և Քրիստոսի պաշտօնեաներուն ուրա-խութեամբ մտիկ կ'ընէին, բայց և այնպէս պիտի կորսուէին. աս բանը բաւական պատճառ չէ՞ մեզ մեր անհոգութենէն սթափեցունելու ։ Շատերը Քրիս-

տօսի նմանէն գացին, բայց ո՞րչափ. երբ որ տե-սան թէ իրենց բոլոր աշխարհային շահերն և յոյսերը ուրանալու են, թողուցին զՔրիստոս։ Աստուած այնպէս որոշած է որ երկինքը դիւրագոյն պայմաններով ձեռք չձգուի։ Հանգիստը միշտ աշխատութեան նմանէն գալու է։ «Առանց սըր-բութեան ոչ մէկը պիտի տեսնէ Տէրը»։ Արտի մօրք ջանալը բուն ան բանն է՝ որուն մէջ կը կա-յանայ մեր անկեղծութիւնը։ Եթէ անհոգ ես՝ քրիստոնեայ չես։ Աս բանը քրիստոնէութեան մէջ ոչ միայն բարձր աստիճան մըն է, այլ անոր բուն հոգին և էութիւնն է։ Թէատրոնի մէջ գօտեմարտողները՝ իրենց կենացը համար կռուող զինուորներէն ինչ տարբերութիւն որ ունէին, կեղ-ծաւորներն ալ նոյն տարբերութիւնն ունին սրտանց քրիստոնեայ եղողներուն քովը։ Եթէ մարդիկ կարող ըլլային փրկուիլ առանց աս ջանքն ընելու, բնաւ հոգ պիտի չունենայինք անոր վրայ. Աստու-ծոյ ճամբաներուն բոլոր գերազանցութիւնները բնաւ պիտի չհրապուրէին զիրենք։ Բայց երբ Աստուած վճռեց թէ առանց հոս բազմահոգ ջանք ընելու պիտի չհանգչինք հանդերձեալին մէջ, խե-լացութիւն չէ՞ բոլոր ուժով ջանք ընել։

6. Բայց՝ եթէ կարելի է, քեզ համոզելու հա-մար որ երկինքին համար ջանք ընելու մէջ հա-ւատարիմ ըլլաս, քանի մը խորհրդածութիւններ ալ աւելցունեմ։ Օրինակի համար՝ մտածէ թէ Աստուած անկեղծ ու հաստատուն է քեզի, դուն ին-չո՞ւ անկեղծ ու հաստատուն պիտի ըլլաս անոր։ Իր հրամաններուն, սպառնալիքներուն ու խոստմունք-ներուն մէջ այնպէս կը խորհի ինչպէս որ կը խօ-սի։ Իր դատաստաններուն մէջ, ստոյգ է։ Այն-պէս չէ՞ր երբոր ջրհեղեղով ողողեց աշխարհը. եր-

քով Սոդոմ ու Գոմորը այրեց և երկար Հրէաները ցրուեց ։ Սակայն միթէ հնա՞ր է Աստուծոյ հետ խաղալ ։ Յիսուս Քրիստոս ալ անկեղծ էր մեր փըր-կութիւնը ծախու առնելու գործին մէջ ։ Իր քա-րոզութեանը մէջ՝ ուտելն ու խմելն անգամ զանց կ'ընէր . աղօթքի մէջ՝ ամբողջ գիշերներ կ'անցու-նէր . բարիք ընելու կողմանէ՝ իր բարեկամները խե-լագարած կը կարծէին զինքը . Նեղութիւն քաշե-լու մէջ քառասուն օր ծոմ պահեց, փորձուեցաւ, մատնուեցաւ, երեսը թքին, ծաղր ըրին, փու-շերով պսակեցին, խաչեցին, խոցեցին և մեռ-ցուցին ։ Ասոր աս բաներուն մէջ թեթեւութիւն չկայ . կատակ չեն ասոնք . մենք ալ մեր փրկու-թիւնը փնտռելու մէջ անկեղծ ըլլալու չե՞նք ։ Նոյնպէս Սուրբ Հոգին ճշմարտութեամբ կը յորդորէ մեզ երկնային ըլլալու ։ Իր ազդեցութիւնները յա-ճախ են, յորդորական ու ստիպողական ։ Ընիկայ «աշխարհը կը յանդիմանէ» ։ Կը տրտմի երբոր հակառակ կը կենանք իրեն . ուրեմն պէտքը չէ՞ որ մենք ալ ճշմարիտ ջանք ունենանք ան ազդե-ցութիւններուն հնազանդելու ու անսալու մէջ ։ Աստուած հաւատարիմ է մեր աղօթքները լսելու և իր պարգեւները շնորհելու մէջ ։ Երբոր նեղութեան մէջ ես, կ'ուզես որ Աստուած ճշմարտութեամբ նայի և լսէ քու աղօթքներդ ։ Բայց կրնա՞նք արդեամբք տրտմութիւն ընդունելու յոյս ունենալ, քանի որ մենք թեթեւ ու հարեւանցի կը շարժինք Աստուծոյ գործին մէջ ։ Քրիստոսի պաշտօնեաներն ալ հա-ւատարիմ ջանք կ'ընեն մեզ խրատելու և յորդորելու մէջ Աստուծոյ կ'աղաչեն ու քեզի կ'աղաչեն և ուզեն կը փափաքին քու հոգւոյդ փրկութեանը, քան թէ որ և իցէ երկրաւոր բարիքի մը ։ Եթէ մեռնիլ անգամ պատահի իրենց աշխատութիւն-

ներուն մէջ, կամ մարտիրոսութիւն կրել Աւետարանին քարոզութեանը համար, կեանքերնին օգտակար տեղը գործուած պիտի համարին. այնչափ կը ջանան և հոգ ունին քու հոգիդ փրկելու: Մի՛թէ արժա՞ն է որ ուրիշները այնչափ հոգով ու դժուարութիւններով աշխատին քու փրկութեանդ համար, ու դուն քու անձիդ համար անհոգ ըլլաս: Ի՛նչպէս սպասաւորք ու ծառաներ կը ջանան ամէն օրուան տեղը ծառայելու: Ի՛նչպէս կը փութայ արեգակը իր ընթացքին մէջ աշխարհիս բոլորտիքը: Գետերն ու աղբիւրները միշտ կը վազեն որ դուն վայելես. գարունն ու հունձքը իրենց ժամանակը կը պահեն: Ո՛րչափ ստոյգ կ'աշխատին քու եզերդ ամէն օր քեզի համար: Ի՜նչ արագ կը քալէ ձիդ որուն վրայ կը հեծնաս: Ու դո՞ւն միայն անհոգ պիտի ըլլաս: Ասոնք ամէնը կատարեալ և ճիշդ ծառայութիւն ընեն քեզի, և դուն անհո՞գ պիտի ըլլաս Աստուծոյ ծառայելու մէջ: Աշխարհիս ու Սատանային ծառաները ժրաջան ու փութաջան են: Այնպէս կ'աշխատին որպէս թէ բնաւ բաւական պիտի չկրնան գործել. այնպէս կ'աճապարեն՝ որ կարծես թէ կը վախնան որ ուշ չմնան դժոխք երթալու. քարոզիչները՝ քարոզները և բոլոր առջևնին եղած բաները ոտքի տակ կ'առնեն: Անոնք դատապարտութեան համար այսչափ փութաջան են. իսկ դուն փրկութեանդ համար ծո՞յլ պիտի ըլլաս: Չէ՞ որ անոնց տէրոջմէն աւելի աղէկ Տէր մը ունիս, աւելի քաղցր պաշտօն մը, աւելի մեծ քաջալերութիւններ, և լաւագոյն վարձք մը: Ատեն մը փութով կը ծառայէիր Սատանային և մարմինին, եթէ մինչև հիմա ալ այնպէս չէ: Ո՛րպիսի փափաքով կը հետևէիր քու խեղկատակութիւննե-

րուդ, քու չար ընկերներուդ և մեղսալից հաճոյքներուդ։ Եւ հիմա նոյնչափ փութաջան ու եռանդուն պիտի չըլլա՞ս Աստուծոյ համար։ Մինչև այսօր մեծ փոյթ ունիս աս կենաց բաներուն։ Եթէ հիւանդանաս կամ վիշտ մը ունենաս, ի՜նչպէս սրտանց ու ազդու դարմաններ կ՚ընես քու նեղութիւններուդ վրայ։ Եթէ աղքատ ըլլաս, ի՜նչպէս սաստիկ կ՚աշխատիս ապրուստ գտնելու համար։ Եւ քու փրկութեանդ գործը ասոնցմէ աւելի կարևոր բան չէ՞։ Կատակ չկայ երկինքին կամ դժոխքին մէջ։ Սուրբերը իրական երջանկութիւն մը ունին և չարերը իրական թշուառութիւն մը։ Ծոյլ ու թմրած փառաբանութիւններ չկան երկինքի մէջ, և ոչ թեթև ու տկար ողբեր դժոխքի մէջ։ Հոն ամէն բան ճշմարտութեամբ է։ Երբոր դուն՝ ո՜վ ընթերցող, մեռնելու և դատաստանի գալու ըլլաս, ի՜նչ խորին ու սաստիկ խոցոտիչ խորհուրդներ պիտի ունենաս յաւիտենականութեան վրայ։ Եւ արդէն իբր թէ կը տեսնեմ քեզ բոլորովին ապշած, խորհելով՝ թէ ի՜նչպէս կրցար ոչինչ համարել այնպիսի մեծամեծ բաները, իբր թէ կը լսեմ քու աղաղակդ ու ողբդ անզգայութեանդ և յիմարութեանդ վրայ։

Եւ արդ՝ ո՛վ ընթերցող, աս անժխտելի ապացոյցները առջևդ դնելով, Աստուծոյ անուամբը կը պահանջեմ որ որոշես թէ պիտի հնազանդիս թէ ոչ։ Աստահ եմ որ քու խիղճդ համոզուած է քու պարտաւորութեանդ վրայ։ Կը համարձակի՞ս հիմա յառաջ երթալ քու սովորական անհոգ ընթացքովդ, բանականութեան պարզ դատողութեանը դէմ, Աստուծոյ հրամանին և քու խըղճիդ լուսոյն դէմ։ Կը համարձակի՞ս հիմա ալ այնպէս թուլութեամբ ապրիլ, այնչափ համար-

ձակ մեղանչել և այնքան հազիւ աղօթել ինչպէս որ առաջ սովոր էիր ընելու ։ Ով համարձակիս Կիրակին աւրել, Աստուածային պաշտօնը արհամարհել, և քու յաւիտենական վիճակիդ վրայ առջի պէս անհոգութեամբ խորհիլ ։ Կամ թէ մանաւանդ չե՞ս որոշեր «մտքիդ մէջքը գտնուած» ինքզինքդ բոլորովին քու փրկութեանդ գործին տալ, յաղթել աշխարհի ընդդիմութիւններուն, արհամարհել մարդոց ծաղրաբանութիւնները և հալածումները «ամէն ծանրութիւն մէկդի ձգել, և քեզի կցորդ եղած մեղքը ։ համբերութիւնով վազել քու առջևդ եղած ասպարէզին» ։ Ով յուսամ որ ասոնք քու կատարեալ որոշումներդ են ։ Բայց և այնպէս գիտնալով մարդկային սրտին յամառութիւնը, ու քու հոգւոյդ փրկութեանը փափաքելով անգամ մ'ալ կ'աղաչեմ որ միտ դնես յետագայ խնդիրներուն . և Աստուծոյ կողմանէ կը հրամայեմ քեզի որ խիղճդ չկարծրացունես, և մտքիդ համոզմանը դէմ չկենաս, այլ հաւատարմութեամբ պատասխան տաս անոնց՝ և անոնց համեմատ հնազանդութիւն ընես ։ Եթէ Աստուածպաշտութեան մէջ ժրաջան ըլլալով հարըստանայիր, պատիւ ու մեծութիւն ստանայիր աշխարհի մէջ, հիւանդութենէ ազատէիր կամ թէ յաւիտեան յաջողութեամբ ապրէիր երկրի վրայ, ի՞նչ կեանք պիտի վարէիր և ինչպէս պիտի աշխատէիր Աստուծոյ ծառայութեանը մէջ ։ Ու չէ՞ որ սրբոց հանգիստը աս ամենէն աւելի գերազանց երջանկութիւն մըն . է ։ Եթէ Կիրակին աւրես, քարոզը կամ ընտանեկան աղօթքը կամ քու վարուցդ մէջ թող ըլլալը մահապարտութեան յանցանք ըլլային, ի՛նչ կերպ մարդ պիտի ըլլայիր ան ատենը ։ Ու չէ՞որ յաւիտենական մահը ժա-

ժամանակաւորէն առաւելի է։ Եթէ Աստուած ա-փոփոխար. ներկայ պատիժով մը պատժէր ամէն մեղք, ինչպէս Անանիան ու Սափիրան, ինչ կերպ կեանք պիտի վարէիր։ Ու չէ՞ որ յաւիտենական բարկութիւնը շատ աւելի զարհուրելի է։ Եթէ քու բարեկամներէդ մէկը մեռելներէն գար, և քեզի ըսէր թէ ինք դժոխքին տանջանքները կը կրէ նոյն մեղքերուն համար՝ որոնք դուն սովորես գործելու, ինչ կերպ մարդ պիտի ըլլայիր անկէ վերջը։ Որչափ աւելի փախցունելու են քեզ Աստուծոյ ազդարարութիւնները։ Եթէ գիտնայիր որ աս վերջին օրն է որ կ'ապրիս երկրի վրայ, ինչպէս պիտի անցունէիր անիկայ։ Ու գիտես թէ կրնայ ըլլալ որ այսօր վերջինը ըլլայ. և վստահ ես թէ քու վերջին օրդ մօտ է։ Եթէ աշխարհիս վերջին ընդհանուր աւերումը և անոր բոլոր շքեղութիւնն ու փառքին մոխիր դառնալը տեսնէիր, այնպիսի տեսարան մը ինչ ընելու պիտի համոզէր քեզ։ Այսպիսի տեսարան մը անշուշտ պիտի տեսնես։ Եթէ տեսած ըլլայիր դատաստանի ատեանը, և դիրքերը բացուած ու չարերը դողալով դատաւորին ձախ կողմը կեցած, և աստուածապաշտներն ուրախութեամբ աջ կողմը շարուած. և լսելու ըլլայիր անոնց իրարմէ տարբեր վճիռներուն կարդացուիլը, ինչպիսի մարդ պիտի ըլլայիր աս ամէնը տեսնելէդ ետքը։ Ստուգիւ օր մը պիտի տեսնես ասոնք։ Եթէ տեսած ըլլայիր դժոխքը բացուած և բոլոր դատապարտեալները հոն իրենց անվախճան տանջանքին մէջ. նաև Ստեփաննոսին պէս տեսնէիր երկինքը բացուած, և հոն բոլոր սուրբերը՝ որ յաղթական հանդէս կը կատարեն փառքի մէջ, ինչ կեանք պիտի վարէիր ասոնք տեսնելէդ վերջը։ Ասոնք շատ

չանցած պիտի տեսնես ։ Եթէ տարի մը կամ օր մը կամ ժամ մը միայն կեցած ըլլայիր դժոխքը, և հոն անձամբ քաշած ըլլայիր անոնց տանջանքները՝ որոնց վրայ հիմա կը լսես, ինչ ծանրութեամբ պիտի խօսէիր ան ատենը դժոխքի վրայ, և ինչպէս պիտի աղօթէիր անկէ ազատելու համար ։ Եւ Աստուծոյ խօսքը ասոր ճշմարտութեանը չ՞վկայեր, թէև դու ալ չզգաս անիկայ ։ Կամ թէ եթէ արքայութեան փառքը միայն տարի մը վայելած ըլլայիր, ո՞րչափ պիտի աշխատէիր որ չըլլայ թէ այնպիսի աննման փառքէ մը զրկուիս ։ Այսպէս ես բաւական խօսեցայ, և ըսածներս եթէ բաւական չեն մեղաւոր մը իր փրկութեանը խնամքով հոգ տանելու համոզելու չափ ալ, գոնէ բաւական են զինքը լռեցունելու և Աստուծոյ դատաստանին մէջ անպատասխանի ընելու ։ Ապա թէ ոչ՝ ինչ որ մեր մեռած բարեկամներուն կ՚ընենք, այսինքն կը տեսնենք թէ երբոր ալ մեր խօսքերն ու գործքերը օգուտ մը չեն կրնար ընել անոնց, մեր անոնց վրայ ունեցած սիրոյն սաստկութենէն ստիպուած կու լանք և կ՚ողբանք, նոյնը ես ալ պիտի ընեմ աս ապերջանիկ հոգիներուն համար ։ Սիրտս կը դողայ երբ կը խորհիմ թէ ինչպէս պիտի կենան Տէրոջը առջևը խայտառակ եղած ու անշշունչ ։ Երբոր ան պիտի ըսէ, “Աշխարհը կամ Սատանան իզմէ աղէ՞կ բարեկամ էին քեզի, կամ թէ քեզի համար իզմէ աւելի՞ բան ըրած էին ։ Նայէ հիմա քեզ կը փրկե՞ն կամ երկինքին կորուստը կրնա՞ն փոխարինել քեզի ; կամ թէ այնչափ բարերար պիտի ըլլա՞ն քեզի որչափ որ ես պիտի ըլլայի” ։ Ի՞նչ պատասխան պիտի տայ աս խօսքերուն խեղճ մեղաւորը ։ Բայց թէև մարդիկ մտիկ չընեն ; յոյս ունինք որ Աստուած կ՚ընէ եր-

բոր իրմէ խնդրենք ։ "Դուն Տէ՛ր՝ որ լացիր և տխրեցիր հոգւով՝ մեռած Ղազարոսի մը վրայ, գթա՛ աս մեռեալ ու անզգայ հոգիներուն, որ ինքզինքնին մեղքերնուն ու իրենց վրայ լան ու ողբան ։ Ինչպէս որ դուն հրամայեցիր քու ծառաներուդ որ խօսին, նոյնպէս դո՛ւ խօսէ հիմա ։ Անոնք որ իմ՝ իրենց ականջին խօսած ձայներս միտք չեն ըներ, քու ձայնիդ միտք կ'ընեն, երբոր անոնց սրտերուն խօսիս ։ Տէր՝ շատոնց է որ աս սիրտերուն դուռը չալեցիր, բայց 'ի զուր. ալ կոտրէ՛ հիմա դուռը և ներս մտիր"։

Աստուածապաշտներուն ցուցնելու համար թէ ինչո՞ւ ուրիշներէն աւելի իրենք պարտական են ժրաջան ըլլալ երկնից համար, կ'ուզեմ հարցունել անոնց թէ ի՞նչպէս մարդիկ ըլլալու են անոնք՝ որոնք Աստուծմէ ընտրուած են ողորմութեան անօթներ ըլլալու. և իրենց նորէն ծնանելուն վրայ անհոգ ըլլալուն համար սաստիկ ցաւ զգացած են, այսինքն խղճի նեղութիւններ՝ թերեհաւատութիւն՝ երկիւղ և ուրիշ դառն տագնապներ կրելով, որոնք շատ անգամ խոստովանած են աղօթքներնուն մէջ Աստուծոյ դէմ ըրած մեղքերնին, որոնք ինքզինքնին կապած են Աստուծոյ՝ այնչափ բազմաթիւ ուխտերով ։ Ի՞նչպէս մարդիկ ըլլալու են անոնք՝ որոնք իբրև Աստուծոյ զաւկըները մօտ են Աստուծոյ, որոնք յօժարական հնազանդութեան մէջ այնչափ քաղցրութիւն ճաշակած են, և շատերնին արդէն այնչափ անստուգութեան մէջ են թէ ինչ պիտի ըլլայ յաւիտեան իրենց հոգին ։ Ի՞նչ տեսակ անձինք պիտի ըլլան սրբութեան կողմանէ անոնք՝ որոնք Աստուած սրբացուց և որոնց վարքը և ունեցած պարտաւորութիւններուն կատարումը այն-

չափ ներգործութիւն ունի բազմաթիւ մարդոց վրայ փրկութեան կամ կորստեան կողմանէ, և որոնցմէ այնչափ կախում ունի մեծին Աստուծոյ փառքը: Արդ՝ որովհետև աս բաները այսպէս են, իմ Տէրոջս անունովը կը պարտաւորեմ քեզ ով քրիստոնեայ, որ խորհիս և լուծես աս խընդիրը թէ "ինչ կերպ անձինք ըլլալու ենք՝ բոլոր սուրբ վարքով և աստուածպաշտութեամբ": Ձեռ թող քու վարքդ ալ քու լեզուիդ հետ պատասխան տայ աս հարցմանը:



# ԳԼՈՒԽ Ը

Սիրոյ հանգիստին մէջ մեր ճանաչողութիւն ունենալը ինչո՞ւ պէտք որոշենք:

Արդ թէ արդարև կա՞յ այսպիսի փառաւոր մօտալուտ հանգիստ մը մեզի համար, և միթէ Աստուծոյ ժողովուրդէն զատ մէկը պիտի չվայելէ՞ զանիկայ: Ուրեմն ինչ ըսել կ'ուզէ աշխարհին մեծ մասը այնպէս գոհ ապրելով, առանց վստահութիւն մը ունենալու թէ աս հանգիստին մասնակից պիտի ըլլան, և զանց ընելով աս բանին համար ջանք ընելը: Քանի որ Տէրը այնպէս կատարեալ ցուցուցած է ան թագաւորութեանը երանութիւնը՝ որն որ միայն հնազանդ հաւատացեալները պիտի ժառանգեն, և այնչափ պարզապէս յայտնած է ան տանջանքները, որոնք բոլոր ուրիշները պիտի քաշեն. ինծի կը թուի թէ անոնք որ ստուգիւ կը հաւատան թէ աս բաները. Ճշմարիտ

են, բնաւ հանգստութիւն պիտի չունենան իրենց անձին մէջ, մինչեւ որ կատարելապէս ապահով չըլլան իրենց ան թագաւորութեանը ժառանգ ըլլալուն ։ Ով Տէ՛ր, ի՛նչ զարմանալի յիմարութիւն է աս, որ ան մարդիկը՝ որոնք գիտեն թէ քիչ ատենէն անվախճան ուրախութեան կամ ցաւի վիճակի մը մէջ պիտի մտնեն, իրենց դատապարտութեանը վրայ այնպէս անկասկած կ'ապրին՝ որպէս թէ բնաւ այնպիսի բան մը լսած չեն. և մանաւանդ այնպէս հանդարտութեամբ և ուրախութեամբ կ'ապրին աս անհոգութեան մէջ, որպէս թէ ամէն բան ապահով է և բնաւ վտանգ չկայ ։ Աս մարդիկը ո՞ղջ են, թէ մեռած. արթո՞ւն են, թէ քուն։ Ի՞նչ խելքի տէր են։ Ո՞ւր է սրտերնին։ Եթէ կարևոր դատ մը ունենան, ո՜րչափ հոգ կ'ընեն և կը ջանան գիտնալու թէ արդեօք դատատաննին պիտի յաջողի թէ ոչ ։ Եթէ երկրաւոր ատեանի մը մէջ իրենց վրայ քննութիւն ըլլայ, ո՜րչափ կը փութան գիտնալ թէ արդեօք պիտի ազատին թէ պիտի դատապարտուին, մանաւանդ եթէ գիտնան թէ իրենց հոգ ընելովը անշուշտ կարող պիտի ըլլա՛ն ազատիլ ։ Եթէ վտանգաւոր հիւանդութեան մէջ ըլլան, կը հարցունեն բժիշկին ու կ'ըսեն, "ի՞նչ կը կարծես, պիտի ազատիմ թէ ոչ"։ Բայց անձերնուն փրկութեանը գործին մէջ գոհ կ'ըլլան իրենց անստոյգ վիճակովը ։ Շատ մարդու եթէ հարցունես, ի՞նչ պատճառ ունիս քու յոյսիդ, պիտի ըսէ, "Աստուծով Աստուած ողորմած է և Քրիստոս մեղաւորներուն համար մեռաւ ։ Ես ալ անոնց պէս ընդհանուր պատճառներ, որոնք իրեն պէս ամէն մարդ ալ կրնայ զրուցել ։ Բայց՝ թէ որ պահանջելու ըլլաս որ ապացուցանեն թէ իրենք ինչ հաղորդութիւն ունին

Քրիստոսի հետ և ինչ մասնակցութիւն Աստուածոյ փրկարար ողորմութեանը մէջ, անոր վրայ բան մը չեն կրնար ըսել: Եթէ Աստուած կամ մարդ մը ըսէ իրենց թէ ինչ վիճակի մէջ է հոգիդ, ով մա՛րդ, նորոգուա՞ծ է՝ սրբացա՞ծ է՝ ներում ընդունա՞ծ է՝ թէ ոչ. ան պիտի պատասխան տայ՝ ինչ պատասխան որ Կայէնը Աբէլին համար տուաւ, թէ "Չեմ գիտեր, ես իմ հոգիիս պահապա՞նն եմ: Յոյսս հաստատ է, Աստուծոյ կը յանձնեմ իմ հոգիս: Ամէն մարդ ինչպէս որ ազատի ես ալ այնպէս կ'ազատիմ: Կը գոհանամ Աստուծմէ, բնաւ տարակոյս մը ունեցած չեմ փրկութեանս վրայ": Բայց դուն պատճառ ունիս տարակուսելու, բնաւ չտարակուսելուդ և աւելի ևս՝ քու վստահութեանդ մէջ այնչափ անհոգ ըլլալուդ համար: Ուրիշ բան չեն ցուցուներ քու խօսքերդ, բայց եթէ քու փրկութիւնդ կամաւ զանց ընել մը. ինչպէս նաւապետ մը որ թողու իր նաւը ժայռերուն՝ ալիքներուն և հովերուն դէմ ու ըսէ, "Ես Աստուծոյ կը յանձնեմ, ուրիշ նաւերը ազատածին պէս աս ալ պիտի ազատէ". Աս ինչ սոսկալի չարաչար վարուիլ է Աստուծոյ հետ. Աստուծոյ ապաւինութիւն ընելու պատրուակով՝ իր կամաւոր զանցառութիւնը ծածկել: Եթէ ճըշմարտապէս ապաւինած ըլլայիր Աստուծոյ, անոր կանոնին համաձայնելու էիր, և անոր ուզած կերպովը ըլլալու էր քու ապաւինութիւնդ: Անիկայ կը պահանջէ որ ջանք ընես քու կոչումդ և ընտրութիւնդ հաստատ պահելու, և այնպէս իրեն ապաւինիս. Ինք Սուրբ Գրոց մէջ ճամբայ մը ցուցուցած է քեզի, որով կը պարտաւորիս քննել և փորձել քու անձդ և կրնաս հանիլ ստուգութեան: Յիմար չէ՞ ան ճամբորդը որ կը շարու-

նակէ իր ճամբան, երբոր չգիտեր թէ ճամբան շիտա՞կ է թէ սխալ, և կ'ըսէ «Այլ յուսամ որ ճամբաս շիտակ է, յառաջ կ'երթամ ու Աստուծոյ կ'ապաւինիմ»։ Դուն ալ նոյն մեղադրութեան տակ չե՞ս քու յաւիտենական ճամբորդութեանդ մէջ. երբոր ամենեւին չես խորհիր որ քու ճամբուդ ուղղութեանը վրայ ապահով ըլլալու համար քիչ մը քննութիւն ընելու ես, և ան ատենը կրնաս ինքզինքդ ազատել ան աշխատութիւններէն որոնք պարապ տեղը կը կրես, և ետ դառնալ. և եթէ այսպէս չընես՝ փրկութենէ պիտի զրկուիս և քու անձդ կործանես։

Ինտա՞ր կրնաս աներկիւղ խորհիլ կամ խօսիլ մեծ Աստուծոյն վրայ, քանի որ չես գիտեր թէ արդեօք ան քու հա՞յրդ է թէ քու թշնամիդ. և գիտես թէ կրնայ ըլլալ որ իր բոլոր կարողութիւնները քեզի դէմ բանեցունէ։ Կամ թէ ի՞նչպէս կրնաս Յիսուս Քրիստոսի վրայ խորհիլ կամ խօսիլ առանց վախնալու, երբոր չես գիտեր թէ արդեօք անոր արիւնը քու հոգիդ մաքրա՞ծ է, և չես գիտեր թէ քեզ պիտի դատապարտէ՞ թէ ազատէ դատաստանին օրը. կամ թէ քու երջանկութեանդ հիմը պիտի ըլլայ թէ գլորցունող քար մը քեզ ճզմելու և փշրելու համար։ Ի՞նչպէս կրնաս բանալ Սուրբ Գիրքը և գլուխ մը կարդալ առանց դողալու։ Այնպէս կ'երեւի ինծի թէ անոր ամէն մէկ էջը Բաբելացւոց Բաղտասար թագաւորին պատին վրայի գրուածին պէս պիտի ըլլայ քեզի, միայն ան խօսքերէն 'ի զատ որ քեզ կը յորդորեն ջանք ընել և ուղղուիլ։ Եթէ խոստմունքները կարդաս, չես գիտեր թէ անոնք պիտի կատարուին քեզի համար։ Եթէ կարդաս անոր սպառնալիքները, որչափ որ դուն գիտես՝

կարելի է նոյն իսկ քու դատապարտութեանդ վը-
ճիռն է կարդացածդ. Զարմանք չէ որ թշնամի
ես պարզ քարոզութեան, և կ'ըսես նոյն բանը քա-
րոզիչին համար ինչ որ Աքաաբ թագաւորը ըսաւ
Մարգարէին համար, թէ Ա՛յս կ'ատեմ անիկայ,
վասն զի ան ինծի համար աղէկ մարգարէութիւն
չըներ, այլ գէշ: Ի՞նչպէս առանց վախի կըր-
նաս աղօթքի ընկերանալ: Երբոր Տէրոջ ընթ-
րիքէն կը ճաշակես, չես գիտեր թէ քեզի մահու
դե՞ղ կ'առնես թէ օրհնութեան Ի՞նչ մխիթա-
րութիւն կրնաս գտնել քու բարեկամներուդ,
պատուոյդ, տուներուդ, երկիրներուդ, մինչև որ
չգիտնաս թէ Աստուծոյ սէրը ունիս անոնց հետ
և Անոր քովը հանգիստ պիտի վայելես երբոր զա-
նոնք ձգես ու երթաս. Դի՛ր բանտարգելեալի մը
առջին երաժշտութիւն, հանդերձներ կամ պա-
տիւ, ի՞նչ են անոնք անոր՝ երբոր չգիտեր տա-
կաւին թէ արդեօք մահուընէ պիտի ազատի՞ թէ
ո՛չ. քանզի եթէ գիտնայ թէ հետևեալ օրը պի-
տի մեռնի, ան ատենը չէին մխիթարութիւն մը
պիտի ըլլայ հարուստ կամ պատուաւոր մեռնիլը
Ինծի կ'երևի թէ քեզի ալ այնպէս ըլլալու է մին-
չև որ չգիտնաս քու յաւիտենական վիճակդ։
Երբոր պառկիս քնանալու, ինծի կ'երևի թէ քու
փրկութեանդ անստուգութիւնը քեզ պիտի չքը-
նացունէ կամ երազի մէջ քեզ պիտի զարհուրե-
ցունէ ու քունդ անհանգիստ պիտի ըլլայ: Չե՞ս
վշտանար, երբոր կը տեսնես թէ Աստուծոյ ժողո-
վուրդը այնչափ հանգիստ է իր գէթ 'ի փառաց
ճամբուն մէջ, քանի որ դուն հաստատ յոյս մը
չունիս թէ պիտի վայելես անիկայ: Ի՞նչպէս կըր-
նաս քու մահուանդ ժամուն վրայ խորհիլ: Գի-
տես որ ան ժամը մօտ է, անկէ ազատում չկայ:

և ոչ գեղ մը գտնուած կայ անիկա՝ արդիւնքը։ Եթէ այսօր մեռնելու ըլլաս, (և "չես գիտեր թէ օրը ինչ պիտի ծնանի",) վստահ չես որ երկի՞նք պիտի երթաս թէ դժոխք։ Ու կրնա՞ս ուրախ ըլլալ մինչև որ աս վտանգաւոր վիճակէն չազատուիս։ Ի՞նչ հնարք կը բանեցունես քու սիրտըդ սոսկումէն պահելու, երբոր կը խորհիս դատաստանին ան մեծ օրուանն ու յաւիտենական բացերուն վրայ։ Երբոր կը լսես անոր վրայ, չե՞ս դողար Փելիքսին պէս։ Եթէ պահապանները խըռովեցան և մեռածի պէս եղան երբ որ անոնց հըրեշտակին իջնելը ու քարը Քրիստոսի գերեզմաննէն թաւալեցունելը, դուն ի՞նչպէս կրնաս խորհիլ դժոխքի մէջ դևերուն հետ բնակելու վրայ, մինչև որ աղէկ հիմնուած վստահութիւն մը չունենաս թէ դուն պիտի ազատիս անկէ։ Հարկ է որ անկողինդ շատ կակուղ կամ սիրտդ շատ կարծըր ըլլայ, որ կարող ըլլաս խորունկ քնով մը նընջել աս անստոյգ վիճակիդ մէջ։

Եթէ մարդոց՝ իրենց փրկութեանը վրայ աս ընդհանուր անստուգութիւնը անդարմանելի ըլլար, ուրիշ անխորշելի չարիքներու պէս ասոր ալ հարկ կ՚ըլլար համբերել։ Բայց աւա՜ղ որ սովորական պատճառը յօժարական կանգատութիւն է։ Մարդիկ չեն ուզեր համոզուիլ որ գէշն ըլլեն։ Աս անստուգութիւնը յաղթելու մեծ միջոցը անձնաքննութիւնն է, այսինքն մարդ զգուշութեամբ և ջանքով իր սիրտը և վիճակը Սուրբ Գրոց կանոններուն փորձելը։ Մարդիկ կամ չեն հասկընար աս պարտաւորութեանը բնութիւնը և օգուտը, և կամ չեն ուզեր աշխատութիւն կրել փորձն ընելու համար։ Մտիր հազար մարդոց մէջ և փնտռէ, որչափ քիչերը պիտի գտնես որ իրենց բոլոր կենա-

ցը մէջ գտնէ ժամ մը առած են՝ իրենց երկինքին հետ ժամանակցութիւն ունենալուն վրայ մինչ քըննութիւն մը ընելու: Դու խղճի՛դ հարցուր, ընթերցող, ե՛րբ էր այն ժամանակը, և ո՛ւր էր այն տեղը որ երբեք անաչառ կերպով մը դատեցիր սիրտդ՝ որպէս թէ Աստուծոյ առջեւը, և քննեցիր Սուրբ Գրքով թէ նորոգուա՞ծ է թէ չէ. սո՞ւրբ է թէ չէ Աստուծո՞յ վրայ են սրտիդ զգացումները մանաւանդ՝ թէ արարածներու վրայ, երկինքի՞ թէ երկրի վրայ: Ու ե՞րբ շարունակեցիր աս քննութիւնը մինչև որ իմացար վիճակդ և անոր համեմատ վճիռ ըրիր անձիդ վրայ: Բայց որովհետև ասիկայ խիստ կարևոր գործ մըն է, և այնչափ ընդհանուր անոր զանցառութիւնը, անոր համար պիտի ցուցընեմ որ եթէ մարդ ջանք ընէ, կրնայ ստուգութեան հասնիլ. և դարձեալ թէ ինչ բան կ'արգիլէ մարդիկ իրենց վիճակը քննելէն և գիտնալէն: Յետոյ շարժառիթներ պիտի յառաջ բերեմ քննելու, և կերպերը պիտի ցուցընեմ Սուրբ Գրքէն քանի մը նշաններով, որով կարող ըլլաս փորձել և ստուգիւ գիտնալ թէ դուն Աստուծոյ ժողովուրդէ՞ն ես թէ ոչ:

1. Սուրբ Գիրքը կը ցուցընէ թէ քրիստոնեան ստուգութիւնը կրնայ գտնալ, և անոր համար աշխատիլ պէտք է. Երբոր այնչափ յաճախակի կ'ըսէ թէ մեզմէ առաջ եղող սուրբերը գիտէին իրենց արդարացած ըլլալն ու ապառնի փրկութիւնը, երբ կը ծանուցանէ թէ "ո՛վ որ հաւատայ Քրիստոսի պիտի չկորսուի, այլ յաւիտենական կեանք պիտի ունենայ", ի զո՜ւր եղած կ'ըլլար ասանք ծանուցանելը, եթէ կարող չըլլայինք ճանչնալ ինքզինքնիս թէ հաւատացեալ ենք թէ ոչ: Երբոր այնչափ մեծ տարբերութիւն կը դնէ Աստու-

ծոյ զաւկըներուն և դիւին զաւկըներուն մէջ. երբոր կը հրամայէ մեզի «ջանք ընել որ մեր կոչումը և ընտրութիւնը հաստատ պահենք», և կը յորդորէ որ «փորձենք, քննենք և գիտնանք ինքզինքնիս թէ նոյն հաւատքին մէ՞ջն ենք, և թէ Քրիստոս մեր մէ՞ջն է, միայն թէ որ խոտելի չըլլանք». Նաև երբոր իր խրատներովը կը պահանջէ մեզմէ ուրախ ըլլալ միշտ, զԱստուած մեր Հայրը կոչել և ապրիլ իրմէն գոհանալով, սիրել Քրիստոսի գալուստը, փափաքիլ որ շուտով գայ և մխիթարել ինքզինքնիս ան խօսքերովը: Բայց ո՞վ կրնայ ասոնց մէկը սրտանց ընել թէ որ չափով մը վստահ չէ թէ ինք Աստուծոյ զաւակն է:

2. Մարդիկ անձնաքննութենէ ետ բռնելու բազմաթիւ պատճառներուն մէջ Սատանան ալ անշուշտ իր մասը կ'ընէ. Եթէ բոլոր իր ունեցած զօրութեամբն ու բանեցուցած միջոցներովն ու գործիքներովը կարող ըլլայ ամէն ուրիշ պարտաւորութիւններէն աւելի քեզ ասկէ ետ պահելու, ստուգիւ այնպէս պիտի ընէ: Ան չուզեր որ աստուածապաշտները ունենան ուրախութիւն՝ վստահութիւն և քաջալերութիւն պղծութեան դէմ դնելու, և աս բաները կրնան ունենալ անձնաքննութիւնը հաւատարմութեամբ կատարելով: Իսկ ամբարիշտներուն համար գիտէ որ եթէ անգամ մը ըստ պատշաճի քննելու ըլլան անձերնին, կրնան իմանալ անոր խաբէութիւնն ու իրենց վտանգը, և այնպէս հաւանական է որ հրաժարին իրմէն: Ինչպէս կրնար գտնել այնչափ միլիօնաւոր անձինք որ յօժար կամօք ուզէին դժոխք երթալ, եթէ գիտցած ըլլային թէ ստուգիւ հոն կ'երթան: Եւ ի՞նչպէս կրնային չգիտնալ անոնք, եթէ կատարեալ քննութիւն մը ընէին այնպէս պայծառ լոյս մը և

ստոյգ կանոն մը ունենալով Սուրբ Գրոց մէջ ։ Եթէ որոգայթը ծածուկ չըլլայ, թռչունը կը զգուշանայ անկէ ։ Սատանան գիտէ թէ ինչպէս որսալու է հոգիները, առանց ցուցընելու կարթն ու թելը, կամ առանց խրտուցանելու զանոնք ձայնով մը կամ իր երևոյթովը ։ Սատանայ կ՚աշխատի հեռու պահել զանոնք հարցունող փնտռող քարոզիչէ, կամ քարոզիչը արգիլել իրենց անձը քննելու օգնելէն, կամ կը ջանայ Աստուծոյ խօսքին սրութիւնը առնել, որ չթափանցէ ու չբաժնէ, կամ կը նայի որ անոնց խորհուրդները ուրիշ տեղ դարձունէ և կամ կապէ զանոնք նախապաշարումներով ։ Երբոր քարոզիչը սիրտերը քննելու յարմար քարոզ մը պատրաստեր է ունկնդիրին վիճակին ու կարօտութեանը համաձայն, Սատանան գիտէ. ուստի որչափ հնար է կը ջանայ արգիլելու ունկնդիրը քարոզէն ան օրը. կամ թըմրութիւն կը բերէ վրան, և կամ խօսքը կը յափըշտակէ աշխարհային հոգերով ու խօսակցութիւններով. վերջապէս կերպով մը կը խափանէ անոր ներգործութիւնը ։

Անձնաքննութեան մէկ ուրիշ մեծ արգելքն ալ մարդոց չարութենէն յառաջ կու գայ ։ Անոնց օրինակը, զուարթ ընկերութիւննին, և խօսակցութիւննին, աշխարհային հոգերու վրայ անոնց յարատև հաստատութիւնը, անոնց ըրած ծաղրն ու կատակը բարեպաշտ մարդիկներու վրայ, նաև անոնց համոզիչ խօսքերը, թելադրութիւններն ու սպառնալիքները, ասոնց ամէնը մեծամեծ փորձութիւններ են անհոգ ըլլալու ։ Հազիւ թէ Աստուած խեղճ մեղաւորի մը աչքերը բացած է որ իր ճամբուն մոլոր ըլլալը տեսնէ, յանկարծ շատ մը Սատանայի առաքեալներ պատրաստ կ՚ըլլան անի-

կայ խաբելու, և նորէն իր անհոգութեան մէջ զինքը հաստատելով իր աչքի տեղոյն ձեռքը կը մատնեն: "Ի՞նչ կը տարակուսի՞ս" կ'ըսեն "քու փրկութեանդ վրայ, դուն որ այնպէս աղէկ կը վարուիս և մարդու գէշութիւն ըրած չես: Աստուած ողորմած է, և եթէ քեզի պէսները չփրկուին, հապա այնչափ մարդի՞կ ինչ պիտի ըլլան: Ի՞նչ եղան քու հայրերդ ու պապերդ, և ինչ պիտի ըլլան քու այնչափ բարեկամներդ ու դրացիներդ՝ որոնք քու մինչև հիմա գացած ճամբուդ մէջն են: Ամէնը դժո՞խք պիտի երթան, ու միայն դո՞ւն պիտի փրկուիս: Եկո՛ւր՝ եկո՛ւր՝ եթէ աս քարոզիչներուն մտիկ ընես, անոնք քեզ կը ցնորեցունեն: Անոնք ալ մեղաւոր են. և Քրիստոս մեղաւորները փրկելու համար մեռաւ: Նաև մի նեղեր ինքզինքդ այդպիսի խորհուրդներով, և աղէկ պիտի ըլլաս": Ա՜հ քանի հազարաւորներ այսպիսի հրապոյրներով խաբուելով քունի մէջ կեցած են, մինչև որ մահն ու դժոխքը զիրենք արթնցունէ: Տէրը կ'աղաղակէ մեղաւորին ու կ'ըսէ, "Նեղ է դուռը, նեղուածք է ճամբան, և քիչերը կը գտնեն": փորձէ ու քննէ ջանա որ հաստատ պահես": Իսկ աշխարհ կ'աղաղակէ, ըլնաւ մի տարակուսիր, ամենևին մի նեղեր ինքզինքդ ադ խորհուրդներով: Մտածէ՛ ով փրկութեան մէջ եղող մեղաւոր, թէ Քրիստոս է՝ և ոչ քու պապերդ կամ դրացիներդ կամ բարեկամներդ, որ քեզ վերջապէս պիտի դատէ. և եթէ Քրիստոս քեզ դատապարտէ, անոնք չեն կրնար քեզ ազատել. անոր համար բանականութիւնը կը վըկայէ որ ոչ թէ ագէտ մարդոց զրոյցներէն, այլ Աստուծոյ խօսքէն առնելու ես քու փրկութեանդ յոյսը: Աքաաբ թագաւորին [illegible] մար-

գարէններուն բազմութեանը հարցունելը իրեն մահ էր։ Կրնան շողոքորթել մարդը ու որոգայթի մէջ ձգել, բայց փրկելու ճամբան չեն գիտեր։ “Զըլլայ որ մէկը ձեզ խաբէ ունայն խօսքերով. ինչու որ ասոր համար Աստուծոյ բարկութիւնը կու գայ անհնազանդ մարդոց վրայ։ Ասոր անոնց հաղորդ մի՛ ըլլաք”։

Բայց ամենէն մեծ արգելքները մարդուն բուն իր սրտին մէջն են։ Ոմանք այնչափ տգէտ են, որ չեն գիտեր թէ անձնաքննութիւնն ինչ է. և ոչ ալ՝ թէ ինչ ըսել կ'ուզէ քարոզիչը, երբոր կը յորդորէ որ իրենք զիրենք քննեն. և կամ չեն գիտեր թէ հարկաւորութիւն մը կա՞յ անձնաքննութեան. այլ կը կարծեն թէ ամէն մարդ այնպէս հաւատալու է թէ իր մեղքերը ներուած են, թէ՛ ճշմարիտ ըլլայ թէ սուտ, և թէ մեծ պակասութիւն մըն է որ մէկը իր փրկութեանը վրայ տարակուսի. կամ թէ չեն կարծեր թէ մարդ կարող է վստահութիւն ունենալ՝ կամ թէ մեծ տարբերութիւն կրնայ ըլլալ մէկ մարդուն և ուրիշի մը մէջ, բայց ամէնն ալ քրիստոնեայ են, վասնորոյ պէտք չէ ալ աւելի հոգ ընել. կամ գոնէ չեն գիտեր ինչ բանի մէջ կը կայանայ տարբերութիւնը։ Այնչափ աղօտ գաղափար ունին վերստին ծննդեան վրայ՝ որչափ Նիկոդեմոս ունէր։ Ոմանք չեն ուզեր հաւատալ թէ Աստուած այսպիսի զանազանութիւն մը պիտի ընէ մարդոց մէջ գալու կեանքին համար. վասնորոյ հոս չեն ուզեր իրենք զիրենքնին քննել թէ ինչ տարբերութիւն ունին ուրիշներէն։ Ոմանք այնչափ թմրած են, որ ինչ որ ըսես չեն հասկընար, այլ մինչև կ'ըննեն. և այնչափ վհատ։ Նաև ոմանք այնպէս պաշարուած են անձնասիրութիւնով ու հպարտու-

թիւնով, որ ան աշակերտ չեն կրնար խոնարհիլ իրենց վրայ կասկած ունենալու թէ վարանքի մէջ են, ան հպարտ վաճառականին պէս որ իր հաշիւները քննելու խելացի խրատը կ'արհամարհէ. Ինչպէս որ խանդակաթ ծնողք չեն ուզեր հաւատալ կամ լսել չար բան իրենց զաւկըներուն վրայ։ Ոմանք ալ այնպէս չարագործ են որ չեն համարձակիր քննել, բայց և այնպէս կը համարձակին իրենք զիրենք աւելի ահարկու քննութեան մը յանձնելու։ Այլ ոմանք այնչափ սէր ունին մեղքին, և այնչափ կ'ատեն Աստուծոյ ճամբան, որ չեն համարձակիր իրենց ճամբաները քննել, որ չըլլայ թէ սիրած ընթացքնին ձգել ու իրենց ատելի եղած ընթացքին հետևելու ստիպուին։ Կան ալ որ այնպէս հաստատ միտքերնին դրեր են ընաւ չփոխել իրենց ներկայ վիճակը, որ զանց կ'ընեն քննութիւնը իբրև անօգուտ բան մը։ Նոր ճամբայ մը չփնտռած, այնչափ տարիներ կ'անցունեն իրենց յաւիտենական վիճակը վտանգի դնելով։ Շատերը այնպէս զբաղեալ են, որ չեն կրնար նստիլ քննել ինքզինքնին։ Այլ ուրիշները այնչափ կապուած են ծուլութեան հոգիով, որ չեն ուզեր ժամ մը աշխատիլ ու սրտերնին քննել։ Բայց ամենէն ընդհանուր և ամենէն վտանգաւոր արգելքը ան սուտ հաւատքը և յոյսն է՝ որն որ աշխարհի մեծ մասին սիրտերը գրաւած է, և չթողուր որ կասկածին իրենց վտանգին վրայ։

Այլ երբէք մարդ մը չըլլար այս արգելքներուն յաղթէ և ձեռք զարնէ ինքզինքը քննելու, առկային վստահութիւնը անմիջապէս ձեռք չձգուիր։ Իսկ շատերը ինքզինքնին կը խաբեն այս քննութեանը մէջ հետևեալ պատճառներուն մէկովը. այնպիսի շփոթութիւն ու մթութիւն կայ մար-

գուն՝ և մանաւանդ ընտրողացած մարդուն հո-
գիին մէջ, որ հոգին գիտէ՝ թէ ինչ կ՚ընէ ինք
և ինչ կայ իր ներսիդին : Ինչպէս որ տան մը
մէջ՝ ուր բան մը իր յատուկ տեղը չէ, դժուարին
է գտնել թէ ինչ է պակասութիւնը, նոյնպէս
դժուարին՝ այն սրտին մէջ ուր ամէն բան խառն-
գարման մէջ է : Մարդոցմէ շատերը սովորած
են անտեղեակ մնալ իրենց վիճակին. և շատ քիչ
կը նկատեն իրենց սրտին բնութիւնն ու շարժում-
ները : Շատերը չքննած որոշած են ինչ դա-
տելնին. կուշտուր առած դատաստանի մը պէս, որ
քննութիւն կ՚ընէ երբև թէ ուղիղ դատաս-
տան պիտի ընէ, քանի որ առաջուց որոշած է թէ
դատր որ կողմը պիտի վճռէ : Մարդիկ իրենց
դատին մէջ կողմնակալ են, պատրաստ են իրենց
մեծ մեղքերը պզտիկ սեպելու և պզտիկները բնաւ
մեղք չհամարելու. իրենց բնական ձիրքերը շնորհ-
քի գործը սեպելու և ըսելու, "Բոլոր ասոնք պա-
հեցի ես իմ տղայութենէս հետէ": Ես հարուստ
եմ և շատ բարիքներ ունիմ ու բանի մը կարօտ
չեմ : Շատ մարդիկ այ մինչև կէս ճամբան կու գան
իրենց քննութեանը մէջ : Եթէ դիւրաւ և շուտով
չյաջողին, կը վհատին և կը դադրին : Այսպէս նշաննե-
րով և կանոններով կը քննեն ինքզինքնին, չգիտ-
նալով թէ Քրիստոնէութեան ճշմարտութիւնը ինչ
բանի մէջ կը կայանայ. մանաւանդ Սուրբ Գրքին
կանոնէն աւելի, և ամենք պակաս բաներու նայե-
լով : Եւ շատ անգամ անյաջող կ՚ըլլան ան գոր-
ծին մէջ բուն իրենց գործութեամբը անիկայ ընել
ջանալնուն համար : Ինչպէս որ կան ոմանք՝ ո-
րոնք կը սպասեն թէ Սուրբ Հոգին ընէ անիկայ
առանց իրենց, նոյնպէս կան ուրիշներ ալ որոնք
կը ջանան իրենք միայն ընել անիկայ, առանց

խնդրելու կամ ակնկալելու Սուրբ Հոգւոյն օգնութիւնը։ Ասոնք երկուքն ալ անշուշտ պիտի վրիպին ան բարի վստահութեանը կողմանէ։

Քանի մը ուրիշ արգելքներ ալ կան որոնք ճշմարիտ քրիստոնեաներն անգամ կը զրկեն ստուգութեան հաճութենէն։ Ինչպէս՝ շնորհքի տկարութիւնը։ Պզտիկ բաները դժուարաւ կը նշմարուին։ Շատ քրիստոնեաներ գոհ կ'ըլլան քիչ շնորհքով և չեն կրնար յառաջադէմ ըլլալ հոգևոր զօրութեան և կատարելութեան մէջ։ Այսպիսիներուն համար գլխաւոր դեղը պիտի ըլլայ յառաջ տանիլ իրենց պարտաւորութիւնը, մինչև որ իրենց շնորհքներն աճին։ Յուսա՛ առ Աստուած և իր սահմանած միջոցները գործածէ. և անտարակոյս պիտի յաւելցունէ իր շնորհքները քու վրադ։ Երանի թէ քրիստոնեաներն աւելի շնորհք ստանալու ջանքով անցունէին ան ժամանակին մեծ մասը՝ որն որ կ'անցունեն մտատանջութեամբ և տարակոյսներով, թէ արդեօք ան շնորհքը երբէք ունի՞ն, թէ ոչ։ Երանի թէ աւելի շնորհք ստանալու համար աղօթք ընէին ան եռանդուն զգացումներով՝ որոնցմով պարապ գանգատներ կ'ընեն իրենց անձին կամ վիճակին վրայ։ Կ'աղաչեմ քեզի, ո՛վ քրիստոնեայ, մտիկ ըրէ աս խրատը որպէս թէ Աստուծմէ եղած, և ան ատենը՝ երբոր զօրաւոր հաւատք ու եռանդուն սէր կ'ունենաս, չես կրնար տարակոյս ունենալ քու հաւատքիդ և սիրոյդ վրայ, ինչպէս շատ տաքցած մարդ մը չկրնար տարակուսիլ իր տաքութեանը վրայ, կամ զօրաւոր և առողջ մարդ մը չկրնար երկբայիլ իր առողջ ըլլալուն վրայ։ Քրիստոնեաները քուն իրենց մխիթարութիւնը կ'արգիլեն աւելի ան նշաններուն նայելով՝ որոնք իրենց ինչ

ըլլալը կ'իմացունեն, քան թէ այն կանոններուն՝ որոնք կ'իմացունեն թէ ինչ ըլլալու են. որպէս թէ իրենց ներկայ վիճակը պիտի ըլլայ հարկաւ յաւիտենական վիճակնին. և եթէ հիմա թողութիւն գտած չըլլան, ալ ճար չկայ։ Յիմարութիւն չէ՞ նստիլ լալ որ մեղքերդ ներուած չեն, երբոր Տէրդ շարունակ քովդ կեցեր թողութիւն կը խոստանայ և կը յորդորէ որ ընդունիս անիկայ։ Փրկարար հաւատքը՝ ով քրիստոնեայ, Աստուծոյ՝ դէպ'ի քեզի մասնաւոր սէր ունենալուն վրայ համոզուիլդ չէ, այլ քու՝ Քրիստոսը ընդունելդ է, որ քեզ սիրելի ընէ։ Լաւագոյն է Քրիստոս ընդունիլ իբրև շնորհուած, քան թէ այնչափ ժամանակ վարանիլ տարակուսելով թէ արդեօք Քրիստոս ունի՞նք թէ ոչ։ Քրիստոնեաններուն ուրիշ թշուառութեան պատճառ մ'ալ աս է՝ որ վստահութիւն կը սեպեն այն ուրախութիւնը՝ որն որ երբեմն կ'ունենան իրենք զիրենք նորոգուած կարծելէն։ Որպէս թէ տղայ մը միայն այն ատեն որդի սեպելու է ինքզինքը՝ երբոր հօրը երեսը խնդագին կը տեսնէ, և բերնէն անուշ խօսքեր կը լսէ. և կը կարծէ թէ ալ հայրը հայր չէ երբոր կը դադարի աս բաներէն։ Հոգիներուն նեղութիւնը կը շատնայ նաև չգիտնալով Աստուծոյ մխիթարութիւն պարգևելու սովորական կերպը։ Կը կարծեն թէ իրենք ուրիշ բան մը չունին ընելու, բայց միայն սպասել որ Աստուած իրենց մխիթարութիւն պարգևէ։ Բայց գիտնալու են որ իրենց մխիթարութիւնը Աստուածային խոստմունքներուն մէջն է, և հոն փնտռելու են քանի անգամ որ կարօտին, մինչև այն խոստմունքներուն վրայ խորհելով. և աս կերպով թող յուսան որ Սուրբ Հոգին մխիթարութիւն պիտի տայ

մարդիկ են ։ Քու բոլոր տալու յանդիմանութիւններդ և յորդորանքներդ Աստուծոյ իշխանութեամբը հաստատուած ըլլան ։ Թող մեղաւորները աղէկ զգան թէ դուն քու խելքէդ չես խօսիր ։ Ցուցուր անոնց Սուրբ Գրոց ան գլուխը և ան տունը՝ ուր դատապարտուած է իրենց մեղքը և կամ հրամայուած է իրենց չկատարած պարտաւորութիւնը ։ Մարդուն ձայնը արհամարհելի է, իսկ Աստուծոյ ձայնը ահարկու և սոսկալի է ։ Թէպէտ քու խօսքդ կրնան մերժել անոնք, բայց չեն համարձակիր մերժել Ամենակարողին խօսքերը ։ Յաճախէ մարդոց հետ աս յորդորանքի պարտաւորութեանդ մէջ ։ Եթէ մենք "ամէն ատեն աղօթք ընելու ենք և ձանձրանալու չենք", որովհետև Աստուած կ՚ուզէ որ միշտ թախանձենք զինքը, անտարակոյս մարդոց ալ նոյն ընթացքը բռնելու է ։ Ասանորոյ հրաման եղած է մեզի "ամէն ատեն" և "ամէն կերպ համբերութիւնով" մէկզմէկ յորդորել ։ Արակը գայլախաղէն ամէն ատեն մէկ հարուածքով չելլեր, և ոչ մարդոց զգացումները առաջին յորդորանքով կը բորբոքին. և եթէ բորբոքին՝ շուտով կը պաղին, եթէ չշարունակուի յորդորանքը ։ Թախանձէ՛ անզեղջ մեղաւորները քու սէրէդ յառաջ եկած և եռանդուն խնդիրներովդ, և մի տար հանգիստ իրենց մեղացը մէջ ։ Ասիկայ ճշմարիտ մարդասիրութիւն է և մարդոց հոգիները փրկելու ճամբան. և քեզի մխիթարութիւն պիտի ըլլայ երբոր քու ըրածիդ վրայ խորհիս ։ Ջանք ըրէ քու բոլոր յորդորանքդ արդիւնքի մը հասցունելու ։ Եթէ շատ համոզիչ խօսքեր կ՚ընենք և բոլոր մեր հոգը մեր խօսակցութեանը հետ կը վերջանայ, հազիւ երբեմն պիտի յաջողին մեր աշխատութիւն-

ները. և Աստուած սովորաբար անոնց աշխատութիւնները կ'օրհնէ, որոնց սիրտը իրենց ունկնդիրներուն դարձի գալուն վրայ է, և անոր համար իրենց գործին յաջողիլը չյաջողիլը կը հարցունեն կը փնտռեն: Երբոր մեղք մը կը յանդիմանես, մի՛ դադարիր մինչև որ մեղաւորը չխոստանայ անիկայ ձգել և անոր առիթներէն հրաժարիլ: Երբ որ մէկը կը յորդորես մէկ պարտաւորութեան մը վրայ, թախանձէ որ շուտով խոստմունք մը առնես: Եթէ մարդիկը Քրիստոսի կը քաշես, մի՛ թողուր զանոնք մինչև որ չխոստովանին իրենց ներկայ չնորոգուած վիճակին խեղճութիւնը, և Քրիստոսի դիմելուն և նորոգութեան հարկաւորութիւնը. և չխոստանան շնորհաց միջոցները ճշդիւ գործածելու: Երանի՛ թէ ամէն քրիստոնեայ աս ընթացքը բռնէր բոլոր ան տեսակ բարեկամներուն՝ որ մեղքին գերի եղած են և Քրիստոսէ օտարացած: Դարձեալ՝ աս պէտք է գիտնալ որ քու օրինակդ խօսքերուդ չափ յորդորելու է ուրիշները: Թող տեսնեն որ հանապազ կը կատարես ան պարտաւորութիւնները, որոնց համար ուրիշները կը յորդորես: Աշխարհային մարդիկ քու բերնէդ լսածներնին քու վարքիդ վրայ տեսնելու են: Երկնից համար քու ըրած յարատև աշխատութիւններովդ տեսնելու են որ արդարև կը հաւատաս դուն՝ ինչ որ կ'ուզես թէ անոնք հաւատան: Սուրբ և երկնային վարքը շարունակ խայթ մըն է քու բոլորտիքդ եղած մեղաւորաց խիղճերուն, և շարունակ կը դրդէ զանոնք իրենց ընթացքը փոխել:

3. Առանձնական խրատի պարտաւորութենէդ 'ի զատ՝ պարտաւոր ես ջանալ օգնելու ամէն մարդոց որ հրապարակական պաշտօններէն օգուտ քաղեն:

Ա՛ս բանին համար ջանք ըրէ հաւատարիմ պաշ-
տօնեաներ հայթայթել չունեցողներուն համար :
« Ինտո՞ր պիտի լսեն առանց մէկուն քարոզելուն » :
Արցածիդ չափ ջանք ըրէ աս նպատակին համար
մինչև որ յաջողիս : Քանի՛ քանի հոգիներ կը
փրկուին քու պատրաստած քարոզիչովդ : Ամերի-
կայ զանոնք մարմնաւոր նեղութիւններէ ազատելէն
աւելի բարձր և ազնիւ մարդասիրութիւն մըն է :
Ի՞նչ մեծ բարիք կրնան ընել մեծամեծ մարդիկ
եթէ հոգ տանին ճեմարաններու մէջ եղած ա-
նանկ պատանիներուն պիտոյքը համար, որոնք որ
զգուշութեամբ ընտրուած են իրենց տաղանդին
և բարեպաշտութեանը կողմանէ, մինչև որ պատ-
րաստուին քարոզչութեան պաշտօնին. և երբ հա-
ւատարիմ պաշտօնեաներ կը պատրաստուին՝ օգ-
նեն խեղճ հոգիներուն որ վայելեն անոր պտու-
ղը. միշտ յորդորեն որ մտիկ ընեն անոր. յաճախ
միտքերնին ձգեն լսածնին. և եթէ կարելի է՝ իրենց
ընտանեացը մէջ կամ ուրիշ տեղ կրկին մտիկ ը-
նել տան լսածնին. Հրապարակաւ եղած ժողովք-
ներէն 'ի զատ ջանք ընեն որ յաճախ առանձին
ժողովքներ ընել տան, ոչ թէ իբր զատ եկեղե-
ցի, այլ իբրև մասն ինչ եկեղեցւոյ միւսներէն
աւելի ժրաջան ժամանակ չկորսնցուներու և դէպի
երկինք ճամբորդութեան մէջ մէկզմէկու հոգիներ-
րուն օգնելու կողմանէ : Աշխատէ՛ նաև պաշտօն-
ները և պաշտօնեաները յարգի բռնել, ինչու որ
քիչ մը արհամարհելի երևնալէն վերջը ազդեցու-
թիւն չունենար անանկ մէկը իր պաշտօնին մէջ
ուրիշներուն : Ինչպէս որ Առաքեալը կ'ըսէ. « Ու
ձեզի կ'աղաչենք եղբայրներ՝ որ ճանչնաք ձեր աշ-
խատաւորները ու վերակացուները Տէրոջմով . ու
ձեզի խրատ տուողները . և զանոնք մեծապէս պատ-

ունեցէք սիրով իրենց գործքին համար"։ Ա Թեսա. Ե. 12։

Ներկայիս՝ քննենք թէ ի՞նչ են աս պարտաւորութեանց ընդհանուր ժողովրդեան պաշտօնեները, որ եկեղեցիները բռնուած ըլլալով պէտք է յաջողեն։

Մ՝եկ արգելքը մարդուս բան իր մեղքը և յանցանքն է։ Երկնաւոր հաճութեանց համը իրենք առած չեն, ի՞նչպէս կրնան ուրիշները անանկ եռանդուն կերպով յորդորել որ ան հաճութիւնները փնտռեն։ Իրենք ճանչցած չեն իրենց կորսուած վիճակը, և ոչ Քրիստոսի և Սուրբ Հոգւոյն նորոգիչ գործին ունեցած կարօտութիւննին, ինտո՞ր կրնան այլոց ցուցնել զանոնք։ Իրենք ան մեղքերուն տէրն են՝ որ բաներուն համար որ պարտաւոր են ուրիշները յանդիմանել. վասնորոյ կ՚ամչնան անոնց յանդիմանութիւն տալու։ Ուրիշ արգելք մըն ալ մարդկային սրտին մէջ տիրող մէկ գաղտնի անհաւատութիւն մըն է։ Եթէ ճշմարտապէս հաւատանք որ բոլոր չնորոգուած և սուրբ չեղող անձինքը յաւիտեանս պիտի տանջուին, ինչպէս կրնանք լեզունիս բռնել կամ արտասուք չթափել՝ երբոր երեսնին կը նայինք, մանաւանդ մեզի մերձաւոր և սիրելի եղածներուն։ Աս գաղտնի անհաւատութիւնը ամէն մէկ շնորհքին և պարտաւորութեանը ուժը կը կտրէ։ Ո՛վ քրիստոնեայ, եթէ ճշմարտապէս կը հաւատաս՝ որ քու ամպարիշտ բարեկամդ՝ կինդ՝ երիկդ կամ զաւակդ անշուշտ յաւիտեանս դժոխքը պիտի իյնան, եթէ մահը զիրենք չյափշտակած բոլորովին չըփոխուին, աս խորհուրդը պիտի չստիպէ՞ քեզ դիշեր ցորեկ անոնց խօսիլ մինչև որ համոզուին։ Եթէ աս անիծեալ անհաւատութիւնը չըլլար՝ թէ մեր և թէ մեր բարեկամներուն հոգիները եղածէն

աւելի օգնութիւն պիտի ընդունէին մեզմէ ։ Աս ջանքերը շատ կ'արգիլուին մարդոց հոգիներուն վրայ գութ և սէր չունենալնուս ։ Ալ նայինք խեղճ հոգիներուն վրայ և քահանային ու Ղևտացիին՝ վիրաւորուած մարդուն քովէն անցածին պէս կ'անցնինք կ'երթանք ։ Մեղաւորը մեղքով վիրաւորուած և Սատանայէն գերի բռնուած, թէպէտ ինք անձամբ քեզմէ օգնութիւն չխնդրեր, բայց իր խեղճութիւնը բարձրաձայն կ'աղաղակէ ։ Եթէ Աստուած մեր աղօթքին աղաղակը դեռ չլսէր, մեր խեղճութեանը աղաղակը չլսէր, և մեր թախանձանքէն չշարժուած ինքնին իր գութը չշարժէր, տակաւին շատ ատեն Սատանային գերի պիտի մնայինք ։ Անոնց համար աղօթք կ'ընես Աստուծոյ որ Ան բանայ անոնց աչքերը, և անոնց սիրտերը դէպ'ի իրեն դարձունէ. և ինչո՞ւ չես աշխատիր անոնց դարձի գալուն համար եթէ կը փափաքիս ։ Ինչպէս Աստուծոյ կ'աղաչես որ դարձի բերէ զանոնք, ինչո՞ւ իրենց ալ չես աղաչեր որ խորհին և դառնան ։ Եթէ տեսնես քու դրացիդ փոսի մը մէջ ինկած, և աղօթք ընես Աստուծոյ որ օգնէ անոր. իսկ դուն ոչ քու ձեռքդ երկնցունես անոր օգնելու, ոչ ալ խրատ մը տաս՝ որ այս ինչ կերպով ինքզինքը ազատէ. ամէն մարդ քեզ անգութ և կեղծաւոր պիտի չսեպէ՞ ։ Ինչպէս որ մարմինին է՝ անանկ ալ հոգիին ։ Եթէ մէկը "իր եղբայրը բանով մը կարօտ կը տեսնէ, ու իր գութը անկէց կը գոցէ, ինտո՞ր Աստուծոյ սէրը անոր մէջը բնակած կ'ըլլայ, կամ ինչ սէր ունեցած կ'ըլլայ իր եղբօրը հոգիին վրայ ։ Ուրիշ մէկ արգելք մըն ալ մեր մէջը եղած անարգ մարդահաճոյ բընութիւնն է ։ Անչափ կը փափաքինք մարդոց հետ աղէկ ըլլալ և անոնց առջևը պատուելիս

պաՀել, որ աս բանին Համար անիրաւութեամբ պարտաւորութիւններս զանց կ՚առնենք։ Յիմար և անՀաւատարիմ է ան բժիշկը որ Հիւանդը կը թողու մեռնելու, վախնալով որ չնեղացունէ զանիկայ։ Եթէ մէկ բարեկամի մը խելքը ցնորած ըլլայ՝ իրեն վնաս տուող բանի մէջ իր կամքը չենք ըներ. բայց և այնպէս երբոր փրկութեան կողմանէ խենդեցած են և յիմարութեամբ ինքզինքնին դէպի դատապարտութիւն կը քշեն, չենք դադրեցուներ՝ վախնալով թէ կը սրդողցունենք զիրենք։ Մենք ինչպէս քրիստոնեայ կրնանք ըլլալ որ "մարդոց փառքը Աստուծոյ փառքէն աւելի կը սիրենք"։ Վասն զի եթէ "մարդոց Հաճելի ըլլանք, ալ Քրիստոսի ծառայ չենք ըլլար"։ Քրիստոնեաները ընդՀանրապէս կ՚արգիլուին աս պարտաւորութենէն նաև անիրաւ ամչկոտութիւնով մը։ Ուր որ մենք պարտաւոր ենք մարդիկ ամչցունել իրենց մեղքերուն Համար, մենք մեր պարտաւորութիւնը կատարելու կ՚ամչնանք։ Աս մեղաւորներուն յիշոցք ընելու գինովնալու և Աստուծոյ պաշտօնը զանց ընելու չամչնա՛լը մեզ չը՞դատապարտեր, երբ մենք կ՚ամչնանք ասոր վրայ իրենց խօսելու և Համոզելու՝ որ ետ կենան ան բաներէն։ Հարկաւոր գործի մէջ ամչնալը շատ անվայել բան է. Աստուծոյ Հնազանդելով մարդիկ իրենց մեղքերէն Քրիստոսի դառնալու Համոզելը ամչնալու գործ չէ։ Ընթերցող, քու խիղճդ շատ անգամ չիմացո՞ւց քեզի քու պարտաւորութիւնդ և չստիպե՞ց քեզ խօսիլ խեղճ մեղաւորներուն. բայց և այնպէս ամչցար բերանդ բանալու, և թողուցիր որ ընկղմին երթան։ Ո՛Հ կարդա՛ սա խօսքը և սարսափէ՝ "Ով որ զիս և իմ խօսքերս դաւանիլը ամօթ սեպէ աս շնացող ու մեղաւոր ազգիս մէջ,

Որդին մարդոյ ալ զանիկայ գտանիլը ամօթ պիտի սեպէ՝ երբոր իր Հօրը և Սուրբ Հրեշտակներուն փառքովը գայ"։ Պարզեալ ծուլութեան և անհամբերութեան ոգի մը մեզ կ'արգիլէ աս գործէն. վասն զի տհաճելի գործ մըն է և երբեմն մարդիկ թշնամի կ'ընէ մեզի։ Ասկէ 'ի զատ հազիւ երբեք առջի անգամին կը յաջողի, այլ պէտք է հետամուտ ըլլալ։ Համբերութեամբ սորվեցունելու ես ճշմարտութիւնը տգէտներուն և խրատելու ես խստասիրտները։ Մե՛նք չենք մոռցեր թէ ի՛նչ համբերութիւն 'ի գործ դրաւ Աստուած դէպ 'ի մեզի երբ որ մենք մեր մեղքերուն մէջն էինք։ Ա՛յն էր մեզի՝ եթէ Աստուած այնքան անհամբեր ըլլար մեզի, որչափ որ մենք ենք ուրիշներուն։ Ուրիշ արգելք մըն ալ ամէն մէկը իրենը փնտռելն է։ "Ամէնը իրենցը կը փնտռեն, ու չէ թէ Յիսուս Քրիստոսինը", և իրենց եղբայրներունը։ Շատերուն ալ հպարտութիւնը մեծ արգելք մըն է։ Կը հաճին խօսիլ եթէ մեծ մարդու մը ըլլայ, և ան ալ անանկ նիւթի վրայ որ տհաճելի չըլլայ անոր. բայց ո՞վ կ'երթայ աղքատներուն մէջ, և անոնց խրճիթներուն մէջ կ'աշխատի։ Շատերը կ'ուրախանան ազնուականի մը դարձի գալուն միջոց ըլլալնուն, և թէպէտ բաւական պատճառ ունին ուրախանալու, բայց հասարակ ժողովրդոց բազմութեանը վրայ չեն նայիր, որպէս թէ ամենուն հոգին մէկ չէ Աստուծոյ առջեւը։ Աւա՜ղ, աս մարդիկը չեն մոռցեր թէ Քրիստոս որքան խոնարհեցուց ինքզինքը դէպ 'ի մեզի։ Քի՛չ հարուստներ ազնուականներ և իմաստուններ կանչուած են։ Աղքատներն են որ կ'ընդունին Աւետարանին աւետիսները։ Ոմանց ալ աս պարտաւորութեան վրայ տգիտութիւնը կ'արգիլէ զիրենք

անիկայ կատարելէն, կամ քրիստոնէական պարտք ըլլալը բնաւ չեն գիտեր, կամ գէթ իրենց վերաբերեալ պարտք ըլլալը չեն հասկընար: Եթէ այսպէս ես դուն ը՛նթերցող՝ կը յուսամ որ հիմա կը ճանչնաս քու պարտաւորութիւնդ և պիտի սկսիս կատարել անիկայ:

Աս պարտաւորութենէն ետ մի կենար ըսելով թէ ես կարող չեմ յորդորանք տալ, այլ կամ քեզմէ աւելի կարողութիւն ունեցողները գործի դիր քու տեղդ, կամ հաւատարմութեամբ և խոնարհութեամբ քու ունեցած սակաւ ինչ կարողութիւնդ 'ի գործ դիր, և խօսէ անոնց ինչ որ Աստուած իր բանին մէջ կ՚ըսէ, վասն զի տկար մարդ մըն ալ կրնայ ընել ասիկայ: Խրատի և յորդորանաց կարօտ եղողը քեզմէ բարձր աստիճանի մարդ մը ըլլալուն համար զանց մ՚ըներ քու պարտաւորութիւնդ: Հարկին պահանջած ատենը աստիճանին նայելու չէ: Թէև էրիկդ՝ ծընողքդ՝ կամ քարոզիչդ ըլլայ՝ ասանկ բանի մէջ հարկ եղած ատենը պարտաւոր ես խրատ տալու: Եթէ ծնողքները կարօտութեան մէջ ըլլան՝ զաւակները օգնելու են անոնց: Եթէ էրիկը հիւանդ ըլլայ՝ կինը անոր տեղը պիտի բռնէ ընտանեկան գործքերուն մէջ: Եթէ հարուստը աղքատանայ՝ ողորմութիւն ընդունելու է. եթէ բժիշկը հիւանդ ըլլայ՝ ուրիշ մէկը նայելու է անիկայ: Այսպէս ամենանուաստ սպասաւորը իր տէրը խրատելու է, զաւակը իր ծնողքը՝ կնիկը իր էրիկը՝ և ժողովուրդը իրենց պաշտօնեան. միայն թէ աս գործը ըլլայ իրական կարօտութիւն եղած ատենը, կարելի եղածին չափ խոնարհութեամբ՝ ակնածութեամբ՝ և հեզութեամբ: Մ՚ըսեր թէ ասանկով ամենս քարոզիչ կ՚ըլլանք. վասն զի ամեն բարի քրիս-

տոնեայ ուսուցիչ մըն է, և պարտաւորութիւն մը ունի իր ընկերին հոգիին։ Ամէն մարդ բժիշկ կ'ըլլայ երբ որ կանոնաւոր բժիշկ չգտնուիր. Նոյնպէս ալ ամէն քրիստոնեայ ուսուցիչ կրնայ ըլլալ ուրիշներուն։ Մի՛ յուսահատիր յաջողութեան վրայ. չէ՞ որ Աստուած է յաջողութիւն տուողը, և ան ալ միջոցով մը։ Պատճառանք մի՛ բերեր ըսելով թէ մարգարիտը խոզին առաջը ձգել պիտի ըլլայ. Երբոր փառատուելու վտանգին մէջն ես, Քրիստոս կ'ուզէ՛ որ փախչիս. բայց ատիկայ քեզի՛ ինչ՝ երբ որ դուն ասանկ վտանգի մէջ չես։ Քանի որ մարդ կ'ըսեն՝ դուն քաջալերութիւն ունիս խօսելու, և չես կրնար մէկ դի ձգել անոնք իբրև արհամարհելի խոզեր։ Մի՛ ըսեր թէ "Անիկայ իմ մէկ բարեկամս է, որմէն շատ կախում ունիմ, և անոր մեղքը ու թշուառութիւնը իրեն ըսելով՝ կրնայ ըլլալ որ սրդողցունեմ և գործս աւրուի"։ Անոր սէրը իր ապահովութենէն աւելի՞ յարգի է. կամ քու անկէ ունենալիք օգուտդ անոր հոգիին փրկութենէն աւելի՞ արժէք ունի, կամ թէ անոր կորստեանը հաւանութիւն պիտի տաս բարեկամդ ըլլալուն համար։ Ա՞ս է քու հատուցումդ իր բարեկամութեանը փոխարէն. Աւելի՞ կ'ընտրես որ անիկայ յաւիտեան դժոխքը այրի, որ դուն անոր բարեկամութիւնը կամ իրմէն ունեցած ապրուստդ չկորսնցունես։

Երրորդ՝ կը խնդրեմ որ միտք առնէք հետեւեալ շարժառիթները, որոնք ամէն Աստուծմէ վախցողները կը շարժեն որ ուրիշները ևս երջանիկ հանգըստեանը առաջնորդելու համար իրենց վերջին ջանքը ՚ի գործ դնեն։ Ինչպէս՝ որովհետև ոչ միայն մարդկային բնութիւնը, այլ մանաւանդ շնորհքը

կը տրամադրէ հոգին ուրիշներուն բարիք ընելու, վասնորոյ այս գործը զանց ընելը միանգամայն բընութեան և շնորհաց դէմ մեղք մըն է։ Անգութ պիտի չսեպե՞ս այն մարդը՝ որ կը թողու իր զաւկըները կամ դրացիները որ սովամահ կորնչին փողոցները, երբ իր քովը պաշար կայ պատրաստ կեցած։ Իսկ աւելի անգութ չէ՞ այն՝ որ կը թողու զանոնք որ յաւիտեան կորսուին, և իր բերանը չբանար զանոնք փրկութեան ճամբուն առաջնորդելու համար մէկ քանի օգտակար խօսք խօսելու։ Անողորմ ու անգութ մարդը ամենէն աւելի զզուելի է։ Եթէ Աստուած քեզի հրամայէր՝ որ բոլոր ստացուածքդ անոնց տաս կամ կեանքդ դնես անոնք փրկելու համար, անշուշտ մտիկ պիտի չընէիր, քանի որ բերնէդ շունչ մը հանել չես ուզեր անոնց փրկութեանը համար։ Մէկու մը երկանը կամ կնկանը կամ զաւկին կամ դրացիին հոգին քանի մը խօսք չա՞րժեր։ Մարդոց մարմինին անգթութիւն ընելը խիստ դատապարտելի մեղք մըն է, հապա անոնց հոգիին՝ որչափ աւելի. որչափ որ հոգին աւելի արժէք ունի մարմինէն, և յաւիտենականութիւնը ներկայ ժամանակէն։ Չէք գիտեր թէ կարելի է քանի քանի իրենց մեղացը մէջ մեռնող հոգիներ հիմա դժոխքը կը տանջուին՝ հաւատարմաբար զանոնք չխրատելնուդ համար։ Մտածէ՛՝ ինչ ըրաւ Քրիստոս հոգիները փրկելու համար։ Անիկայ իր արեանը արժան սեպեց զանոնք. և մենք մեր շունչին արժան չե՞նք սեպեր։ Փոքր ինչ չե՞ս աշխատիր այն բանին՝ որուն համար Քրիստոս այնքան շատ աշխատեցաւ։ Մտածէ՝ թէ որքան գթութեան կարօտ են մեղաւորները։ Մեռած են անոնք մեղաց ու յանցանաց մէջ. շունին սիրտ ըզգա-

լու իրենց խեղճութիւնը կամ ինքզինքնին մեղ-քընալու: Եթէ ուրիշները չմեղքընան՝ անոնք ինքզինքնին մեղքընալէք չունին. վասն զի իրենց հիւանդութեան բնութիւնը այն է որ զիրենք ի-րենց անձերուն խիստ անգութ տառապեցիչները կ՚ը-նէ: Մտքդ բեր որ ատեն մը դուն ալ անանկ էիր: Աստուած Իսրայէլացիներուն՝ օտարական-ներուն բարերար ըլլալու համար աս փաստը բե-րաւ, որ իրենք ալ «օտարական եղած էին Եգիպ-տոսի երկիրը»: Այսպէս խղճալու ես անոնք՝ որ օտար են Քրիստոսի և սրբոց յոյսերուն ու մխի-թարութեանցը, որովհետև դուն ալ ատեն մը օտար էիր անոնց: Մտածէ՛ քու անոնց ունե-ցած մերձաւորութիւնդ: Քու ընկերդ քու եղ-բայրդ է՝ որ պարտաւոր ես սիրել իբրև քու անձդ: «Ան որ իր եղբայրը չսիրեր՝ որ կը տեսնէ, զԱստ-ուած՝ որ չտեսներ, ինտո՞ր կրնայ սիրել»: Ե-ան որ կը տեսնէ թէ իր եղբայրը դժոխք կ՚երթայ և ետ չբռներ, ինտո՞ր սիրած կ՚ըլլայ անիկայ:

Մտքը առ, ինչ ծանր յանցանք կը դնէ քու հոգիիդ վրայ աս պարտքը զանց ընելը: Քու հոգ-չտարած հոգիներուդ դատապարտութիւնը մար-դասպանութեան յանցանք կը դնէ վրադ. և ա-նոնց գործած ամէն մեղքերուն, և անով Աստու-ծոյ անուանը եղած ամէն նախատինքներուն, և ի-րենց բնակած քաղաքին վրայ իրենց մեղքերուն բերած պատուհասներուն, աս ամենուն յանցանքը քուկդ է: Մտածէ՛ ինչ պիտի ըլլայ երբոր նա-յիս յաւիտենական բոցերուն մէջ քու խեղճ բա-րեկամներուդ վրայ, և խորհիս թէ քու զանցա-ռութիւնդ էր անոր մեծ պատճառը: Եթէ դուն ալ հոն անոնց հետ կորսուիս, քու տանջանքնե-րուդ քիչ յաւելում պիտի չըլլայ աս խորհուրդը:

Իսկ եթէ երկինքը ըլլաս՝ անշուշտ տխուր խորհուրդ մը պիտի ըլլայ (Նեթէ կարելի ըլլար որ հոն տրտմութիւն կենայ), երբ որ լսես թէ շատ մը խեղճ հոգիներ յաւիտեան կ'աղաղակեն, "Ա՜հ եթէ դուն միայն իմացունէիր ինծի ու իմ առջիս դնէիր իմ մեղքս և վտանգս, կարելի է բոլոր աս տանջանքէն կ'ազատէի և հիմա հանգստեան մէջ կ'ըլլայի"։ Ի՜նչ տխուր ձայն մը պիտի ըլլայ ասիկայ։ Մտածէ՛, ի՜նչ ուրախութիւն պիտի ըլլայ երկինքը՝ երբ որ պատահիս հոն անոնց, որոնք դուն միջոց եղեր ես հոն բերելու, և տեսնես անոնց երեսները և միաբանիս անոնց հետ յաւիտեան զԱստուած գովելու, զորոնք Յիսուս Քրիստոսի գիտութեանը և հնազանդութեանը առաջնորդելու օրհնեալ գործիքը դուն ես եղեր։ Մտածէ՛ թէ կարելի է որ քանի քանի հոգիներ արդէն դատապարտութեան ճամբուն առաջնորդեր ես կամ խոտտացուցեր ես անոր մէջ։ Մեր տգիտութեան օրերը մեր մեղացը մէջ անոնք մեր ընկերներն էին, որոնք կը հրապուրէինք և կը քաջալերէինք։ Չը՞ վայլեր մեզի՝ որ այնչափ գործ ընենք մարդիկը փրկելու, որքան որ ըրեր ենք զանոնք կորսնցունելու։ Մտածէ՛ թէ որքան գործունեայ են աս խեղճ հոգիներուն բոլոր թշնամիները զանոնք դժոխք քաշելու։ Սատանան գիշեր ցորեկ կը փորձէ զանոնք, իրենց ներքին ցանկութիւններն ալ անդադար կը գործեն իրենց կործանմանը համար. և մարմինը անդադար իր հաճոյքը կը փնտռէ. իրենց հին ընկերները սրբութեան դէմ զզուանքնին հետզհետէ կ'աւելցունեն։ Իսկ եթէ մէկը ժրաջան չըլլայ օգնել անոնց՝ իրենց դէպ ի երկինք ըրած ճամբորդութեանը մէջ, ի՜նչ պիտի ըլլան անոնք։

Մտածէ՝ որչափ խորին վէրք պիտի ըլլայ աս պարտաւորութեան զանցառութիւնը, երբոր խիղճը արթըննայ։ Մահուան առեն մարդուս խիղճը պիտի հարցունէ իրեն, թէ "Ի՞նչ աղէկութիւն ըրիր քու կենդանութեանդ ատենը։ Հոգի փրկելը ամենամեծ բարեգործութիւնն է. ի՞նչ ըրած ունիս աս մասին։ Քանի՞ հոգիի հետ խօսեր ես հաւատարմաբար"։ Շատ անգամ տեսեր եմ՝ որ մեռնող մարդոց խիղճը շատ խայթած է զիրենք աս զանցառութեանը համար։ Իսկ ես ինքս կրնամ վկայել որ՝ հիւանդութեանս ատենը՝ երբոր մահը ինծի խիստ մօտ կը սեպէի, խիղճս ուրիշ մեղքերէս աւելի աս բանին համար կը տանջէր զիս, միտքս կը բերէր ամեն տղէտ և աշխարհային դրացիները, որոնց բնաւ չէի իմացուցեր իրենց վտանգը, և որպէս թէ կ'ըսէր ինծի, "Դուն առանձին անոնց երթալու էիր և պարզապէս իրենց իմացունելու էիր իրենց անյոյս վիճակը, թէև կերակուր ուտելու և քնանալու ժամանակէդ 'ի զատ ատեն չունենայիր"։ Միտքս կը բերէր խիղճս թէ ինչպէս այսինչ այնինչ ատենները ես տղէտներուն հետ ընկերութիւն կ'ընէի, կամ խստացած մեղաւորի մը հետ ճամբորդութիւն կ'ընէի և յարմար պատեհութիւն ունէի անոնց հետ խօսելու ու չըրի, կամ գոնէ պէտք եղածին չափ։ Տէրը շնորհէ որ աւելի հնազանդիմ իմ խղճիս քանի որ ժամանակ ունիմ, որ չըլլայ թէ զիս յանդիմանէ մահուան ատենս։ Մտածէ՛ թէ ո՛րքան յարմար ժամանակ ունիս աս գործին համար։ Հապա ի՞նչ պիտի ընէիր՝ երբոր անանկ ատեններ ըլլային որ ստացուածքդ կամ կեանքդ աս բանին համար վտանգի մէջ ըլլար։ Ասկէց 'ի զատ քու ընկերներդ քիչ ատենէն պի-

տի մեռնին, նոյնպէս և դուն ։ Սասնորոյ խօսէ անոնց քանի որ կրնաս ։ Մտածէ՛՝ որ թէպէտ ասիկայ խիստ մեծ ողորմութեան գործ մըն է ; սակայն և այնպէս ձեզմէ ամէն մէկը կրնայ ընել, ինչպէս հարուստը՝ անանկ ալ ամենէն աղքատը, ամէն մարդ լեզու ունի մեղաւորին խօսելու ։ Նաև մտածէ աս գործոյն երջանիկ հետևութիւնները, երբոր հաւատարմութեամբ կատարուի ։ Կրնայ ըլլալ՝ որ ան հոգիներուն փրկութեանը պատճառ ըլլաս, որոնց համար Քրիստոս աշխարհս իջաւ ու մահ ճաշակեց, և որոնց համար ալ Աստուծոյ հրեշտակները կ'ուրախանան ։ Անանկ հոգիները քեզ պիտի օրհնեն հոս և հանդերձեալին մէջ ։ Ասով՝ Աստուած պիտի փառաւորուի, եկեղեցին պիտի աճի և շինութիւն առնէ, բուն քու հոգիդ ալ աւելի կրթութիւն և զօրութիւն պիտի առնէ աստուածապաշտ վարուց կողմանէ, աւելի խղճմտանքի խաղաղութիւն պիտի վայելէ և աւելի հոգևոր ուրախութիւն ։ Իմ ընդունած բոլոր անձնական շնորհքներուս մէջ Քրիստոսով իմ հոգիիս ներգործուած Աստուծոյ սէրէն ետքը՝ ամենէն աւելի ուրիշներուն վրայ իմ ըրած ջանքերուս առատ յաջողութեանը համար շատ ուրախութեամբ զինքը օրհնելու պարտաւոր եմ ։ Ի՛նչ պտուղներ արդեօք պիտի տեսնէի, եթէ աւելի հաւատարիմ եղած ըլլայի ։ Գիտեմ որ շատ արթուն ըլլալու ենք աս մասին՝ մեր խաբեբայ սըրտերուն վրայ, որ չըլլայ թէ մեր ուրախութիւնը հպարտութենէ յառաջ եկած ըլլայ ։ Բնականապէս կ'ուզենք որ ամէն բարի գործքին գովութիւնը մեզի ըլլայ, բայց և այնպէս ամէն Աստուծոյ զաւակ եղողին պարտաւորութիւնն է բարերարութեան և գթութեան մէջ մեր երկնաւոր

—օրը նմանիլ. և որչափ որ նոյն հանգամանքները, ձեռք կը ձգենք, ան աստիճանաւ վայելուչ է ուրախանալ. վասնորոյ իմ փորձառութիւնս կը պատմեմ որ քեզ համոզեմ թէ՝ եթէ գիտնայիր ինչ ուրախալից բան ըլլալը՝ ամէն վհատութեանց մէջ ալ գիշեր ցորեկ անոր եռեւէն կ՚ըլլայիր։ Թո՛ղ ելլէ ուրեմն ամէն մարդ որ լեզու ունի՝ և Քրիստոսի ծառայ է, և մասնակից ըլլայ իր Տէրոջ գործին։ Ինչո՞ւ տուաւ քեզի լեզու։ Բայց եթէ զանիկայ գործածելով իրեն ծառայես։ Ու մարդոց հոգւոյն փրկութեանը համար աշխատելէն աւելի ի՞նչ ծառայութիւն կրնաս ընել։ Ան որ քեզ վերջին օրը օրհնել պիտի կոչէ և "քեզի համար պատրաստուած թագաւորութեանը" պիտի հրաւիրէ "իր աղքատ աշակերտացը անձովը զինքը՝ կերակրելուդ, հագուեցունելուդ և իրեն տեսնելու երթալուդ համար, անշուշտ քեզ օրհնել պիտի կոչէ նաև հոգիները իր թագաւորութեանը առաջնորդելու պէս մեծ գործի մը համար։ Ան որ ըսաւ թէ "աղքատները միշտ ձեզի հետ ունիք", նոյնը մեղաւորները միշտ ձեզի հետ թողուց, որ աւելի առարկայ ունենաք, որոնց վրայ ձեր մարդասիրութիւնը ՚ի գործ դնէք։ Եթէ քրիստոնէի կամ գոնէ մարդու սիրտ ունիք, թող ցաւի ձեր տգէտ և ամբարիշտ դրացիներուն վրայ։ Սամարացի բորոտներուն պէս ըսէք, թէ "մենք աղէկ չենք ըներ, այսօր ուրախութեան աւետիսի օր է, և լուռ կեցեր ենք"։ Աստուած այնքան ողորմութիւն ըրաւ ձեզի, և դուք չէ՞ք ողորմիր ձեր դրացիներուն։ Բայց թէպէտ ընդհանրապէս բոլոր քրիստոնեաներուն կը վերաբերի, բայց ալ աւելի ոմանց կը վերաբերի աս պարտաւորութիւնը։ Աստուած զիրենք ան պաշտօնին

կանչելուն կամ յարմարցունելուն նայելով. վասն որոյ աւելի մասնաւորապէս անոնց պիտի ուղղեմ յորդորանքս ։

1. Աստուած աս պարտաւորութիւնը կ'ակնկալէ մանաւանդ քու ձեռքէդ՝ որ քեզի քու ընկերներէդ աւելի ուսմունք՝ գիտութիւն և նոյնը արտայայտելու աւելի կարողութիւն տուած է. զօրաւորը տկարին օգնելու համար եղած է, և աչք ունեցողը կոյրին առաջնորդելու համար ։ Աստուած քու կարողութեանցդ և ձիրքերուդ ան հաւասարիմ գործածութիւնը կը պահանջէ, որն որ եթէ զանց ընես՝ աւելի աղէկ կ'ըլլար որ բնաւ ընդունած չըլլայիր զանոնք. վասնզի անոնք միայն քու պարտաւորութիւնդ պիտի աւելցունեն, և այնքան անօգուտ պիտի ըլլան քու փրկութեանդ՝ որքան որ էին ուրիշներուն ։

2. Ամէն անոնք որ մասնաւոր ծանօթութիւն մը կամ մերձաւորութիւն մը ունին աշխարհային մարդոց հետ, Աստուած անոնց ձեռքէն կ'ակնկալէ աս պարտաւորութիւնը ։ Քրիստոս ինքը կ'ուտէր կը խմէր մաքսաւորներուն ու մեղաւորներուն հետ, բայց միայն անոնց բժիշկը և ոչ թէ անոնց ընկերը ըլլալու համար ։ Ի՞նչ գիտես որ Աստուած քեզ աս նպատակաւ ան կապակցութեանը մէջ չդրաւ անոնց հետ, որ անոնց դարձի գալուն առիթ ըլլաս ։ Անոնք որ օտարին խօսքը բանի տեղ չեն դներ, կրնայ ըլլալ որ իրենց եղբօրը՝ քրոջը՝ կամ՝ երկանը կամ կնկանը կամ մերձաւոր բարեկամի մը խօսքը մտիկ ընեն ։ Ասկէ 'ի զատ բարեկամութեան կապը քեզ կը պարտաւորէ ուրիշներէն աւելի սէր և գթութիւն ունենալ անոնց վրայ ։

3. Բժիշկները՝ որ շատ անգամ մեռնող մար-

դոց քովը կը գտնուին, մասնաւոր կերպով մը ար-թուն ըլլալու են սա պարտաւորութեանը վրայ։ Իրենք սա մասնաւոր դիւրութիւնը ունին՝ որ գործը իրենց մօտ է, հիւանդութեան և վտանգի մէջ եղող մարդոց հետ են, որ ատեն ականջը առողջութեան ատեններէն աւելի բաց է, և սիրտը այնքան խստացած չէ. և մանաւանդ թէ մարդիկ անանկ մէկու մը պէս կը նային իրենց բժիշկին՝ որպէս թէ իրենց կեանքը անոր ձեռքն է, կամ գոնէ շատ բան կրնայ ընել զիրենք ազատելու, վասնորոյ աւելի մտիկ պիտի ընեն անոր խրատին։ Դուք որ սա պատուաւոր արհեստէն էք, ասիկայ ձեր վիճակէն դուրս գործ մը մի կարծէք, իբր թէ միայն քարոզիչներուն կը վերաբերի. ինչպէս որ ձեր վիճակէն դուրս գործ մը չէք սեպեր գթած ըլլալը կամ քրիստոնեայ ըլլալը։ Ո՛ն՝ ուրեմն օգնեցէք որ ձեր հիւանդները երկինքի յարմարին. և թէ՛ ապրելու թէ մեռնելու վիճակի մէջ տեսնէք զանոնք, սորվեցուցէք անոնց միանգամայն թէ ինչպէս ապրելու է և թէ ինչպէս մեռնելու է, և դեղ մը ցուցուցէք անոնց իրենց հոգիներուն համար, ինչպէս որ կ՚ընէք մարմիններնուն համար։ Օրհնեալ է Աստուած որ սա դարուս գլխաւոր բժիշկներէն բաւական անձինք իրենց երևելի բարեպաշտութեամբը ազատեցին իրենց արհեստը՝ անաստուածութեան և ամբարըշտութեան ընդհանուր վատահամբաւութենէն։

4. Հարուստ և իշխանութեան տէր մարդիկ՝ և անոնք որ իրենց ձեռքին տակը մարդիկ ունին, շատ գերազանց յարմարութիւն ունին սա պարտաւորութեանը։ Աշխարհքի չափ բարիք կրնան ընել ազնուականները, եթէ միայն իրենց ուրիշներուն վրայ ունեցած ազդեցութիւնը սա վախ-

ճանին բանեցունելու կամք ունենան ։ Արդ՝ դուն որ հարուստ գտնուեր ես, միթէ քու բոլոր պատիւդ և հարստութիւնդ Աստուծմէ չէ՞ ։ Քրիստոս չը՞սեր թէ՝ "որու որ շատ տրուեցաւ, անկէ շատ պիտի պահանջուի" ։ Եթէ դուն քու հըպատակներուդ խօսիս՝ Աստուծոյ և իրենց հոգիին վրայ, թէև եթէ պաշտօնեայ ալ ըլլայ պիտի արհամարհեն, տակաւին կարելի է որ քեզ յարգեն ։ Եթէ Աստուծոյ փառքին՝ քու հանգստութեանդ՝ և հոգիներուն փրկութեանը յարգը գիտես, կատարէ՛ քու պարտաւորութիւնդ առ մասին . տուներնին գնալ տեսութեան, նայէ՛ թէ Աստուծոյ պաշտօն կը մատուցանե՞ն իրենց ընտանեացը մէջ. և թէ չէ՝ 'ի գործ դիր ամէն պատեհութիւն որ զանոնք իրենց պարտաւորութեանը առաջնորդես ։ Մ՞ի արհամարհեր զանոնք ։ Յիշէ՛ որ Աստուած աչառութիւն չըներ ։ Թող մարդիկ տեսնեն թէ ինչպէս որ աշխարհիս հարըստութեանը և պատիւին կողմանէ՝ անանկ ալ բարեպաշտութեան, մարդասիրութեան և Աստուծոյ գործին մէջ ջանքի կողմանէ ուրիշները կը գերազանցես ։ Կը խոստովանիմ որ աս կերպով տարօրինակ անձ մը կ'ըլլաս, բայց փառքով ալ տարօրինակ պիտի ըլլաս, վասն զի "զօրաւորներէն և ազնուականներէն քիչերը կանչուած են" ։

5. Իսկ Աւետարանին պաշտօնեաներուն բուն պաշտօնին գործը աս է՝ որ ուրիշներուն օգնեն զանոնք դէպ 'ի երկինք առաջնորդելու ։ Իրենց ուսմանը և քարոզութեանը գլխաւոր վախճանը ընելու են ասիկայ ։ Վարպետ ու զօրաւոր քարոզիչը ան է՝ որ աղէկ վարժուած է հրահանգելու, զգացունելու և համոզելու. և հետևապէս հոգի վաստըկելու. և աղէկ քարոզը ան է՝ որ աղէկ

կու գայ աս նկատմամբ։ Երբոր դուն Աստուծոյն բաները չես փնտռեր, այլ անձինդ, Աստուած մարդոց ամենէն անարգելին պիտի ընէ քեզ։ Քու համբաւիդ ալ կը յարմարի ան խօսքը որ Քրիստոս կեանքիդ համար ըսաւ, թէ «ան որ կը սիրէ անիկայ, պիտի կորսնցունէ ան»։ Թո՛ղ քու համոզմանացդ եռանդը ցուցընէ թէ դուն կ'ըղձաս ինչ ծանրակշիռ պաշտօնի խրկուած ըլլալդ։ Քարոզէ վսեմութեամբ և եռանդով, անանկ մարդոց պէս որ կը հաւատան իրենց վարդապետութեանը, և գիտեն թէ իրենց ունկնդիրները կամ համոզուելու են, կամ եթէ ոչ՝ պիտի դատապարտուին։ Մի՛ կարծեր թէ բոլոր քու գործքդ ուսմունքդ և ամպիոնդ է։ Դուն հովիւ ես՝ և ամէն մէկ ոչխարներդ ճանչնալու ես, և անոնց հիւանդութեան ինչ ըլլալը գիտնալու ես. անոնց խոտորումները գիտելու ես և օգնելու ես անոնց բժշկութեանը և ուղիղ ճամբուն դառնալու։ Սորվէ՛ Պօղոս առաքեալէն՝ ոչ միայն «հրապարակաւ, այլ և տուն մէջ ալ» կրթել քու ժողովուրդդ։ Հարցուր փնտռէ՛ միթէ գիտութեամբ և սրբութեամբ կ'աճին, և ինչ հիման վրայ կը հաստատեն իրենց փրկութեան յոյսը. միթէ ուղիղ կը վարուին և իրենց զանազան առնչութեանց պահանջած պարտաւորութիւնները կը կատարե՞ն։ Տե՛ս թէ Աստուծոյ պաշտօն կը մատուցանե՞ն իրենց ընտանեացը մէջ. և սորվեցուր թէ ինչպէս ընելու են։ Ընտանութիւն պահէ՛ անոնց հետ որ իրենց վիճակին անտեղեակ ու անտարբեր չըլլաս. և բոլոր աս պատեհութիւնները բանեցուր Աստուծոյ գործին համար։ Իմացիր թէ ինչ օգուտ կը քաղեն հրապարակաւ եղած քարոզութենէն։ Եթէ անոնք Հոգիին բաները չեն մտածեր, զանոն

մեղքընալու է, բայց երբեք ձգելու չէ։ Եթէ ոմանք անկարգաբար կը քալեն՝ ջանքով ու համբերութեամբ ուղղելու է զանոնք։ Եթէ աղէտ են՝ առիկայ կրնայ ըլլալ որ քու յանցանքդ ըլլայ որչափ որ իրենցը։ Ա՛հ քնանար՝ քանի որ գայլը արթուն է։ Նաւ մէկու մը թողլ մի խօսիր։ Ոմանք իրենց ժողովրդեան մեղքը պարզապէս իրենց չեն ցուցըներ անանց մեծ մարդ ըլլալուն համար. և ոմանք աստուածապաշտ ըլլալուն համար, որպէս թէ աղքատներէն և ամբարիշտներէն զատ ուրիշին պարզապէս խօսելու չէ։ Միանգամայն աշխատէ՝ վարպետ ու խոհեմ՝ ըլլալ որ քու բռնած ընթացքդ Աստուածային խօսքերուն գերազանցութեանը յարմարի։ Ամէն խոհական հոգի միանգամայն դատողութիւն և զգացում ունի, վասնորոյ ամէն հոգևոր քարոզ՝ աս երկուքն ալ պարունակելու է։ Կարդա՛ ու աղօթք ըրէ, աղօթք ըրէ ու կարդա՛, մինչև որ ըլլաս "բանւոր մը առանց ամչնալու, ճշմարտութեան խօսքը շիտակ բացատրելով", որ քու ժողովուրդդ քեզ մտիկ ըրած ատենը՝ ոչ ամչնայ և ոչ ձանձրանայ։ Ջու կենակցութիւնդ քարոզութեանդ պէս կրթութիւն թող ըլլայ։ Այնչափ յառաջադէմ եղի՛ր սուրբ և երկնային վարուց կողմանէ, որքան որ յառաջ են ուրիշները անոր համոզելու կողմանէ։ Թող քու խօսուածքդ շինութիւնտուող և հոգևոր ըլլայ։ Ամէն բանի յանձնառու եղիր, բայց Աստուծոյ և մարդոց հոգին զանց մ՚ըներ։ Թող մարդիկ տեսնեն՝ որ դուն քարոզչութիւնը միայն ապրելու համար արհեստի մը պէս չես գործածեր. այլ քու սիրող հոգիներուն բարեկամութեանը կը ցանկաս։ Ինչ հեզութիւն՝ խոնարհութիւն՝ քաղցրութիւն՝ կամ

*անձնուրացութիւն որ Աւետարանէն կը սորվեցունես անոնց, նոյնը սորվեցուր նաև քու անկեղծ օրինակովդ։ Միաբանութեան և խաղաղութեան ետևէն եղիր։ Եթէ երբեք Քրիստոսի թագաւորութիւնը և քու ժողովրդեանդ փրկութիւնը յառաջ տանիլ կ'ուզես՝ ըրէ ասիկայ խաղաղութեան և սիրոյ ճամբովը։ Այնքան դժուար է քու ժողովրդեանդ մէջ կռիւի ու հակառակութեան ատեն ողջամիտ հասկացողութիւն մը՝ փափուկ խղճմտանք մը՝ արթուն՝ բարեպաշտ և երկնային հոգի մը պահել, որքան որ մեծամեծ փոթորիկներու ատեն կանթեղ մը վառ պահելը։ "Երանի այն ծառային՝ որ երբ իր Տէրը գայ՝ այնպէս ըրած պիտի գտնէ"։*

*6. Ուրիշները երկնային հանգիստը առաջնորդելու աս մեծ գործին կ'ուզեմ համոզել անոնք ալ՝ որոնց յանձնուած է Աստուած զաւակներու և ծառաներու հոգը։ Տես ի՛նչ պարզ ու ստիպողական հրամաններով կը պահանջէ Աստուած ասիկայ քու ձեռքէդ, "Աս խօսքերը քու որդւոցդ կրկին և կրկին անգամ սորվեցունես, և թէ տանդ մէջ նստած ատենդ, թէ ճամբայ գացած ատենդ և թէ պառկելու ու ելլելու ատենդ։ Կրթէ՛ երիտասարդը իր ճամբան սկսած ատենը, որ իր ծերութեան ատենն ալ անկէ չխոտորի։ Ձեր զաւակները մեծցուցէք Տէրոջը խրատովը՝ ու վարժութիւնովը"։ Յեսու միտքը դրաւ որ "ինք ու իր տունը Տէրոջը ծառայեն"։ Եւ Աստուած ինքը Աբրահամին համար կ'ըսէ թէ, "Քանզի գիտեմ անիկայ, որ իր որդիներուն ու իրմէ ետքը իր տանը պիտի պատուիրէ և անոնք . . . Տէրոջը ճամբան պիտի պահեն"։ Մտածէ՛ որ իրաւունքի նայելով պարտաւոր ես քու զաւակներուդ աս օգնու-*

թիւնը ընել, վասն զի քեզմէ աւելի իրենց խանգարուած բնութիւնը և իրենց թշուառութիւնը, վասնորոյ պարտաւոր ես անոնց կարելի եղածին չափ օգնել իրենց նորոգութեանը համար: Արտածէ՛ թէ ո՛րչափ մերձաւորութիւն ունին քեզի. անոնք քու մասերդ են: Եթէ անոնք յաջող ու աղէկ ըլլան քու մեռնելէդ վերջը, դուն անանկ կը սեպես՝ որպէս թէ անոնցմով դուն կ՚ապրիս և յաջողութիւն կը վայելես. և պէտք չէ՞ որ նոյն խորհուրդը ունենաս անոնց յաւիտենական հանգստեանը համար ալ: Եթէ ոչ՝ դուն քու հոգիիդ դէմ վկայ պիտի ըլլաս. անոնց մարմիններուն համար քու քաշած աշխատութիւնդ՝ ըրած ծախքդ ու խնամքդ պիտի դատապարտեն քեզ անոնց անգին հոգիներուն վրայ անհոգ ըլլալուդ համար. Մինչև անգամ բոլոր անբան արարածները կրնան դատապարտել քեզ. անոնցմէ ո՞րը գորովաշարժ չէ իր ձագերուն վրայ: Մտածէ՛ որ Աստուած քու զաւկըներդ քու խնամքիդ յանձնեց. նոյնպէս ալ քու սպասաւորներդ: Ամէնը կ՚ընդունին՝ որ քարոզիչին պարտքն է հոգ տանիլ անոնց: Իսկ դուն քու ընտանիքիդ քարոզիչէ մը աւելի պարտաւոր չե՞ս հոգ տանիլ: Անտարակոյս քու ձեռքէդ պիտի պահանջէ Աստուած անոնց հոգիներուն արիւնը: Քեզի յանձնուած պարտաւորութեանց ամենէն մեծն է ան. և վա՛յ քեզի եթէ թողուս որ քու չկրթելովդ և չխրատելովդ տգէտ կամ չար ըլլան: Տե՛ս, ինչ գործ կայ քեզի անոնց բնաւորութեանցը և վարուցը մէջ. Մէկ չէ մեղքերնին, այլ հազարաւոր: Ժառանգական հիւանդութիւններ ունին իրենց բնութեանը մէջ գոյացած: Ան բաները որ պարտաւոր ես սրբեցունել, հակառակ են իրենց մարմ-

նաւոր բնութեանը՝ օգուտին և փափաքներուն։ Տէրը քեզի զգացունէ՝ թէ ինչ գործ և պարտք կը կենայ վրադ։ Մտածէ ինչ սրտմտութիւններ կը պատրաստես քեզի համար քու զաւկըներուդ վրայ անհոգ ըլլալովդ։ Եթէ փուշ ըլլան անոնք քու աչքերուդ մէջ, դուն քու ձեռօքդ տնկած ես։ Թէպէտև դուն զղջաս ու փրկուիս, երբ անոնք դատապարտուին, քեզի խորհելու բան չէ՞ որ դուն ես պատճառը։ Բայց եթէ մեռնիս քու մեղքերուդ մէջ, ինչպէս պիտի աղաղակեն քեզի դէմ դժողքին մէջ ըսելով թէ, "Բոլոր ասոնց յանցանքը քուկդ է. դուն մեզի սորվեցունելու էիր ու չսորվեցուցիր, մեզ մեղքէն ետ բռնելու էիր և մեզ խրատելու էիր, ու չըրիր"։ Ի՞նչ յաւելուած պիտի ըլլան ասանկ աղաղակները քու թըշուառութեանդ։ Իսկ միւս կողմէն ալ՝ խորհէ ինչ մխիթարութիւն պիտի ունենաս՝ եթէ հաւատարիմ ըլլաս աս պարտաւորութեանդ մէջ։ Եթէ չյաջողիս ալ՝ դուն քու հոգիդ ազատած կ'ըլլաս և խղճմտանքիդ մէջ խաղաղութիւն կ'ունենաս։ Իսկ եթէ յաջողիս՝ մխիթարութիւնդ անպատմելի կ'ըլլայ՝ վայելելով անոնց սէրը՝ հնազանդութիւնը՝ անոնց քու պիտոյքներուդ հոգալովը և քու կենացդ մնացած մասին մէջ քեզ զուարճացունելովնին։ Մէկ բարեպաշտ զաւակ մը կամ սպասաւոր մը անգամ կարելի է որ՝ բաւական ըլլայ բոլոր ընտանիքին երջանկութեանը պատճառ ըլլալու։ Բայց ալ աւելի ան ատենը պիտի ըլլայ մեծ ուրախութիւն, որ երբ դուն իբրև ընտանիքի տէր կարենաս ըսել, "Ահաւասիկ Տէր՝ ես և ան զաւկըները որ ինծի տուիր". և ուրախութեամբ ապրիս անոնց հետ յաւիտեան։ Մտածէ որքան կախում ունի ասկէ եկեղեցիին և երկրին բարելաւութիւնը: Բարի օրէնք-

նեղը մէջ չեն նայողներ՝ եթէ նորոգութիւնը տունէն չսկսի։ Եկեղեցիին և քաղաքին մէջ եղած բոլոր մեր թշուառութեանը պատճառը աս է, այսինքն տղոց հոգևոր կրթութեան պակասութիւնը։ Նաև կ'աղաչեմ ծնողքներուն՝ որ խորհին թէ ինչ պատուական յարմարութիւններ ունին իրենց զաւակացը փրկութեանը միջոցներ ըլլալու։ Իրենց մատաղ և դիւրաթեք եղած ատենը ձեր քովն են. քանի որ մատաղատունկ ծառեր են՝ կրնաք ուզածնուդ պէս շիտկել, բայց ոչ թէ բարձր և հաստատուն կաղնիներ որ չըլլան։ Մէկը չկայ երկրի վրայ՝ որուն վրայ ունենաս ան սէրը՝ որ ձեր վրայ ունին. նաև ամենէն աւելի իշխանութիւն դուք ունիք անոնց վրայ. Բոլորովին ձեզի կարօտ են իրենց ապրուստին համար։ Դուք ամենէն աղէկ գիտէք անոնց բնաւորութիւնը և յօժարութիւնները։ Ամիշտ անոնց հետն էք, բնաւ պատեհութիւն պակաս չէ ձեզի. մանաւանդ դուք՝ մայրեր՝ զաւակներնիդ քանի որ պզտիկ են՝ իրենց հայրերէն աւելի անոնց հետ էք՝ մտքերնիդ պահեցէք ասիկայ։ Որչափ կ'աշխատիք անոնց մարմիններուն համար. ինչ կը քաշէք մինչև որ աշխարհ կը բերէք զանոնք. և նոյնչափ աշխատանք չէ՞ք ուզեր քաշել անոնց հոգիներուն փրկութեանը համար։ Ձեր պզտացուներդ փափուկ են և սրտերնիդ չը՞շարժեր անոնց յաւիտենական կորսուելու խորհուրդը։ Կ'աղաչեմ ձեզի ձեր զաւակացը սիրոյն համար, որոնք ձեր մարմինին և ոսկորին կտորներն են, սորվեցուցէք անոնց՝ խրատեցէք՝ արթուն եղէք անոնց վրայ և հանգիստ մի՛ տաք մինչև որ Քրիստոսի բերէք զանոնք։

Խօսքս կը վերջացունեմ աս գրութիւնը կարդացող բոլոր քրիստոնեայ ծնողքներէն աս խըն-

գիրն ալ ընելով՝ որ իրենց խեղճ զաւկըներուն հոգի-
ները մեղքընան և հաւատարիմ ըլլան այն մեծ ա-
ւանդին՝ որ Աստուած իրենց յանձներ է։ Եթէ
չկրնաք ինչ որ կ'ուզէք ընել անոնց, կրցածնուդ
չափ ըրէք։ Եկեղեցին՝ քաղաքը՝ գաւառը՝ ա-
մէնն ալ կը հեծեն աս ծանրակշիռ պարտաւորու-
թեան զանցառութեանը տակը։ Ձեր զաւկըներ-
րը ոչ զԱստուած կը ճանչնան և ոչ անոր օրէն-
քը գիտեն, այլ անոր անունը պարապ տեղը բե-
րաննին կ'առնեն և անոր պաշտօն մատուցանելը
կ'արհամարհեն. և դուք ոչ կը կրթէք ոչ կը խը-
րատէք զանոնք. վասնորոյ Աստուած ալ կը խրա-
տէ միանգամայն ձեզ և անոնք։ Դուք զանոնք
այնքան կը խնայէք՝ որ Աստուած ոչ ձեզ և ոչ
զանոնք կրնայ խնայել։ Մի՛ զարմանաք եթէ
Աստուած ձեզ պատժէ ձեր զաւակայը մեղքե-
րուն համար, վասն զի անոնց ամէն ըրածին հա-
մար դուք յանցաւոր էք ձեր զանոնք բարեկարգե-
լու պարտաւորութիւննիդ զանց ընելնուդ համար։
Միտքերնիդ պիտի դնէք ուրեմն ձեռք զարնել աս
պարտաւորութեանը, և ալ զանց չընել անիկայ։
Հեղի քահանայապետը յիշեցէք։ Ձեր զա-
կըները շամբի մէջ ձգուած Մովսէսին պէս պատ-
րաստ են կորսուելու եթէ օգնող չըլլայ։ Եթէ
չէք ուզեր՝ որ Աստուծոյ առջևը անոնց հոգինե-
րուն սպաննողները սեպուիք և անոնք ձեզի դէմ
աղաղակեն յաւիտենական բոցերու մէջ, հոգ տա-
րէք որ սորվեցունէք անոնց անկէ փախչելու ճամ-
բան և մեծցունէք զանոնք սրբութեամբ և Աս-
տուծոյ երկիւղովը։ Ձեզմէ ամէն մէկը կ'երդմըն-
ցունեմ ձեր Աստուծոյ հետ ունեցած առընչու-
թիւնովը՝ որ աս խիստ կարևոր պարտաւորութիւ-
նը զանց չընէք, ըստ որում քիչ ատենէն պա-

տիժը պիտի կրէք և պիտի խոստովանիք որ ձեր ըրածը յանցանք է։ Եթէ հիմա գիտէք որ ասիկայ մեծ պարտաւորութիւն մըն է և յօժար չէք կատարելու, դուք ապստամբ էք և ոչ ճշմարիտ հպատակ Յիսուսի Քրիստոսի։ Իսկ եթէ յօժար էք, բայց չէք գիտեր թէ ինչպէս ընելու է, քանի մը խրատական խօսքեր պիտի աւելցունեմ։ Ձեր օրինակովը առաջնորդեցէք զանոնք աղօթքի, կարգալու և ուրիշ կրօնական պարտաւորութեանց. յիշողութիւններնին լեցուցէ՛ք, կամքերնին շիտկեցէ՛ք, սէրերնին բորբոքեցէ՛ք, խղճմտանքներնին փափուկ պահեցէք, լեզուներնին սանձեցէք և շընորհքով խօսիլ սորվեցուցէք, կրթեցէք և հսկեցէք արտաքին կենցաղավարութիւններնուն վրայ։ Աս բանին համար Աստուածաշունչ և բարեպաշտական գիրքեր առէք անոնց համար և հոգ տարէք որ կարդան։ Շատ անգամ քննութիւն ըրէք սորվածնուն վրայ, մանաւանդ Կիրակի օրը աս գործքովը անցուցէք և մի՛ թողուք անոնց որ խաղով կամ ծուլութեամբ անցունեն։ Իրենց կարդացածին կամ սորվածին միտքը հասկըցուցէ՛ք, Սուրբ Գիրքով կրթեցէք զանոնք, չար ընկերներէ հեռու պահեցէք և բարեպաշտներու հետ ծանօթացուցէ՛ք։ Մանաւանդ ցուցուցէք անոնց Աստուծոյ ծառայելուն հարկաւորութիւնը, գերազանցութիւնը և հաճութիւնը, և աշխատեցէք որ աս ամէնը իրենց սրտին մէջ հաստատէք։



# ԳԼՈՒԽ Ժ.

## Սրբոց հանգիստը երկրիս վրայ ակնկալելու չէ։

Տակաւին մեր հանգստեան տեղը եկած չենք։ Ինչ չէ՞ որ դեռ պակաս կը մնայ։ Ուրեմն ո՛րչափ մեծ մեղք և յիմարութիւն է մեզի հոս ակնկալել և փնտռել անիկայ։ Սակայն ո՞ւր պիտի գտնենք ան քրիստոնեան՝ որ աս յանդիմանութեանը արժանացած չէ։ Մե՛նք ամենքս յարատև յաջողութիւն կ՚ուզենք, որովհետև հաճելի է մարմինին. բայց չենք մտածեր ատանկ փափաքներուն անտեղութիւնը։ Ու երբոր ունենանք վայելուչ տուն՝ բարիք՝ երկիր և եկամուտ՝ կամ մեր հոգևոր օգուտին համար Աստուծոյ սահմանած պիտոյքը, աս վայելքներուն մէջ հանգիստ կը փնտռենք. թէ նեղութեան և թէ հանգստութեան մէջ ըլլանք՝ կը տեսնուի որ մեծ չափով մը ստեղծուած բաներէ կը փնտռենք մեր հանգիստը։ Երկրաւոր վայելքներուն երբոր կը կարօտինք՝ աւելի սաստիկ չե՞նք փափաքիր անոնց՝ քան թէ նոյն իսկ Աստուծոյ։ ԶԱստուած վայելելէն աւելի չե՞նք ուրախանար զանոնք ձեռք ձգած ատեննիս։ Ու եթէ կորսնցունենք զանոնք, զԱստուած կորսնցունելէն աւելի չե՞նք նեղուիր։ Անոնց՝ դէպ ՚ի երկինք մեր ճամբորդութեանը մէջ մեզի զօրացուցիչ օգնութիւններ ըլլալնին բաւական չսեպելով, կ՚ուզենք որ իբրև բուն մեր երկինքը ըլլան անոնք։ Քրիստոնեայ ընթերցող՝ շատ կը փափաքիմ աղէկ զգացունել քեզի աս մեղքը՝ եթէ կարող ըլլամ, վասն զի Տէրոջը մեծ վէճը մեզի հետ աս կէտին մէջն է։ Ասոր համար կ՚աղաչեմ քեզի որ միտք առնես ներ-

կայ տառապանաց պատշաճութիւնը և ներկայ հաճութիւններուն հանգչելուն անպատշաճութիւնը, ինչպէս նաև յաւիտենական կեանք ստանալու համար մեռնելու կամք չունենալնուս անպատշաճութիւնը ։

Նախ․ Ներկայ տառապանքներուն պատշաճութիւնը ցուցընելու համար՝ մտածէ՛ որ անոնք հանգըստեան ճամբան են․ անոնք մեզ կը պահեն մեր հանգիստը սխալ ճանչնալէն և անոր ճամբան կորսընցունելէն․ մեր ընթացքը կը փութացունեն․ անոնք գլխաւորապէս մեր մարմինը կը նեղեն, և անոնց մէջ Աստուծոյ ժողովուրդը շատ անգամ իրենց հանգստեանը քաղցր ճաշակը կ'զգայ ։

1․ Մտածէ՛ որ հանգստեան սովորական ճամբան աշխատութիւնն ու նեղութիւնն է, թէ՛ բնութեան և թէ շնորհաց ընթացքին մէջ ։ Հնա՞ր է հանգիստ ըլլալ առանց նախ յոգնելու ։ Չէ՞ որ նախ աշխատելով կը յոգնիս և վերջը կը հանգչիս ։ Աշխատութեան համար ցորեկը առաջ է և յետոյ կու գայ գիշերը հանգստեան համար ։ Ինչո՞ւ պիտի փափաքինք՝ որ շնորհաց ընթացքը բնութեան ընթացքին հակառակ կերպը ըլլայ ։ Արօբուած վճիռ մըն է, որ "շատ նեղութիւններով պէտք մեզի Աստուծոյ թագաւորութիւնը մտնել". և "թէ որ համբերենք՝ Քրիստոսի հետ ալ պիտի թագաւորենք". և մենք ի՞նչ ենք որ՝ Աստուծոյ կանոնները մեր հաճոյիցը համար պիտի փոխուին ։

2․ Նեղութիւնները շատ հարկաւոր են մեզի մեր հանգիստը սխալ կարծելէն մեզ պահելու համար ։ Քրիստոնեայի մը ընթացքը դէպ'ի երկինք՝ յօժարութեամբ է, և ոչ թէ բռնի ։ Ասկորցյ շատ օգտակար են ան միջոցները որ

կ՚օգնեն իր հասկըցողութեանը և կամքին։ Մեր հոգիներուն ամենէն վտանգաւոր սխալմունքը արարած բան մը իբրև Աստուած և երկիրս իբրև երկինք բանելն է։ Ի՞նչ ջերմեռանդ և անձկալի խորհուրդներ կ՚ունենանք աշխարհի վրայ մինչև որ նեղութիւնները և տառապանքները մեր սէրը պաղեցունեն։ Նեղութիւններուն ձայնը ազդու է, և մարդիկ երբոր քարոզիչներուն մտիկ չեն ըներ՝ անոնց մտիկ կ՚ընեն։ Շատ տկար քրիստոնեաներ երբեմն իրենց խորհուրդները հարստութեան կամ մարմնոյ ցանկութեան կամ պատուոյ կու տան, և այսպէս իրենց Քրիստոսի և վերին ուրախութեանը վրայ ունեցած սէրերնին կը կորսընցունեն, մինչև որ Աստուած իր ձեռքը երկնցունէ անոնց հարստութեանը կամ զաւկըներուն կամ խղճին կամ առողջութեանը՝ և կործանէ անոնց աշտարակը, որուն վրայ իրենց խորհուրդը այնքան հաստատած էին։ Եւ ան ատենը երբոր Մանասէի շղթաներովը կապուած կը մնան կամ մաշող հիւանդութեամբ անկողին կը փակչին, աշխարհը ոչինչ կ՚ըլլայ և երկինքը յարգի բան մը։ Եթէ մեր սիրելի Տէրը չդնէր աս փուշերը մեր գլխուն տակը, մինչև մեր կեանքին վերջը պիտի քնանայինք և երկնաւոր փառքը պիտի կորսնցունէինք։

3. Նաև նեղութիւնները մեզ մեր հանգըստեանը հասնելուն ճամբան կարճցունելէն պահելու Աստուծոյ ամենազօրաւոր միջոցներն են։ Եթէ աս փուշի մացառները աջ ու ձախ կողմերնիս չըլլային՝ շատ հաւանական է որ երկնից ճամբուն մէջ չմնալով պիտի խոտորէինք։ Եթէ մէկ տեղ մը բաց մնացած ըլլայ՝ որչափ պատրաստ ենք անիկայ գտնելու և անկէ դառնալով ճամբէն դուրս ելլելու։ Երբոր կ՚սկսինք թուլնալ կամ աշխար-

հային ըլլալ կամ հպարտանալ, ո՛րչափ օգուտ կ՚ընէ հիւանդութիւնը կամ ուրիշ վիշտ մը մեզ զգաստացունելու ։ Ամէն քրիստոնեայ Լուտէրի պէս կրնայ կոչել նեղութիւնը ամենաքաջ ուսուցիչներուն մէկը, և կրնայ ըսել Դաւիթին հետ, « Քանի որ վշտացած չէի, կը սխալէի. բայց հիմա քու խօսքդ կը պահեմ » ։ Հազարաւոր դարձի եկած մեղաւորներ կրնան աղաղակել, « Առողջարա՛ր հիւանդութիւն. մխիթարի՛չ տրտմութիւններ. շահաւո՛ր կորուստներ. հարստացունո՛ղ աղքատութիւն ։ Օրհնեա՛լ ըլլայ այն օրը՝ որուն մէջ տառապեցայ ես » ։ Ոչ միայն « խոստաւէտ արօտները և հանդարտ ջուրերը, այլ ցուպն ու գաւազանը անոնք կը մխիթարեն մեզ » ։ Թէպէտև Աստուածային պատգամը և անոր Սուրբ Հոգին կը կատարեն գործին գլխաւոր մասը, բայց և այնպէս նեղութիւնը սրտին դռանը կղպանքը այնպէս կը քակէ, որ խօսքը դիւրին մուտք կը գտնէ ։

4. Նեղութիւնները նոյնպէս մեր հանգստեանը ճամբուն մէջ մեր ընթացքը արագցունելու կը ծառայեն ։ Արդարև աղէկ կ՚ըլլար որ զուտ սէրը մեր վրայ իշխէր և ան սիրովը դէպ ՚ի երկինք մղըուէինք՝ քան թէ դժոխքէն վախնալով ։ Բայց որովհետև մեր սիրտերը այնքան գէշ են՝ որ գթութիւնը աս ներգործութիւնը չըներ մեզի, վասնորոյ աւելի աղէկ է որ ամենադառն հարուածներով մեզ յառաջ քշեն, քան թէ յիմար կոյսերուն պէս յապաղինք մինչև որ դուռը գոցուի ։ Ո՛հ, ի՛նչ մեծ տարբերութիւն կայ մեր առողջութեան ու հիւանդութեան ատենի աղօթքներնուս մէջ. յաջողութեան ու ձախորդութեան ատենի զղջումներնուս մէջ ։ Աւա՜ղ. եթէ երբեմն երբեմն խթանը մեզ չդրդէ, շատերնիս ո՛րքան ծա-

ներ յառաջ պիտի երթանք երկնից ճամբուն մէջ։ Աւստի քանի որ մեր ապականեալ բնութիւնը կը պահանջէ ասիկայ, ինչու չուզենք որ Աստուած մեզի աղէկ ընէ անանկ դառն միջոցներով։ Դուն ո՛վ քրիստոնեայ՝ ինքիրմէդ գատէ թէ դէպ 'ի երկինք քու ճամբորդութեանդ մէջ նեղութեան ատեն աւելի զգոյշ և գործունեայ չէի՞ր՝ քան թէ ուրախ և յաջող վիճակիդ մէջ։

5. Աս ալ խորհելու է որ նեղութիւնները գըլխաւորապէս մարմինն է որ կը նեղէն և կը չարչարեն։ Մե՛ր նեղութիւններէն շատերուն մէջ հոգին ազատ է, եթէ մենք անձամբ չնեղենք զանիկայ։ Ինչու ուրեմն ո՛վ իմ հոգիս, աս մարմինին կողմնակից կ'ըլլաս և կը գանգատիս՝ երբ ան կը գանդատի. քու գործդ է անիկայ հպատակեցունել և հպատակութեան մէջ պահել, և եթէ Աստուած ան գործը քու տեղդ կ'ընէ, պէ՞տք է որ տժգոհ ըլլաս։ Չէ՞ որ քու հոգևոր տրտմութիւններուդ գրեթէ բոլորին պատճառը քու մարմնոյդ հաճութիւնը եղած է։ Ուրեմն անոր տհաճութիւնը քու հոգիիդ ուրախութիւնը չը՞կրնար աւելցունել։ Պօղոս ու Շիղա ոտքերնին կոճղի մէջ դրուած ըլլալուն համար՝ երգ երգելու չե՞ն. անոնց հոգին բանտարգել չէր։ Ո՜հ անարժան հոգի, Աստուած քեզ մարմինէն այնչափ վեր դասելուն փոխարէն ա՞ս է քու շնորհակալութիւնդ։ Քու մարմինդ գերեզմանին մէջ փտած ատենը, արդարոց կատարուած հոգիներուն ընկեր պիտի ըլլաս դուն։ Դարձեալ նոյն ատենը չունի՞ս դուն անանկ մխիթարութիւն մը, որ մարմինը չգիտեր։ Մի՛ քիթմնջեր ուրեմն Աստուծոյ քու մարմինիդ ըրածներուն վրայ. եթէ ադ վարմունքը քու վրադ սէր չունենալուն համար ըլլար, բոլոր իր սուրբե-

բուն ալ անանկ պիտի չընէր։ Ինչու մի կարծեր՝ որ մարմինդ շիտակ պիտի բացատրէ Աստուածային գաւազանին դիտաւորութիւնը։ Անիկայ սէրը ատելութիւն կը կոչէ և Աստուած կը կորսնցունէ՝ կ'ըսէ՝ որ ատեն որ կը փրկէ։ Ինչ ներողութիւն քաշող կողմն է, վասնորոյ իրեն չէյնար դառնալը"։ Եթէ կարող ըլլայինք անգամ մը Աստուծոյ հաւատալու, և իր վարմունքը՝ իր խօսքէն և մեր հոգիին ունեցած օգտակարութենէն և մեր մարմնին ունեցած յարաբերութենէն դատելու, և եթէ կարող ըլլայինք ականջներնիս գոցելու մարմնին բոլոր աղաղակներուն դէմ, ան ատենը աւելի շիտակ դատողութիւն պիտի ունենայինք մեր նեղութիւններուն վրայ։

6. Դարձեալ՝ մտածէ՝ որ Աստուած իր ժողովուրդին հազիւ երբեք կու տայ իրենց ապառնի հանգստեանը այնքան անոյշ առհաւատչեայն՝ որչափ որ կու տայ իրենց դառն տառապանաց ատենը։ Իր սփոփիչ ըմպելիքներուն ամենէն պատուականը մեր վտանգներով պաշարուած և նուաղած ատենին կը պահէ։ Ինք գիտէ երբ պէտք է՝ և ան ատենը կու տայ՝ որ յարգի կ'ըլլայ, ան ատենը՝ երբ վստահ է թէ իր ժողովուրդը շատ շնորհակալ պիտի ըլլայ և պիտի ուրախանայ անոնց համար։ Մանաւանդ՝ երբ որ մեր նեղութիւնները յատկապէս իր գործին և անուանը համար են՝ հազիւ երբեք զանց կ'ընէ քաղցրացունել ան դառն գաւաթը։ Մարտիրոսները շատ մեծ ուրախութիւններ վայելեցին։ Քրիստոս ե՞րբ անանկ մխիթարութիւն քաղցրեց իր աշակերտացը՝ ինչպէս որ ան ատենը քաղցրեց, երբ անոնցմէ բաժնուելուն համար խիստ տրտմած էին։ Ե՞րբ անոնց մէջ երեւցաւ և ըսաւ, "Խաղաղութիւն ձե-

զի", եթէ ոչ՝ երբոր Հրէաներուն վախէն պահուըտեր էին ։ Ե՞րբ տեսաւ Ստեփաննոս երկինքը բացուած, եթէ ոչ՝ Յիսուսի վկայութեանը համար իր կեանքը նուիրած ատենը։ Ա՛ն չէ՞ մեր ամենալաւ վիճակը՝ երբոր մեծ չափով մը զԱստուած կը վայելենք։ Ուրիշ ի՞նչ բանի համար պիտի փափաքինք երկինք հասնելու։ Եթէ մարմնաւոր հաճութիւններով կազմուած երկինքի մը կը նայինք, ինքզինքնիս կը խաբենք։ Յայտնի է ուրեմն որ նեղութիւնը անանկ դէշ վիճակ մը չէ սուրբի մը իր հանգստեանը հասնելու ճամբուն մէջ։ Միթէ Աստուծմէ իմաստո՞ւն ենք։ Ան մեզի չափ չը՞գիտեր՝ որը բարի է մեզի, կամ թէ մեզի չափ բազմահոգ չէ՞ մեր բարելաւութեանը համար։ Այո՛ մեզի, եթէ մեզմէ աւելի բազմահոգ չըլլար, և եթէ ինք մեզ աւելի չսիրեր քան որչափ մենք կը սիրենք թէ զինքը և թէ մեր անձը։

Մի՛ ըսեր որ, "Եթէ ուրիշ նեղութիւն մը ըլլար՝ կրնայի տանել, բայց աս չեմ կրնար"։ Եթէ Աստուած քեզ ան բանին մէջ նեղեր որ կրնայիր տանել՝ քու կուռքդ (այսինքն ամեն բանէն աւելի սիրած կամ պաշտած բանդ ո՛րը ըլլալը) ոչ պիտի յայտնուէր և ոչ պիտի վերցուէր։ Մի՛ ըսեր նաև թէ, "Եթէ Աստուած շուտ պիտի ազատէ զիս աս նեղութենէն՝ գոհ կ՚ըլլամ անիկայ քաշելու"։ Ոչի՞նչ բան մըն է աս որ խոստացեր է քեզի՝ թէ "քեզի բարիի գործակից պիտի ըլլայ"։ Բաւական չէ՞ որ վստահ ես՝ թէ մահուան ատեն պիտի ազատիս։ Նաև մի՛ ըսեր թէ, "Եթէ իմ նեղութիւնս իմ պարտաւորութիւններս կատարելու անկարող չընէր զիս, կրնայի դիմանալ"։ Քու անձնական օգուտիդ ծառայող պարտաւորութիւններուդ ոչ թէ անկարող կ՚ընէ քեզ, այլ քու

ակնկալած օգնութեանդ և քաջալերութեանդ ա-
մենէն մեծն է։ Իսկ ուրիշներուն ունեցած պար-
տաւորութեանդ վրայ կ՚ըսեմ թէ՝ քու պարտաւո-
րութիւնդ չէ՛ ան բանը, որուն Աստուած քեզ
անկարող կ՚ընէ։ Ինչպէս պիտի ըսես, «Բարե-
պաշտներն են ինծի նեղութիւն տուողները, եթէ
ուրիշ մարդիկ ըլլային, դիւրաւ կը համբերէի»։
«Նեղութեան պատճառը ով որ ըլլայ թող ըլլայ,
նեղութիւնը Աստուծմէ է և յանցանքը քուկդ.
և աւելի աղէկ չէ՞ առաւել Աստուծոյ նայիլ քան
թէ մարդու։ Չէ՞ որ գիտես որ ամենաբարի մար-
դիկ ալ տակաւին սխալական ըլլալու ենթակայ են։
Պարծեալ՝ մի՛ ջատագովեր ինքզինքդ, ըսելով՝
«Եթէ ունենայի միայն ան մխիթարութիւնը, որ
կ՚ըսէք թէ Աստուած նեղութեան ատենի կը պա-
հէ, աւելի գոհունակութեամբ պիտի քաշէի. բայց
ես ատանկ բան մը տակաւին չեմ զգար»։ Քու
նեղութիւնդ որչափ որ արդարութեան համար ըլ-
լայ, նոյնչափ կրնաս յուսալ աս օրհնութիւնը.
իսկ որչափ որ քու գէշ գործքիդ համար ըլլայ,
այնքան ան կ՚ուշանայ։ Եթէ քու փափաքած
մխիթարութիւններդ չես գտներ, և քու նեղու-
թիւններդ քեզի անոյշ չեն գար, և մխիթարու-
թիւն չեն բերեր, անոր համար է որ նեղութիւն
քաշելը չէ՝ որ քեզ մխիթարութեան կը յարմար-
ցունէ, այլ ան նեղութեանը քու սրտիդ վրայ ը-
րած ազդեցութիւնը և ունեցած արդիւնքը։

Սորվէ՝ որպէս զի տեսնես ներկայ վայելքներուն
հանգստեան անպաշտպանութիւնը՝ մտածէ՛, որ ատիկայ
անոնք քեզի կուռք ըլլալ է. Աստուծոյ զանոնք
քեզի տալու փախճանին կը հակառակի։ Ադ ըն-
թացքը զանոնք կորսնցունելու և դառնացունելու
պատճառ է. աս տեղի հանգիստին վրայ մնալը ամենէն

մեծ չարիքն է. առիկայ անանկ տեղ մը հանգիստ գտնուել է՝ որ չգտնուիր. արարածները, առանց Աստուծոյ մեր Թշուառութիւնք կ'աւելցունեն, և աս ամէնը հաստատելու համար բաւ մեր և ուրիշներուն փորձառութեամբ հարցունենք։

Գ. Որ և իցէ արարած մը կամ շնորհաց միջոց եղող բան մը բուն մեր հանգիստը ըլլալը՝ Թանձրը կռապաշտութիւն է։ Հոգիին հանգիստը ըլլալը յատկապէս Աստուծոյ կը վերաբերի. Ինչպէս որ յայտնի կռապաշտութիւն է մեր հանգիստը հարստութեան ու պատուոյ մէջ դնելը, նոյնպէս ալ մեր հանգիստը շնորհաց գերագունից միջոցներուն մէջ դնելը ուրիշ բան չէ՝ բայց միայն նրբացած կռապաշտութիւն մը։ Որչափ պիտի վշտանայ մեր սիրելի Տէրը, եթէ պատճառ տանք գանգատելու՝ մեզի ալ կռապաշտներուն վրայ գանգատածին պէս, ըսելով թէ, « Իմ ժողովուրդս մոլորեալ ոչխարներ են, մոռցեր են իրենց հանգստեան տեղը, իմ ժողովուրդս ինծմէ 'ի զատ ինչ բանի մէջ ըլլայ հանգիստ կը գտնէ, բայց իմ քովս՝ ոչ. անոնք մէկզմէկով կը զուարճանան, բայց ինծմով՝ ոչ։ Անոնք կ'ուրախանան իմ ստեղծած բաներովս և դրած կարգադրութիւններովս, իսկ ոչ թէ ինծմով։ Մինչև անգամ բուն իրենց աշխատութիւններովը և կատարած պարտաւորութիւններովը կը փնտռեն իրենց հանգիստը, և ոչ թէ ինծմով։ Ուրիշ ուր ըլլան կ'ուզեն, իսկ իմ քովս ըլլալ չեն ուզեր։ Անոնք իրենց աստուածներն են։ Անո՞նք փրկեցին զիրենք։ Անոնք իմ ըրածէս կամ ընելիքէս աւելի՞ աղէկութիւն պիտի ընեն իրենց։ Եթէ դուք ունենայք կին մը կամ էրիկ մը կամ որդի մը որ միշտ ուրիշ տեղ կ'ուզէ, և ձեր ընկերու-

Թեանք մէջ չկենար, և քնար այնքան ուրախ չէ որքան որ կ'ըլլայ ձեզմէ հեռու եղած ատենը, ասիկայ ձեզի գէշ պիտի չերևնա՞յ։ Ահա մեր Աստուծոյն ալ նոյնպէս պիտի երևնայ։

2. Աստուծոյ՝ աս վայելքները տալու նպատակին կը հակառակիս։ Ան տուաւ զանոնք՝ որ քու իրեն երթալուդ օգնեն, և դուն զանոնք անոր տե՛ղը կը բռնես։ Տուաւ՝ որ քու ճամբորդութեանըդ մէջ քեզի սփոփանք ըլլան, և դուն անոնք կ'առնես քու քարայրիդ մէջ կը նստիս և յառաջ չե՛ս երթար։ Ինչպէս որ Իսրայէլացւոց վրայով՝ անանկ ալ բոլոր մեր վայելքներուն և շնորհաց միջոցներուն համար կրնայ ըսուիլ թէ, "Տէրոջը ուխտին տապանակը անոնց առջևէն կ'երթայ՝ անոնց հանգստանալու տեղ գտնելու համար"։ Այսպէս կ'ընեն բոլոր Աստուծոյ շնորհքները հոս։ Անոնք չեն ան հանգիստը, ինչպէս որ Յովհաննէս Մկրտիչ խոստովանեցաւ թէ ես Քրիստոսը չեմ. հապա անոնք անապատին մէջի ձայներ են՝ որ կը կանչեն մեզի թէ, պատրաստեցէք Աստուծոյ թագաւորութեանը համար. ձեր ճշմարիտ հանգիստը մօտ է։ Վասնորոյ հոս հանգչելը ամէն բարիք բուն իր նպատակէն և մեր օգուտին հակառակ դարձունել և ինքզինքնիս կործանել է ան բանով՝ որով օգնութիւն պիտի ըլլար մեզի։

3. Մեր հանգիստը ներկայ բարիքներուն մէջ դնելը պատճառ կ'ըլլայ՝ որ Աստուած խնդրած ողորմութիւններս չտայ կամ վայելածնիս առնէ կամ գոնէ դառնացունէ զանոնք։ Աստուած ուրիշ բանի մէջ այնքան նախանձոտ չէ՝ որքան աս բանին մէջ։ Եթէ տանդ մէջ սպասաւոր մը ունենաս՝ որ քու կնոջդ քեզմէ աւելի ան կը սիրէ, ասիկայ քու կնկանդ վրայօք գէշութիւն մը պիտի չսեպե՞ս,

և քու տունդ տանիլ ապաստանարան մը ապաստանե-լու պիտի չնայիս։ Այսպէս՝ եղբայր Տէրը տեսա-նէ որ դուն կը սկսիս ինքզինքդ հաստատել աս աշխարհիս վրայ և կ'ըսես. «Աս հոս պիտի հանգ-չիմ», զարմանք չէ եթէ շուտ մը իր նախախնամու-թեամբը քեզ շարժէ տեղէդ։ Իսկ որ սէր ու-նի վրադ՝ զարմանք չէ եթէ առնէ ձեռքէդ ան բանը, որով կը տեսնէ թէ ինքզինքդ կործանելու վրայ ես։ Երկայն ատեն դիտեր և շատերը տե-սեր եմ, թէ անոնք որ մեծ աշխատութիւններու և մեծ գործքերու ձեռք զարկած և նոր լմնցուցած են, անոնք որ մեծ բաներու միտ դրեր են աշխարհիս մէջ և նոր ձեռք ձգեր են, կամ շատ նեղութիւ-նով ապրեր և նոր յաղթեր են, և կը սկսին գոհ աչօք նայիլ իրենց վիճակին վրայ և անով հանգ-չիլ, ան ատենը սովորաբար մահը կամ կործանու-մը իրենց մօտ կ'ըլլայ։ Երբոր մէկը կը համար-ձակի իր մտքին մէջ աս խօսքը ըսելու, թէ «Ա՛լ անձս հանգչէ», յաջորդ լուրը սովորաբար աս է, թէ «Անմիտ աս գիշեր» կամ աս ամիս կամ աս տարի «հոգիդ քեզմէ պիտի պահանջուի, ուստի ան քու պատրաստած բաներդ որո՞ւ պիտի ըլլայ»։ Ո՞ր տուն կայ ուր որ աս յիմարը չգտնուի։ Պէտք է դուն ու ես ալ խորհինք թէ արդեօք մենք ալ ա-նա՞նկ ենք։ Աստուծոյ քանի՛ քանի ծառաներն երկրէն կորսուեցան չափազանց յարգուելնուն և սիրուելնուն համար։ Ես համոզուած եմ՝ որ մեր տժգոհութիւնները և գանգատները այնքան չեն բարկացուներ զԱստուած, ոչ ալ այնքան վնաս կու տան մեղաւորին, որքան որ մէկ հաճելի վիճա-կի մը չափազանց քաղցր վայելմունքը և անով հանգչիլը։ Եթէ Աստուած քեզ կը արտմեցու-նէ՝ քու կինդ՝ զաւակներդ՝ ստացուածքդ՝ բարեկամ-

ներդ կամ անոնց հանգստութիւնները առնելով, քննէ՛ թէ արդեօք աս չէ՞ պատճառը. վասն զի երբոր քու փափաքներդ կը կատարուին և դուն կ՚ըսես թէ, “Հիմա աղէկ եմ”, ադ վիճակը քու չաստուածդ կ՚ընես և Աստուծոյ նախանձութիւնը անոր դէմ կը գրգռես : Թէ՛ւ բարեկամ ըլլաս Աստուծոյ և թէ թշնամի, չես կրնար յուսալ թէ Աստուած պիտի թողու որ դուն հանդարտութեամբ քու կուռքերդ վայելես :

4. Եթէ Աստուած թողու ալ՝ որ քու հանգիստդ գտնես հոս, ասկէ մեծ չարիք մը գլուխդ չկրնար գալ : Աւելի աղէկ կ՚ըլլայ որ բնաւ հանգիստ օր մը չունենաս աշխարհիս մէջ. ինչու որ՝ ան ատենը քու յոգնութիւնդ ու ձանձրութիւնդ քեզի ճշմարիտ հանգիստը կրնայ փնտռել տալ. բայց եթէ քեզի թող տայ՝ որ նստիս հոս հանգիստ վայելես, յաւիտեանս յաւիտենից հանգիստ չունեցող խեղճ մը պիտի ըլլաս : Մէկու մը բաժինը աս կեանքիս մէջն ըլլալը, ամենաթշուառ և կորսուելու մեղաւորի վիճակ է : Ուրեմն կը վայլէ՞ Քրիստոնեաներուն այնչափ բարիքի ակնկալութիւն ունենալ հոս : Մեր հանգիստը մեր երկինքն է, և ուր որ մեր հանգիստը կը գտնենք, ան տեղը մեր երկինքը կ՚ընենք : Եւ դուն ասա՞նկ երկինք միայն կ՚ուզես :

5. Ասիկայ ան տեղը հանգիստ փնտռել է՝ ուր որ չգտնուիր : Աշխատութիւնդ պարապը պիտի երթայ, և եթէ յառաջ երթաս՝ հոգւոյդ յաւիտենական հանգիստն ալ պիտի կորսնցունես : Մեր հանգիստը մեր վերջին վախճանին կատարելապէս հասնելուն մէջ կը կայանայ միայն. բայց ադ բանը աս կեանքին մէջ չյուսացուիր, վասնորոյ մեր հանգիստն ալ հոս չյուսացուիր : Ճանապարհորդ

մը իր հանգիստը ճամբուն վրայ գտնելու է, ոչ. որովհետեւ իր հայրենիքը իր ճամբորդութեանը վախճանն է: Երբոր ունենաս այն ամէնը որ արարածները եւ շնորհաց միջոցները կրնան տալ, ունեցա՞ծ կ՚ըլլաս այն բանը, որուն հաւատացիր եւ անոր համար աղօթք ըրիր ու ներողութիւն քաշեցիր: Կարծեմ չես համարձակիր անանկ է ըսելու: Մենք հիմա տունէն հեռացած պզտիկ տղոց պէս ենք, եւ Աստուած մեզ տուն կը բերէ. եւ պատրաստ ենք որ եւ իցէ տուն մտնելու, եւ մեր ճամբուն վրայ ամէն տեղ կենալու եւ ամէն բանի հետ խաղալու, ամէն կանանչ տեղի վրայ կը նըստինք եւ շատ դժուարութիւն կայ մեզ տուն հացունելու: Դարձեալ քանի որ մենք հոս մեր աշխատութեանցը եւ վտանգներուն մէջն ենք՝ հոս կրնա՞նք հանգչիլ: Ի՜նչ ծանր պարտաւորութիւններ ունինք դէպ՚ի մեր եղբարցը՝ մեր հոգիներուն եւ Աստուծոյ. եւ ասոնց ամէն մէկուն վերաբերեալ ինչ դժուարին գործ կայ մեր առջին: Ու բոլոր աս մեր աշխատութեանը մէջ կրնա՞նք հանգչիլ հոս: Արդարեւ երկրի վրայ այնքան մը կրնանք հանգչիլ՝ որչափ որ կ՚ըսուի թէ տապանակը Յորդանանու մէջ հանգչեցաւ. կարճ եւ պզտիկ հանգիստ մը. կամ ինչպէս որ Աբրահամ ուզեց՝ հրեշտակները իր վրանը մտնեն եւ հանգչին; ուր որ բնականապէս հաճելի տեղ մը չէր անոնց՝ հոն բնակութիւն հաստատելու: Իսրայէլացիք իրենց հանգիստը կ՚ուզէի՞ն հաստատել անապատը օձերուն եւ թշնամիներուն մէջ, յոգնութեան ու սովի մէջ: Նո՞յ կ՚ուզէ՞ր տապանը իր տունը ընել, եւ չէ՞ր ուզեր դուրս ելլել երբոր ջուրերը քաշուեցան: Նաւաստին կ՚ուզէ՞ իր բնակութիւնը ծովուն վրայ ժայռերուն՝ աւազներուն եւ

փոթորիկներուն մէջ հաստատել։ Զինուորը իր թշնամեացը բազմութեանը մէջ կը հանգչի՞։ Ու քրիստոնեաները չէ՞ որ ասանկ ճամբորդներ՝ ասանկ նաւաստիներ՝ ասանկ զինուորներ են։ Քու վիճակդ ներսէն վախ և դուրսէն նեղութիւններ չէ՞, միշտ վտանգներով պաշարուած չե՞նք։ Առանց վտանգի ոչ կրնանք բան ուտել՝ ոչ խմել՝ ոչ քնանալ՝ ոչ աշխատիլ՝ ոչ աղօթք ընել՝ ոչ բան լսել՝ ոչ խօսիլ. և ասանկ տեղը նստել հանգչելո՞ւ ենք։ Ո՛վ քրիստոնեայ՝ հաստատուն հանգիստ փնտռելէն առաջ գործդ նայէ՝ վտանգներուդ զգո՛յշ եղիր՝ աչքդ տնկէ վախճանին՝ յաղթանակը վաստըկէ՝ և ապարէզէն ել։ Երկրի վրայ երբոր հանգիստի խօսք կ'ընես՝ այլակերպութեան լերանը վրայ Պետրոսին պէս "չես գիտեր ինչ կը խօսիս"։ Եթէ Քրիստոս դարձի եկող գողին "Դուն այսօր իմ հետս դրախտին մէջը պիտի ըլլաս" ըսելուն տեղը, ըսէր թէ դուն խաչին վրայ հանգիստ պիտի վայելես, ծաղր ըրած պիտի ըլլար։ Ինծի կու գայ թէ՝ հանգչելուն հակառակը կ'ըլլայ հիւանդութիւններու՝ ցաւերու՝ հալածանքներու ու տառապանքներու մէջ։ Բայց եթէ ուրիշ բան մը մեզ չհամոզէ, մեղքին մնացորդները՝ որ այնքան դիւրին մեզ կը պաշարեն, անշուշտ շուտով կը վստահացունեն մէկ հաւատացեալ մը՝ որ հոս չէ իր հանգիստը։ Անորոյ աշխարհիս մէջ հանգիստի վրայ խորհող ամէն մէկուն կ'ըսեմ թէ, "Ե՛լ և գնա՛՝ ինչու որ աս չէ քու հանգիստդ, վասն զի պղծուած է"։ Աս բաները իրենց բնութենէն չեն կրնար ճշմարիտ քրիստոնեայի մը հանգիստը ըլլալ։ Մեզ հարուստ ընելու բաւական չեն. երջանկութեան հասցունելէն շատ հեռու են, մեր հոգիները լեցունելու կողմանէ բոլորովին պա-

րապ են, և տևողութիւննին խիստ քիչ է, որով չեն կրնար մեզ յաւիտեան գոհ ընել։ Եթէ յաջողութիւնը կամ ինչ որ հոս կը փափաքինք՝ այնքան անարգ են՝ որ մեր աստուածը չենք կրնար ընել, անանկ ալ այնքան անարգ են՝ որ մեր հանգիստը չեն կրնար ըլլալ։ Հոգիին հանգիստը անանկ ըլլալու է՝ որ յարատև հաճութիւն տայ անոր, բայց արարածներուն տուած հաճութիւնը կը հիննայ և քիչ մը ատենի վայելմունքէն վերջը կը խափանի։ Եթէ Աստուած հրեշտակաց կերակուրը թափէ վերէն, անկէ անգամ քիչ ատենէն կը ձանձրանանք։ Եթէ նորութիւնը չբռնէ, երկրի վրայ մեր ունեցած ուրախութիւնները հետզհետէ կը տկարանան։ Ծաղիկները մեղուին ինչպէս որ են, բոլոր արարածներն ալ անանկ են մեզի. ամէն մէկ ծաղիկին վրայ մէյմէկ քիչ մեղր կայ, վասնորոյ մէկէն քիչ մը վայելք ունենալէն ետքը՝ ան կը հատնի, մէկալին երթալու է։ Որչափ աւելի ճանաչում ունենանք արարածներուն վրայ, այնքան քիչ հաճութիւն կու տան մեզի։ Միայն անոնք ինքզինքնին կու տան աս բաներուն՝ որ անոնց արտաքին գեղեցկութենէն անդին բան չեն տեսներ, առանց նշմարելու անոնց ներքին ունայնութիւնը։ Երբոր կատարեալ ճանաչում կ'ունենանք ուրիշ մարդոց վիճակին վրայ, և միանգամայն չարն ու բարին՝ ու անոնց թէ՛ պակսութիւնները և թէ կատարելութիւնները կ'իմանանք, ան ատենը զարմացումնիս կը վերնայ։

6. Արարածները և շնորհաց միջոցները առանց Աստուծոյ վայելելը մեր թշուառութիւնը կ'աւելցունէ։ Եթէ Աստուած ըսէ քեզի, "Ա՛ռ իմ արարածներս՝ իմ խօսքս՝ իմ պաշտօնեաներս՝ իմ արարողութիւններս՝ բայց ո՛չ զիս", ասիկայ եր-

ջանկութիւն պիտի սեպե՞ս։ Եթէ ունենայիր Աստուածային բանը, և ոչ այն Բանը՝ որ Աստուած է, կամ թէ ունենայիր Տէրոջը հացը, և ոչ թէ Տէրը՝ որ է ճշմարիտ հացը, կամ եթէ կարող ըլլայիր աղաղակել Հրէից հետ՝ "Տէրոջը տաճարը", և չունենայիր տաճարին Տէրը, ասիկայ շատ նուաստ երջանկութիւն մը պիտի ըլլար։ Կափառնայում քաղաքը այն տեսած զօրաւոր գործքերը տեսնելովը և Քրիստոսի խօսքերը լսելովը աւելի երջանիկ եղաւ թէ աւելի թշուառ։ Անշուշտ այն բանը որ մեղքը և թշուառութիւնը կ'աւելցունէ՝ մեր հանգիստը չկրնար ըլլալ։

7. Աս ամէնը հաստատելու համար բուն մեր և այլոց փորձառութեանը հարցունենք։ Միլիոնաւոր մարդիկ փորձ ըրին, բայց մէկը բաւական հանգիստ գտա՞ւ իր հոգիին երկրի վրայ։ Չեմ ուրանար՝ հաճութիւններ վայելեցին, բայց հանգիստ ու գոհ վիճակ մը բնաւ չգտան։ Եւ մենք պիտի խորհինք գտնել ա՞ն բանը՝ որ մեզմէ առաջ բնաւ մէկը գտած չէ։ Աքաաբին անանկ թուեցաւ որ իր թագաւորութիւնը բաւական չէ եթէ Նաբովթին այգին ալ չըլլայ, և երբ որ ձեռք ձըգեց անիկայ՝ գոհ եղա՞ւ։ Եթէ Նոյի աղաւնիին պէս բոլոր երկրի վրայ հանգչելու տեղ մը փնտռէիր, եա պիտի դառնայիր ու խոստովանէիր թէ չգտայ։ Գնա՛ հարցո՛ւր պատիւին՝ թէ հոս հանգիստ կա՞յ։ Փոթորկալից լեռներուն գագաթը կամ Եթնայի բոցերուն մէջ ալ անանկ հանգիստ կրնաս վայելել։ Հարցուր հարստութեան թէ հոս հանգիստ կա՞յ։ Անոր ալ հանգստութիւնը փուշերէն անկողինի պէս է։ Եթէ աշխարհային հաճութիւններէն հանգիստ փնտռես՝ ատիկայ ձուկին կարթը կլլած ատենը վայելած երջանկութեանը պէս է։

երբոր հաճութիւնը ամենաքաղցրն է, մահն ալ ամենամօտ է: Գնա՛ ուսմունքին և մինչև անգամ Աստուածային պաշտօններուն, և հարցուր՝ թէ քու հոգիդ հոն կրնա՞յ հանգչիլ: Արդարև ատոնցմէ քեզի յոյս տուող ձիթենիի ճիւղ մը կ'ընդունիս, որովհետև քու հանգստեանդ միջոցներ են՝ և վերաբերութիւն մը ունին յաւիտենականութեան. բայց իրենք իրենցմէ մարդս յագեցունելու բնաւ կարող չեն, անանկ որ բոլոր ասոնք ունենալով ալ կրնայ ըլլալ որ չունեցածի պէս անհանգիստ ըլլաս: Որչափ յարմարապէս ամէն ասոնք կրնան պատասխանել մեզի՝ ինչպէս որ Յակոբ Ռաքէլին պատասխանեց, թէ "Միթէ ես Աստուծոյ տե՞ղն եմ" որ ինծի կու գաք հոգւոյ հանգիստ գտնելու համար: Աշխարհիս մէջ մարդոց ոչ մէկ վիճակը՝ ոչ պալատները՝ ոչ ամարանոցները, ոչ քաղաքները՝ ոչ գիւղերը, ոչ խանութները և ոչ արտերը, գանձերը՝ գրատուները՝ առանձնութիւնը՝ ընկերութիւնը՝ ուսմունքը և ոչ ամպիոնները կրնան աս հանգիստին պէս բան մը երբէք տալ մեզի: Եթէ կարող ըլլայիր հարցունել ամէն դարու մեռելներուն և ամէն երկրի մէջի կենդանիներուն, անոնք ամէնը միշտ ըսէին քեզի, թէ "Հոս հանգիստ չկայ": Կամ՝ եթէ ուրիշ մարդոց փորձը քեզի չազդեր՝ քու կեանքդ նայէ, քու անցեալ կենացդ մէջ կրնա՞ս գտնել ժամանակ մը՝ երբ բոլորովին գոհ էիր. և եթէ գտնես ալ, տևողակա՞ն է: Կարծեմ թէ մենք ամէնս կրնանք ըսել մեր երկրաւոր հանգիստին վրայ՝ ինչ որ Պօղոս Առաքեալ մեր յոյսին համար ըսաւ թէ, "Եթէ միայն աս կեանքին համար է, մենք բոլոր մարդիկներէն աւելի խղճալի ենք":

Ուրեմն եթէ թէ՛ Սուրբ Գիրքը՝ թէ՛ բանականութիւնը՝ թէ՛ մեր և թէ բոլոր աշխարհի փորձը կը վկայէ, և մենք ալ որ անոնցմով պիտի համոզուինք, ըսել է թէ հոս հանգչիլ չկայ։ Բայց և այնպէս մեզմէ շատերը որչափ կը գործեն աս մեղքը։ Քանի՜ քանի անգամ կը կենանք՝ կը տարակուսինք մինչև որ Տէրը մեր հանգիստը կ'ընենք։ Մինչև անգամ Աստուած ինքը յառաջ քշելու է և դուրս վռնտելու է մեզ մեր ամէն վիճակէն, որ չըլլայ թէ նստինք հանգչինք հոն։ Եթէ մեզի տայ յաջողութիւն՝ հարստութիւն կամ պատիւ, մեր սրտերուն մէջ անոնց առջևը կը խողանք, ինչպէս որ Իսրայէլացիք ըրին իրենց որթին առջևը, և անոնց պէս կ'ըսենք, "Ասոնք են քու աստուածներդ" և հետևապէս կ'որոշենք թէ "Աղէկ է որ հոս կենանք"։ Եթէ դառնացունէ աս բարիքները մեզի, ո՛րչափ անհամբերատ կ'ըլլանք՝ մինչև որ վիճակնիս անուշնայ՝ որ կրկին մեր եղած տեղը նստինք հանգչինք։ Եթէ աւելի յառաջ երթայ մեզ ուղղելու մէջ և բոլորովին մէկդի առնէ արարածները, ան ատենը ալ կ'աշխատինք՝ կը կանչենք՝ կը խնդրենք որ Աստուած նորէն տայ մեզի, որ դարձեալ մեր հանգիստը ընենք զանոնք։ Մինչև անգամ մեր կուռքէն զրկուած ատեննիս Աստուծոյ դառնալու տեղը տակաւին անիկայ նորէն ձեռք ձգելու յոյսովը ինքզինքնիս կ'ուրախացունենք և ալ ադ յոյսը մեր հանգիստը կ'ընենք, կամ արարածէ արարած կ'երթանք կը փնտռենք՝ որ բան մը գտնենք անոր տեղը լեցունելու. և եթէ չկրնանք գտնել, տակաւին աւելի կը խնդրենք մնալ աս խեղճութեանը մէջը և ողորմելի բան մը մեզի հանգիստ ընել, քան թէ թողուլ ամէն բան և երթալ Աստուծոյ։ Ի՜նչ անիծեալ հակառակու-

թիւն է աս՝ որ մեր հոգիները ունին Աստուծոյ դէմ ։ Եթէ տարուելու վիճակ մը կենար դժոխքը՝ հոգին աւելի հոն պիտի ուզէր հաստատել իր հանգիստը, քան թէ Աստուծոյ երթալ ։ Եւ ոչ այսչափ միայն, այլ մինչև անգամ մեզ իրեն բերելու և իր ճամբաներուն ու իրեն ծառայելուն արժէքը մեզի ճանչցունելու տանը մենք աւելի պիտի կապուինք ան ճամբաներուն՝ որ իրեն կը տանին, և ան պաշտօններուն՝ որ անոր վրայ կը խօսին, և ան պարգևներուն՝ որ իրմէն կու գան, քան թէ բոլորովին իրեն երթանք ։ Ով քրիստոնեայ մի զարմանար՝ որ աս բաներովը հանգչելու վրայ այսչափ կը խօսիմ. այլ զգոյշ եղիր՝ որ վերջապէս քու վիճակդ ան չըլլէ ։ Կարծեմ թէ դուն այնքան համոզուած ես հարստութեան, պատուոյ և հեշտութեան ունայնութեանը՝ որ դիւրաւ ասոնցմէ կրնաս յոյսդ կտրել, և աղէկ է որ անանկ ըլլայ. բայց շնորհաց միջոցներուն վրայ անանկ կակած չունենալով կը նայիս և կը կարծես թէ անոնց վրայ որչափ որ ուրախանաս՝ կ՚արժէ, մանաւանդ երբոր կը տեսնես թէ աշխարհիս մեծ մասը կ՚արհամարհեն զանոնք՝ կամ շատ քիչ կ՚ուրախանան անոնց վրայ ։ Գիտեմ որ աս բաները սիրելու և յարգելու է՝ և ո՛վ որ ինչ և իցէ աշխարհային բանի մը վրայ ասոնցմէ աւելի կ՚ուրախանայ՝ քրիստոնեայ չէ. բայց երբոր գոհ կ՚ըլլանք աս հոգևոր սահմանադրութիւններովը առանց Աստուծոյ, և քարոզի կ՚երթանք առանց երկինք երթալը նայելու, և աս տեղի եկեղեցւոյն անդամ կ՚ըլլանք առանց վերի կատարեալ եկեղեցւոյն անդամ ըլլալ փնտռելու, ասիկայ ցաւալի սխալմունք մըն է ։ Դու հոգիդ այնքան մխիթարութիւն թող տանէ աս սահմանադրութիւններովը՝ որքան որ

Աստուած ինքզինքը կը յայտնէ անոնցմով․ յիշելով որ աս չէ երկինքը, այլ անոր առհաւատչեաները ։ "Որչափ որ մարմինի մէջ կը կենանք, Տէրոջմէ հեռու ենք", և քանի որ անկէ հեռու ենք՝ մեր հանգիստէն հեռու կ՚ըլլանք ։ Եթէ մենք որչափ որ հեռու ըլլալ կ՚ուզենք իրմէն՝ Աստուած ալ այնքան ուզեր հեռու ըլլալ մեզմէ, և այնքան անհաճոյ ըլլար իրեն մեր հանգիստը ըլլալ՝ որքան որ անհաճոյ է մեզի իրմով հանդչիլը, մենք յաւիտենան իրմէն բաժնուած անհանգիստ վիճակի մը մէջ պիտի մնայինք ։ Մէկ խօսքով՝ ինչպէս որ երկրաւոր բարիքներուն տժգոհ ըլլալուդ յանցանք ըլլալը կը զգաս, զգացիր ան բաներուն ապօրինաւոր գոհունակութեան յանցանք ըլլալը, և աւելի աս յանցանքին համար աղօթք ըրէ Աստուծոյ՝ որ ներէ քեզի ։ Նա դժոխքէն ազատ եղած ամէն պատուհասներէն աւելի՝ նայէ՛ որ երկինքէն ՚ի զատ որ և է տեղ մը ինքզինքդ հաստատելուն և Աստուծմէ ՚ի զատ որ և է բան քու հոգւոյդ սփոփանքը ընելուն դէմ արթուն կենաս ու աղօթք ընես ։

Ութերորդ ։ Յաջորդ քննելիք բանը մեր աշխարհաւոր դժկամակութիւնն է մեռնելու՝ որ երկնից հանգիստը տեսնենք ։ Մենք կը տնտնանք ինչպէս Ղովտ Սոդոմի մէջ ըրաւ, մինչև որ Տէրը՝ ողորմած ըլլալով մեզի՝ մեր կամքին դէմ տեղերնուս հանէ մեզ ։ Կը խոստովանիմ որ մահը ինքնին փափաքելի չէ, բայց հոգիին Աստուծոյ հետ հանգչելուն ճամբան է ։ Որովհետև մենք հակամիտ ենք աս մեղքը (այսինքն մեռնիլ չուզելը) բանի տեղ չդնելու, վասնորոյ քանի մը խորհրդածութիւնով քու առջևդ դնեմ անոր բնութիւնը և դարմանը ։

Կեանս շատ անհաստատութեան կայ ասոր մէջ. Եթէ Ճշմարտապէս հաւատայինք որ ան փառքին խոստմունքը Աստուծոյ խօսքն է, և Աստուած ինչ որ կ'ըսէ, միայն այն է և հաստատ պահուած է անփոփոխ կատարելու, եթէ Ճշմարտապէս հաւատայինք որ Քրիստոս կայ ասանկ երջանկութիւն մը հաւատացելոց համար պատրաստուած, անշուշտ այնքան անհամբեր պիտի ըլլայինք ապրելու, որքան որ հիմա կը վախնանք մեռնելու. և ամէն մէկ օրը մէյմէկ տարի պիտի գար՝ մինչև որ վերջին օրը հասնէր: Կարելի՞ բան է որ հաւատանք թէ մահը մեզ թշուառութենէ ասանկ փառքի պիտի տանի, և տակաւին դժկամակ ըլլանք մեռնելու: Եթէ ան փառքին մասնակցութիւն ունենալնուս [illegible] ունենայինք կը վախնանք, տակաւին եթէ ան հանգիստին ստուգութեանը և գերազանցութեանը հաւատանք, անհանգիստ պիտի ըլլանք՝ մինչև որ մեր մասնակից ըլլալը յայտնի գիտնանք: Ինչպէս շատ հաւատք ու քրիստոնէութիւն կայ մեր բերանը, սակայն շատ անհաւատութիւն և հեթանոսութիւն կայ սրտերնուս մէջ, որ ան է մեռնիլ չուզելնուս գլխաւոր պատճառը:

Իսկ մեր սիրոյն պաղութիւնն ալ մեծ պատճառներն է: Եթէ բարեկամ մը սիրենք, անոր հետ ընկերութիւն ընելը կը սիրենք, անոր ներկայութիւնը հաճելի կ'ըլլայ՝ և հեռաւորութիւնը ցաւալի. երբոր մեզի կու գայ՝ սիրով և ուրախութեամբ կ'ընդունինք. երբոր մեռնի՝ կու լանք և սուգ կ'ընենք և սովորաբար չափէն աւելի: Հաւատարիմ բարեկամէ մը բաժնուիլը մեր մարմինէն մէկ անդամ մը հանելու պէս է: Իսկ մեր Աստուծոյ վրայ ունեցած փափաքներն ալ այսպէս պիտի չըլլա՞ր՝ եթ-

թէ իրօք սիրէինք զինքը։ Մանաւանդ ասկէ շատ աւելի ըլլալու չէ՞ր, որովհետեւ բոլոր բարեկամներէն գերագոյն և ամենէն աւելի սիրելի է։ Տէրը սորվեցուցանէ մեզի ճշդիւ քննել մեր սիրտերը և զգոյշ ըլլալ սա բանին մէջ ինքզինքնիս խաբելէն։ Ինքզինքնիս ինչպէս որ ցուցընենք խօսքով, եթէ հայր՝ մայր՝ երիկ՝ կին՝ զաւակ՝ բարեկամ՝ հարստութիւն ու մեր կեանքը անգամ՝ Քրիստոսէն աւելի սիրենք, մենք անոր անկեղծ աշակերտները չենք։ Եղբայր դատաստանի գայ պահը, սա պիտի չհարցուի թէ ո՞վ ամենէն աւելի քարոզեր է կամ ո՞վ ամենէն աւելի բան լսեր է կամ խօսեր է, այլ ա՛ն թէ ո՞վ ամենէն աւելի սիրեր է։ Քրիստոս սիրոյ տեղը չառներ քարոզ՝ աղօթք՝ ծոմապահութիւն, ո՛չ. ո՛չ ալ մեր ստացուածքը տալը և ոչ մարմիններնիս այրելը։ Ու կըրնա՞յ ըլլալ որ զինքը սիրենք և տակաւին հոգ չընենք թէ որքան ժամանակ է հեռու մնացեր ենք իրմէն։ Սա՞նկ էր Յակոբ Նահապետին ուրախութիւնը երբոր Եգիպտոս Յովսէփին երեսը տեսաւ. և մենք տանինք Քրիստոս փառքի մէջ տեսնելու գոհ ըլլանք և տակաւին ըսե՞նք թէ կը սիրենք զանիկայ։ Մեր մեռնելու ատենը ըլլալնէս չեմ համարձակիր հաստատել թէ բնական չաւնինք, այլ սա ըսել կը համարձակիմ թէ՝ եթէ մեր սէրը աւելի ըլլար, աւելի յօժարութեամբ պիտի մեռնէինք։ Եթէ սա սէրը բացը ամբողջապէս բորբոքէր մեր սրտերուն մէջ, Դաւիթ մարգարէին հետ պիտի աղաղակէինք թէ «Ինչպէս որ եղջերուն ջուրի վտակներուն կը փափաքի, անանկ ալ իմ անձս քեզի կը փափաքի ո՛վ Աստուած»։ Հոգիս ծարաւի է Աստուծոյ՝ կենդանի Աստուծոյն. ե՞րբ պիտի գամ ու երեւնամ Աս-

տանջոյ տեղէր"։

Մ՚եր մեռնելու ակամայ ըլլալէն կ'երեւի որ մեղ-քէն բաւական զղջացած չենք ։ Եթէ մեղքը ամե-նամեծ չարիքը սեպէինք, անոր համար այնքան եր-կայն ատեն կենալու յօժար պիտի չըլլայինք ։ "Ո՛վ յիմար՝ մեղաւորաց սիրտ, այնչափ ատեն է ամէն պիղծ ցանկութիւններու բոյն, անդադար անիրա-ւութեան դառն ջուրեր բղխող աղբիւր եղեր ես՝ և ապականութիւն բաւական չէ՞ ։ Թշուառ հոգի, այն-չափ ատեն է քու բոլոր կարողութիւններդ ծառա-յած են, բոլոր քու գործքերուդ մէջ չարաչար կը լքանիս, այնքան պատուաբեր գետին մը եղած ես ամենայն անօրէնութեան, և ապականութիւն չձանձրա-ցա՞ր ։ Տակաւին քու դժբաղդութիւններուդ մէջ պիտի կենա՞ս ։ Քու մեղքդ այնչափ օգտակար ստացուածք մը և այնչափ հարկաւոր ընկեր մը ու այնչափ հաճելի զբաղմունք մը՞ն է՝ որ այնքան կը վախնաս անկէ բաժնուելու օրէն ։ Աստուած արդարադատ չը՞կրնար տալ քեզի քու փափաքներդ և հաստատել քեզ իրմէն անհեռացած վիճակին մէջ՝ որուն դուն կը փափաքիս, և յաւիտեան քեզ մերժել իր փառքէն"։

Ասկէ ետևեանս վրայ լսելը կամ խորհիլը մեզի այնքան անհաճոյ ըլլալը կը ցուցընէ՝ որ մենք տա-կաւին աշխարհիս ունայնութիւնը չենք ճանչնար ։ "Ո՛հ յիմար ու թշուառ հոգի, ամէն բանտարկ-եալ ազատութեան համար կը հեծէ՝ և ամէն գե-րի Յոբելեան տարին կը փափաքի, ամէն հիւանդ մարդ՝ առողջութեան կը ցանկայ, և ամէն անօթի՝ հացի, և դո՛ւն միայն քու ազատութենէդ կը զըզ-ուիս ։ Նաւաստին կ'ուզէ ցամաք ելնել. երկ-րագործը հունձքի և բանւորը իր վարձքին կը փա-փաքի. Ճանապարհորդը կը ցանկայ հայրենիքը

հասնիլ՝ և ասպարէզը վազողը յաղթանակը՝ ու զինուորը պատերազմը վաստըկիլ, և քեզի այնքան անհաճո՞յ է տեսնել քու աշխատութիւններդ լմընցած՝ և ընդունիլ քու հաւատքիդ ու նեղութիւններուդ վարձքը։ Քու վիշտերդ երա՞զ էին։ Եթէ անանկ ալ ըլլան, պէտք է որ չվախնաս արթըննալէն։ Կամ թէ յաւէտ աշխարհիս հեշտութիւնները չե՞ն որ բոլորը լոկ երազ և շուք են։ Կամ թէ աշխարհս նոր փոխուեցաւ և աւելի օգտակա՞ր եղաւ։ Մ՚ենք անձերնիս վտանգը դնելով կրնանք ինքզինքնիս աշխարհին յարմարցունել, բայց ան ինքզինքը բնաւ չյարմարցուներ մեզի։ Ո՛վ անարժան հոգի, որ աւելի կ՚ընտրես աս խաւար երկիրը բնակիլ և աս անբերրի անապատին մէջ թափառիլ, քան թէ Յիսուս Քրիստոսի քովը հանգիստ վայելել. աւելի կ՚ընտրես կենալ գայլերուն մէջ և ամէն օր չարչարուիլ կարիճներուն խայթերէն, քան թէ փառաբանել Տէրը երկնից բազմութեանը հետ"։

Մ՚ահուան աս մեր ունեցած դժկամակութիւնը՝ Տէրոջը դէմ իրօք դաւաճանութեան յանցանք կը դնէ վրանիս։ Ասիկայ երկիրը անկէ առաջ դնել և ներկայ բաները մեր երջանկութիւնը սեպել և զանոնք բուն մեր ապրուածը ընել չէ՞։ Եթէ յիրաւի զԱստուած մեր վախճանը՝ մեր հանգիստը՝ մեր բաժինը և մեր գանձը ըրած ըլլայինք, ի՞նչպէս կարելի էր որ զինքը վայելել չփափաքէինք։ Ասիկայ կեղծաւորութիւն ալ կը յայտնէ։ Կ՚ուզես որ մէկը հաւատա՞յ քեզի, երբոր դուն Տէրը քու միակ յոյսդ կը կոչես և Քրիստոսի վրայ կը խօսիս իբրև ամէնը ամէն բանի մէջ, և անոր առջևը եղած ուրախութեանը խօսքը կ՚ընես, ու սակայն աւելի կ՚ընտրես համբերել աս տաժանելի

կեանքին, քան թէ մեռնիլ և անոր քովը մնանել։ Ի՛նչ հակառակութիւն է աս՝ այնքան խիստ խօսիլ աշխարհին և մարմինին վրայ, հեծել ու գանգատիլ մեղքէն ու տանջանքէն, և տակաւին ուրիշ օրէ այնքան չվախնալ, որքան ան օրէն՝ որն որ կը յուսանք թէ մեզ վերջին ազատութեան պիտի հանէ։ Ի՛նչ կեղծաւորութիւն է աս՝ դաւանիլ թէ մենք կը ջանանք և կը պատերազմինք երկինքը վաստըկելու համար, որուն երթալ չենք ուզեր, և ժամերով աղօթքի կը կայնինք ան բանին համար, որ ունենալ չենք ուզեր։ Սանկով անիրաւութիւն ըրած կ՚ըլլանք Տէրոջը և իր խօսամանցը, և անարգած կ՚ըլլանք անոր ճամբաները աշխարհին առջևը, եթէ թէ կ՚ուզենք համոզել զանոնք, որ քննութեան ելլեն՝ թէ Աստուած արդեօք իր խօսքը կը պահէ՞ թէ ոչ. կամ թէ Սուրբ Գրոց ըսածին պէս փառք մը կա՞յ թէ ոչ։ Երբոր կը տեսնեն թէ ներկայ բաները ձեռքէ հանելու այնքան դժկամակ են անոնք՝ որ դաւաներ են հաւատքով ապրելու և պարծեցեր են հանդերձեալ աշխարհին իրենց ունեցած յոյսերուն վրայ և արհամարհանօք խօսեր են բոլոր վարի բաներուն վրայ բաղդատմամբ վերիններուն հետ, ասիկայ ո՛րչափ կը հաստատէ աշխարհս իր անհաւատութեանը և հեշտասիրութեանը մէջ։ "Անշուշտ", պիտի ըսեն անոնք, եթէ "աստանկ դաւանութիւն ընողները անանկ փառքի ակնկալութիւն ունենային և ցուցուցածնուն չափ արհամարհէին աշխարհը, իրենք այնքան դժկամակ պիտի չըլլային վիճակնին փոխելու"։ Ո՛հ, մինչև երբ կրնանք վերցունել ան միտքը՝ որ աս նախատինքովը կ՚ընենք Աստուծոյ և անմահ հոգիներուն։ Եւ ի՛նչ պատիւ պիտի ըլլայ Աստուծոյ, ի՛նչ քաջալերութիւն հաւատացելոց, ու ի՛նչ հա-

մղում՝ անհաւատից, եթէ քրիստոնեայք ալ բանին նկատմամբ իրենց դաւանութեանը համեմատ վարուէին և զուարթութեամբ ընդունէին իրենց հանգըստեան աւետիսը :

Նաև յայտնապէս կը ցուցնէ ասիկայ՝ թէ շատ ժամանակ վատներ ենք առանց նպատակին յառաջ տանելու : Ողջ մեր կեանքը մեռնելու պատրաստուելու համար ձեռքերնիս չէ՞ր, այսչափ տարիներ ունենալով մէկ ժամու համար պատրաստուելու, և տակաւին յօժար ու պատրաստ չեղա՞նք : Ի՞նչ ըրինք, ինչո՞ւ ապրեցանք : Անկէ աւելի մեծ բան մը ունէի՞նք հոգ ընելու : Աւելի յաճախ ազդարարութիւննե՞ր կ'ուզէինք : Որչափ անգամ մտաւ մահը մեր դրացիներուն բնակարանները . որչափ անգամ բուն մեր դուռը զարկաւ : Որքան ցաւ ու հիւանդութիւն նեղեցին մեր մարմինները որ քանի ընդունեցինք մահուան վճիռը . և բոլոր ասոնցմէ վերջը՝ տակաւին դժկամակ ու անպատրա՞ստ ենք : Ո՜վ անհոգ՝ քարսիրտ մեղաւորներ՝ Աստուծոյ ազդարարութիւններուն անարժա՞ն զանցառուներ, և բուն մեր հոգիներուն անհաւատարի՜մ մատնիչները :

Մտածէ՛ որ ընթանիլը բնաւ կեցնելի չըլլալ է : Մահէն փախչիլը երանութենէն զրկուիլ է, եթէ Աստուած կենդանութեան չփոխէ մեզ Ենովքին ու Եղիային պէս, որուն նմանը ոչ անկէ առաջ և ոչ անկէ հետէ եղաւ : «Թէ որ միայն այս կեանքիս համար Քրիստոսի յուսացած ենք, մենք բոլոր մարդիկներէն աւելի խղճալի ենք» : Եթէ մեռնիլ ու երկինքը երթալ չես ուզեր, ի՞նչ ունիս հեշտանալ մէկէ մը կամ անասունէ մը աւելի : Ինչո՞ւ աղօթք կ'ընենք՝ ծոմ կը պահենք և սուգ կ'ընենք . ինչո՞ւ աշխարհիս նախատինքը կը քա-

փեռնքին, քան թէ մեռնի[illegible] ք ու ոչ թէ հե-
Ի՛նչ հակառակութիւ[illegible] թէ հանդերձեալ կե-
աշխարհին և մա[illegible] Ո՛վ քրիստոնեայ, կ'ու-
մեղքէն ու ա[illegible] հաւատքդ՝ աշխատութիւնդ՝
այնքան չփս[illegible] պարտաւորութիւններդ՝ քա-
սանք թէ [illegible] ներդ՝ քու կենացդ գերագոյն վախ-
Ի՛նչ [illegible] բոլոր արիւնը և գոհ ըլլալ
կը ջ[illegible] մը և անասունի մը բաժինովը։
կեր[illegible] լսես, ինչպէս որ մէկը երբոր մեռնե-
ա[illegible] հարցուեցաւ թէ մեռնիլ կ'ուզէ՞ թէ
[illegible] թէ "Խող ա՛ն չուզէ մեռնիլ, որ չուզեր
[illegible] հետ ըլլալ": Աստուած կ'ուզէ՝ որ մեզ
[illegible]արէ մահով և մենք չուզե՞նք մեռնիլ որ
[illegible]ւորուինք։ Ինծի կը թուի թէ եթէ իշխան
մը ուզեր քեզ իր ժառանգը ընել՝ դժկամակ պի-
տի չըլլայիր ընդունելու. սասանկ բարերարութիւն
մը մերժելը ապերախտութիւն և անարժանութիւն
պիտի ցուցընէ։ Ինչպէս որ Աստուած վճիռ ը-
րաւ անոնց դէմ, որոնք պատճառանքներ բանե-
լով ետ կեցան Քրիստոսի երթալէն, թէ "ան
հրաւիրուածներէն մէկն ալ իմ ընթրիքիս համը
պիտի չառնէ", անանկ ալ իրաւունք ունի մեզի դէմ
վճիռ ընելու, որ պատճառանքներ կը հնարենք
փառքին չերթալու։ Տէր Յիսուս Քրիստոս յա-
ժայր եղաւ երկինքէն մեզի համար իջնելու, և մենք
յօժար չըլլա՞նք երկիրէն երկինք ելլելու մեզի և
իրեն համար։ Ան կրնար ըսել մեզի համար թէ,
"Ի՞նչ հոգս է, եթէ աս մեղաւորները կը չար-
չարուին, եթէ իրենք իրենց մարմինը հոգիներ-
նէն, և իրենց ցանկութիւնները իմ օրէնքներէն
վեր կը դասեն, եթէ իրենք կ'ուզեն հոգիներնին
ոչինչի ծախել, ո՞վ պէտք է ըլլալ վնասը քաշո-
ղը։ Ե՞ս քաշելու եմ վնասը, որ ինծի անիրա-

ւութիւն ըրին ։ Անոնք կամաւ իմ օրէնքս կարեն և իրենց արժանացած ցաւը նա քաշեմ ։ Ես երկինքէն երկիր իջնեմ մարդկային մարմին առնեմ, մարդիկ երեսս թքնեն և ծաղր ընեն, ծամապտակեմ, արտասուք ու քրտինք թափեմ, չարչարուիմ, և արիւն թափեմ և մեռնիմ անիծեալ մահով մը, և առ. ամէնք ընեմ սաստիկ անարգութեանս համար, որ աւելի կ'ուզեն հոգիներնին փառանքը դնել քան թէ ևս կենաց աղգիլեալ պատուէ մը ։ Անոնք իրենցինքնին տանեն ոչինչ բանի մը պէս մէկդի կը ձգեն, և ես պահանք փրկելու եմ այնքան սուղ գնով"։ Այսպէս կը տեսնենք որ Քրիստոս բաւական պատճառ ունէր դժկամակ ըլլալու, բայց և այնպէս սէն կամաւ հաճեցաւ ։ Այնպէս մենք իրեն չերթալու պատճառ չունինք, նթէ մեր յայսերուն պէտք պատճառ չունինք, և մեր տառապանքը յարատևութիւնը չենք ուզեր ։ Քրիստոս վար իջաւ մեզ վեր հանելու, և կ'ուզենք որ իր արիւնը և աշխատութիւնը կորսնցունէ և դարձեալ առանց մեզի՞ վեր ելլէ ։ Ան այսչափ սուղ գնէ մեր հանդիսար, և մեր ժառանգութիւնը իր արեանքը ծախու առնէ և ևս ամենուն վրայ մենք դժկամակ ըլլանք հոն երթալու ։ Ո՛հ յարգի բարեկամներ՝ Քրիստոս է, որ պատճառ ունի դժկամակ ըլլալու և ոչ թէ մենք ։ Տէրը ների և բժշկէ աս չիմար ապերախտութիւնը ։

Մ՛եր իսկ անգութ թշնամիներուն հետ՝ իրենց անհնարար դիտաւորութեանցը մէջ միաբանած չե՞նք ըլլար, երբոր դժկամակ կ'ըլլանք մեռնելու և երկինք երթալու ։ Ի՞նչ է Սատանային հանապազօրեայ ջլատումները. հոգիներնիս Աստուծմէ հեռու պահել չէ՞ ։ Եւ հաճելո՞ւ ենք անոր

չենք․ ինչո՞ւ քրիստոնեայ եղանք ու ոչ թէ հեթանոս կամ անհաւատ, եթէ հանդերձեալ կենաց չենք փափաքիր։ Ո՛վ քրիստոնեայ, կ՚ուզե՞ս կորսընցունել քու հաւատքդ՝ աշխատութիւնդ՝ բոլոր քու կատարած պարտաւորութիւններդ՝ քաշած նեղութիւններդ՝ քու կենացդ գերագոյն վախճանը՝ Քրիստոսի բոլոր արիւնը և գոհ ըլլալ աշխարհասէրի մը և անասունի մը բաժինովը։ Պէտք է որ ըսեմ, ինչպէս որ մէկը երբոր մեռնելու ատենը հարցուեցաւ թէ մեռնիլ կ՚ուզէ՞ թէ ոչ, ըսաւ թէ "Թող ան չուզէ մեռնիլ, որ չուզեր Քրիստոսի հետ ըլլալ"։ Աստուած կ՚ուզէ՝ որ մեզ փառաւորէ մահով և մենք չուզե՞նք մեռնիլ որ փառաւորուինք։ Ինծի կը թուի թէ եթէ իշխան մը ուզեր քեզ իր ժառանգը ընել՝ դժկամակ պիտի չըլլայիր ընդունելու․ ասանկ բարերարութիւն մը մերժելը ապերախտութիւն և անարժանութիւն պիտի ցուցընէ։ Ինչպէս որ Աստուած վճիռ ըրաւ անոնց դէմ, որոնք պատճառանքներ բռնելով ետ կեցան Քրիստոսի երթալէն, թէ "ան հրաւիրուածներէն մէկն ալ իմ ընթրիքէս համը պիտի չառնէ", անանկ ալ իրաւունք ունի մեզի դէմ վճիռ ընելու, որ պատճառանքներ կը հնարենք փառքին չերթալու։ Տէր Յիսուս Քրիստոս յօժար եղաւ երկինքէն մեզի համար իջնելու, և մենք յօժար չըլլա՞նք երկիրէն երկինք ելլելու մեզի և իրեն համար։ Ան կրնար ըսել մեզի համար թէ, "Ի՞նչ հոգս է, եթէ աս մեղաւորները կը չարչարուին, եթէ իրենք իրենց մարմինը հոգիներնէն, և իրենց ցանկութիւնները իմ Հօրս սէրէն վեր կը դասեն, եթէ իրենք կ՚ուզեն հոգիներնին ոչինչի ծախել, ո՞վ պէտք է ըլլալ խաչը քաշողը։ Ե՞ս քաշեցի իմ խաչը, որ ինծի անիրա-

որ ասանկ ըլլայ։ Պժոխքին կեսը չէ՞ ան որ կ'ուզենք մեր անձերուն երկինքէն հեռու մնալը փափաքելամիս։ Ի՞նչ ուրախութիւն է աս Աստուածային, որ իր փափաքները և քուկդ՝ մէկ քրիստոնեայ՝ այնպէս միաբան գան, որ երբոր կը տեսնէ թէ չկրնար քեզ դժոխք տանիլ, կ'ուզէ այսչափ ատեն հեռու պահելով քեզ երկինքէն, բուն քեզի հաւանելով խնդրելու տալ դժոխքը։ Ա՜հ, մի կատարեր Աստուածային փափաքը 'ի միտ քեզի։ Մ՚եր հանապազօրեայ մահուան փախերը մեր կեանսքը յարատև տանջանք չէ՞ն ըներ։ Ի՞նչ կեանք է, որ կրնայ ուրախութեամբ լեցուն ըլլալ՝ հանգերձեալ կենաց և յաւիտենական երանութեան քաղցր ու զուարճալի խորհուրդներովը, ինչպէս կը լեցունենք զանիկայ անհիմն երկիւղներով։ Այսպէս բուն մենք մեր միխիթարութիւնները կը պղտորենք և մեր անմնացածելիս հաճութիւնները կը հատցունենք։ Երբոր կրնայինք պաշտել, երկել և պատել սրտերնիս Աստուծոյ ուրախութիւններովը լեցուած, մենք շարունակ տարակուսական երկիւղներով կը լեցունենք զանոնք։ Այն որ անոնց մեռնելէն կը վախնայ՝ պէտք է որ միշտ վախնայ, որովհետև միշտ պատճառ կայ կասկածելու թէ պիտի մեռնի։ Ու ինչպէս ան մարդուն կեանքը հանգիստ կ'ըլլայ, որ իր հանգստութիւնները կորսնցունելու վախին մէջը կ'ապրի շարունակ։ Այս մահուան երկիւղները ինքնահնար տանջանք չե՞ն, իբր թէ Աստուած բաւական տանջանք չէ դրեր վրանիս, և մենք մեր ձեռքը աւելցունելու ենք։ Ասոնք ինքնին բաւական գան չե՞ն մարմնին, որ մենք կրկնապատկենք և եռապատկենք անոր զաննութիւնը։ Աստուծմէ մեր վրայ դրուած նեղութիւնները անոնք երջանիկ արգիլումներու կ'ա-

ռամկավարդեն . յառաջադիմութիւնը նեղութենէն
համբերութեան է, անկէ փորձառութեան, և այս-
պէս յոյսի, և վերջապէս փառաց։ Բայց մեր
մեզի համար հնարած նեղութիւններնիս անվախ-
ճան շղթան մըն են, մեղքեն տանջանքի՝ տանջան-
քէն մեղքի և այսպէս կրկին տանջանքի. և ոչ
միայն այսպէս, այլ իրենց ընթացքին մէջ կը բազ-
մապատկուին ասոնք. ամէն մեղք առջի եղածէն
մեծ կ՚ըլլայ և այսպէս նաև ամէն նեղութիւն. ա-
նանկ որ եթէ չենք ճանչեր որ Աստուած բուն մեզ
մեր անձին տանջողները ըրած է, քե՞չ պատճառ
կայ մեր մահուան երկիւղները արծարծելու։ Ու-
ասոնք անօգուտ ու անպիտան երկիւղներ չե՞ն։
Ինչպէս որ բոլոր "Մեր Հօր" տանելովը չենք կրնար
մէկ մազ մը ճերմկցունել կամ սեւցունել և ոչ մեր
հասակին վրայ կանգուն մը աւելցունել", անանկ
ալ վախնալովնիս չենք կրնար մեր նեղութիւննե-
րը արգիլել և ոչ մեր մահը ժամ մը ուշացու-
նել, կամաց ակամայ պիտի երթանք։ Հա-
ւերուն երկիւղները իրենց վախճանը փութա-
ցուցին, բայց ոչ մէկունը ետ քաշեց։ Ճշմարիտ
է՝ որ մահուանէ վերջը եղած վտանգին համար
կզուշացունող վախ մը շատերուն օգուտ ըրած է
և շատ օգուտ կ՚ընէ ան վտանգը արգիլելու, բայց
Քրիստոսի անդամ և երկնից ժառանգ եղողի մը
բուն իր ժառանգութիւնը մտնելու վախնալը՝ մե-
ղանչական ու անօգուտ վախ մըն է։ Ու չէ՞ որ
մեռնելէն վախնալնիս մեր հոգիները որոգայթի մէջ
կը դնէ և շատ փորձութիւններուն ուժ կու տայ։
Ինչէ՞ն ուրացաւ Պետրոս իր Տէրը։ Ուրացող-
ները ինչո՞ւ համար նեղութեան ատեն ճշմարտու-
թիւնը կը ձգեն։ Ինչո՞ւ համար արմատ չունեցող
հաւատքին կանանչ բողբոջը հալածանաց տաքու-

թենէն կը չորնայ ։ Նախատարգութեան և աղքատութեան վախը շատ ներգործութիւն կ'ընէ, բայց մահուան երկիւղը շատ աւելի պիտի ընէ ։ Այնչափ վախ՝ որ մահուան վրայ ունինք և այնչափ երկչոտութիւն՝ որ քրիստոնէական ասպարէզին մէջ ունինք՝ բազմաթիւ անհաւատութեան խորհուրդներէն և Աստուծոյ իմաստուն կարգադրութեանը վրայ տժգոհութիւններէն և անոր նախախնամութեանցը շատին վրայ իսկ խորհուրդներէն զատ, բոլոր աս յանցանքները յառաջ կու գան աս միտքէն, որ է մեռնելու դժկամակ ըլլալը ։

Մտածենք նաև թէ ինչ քանակով ժամանակ ունեցան մեզմէ շատերը ։ Մէկ մարդ մը որ երբեք պիտի մեռնի, ինչո՞ւ համար երեսուն կամ քառասուն տարեկան եղած այնչափ յօժար պիտի չըլլայ, եթէ Աստուած յարմար դատէ, որչափ որ եօթանասուն կամ ութսուն տարեկան եղած ատենը ։ Ժամանակին երկայնութիւնը ապականութիւնը չըյաղթեր . անիկայ՝ դարեր ալ անցնին բնաւ չթառամիր և չտկարանար ։ Եթէ շնորհքնիս չաւելնայ ժամանակին հետ՝ բնականապէս հետզհետէ աւելի չար կ'ըլլանք ։ Ո՜վ իմ հոգիս՝ գնա՛ խաղաղութեամբ ։ Ինչպէս որ չես փափաքիր հարըստութեան ու պատուոյ մէջ անսահման վիճակի մը, այնպէս մի՛ փափաքիր անանկ վիճակի մը ժամանակի կողմանէ ։ Եթէ զգայիր թէ ո՞րչափ անարժան ես քու վայելած համբերութեան մէկ ժամուդ, պիտի խորհէիր թէ շատ ժամանակ ունեցար ։ Աստուածային իմաստութիւնը չէ՞, որ ան սահմանները կը դնէ ։ Աստուած կ'ուզէ փառաւորել ինքզինքը տարբեր տարբեր հասակ ունեցող անձերով և ո՛չ թէ մէկ հասակի ենթակայ եղող անձով ։ Տեսնելով որ դուն քու բաժինդ կատա-

րեցիր և քու սահմանուած ընթացքդ լմնցուցիր, այլ դուն իջի՛ր գոհ սրտով որ ուրիշները քեզի յաջորդեն, որ անոնք ալ քեզի պէս իրենց կարգը լմնցունեն: Շատ ժամանակը շատ պարտաւորութիւն ունի, վասնորոյ շնորհք խնդրէ որ աղէկ գործածես ժամանակդ. բայց գոհ եղի՛ր ժամանակէն քու ունեցած բաժինովդ:

Անոնց հանգստութիւններէն ալ բաւականութիւն մը ունեցար: Արդար ըլլար որ Աստուած քու կեանքդ բեռ մը ըներ քեզի, մինչև որ այնքան ձանձրանայիր ան ունենալէդ՝ որքան որ հիմա կը վախնաս անիկայ կորսնցունելէն: Արդար ըլլար որ թողուր քեզ, որ քու օրերդ տգիտութեան մէջ անցունէիր առանց Քրիստոսի ճշմարիտ գիտութեանը. բայց ան քու աչքերդ քու օրերուդ առաւօտուն բացաւ, և ժամանակին քու կենացդ փայլելուն և յարմար գործածութեանը վրայով տեղեկացուց քեզի: Չէ՞ որ քու երկնաւոր Հայրըդ քու վիճակդ քրիստոնէից մէջ ձգեց ու չէ թէ հեթանոսներուն և կռապաշտներուն մէջ: Միթէ բոլոր քու կեանքդ ողորմութեամբ լեցուն չըրա՞ւ. և հիմա կը կարծես որ քու բաժինդ շա՞տ քիչ է: Ո՛րքան մխիթարութեան ժամեր՝ հաճոյական Սուրբ Օրեր՝ զուարճալի ուսմունքներ՝ պատուական ընկերութիւններ՝ զարմանալի ազատութիւններ՝ գերազանց պատեհութիւններ՝ արդիւնաւոր աշխատութիւններ՝ ուրախալից լուրեր՝ անոյշ փորձառութիւններ՝ զարմանալի նախախնամութիւններ վայելեցիր կենացդ մէջ: Այնքան անոյշ կեանք մը՛ն էր վայելածդ՝ որ չես ուզեր ձգել անիկայ: Ո՞ւր է քու շնորհակալութիւններըդ Անոր՝ որ այսպէս կը քաշէ քեզ բուն իր անուշութեանը: Ո՛վ յիմար հոգի՝ երանի՛ թէ

ճեննէն կը չորնայ ։ Անարգութեան և աղքատութեան վախը շատ ներգործութիւն կ'ընէ, բայց մահուան երկիւղը շատ աւելի պիտի ընէ ։ Այնչափ վախ՝ որ մահուան վրայ ունինք և այնչափ երկչոտութիւն՝ որ քրիստոնէական աշխարհքին մէջ ունինք՝ բազմաթիւ անհաւատութեան խորհուրդներէն և Աստուծոյ իմաստուն կարգադրութեանը վրայ տարակուսութիւններէն և անոր նախախնամութեանցը շատին վրայ խիստ խորհուրդներէն զատ, բոլոր աս յանցանքները յառաջ կու գան աս մեղքէն, որ է մեռնելու դժկամակ ըլլալը ։

Մտածենք նաև թէ ինչ քաղցրով ժամանակ ունեցան մեզմէ շատերը ։ Մէկ մարդ մը որ երբեք պիտի մեռնի, ինչո՞ւ համար երեսուն կամ քառասուն տարեկան եղած այնչափ յօժար պիտի չըլլայ, եթէ Աստուած յարմար դատէ, որչափ որ եօթանասուն կամ ութսուն տարեկան եղած ատենը ։ Ժամանակին երկայնութիւնը ապականութիւնը չըյաղթեր. անիկայ՝ դարեր ալ անցնին բնաւ չթառամիր և չանկարանար ։ Եթէ շնորհքնիս չաւելնայ ժամանակին հետ՝ բնականապէս հետզհետէ աւելի չար կ'ըլլանք ։ Ո՛վ իմ հոգիս՝ գնա՛ խաղաղութեամբ ։ Ինչպէս որ չես փափաքիր հարըստութեան ու պատուոյ մէջ անսահման վիճակի մը, այնպէս մի՛ փափաքիր անանկ վիճակի մը ժամանակի կողմանէ ։ Եթէ զգայիր թէ ո՞րչափ անարժան ես քու վայելած համբերութեան մէկ ժամուդ, պիտի խորհէիր թէ շատ ժամանակ ունեցար ։ Աստուածային իմաստութիւնը չէ՞, որ ան սահմանները կը դնէ ։ Աստուած կ'ուզէ փառաւորել ինքզինքը տարբեր տարբեր հասակ ունեցող անձերով և ո՛չ թէ մէկ հասակի ենթակայ եղող անձով ։ Տեսնելով որ դուն քու բաժինդ կատա-

րեցիր և քու սահմանուած ընթացքդ լմնցուցիր, ալ դուն իջի՛ր գոհ սրտով որ ուրիշները քեզի յաջորդեն, որ անոնք ալ քեզի պէս իրենց կարգը լմնցունեն ։ Ատ ժամանակը շատ պարտաւորութիւն ունի, վասնորոյ շնորհք խնդրէ որ աղէկ գործածես ժամանակդ. բայց գոհ եղիր ժամանակէն քու ունեցած բաժինովդ ։

Անոնց հանգստութիւններէն ալ բաւականութիւն մը ունեցար ։ Կրնար ըլլալ որ Աստուած քու կեանքդ բեռ մը ընէր քեզի, մինչև որ այնքան ձանձրանայիր ան ունենալէդ՝ որքան որ հիմա կը վախնաս անիկայ կորսնցունելէն ։ Կրնար ըլլալ որ թողուր քեզ, որ քու օրերդ տգիտութեան մէջ անցունէիր առանց Քրիստոսի ճշմարիտ գիտութեանը. բայց ան քու աչքերդ քու օրերուդ առաւօտուն բացաւ, և ժամանակին քու կենացդ փայլուն և յարմար գործածութեանը վրայով տեղեկացուց քեզի ։ Չէ՞ որ քու երկնաւոր Հայրդ քու վիճակդ քրիստոնէից մէջ ձգեց ու չէ թէ հեթանոսներուն և կռապաշտներուն մէջ ։ Միթէ բոլոր քու կեանքդ ողորմութեամբ լեցուն չըլլա՞ւ. և հիմա կը կարծես որ քու բաժինդ շատ քիչ է ։ Որքան մխիթարութեան ժամեր՝ հաճոյական Սուրբ Օրեր՝ զուարճալի ուսմունքներ՝ պատուական ընկերութիւններ՝ զարմանալի ազատութիւններ՝ գերազանց պատեհութիւններ՝ արդիւնաւոր աշխատութիւններ՝ ուրախալից լուրեր՝ անոյշ փորձառութիւններ՝ զարմանալի նախախնամութիւններ վայելեցիր կենացդ մէջ ։ Այնքան անո՞յշ կեանք մըն էր վայելածդ՝ որ չես ուզեր ձգել անիկայ ։ Ո՞ւր է քու շնորհակալութիւններդ Անոր՝ որ այսպէս կը քաշէ քեզ բուն իր անուշութեանը ։ Ո՛վ յիմար հոգի՝ երանի՛ թէ

այնքան ագահ ըլլայ՚ր յաւիտենականութեան, որ-
քան որ ագահ ես անցաւոր ու կորստական կեան-
քին. և Աստուծոյ ներկայութեանը փառքի մէջ
որչափ որ երկրի վրայ մնալուդ: Ան ատենը պի-
տի աղաղակէիր, «Ինչո՞ւ համար անոր կառքը
կ՚ուշանայ գալու. ինչո՞ւ անոր կառքերուն քայլե-
րը ետ կը մնան»: Որչափ ուշ Տէր՝ ո՛րչափ ուշ:
Ի՞նչ պիտի ընես եթէ Աստուած թողու քեզ որ
շատ տարի ապրիս, բայց մինչև հիմա վայելած
շնորհքներէդ զրկէ: Չը՞կրնար քեզի կեանք տալ՝
ինչպէս որ գանգատող Իսրայէլացիներուն լորա-
մարգի տուաւ: Կրնայ կեանք տալ քեզի այնչափ՝
մինչև որ ապրելէն զզուիս և Յուդայի՛ կամ Ա-
քիտոփէլին պէս փափաքիս անկէ ազատուելու. և
կրնայ ընել քեզ ան ողորմելիներուն պէս՝ որոնք
հազիւ թէ կրնան ետ կենալ իրենց կեանքին դըր-
ջելէն: Ասնորոյ այնքան եռանդ մի ըլլար կեան-
քի, որ օրհնութիւն ըլլալու տեղը անէծք կրնայ
ըլլալ: Աստուծոյ քանի՛ քանի պատուական ծա-
ռաները քեզմէ առաջ գացեր են ամէն դարերէն
և ամէն տեղաց: Դուն մէկ անկոխ ճամբայ մը
պիտի չմտնես: Ենովքէն ու Եղիայէն 'ի զատ
սուրբերուն ո՞րը մահէն ազատեցաւ: Եւ դուն
անոնցմէ աղէ՞կ ես: Միլիոնաւոր սուրբեր կան
մեռած, երկրի վրայ հիմակուան եղածներէն ա-
ւելի: Քու սրտակից բարեկամներէդ և գործի
մէջ ընկերներէդ քանի՞ հատը գացած են հիմա.
և ինչո՞ւ դուն այնքան դժկամակ պիտի ըլլաս ա-
նոնց ետևէն երթալու: Մանաւանդ չէ՞ որ Յի-
սուս Քրիստոս ինքը այս ճամբէն անցաւ: Գե-
րեզմանը մեզի սրբացո՞ւց, և իր մարմնովը անուշ-
հոտ չըբուրե՞ց հողին վրայ, և անո՞ր ալ հետևելու
դժկամակ ես: Աղէկ է որ Թովմասին պէս ը-

ըսաւ թէ, «Մենք ալ երթանք՝ որ անոր հետը մեռնինք»։

Եթէ մինչեւ հիմա ըսուածները քեզի չեն համոզեր, ուրեմն Սուրբ Գիրքը և բանականութիւնք ապացուցութիւն չունին։ Ես աս աւելի խօսեցայ աս նիւթին վրայ, տեսնելով որ շատ հակառակ է թէ իմ անձիս և թէ այլոց. տեսնելով որ Քրիստոսի համար շատ բան ըսել և քաշել կրցող այնքան քրիստոնէից մէջը շատ քիչերը կան որ կրնան յօժարութեամբ մեռնիլ. և ուրիշ ապականութիւնները տանջող այնքան շատերուն մէջ շատ քիչերը կան որ աս անկարգութեանց յաղթած են։ Ես ամբարիշտները չեմ համոզեր որ մահէն չվախնան. մանաւանդ կը զարմանամ որ աւելի չեն վախնար և իրենց օրերը յարատեւ զարհուրանքի ու սոսկումի մէջ չեն անցըներ։



## ԳԼՈՒԽ ԺԸ.

### Աշխէ Լըոյ երջանաւոր կեանք մը վարելուն հարկաւորութիւնը։

Մի թէ չկա՞յ անանկ հանգիստ մը մեզի համար կեցած։ Ուրեմն ինչո՞ւ համար մեր խորհուրդները աւելի անոր վրայ չեն։ Ինչո՞ւ համար մեր սիրտերը շարունակ հոն չեն։ Ինչո՞ւ համար հոն չենք յարատեւեր շարունակ անոր վրայ մտածելով։ Ի՞նչ է աս զանցառութեան պատճառը։ Մեր ընթացքը իրաւացի՞ է աս բանին մէջ՝ թէ ոչ։ Յաւիտենական Աստուածը ստանալ փառք մը չըպատրաստե՞ց և չխոստացա՞ւ մեզ վեր տանել՝ որ

իրեն հետ բնակինք. և ասիկայ վրան խորհելու արժան բան չէ՞։ Պէտք չէ՞ որ մեր սրտին ամենազօրաւոր փափաքները աս բանին վրայ ըլլայ։ Եթէ կը հաւատանք ասոր, ինտո՞ր տակաւին կը մոռնանք անիկայ ու զանց կ'ընենք։ Եթէ Աստուած չուզէր հրաման տալ մեզի՝ որ աս լոյսին մօտենանք, ուրեմն ի՞նչ կը նշանակեն բոլոր իր ազդու հրաւէրները։ Ինչո՞ւ այնքան կը դատապարտէ մեր երկրաւոր խորհուրդները և կը հրամայէ մեզի դնել մեր սէրը վերի բաներուն վրայ։ Ո՛հ անարգ սիրտ։ Եթէ Աստուած աս բանին դէմ ըլլար՝ աւելի հաւանական էր որ մենք պիտի ուզէինք, բայց երբոր ան կը հրամայէ որ մեր սիրտերը երկնային բաներուն վրայ դնենք՝ ան ատենը մատ մը չեն շարժեր անոնք տեղերնուն. մեր նախորդներուն՝ յանցաւոր Իսրայելացւոց պէս երբ որ Աստուած ուզէր որ Քանանու համար պատերազմի ելլէին, անոնք կ'ապստամբէին և տեղերնուն չէին շարժեր. բայց երբոր Աստուած կը հրամայէր որ չերթան, ան ատենը կ'ուզէին երթալ։ Եթէ Աստուած ըսէ, "Մ՛ի սիրէք աշխարհս, ո՛չ ալ ինչ որ աշխարհիս մէջն է", ան ատենը սիրտերնիս անոր կը կապուի։ Ո՛րքան յոժարամտութեամբ և ո՛րքան յաճախակի կը մտածենք մեր հեշտութիւնները՝ մեր բարեկամները՝ մեր աշխատութիւնները՝ մեր մարմինը՝ մեր ցանկութիւնները. մինչև անգամ մեր անիրաւութիւնները ու ցաւերը, մեր քաշած վախերը ու նեղութիւնները։ Բայց ո՞ւր է ան քրիստոնեան, որուն սիրտը իր հանգստեանը վրայ է։ Ու պատճառը ի՞նչ է։ Այնքան լեցուած ենք ուրախութեամբ՝ որ ալ պէտքը չէ՞։ Կամ թէ երկինքը մեր ուրախալից խորհրդածութիւններուն առար-

կայ ըլլալու բան չկա՞յ ։ Մի թէ յաւէտ մեր սիրտերը մարմնաւոր ու անզգայ չե՞ն ։ Խոնարհեցունենք ուրեմն աս ցանկասէր սիրտերը՝ որ Քրիստոսէն ու անոր փառքէն զուրկ են ։ Եթէ մեր խօսակցութիւնը բոլորովին աս աշխարհիս վրայ ըլլար, ամէնը մեզ ամբարիշտ պիտի կոչէին. ուրեմն ինչո՞ւ մեր սիրտերը ամբարիշտ չկոչենք որ Քրիստոսի ու երկնից վրայ հաճութիւն չունի ։

Բայց ես միայն անոնց կը խօսիմ՝ որոնց բաժինը երկինքն է, ու յոյսը հոն է. և ամէն բան ձգած են՝ որ ան փառքը վայելեն ։ Եւ վհատելո՞ւ եմ ասանկները երկնաւոր խորհուրդ ունենալու համոզելէն ։ Ո՛վ քրիստոնեայ եղբայրներս, եթէ դուք մտիկ չընէք և չհնազանդիք՝ ո՞վ պիտի մտիկ ընէ ու հնազանդի. կրնայ ըլլալ որ վհատիմ կոյր և ամբարիշտ աշխարհը համոզելէն, և Մովսէսի պէս ըսեմ, "Ահա Իսրայէլի որդիքը ինծի մտիկ չըրին, հապա փարաւոնը ինծի ի՞նչպէս մտիկ պիտի ընէ" ։ Ընթերցող, որովհետև դուն աս փառքին մասնակից ըլլալ կը յուսաս, կը պահանջեմ քեզմէ որ սիրտդ քննես՝ յանդիմանես՝ Աստուծմէ յօժարակամ օտարացած ըլլալուն համար. դարձուր քու խորհուրդներդ ունայնութեան հետամտութենէն յաւիտենականութիւնը սորվելու, սիրտդ հանդերձեալ կենաց վրայ զբաղեցուր, սովորութիւն ստացիր ստանկ խորհրդածութիւններու, և թող քու խորհուրդներդ քիչ անգամ ու հարևանցի չըլլան, այլ թաթխէ՛ քու հոգիդ երկնից զուարճութիւններուն մէջը. և եթէ քու հեղգ հոգիդ սկսի թուլնալ և խորհուրդներդ ցրուիլ, ետ կանչէ՛ զանոնք, իրենց գործին մէջ բռնէ՛, անոնց ծուլութեանը մի համբերեր, և մէկ զանցառութիւն մը անտես մի ըներ ։ Եւ երբոր Աստուծոյ հնա-

ջանալով ջանք ընես աս գործին մէջ՝ և յաղթա-
նակես, և քու խորհուրդներուդ պահպանութիւն
ընես՝ մինչև որ սովորութիւն ըլլայ հնազանդիլ,
ան ատենը ինքզինքդ երկնից սահմաններուն վրայ
պիտի գտնես, և պիտի տեսնես որ արդարև Աս-
տուծոյ գործքին և ճամբուն մէջ անուշութիւն մը
կայ, և քրիստոնէական կեանքը ուրախութեան
կեանք մըն է։ Պիտի գտնես ան առատ մխիթա-
րութիւնները, որոնց համար աղօթք ըրիր՝ ցանկա-
ցիր և հառաչեցիր, և որ քիչ քրիստոնեաներ
ձեռք կը ձգեն, որովհետև անոնց հասնելու աս ճամ-
բան չեն գիտեր կամ թէ հոգ չեն ըներ անոր մէ-
ջը քալելու։ Մի՛ ըսեր թէ, "Մենք կարող չենք
սրտերնիս երկինքը հաստատել, աս գործը միայն
Աստուած ընելու է"։ Անշուշտ Աստուած քու
սրտիդ գլխաւոր իշխողն է, բայց անկէ ետքը
դուն ամենէն աւելի իշխանութիւն ունիս քու սըր-
տիդ վրայ։ Անշուշտ առանց Քրիստոսի բան
մը չես կրնար ընել, բայց իբրև Քրիստոսի գոր-
ծակից շատ բան կրնաս ընել՝ և ընելու ես. Եթէ
ոչ՝ գործը երեսի վրայ պիտի մնայ և հոգիդ պիտի
կորսուի քու զանցառութեանդ։ Քրիստոնեա-
ներ, եթէ ձեր հոգիները առողջ և զօրաւոր ըլ-
լային՝ անհամեմատ աւելի հաճութիւն ու անու-
շութիւն պիտի զգայիք ձեր ապագայ երանու-
թիւններուն հաւատալունիդ, և անոր վրայ ըրած
ուրախալից մտածութիւններունիդ, քան թէ ա-
մենազօրաւոր ստամոքսը կը զգայ իր կերակուրէն, և
ամենէն սուր զգայարանքը իր առարկան վայելած
ատենը. և նոյն համեմատութեամբ ալ քիչ դը-
ժուար պիտի ըլլար ձեզի աս գործը։ Բայց որով-
հետև գիտեմ թէ քանի որ մարմին ունինք՝ վրա-
նիս, և կը մնայ որ և իցէ մաս մը ան մարմնաւոր

միջոցէն, որ թշնամութիւն է Աստուծոյ", և աս ազնիւ գործին՝ ամէն շարժառիթ քիչ կու գայ, վասնորոյ քանի մը խորհրդածութիւններ պիտի դնեմ հոս՝ որոնք եթէ աղէկ մտածութեամբ և անաչառ դատմամբ կշռէք, տարակոյս չունիմ որ անշուշտ պիտի ազդէ ձեր սրտերուն, և որոշել պիտի տայ ձեզի՝ որ կատարէք աս դերադանց պարտաւորութիւնը: Մասնաւորապէս մտածէ թէ աս գործը քու բարեպաշտութեանդ անկեղծութիւնը պիտի ցուցընէ. քրիստոնէական բնաւորութեան ամենաբարձր աստիճանն է. ամենէն հանգիստ ապրելու կերպը աս է. մեղքի փորձութիւններէն ամէն բանէն աւելի կը պահէ. քու շնորհքներդ պիտի զօրացունէ, և պարտաւորութիւններդ հաճելի պիտի ընէ. ամէն նեղութիւններուդ մէջ քու ամենապատուական սփոփանքդ պիտի ըլլայ, այլոց շատ օգտակար պիտի ընէ քեզ. ասով կԱստուած պիտի պատուես. առանց անոր Աստուծոյ բանին հրամաններուն անհնազանդ պիտի ըլլաս, և պիտի կորսնցունես անոր շինութիւն տուող և հաճոյական դիտութիւնը. Նաև իրաւացի է որ քու սիրտդ Աստուծոյ հետ ըլլայ, որովհետև յաճախ անոր քեզի հետ է. և սիրտդ երկինքը ըլլայ՝ ուր որ քու գանձդ է. ասոնցմէ 'ի զատ երկինքէն ուրիշ բան չկայ որ սիրտդ հոն հաստատելու արժանի ըլլայ:

1. Մտածէ որ երկնից վրայ հաստատուած սիրտը բարեպաշտութեան մէջ քու անկեղծութեանդ ամենահաստատ էակայութիւններուն մէկն է. և քու հոգիիդ մէջ փրկարար շնորհքին ճշմարիտ ազդեցութեանը մէկ պայծառ յայտնութիւնը: Շատ անգամ կը հարցունեն, թէ «ինչէ՞ն պիտի գիտնանք թէ ճշմարտապէս սրբուած ենք": Ահա

քեզի մէկ անսխալ նշան մը Յիսուս Քրիստոսի բուն իրեն բերնէն, թէ «Ձեր գանձը ուր որ է, սիրտերնիդ ալ հոն պիտի ըլլայ»։ Աստուած է սուրբերուն գանձը և երջանկութիւնը, և երկինքն է ան տեղը՝ ուր կատարելապէս պիտի վայելեն զինքը։ Մանորդը երկնից վրայ հաստատուած սիրտը Աստուծոյ վրայ հաստատուած սիրտ է. և Քրիստոսի ձեռօքը Աստուծոյ վրայ հաստատուած սիրտը անշուշտ փրկարար շնորհքին ամենաճշմարիտ վկայութիւն է։ Երբոր ուսմունքը շնորհաց ապացոյց չըլլայ, երբոր գիտութիւնդ՝ կատարած պարտաւորութիւններդ՝ ունեցած ձիրքերդ պարապ ըլլեն, երբոր քու բերնէդ կամ ձեռքէդ եղած ապացոյցներդ հերքուին, ան ատենը անիկայ սըրտիդ զգացումներէն պիտի ապացուցանէ քու անկեղծ ըլլալդ։ Այսպէս մէկ խեղճ քրիստոնեայի մը վրայ, հասկըցողութիւնը տկար՝ յիշողութիւնը ծանր՝ խօսուածքը թոթով, բայց և այնպէս անոր սիրտը Աստուծոյ վրայ հաստատուած է. անիկայ իրեն բաժին ընտրած է՝ խորհուրդները յաւիտենականութեան վրայ է՝ փափաքները հոն են՝ և կ'աղաղակէ, «Երանի՜ թէ հոն ըլլայի»։ Ան օրը բանտարգուածի պէս կու գայ իրեն՝ որ օր որ սփոփիչ տեսութիւն մը չունենար յաւիտենականութեան վրայ. աւելի կ'ուզէր աս մարդուն փիճակին մէջ մտնիլ, քան թէ ան մարդուն՝ որ երևելի ձիրքերու տէր է և ամէնը կը հաւնին իր գործքերուն, բայց իր սիրտը այնպէս Աստուծոյ հետ չէ։ Ան մարդը որ Քրիստոս պիտի տեսնէ վերջին օրը և պիտի դատապարտէ «հարանիքի հանդերձ» չունենալուն համար՝ աս կերպ սիրտ չունեցող մը պիտի ըլլայ։ Ան ատենը աս պիտի չփնտռուի թէ դուն որչափ գիտութիւն ստացար

կամ ո՛րչափ դաւանութիւն տուիր, կամ խօսե-ցար, այլ ո՛րչափ սէր ունեցիր և ո՛ւր էր քու սիր-տըդ: Քրիստոնեաներ եթէ կ՚ուզէք ձեր ան փառքին մասնակից ըլլալուն ապացոյց մը ու-նենալ, աշխատեցէ՛ք սիրտերնիդ վերի բաներուն վրայ հաստատելու: Եթէ մեղքն ու Սատանան ձեր սէրը անկէ ետ չպահեն, բնաւ կարող պիտի չըլլան ձեր անձերը անկէ հեռու պահելու:

2. Երկինքը եղող սիրտը քրիստոնէական կրօ-նաւորութեան ամենաբարձր աստիճանն է: Ինչպէս որ կայ հասարակ գերազանցութիւն մը՝ որով քրիս-տոնեաները աշխարհէն կը տարբերին, անանկ ալ կայ հոգիին աս բարձր աստիճանը՝ որով քրիստո-նէից մէջէն աւելի գերազանցները մնացածներէն կը տարբերին: Ինչպէս որ արարածներուն ազ-նուագոյնը՝ անանկ ալ քրիստոնեաներուն ազնուա-գոյնը անոնք են՝ որոնց երեսը ամենէն աւելի դէպ 'ի երկինք հաստատուած է: Սանկ երկնային սուրբ մը որ իր խորհրդածութիւններուն մէջ առ Աստուած յափշտակուեցաւ և նոր կու գայ Քրիս-տոսի վրայ ունեցած տեսութիւններէն, ի՜նչ յայտ-նութիւններ կ՚ընէ ան գերագոյն օթևաններուն վերայ. ո՛րչափ բարձր և սքանչելի է անոր խօսքե-րը. անանկ որ հասկցողութեան տէր ունկնդիր մը կը համոզէ թէ ինք Տէրը տեսած է, և թէ մէկը չկրնար խօսիլ անանկ խօսքեր եթէ Աստու-ծոյ քովը գացած չըլլայ: Ահա աս է ազնիւ քրիստոնեան: Ան լեռները ու ծառերը ամենէն համբաւաւոր կ՚ըլլան՝ որոնք բարձրութեամբ ա-մենէն մօտ են երկինքին. նոյնպէս և ամենապատ-ուական քրիստոնեան ան է՝ որուն սիրտը ամենէն յաճախ և ամենէն աւելի հաճութեամբ զգացում-ներով հոն է: Եթէ մէկ մարդ մը հեռա-

ւոր տեղեր ճամբորդութիւն ընելով Թագաւորի քով կեցեր է, անշուշտ ուրիշներէն աւելի բարձր աստիճանի համարում մը ունի: Ուրեմն ի՞նչ համարում պիտի ունենանք անոր վրայ՝ որ ամէն օր մինչև երկինք կը ճամբորդէ, և հոն կը տեսնէ Թագաւորաց Թագաւորը, յաճախակի կը վայելէ Աստուածային ներկայութիւնը, և իր հոգին կը ճաշակէ կենաց ծառէն: Այս տեսակ մարդը աշխարհիս մէջ գտնուած ամենէն ազնիւ՝ ամենէն հարուստ և ամենէն գիտնականէն վեր կը դասեմ:

3. Երկնային խորհուրդը հանդիսաւոր աղօթելու՝ առիթներն մին և ամենէն ճշմարիտ ճամբան է: Աշխարհային բնութիւն մօտ տեղերը ցուրտ և սառուցեալ են, վասն զի արեգակէն հեռու են: Այս ինչո՞ւ քրիստոնեաները անանկ պաղ ու անհանդիստ կ'ըլլան, եթէ ոչ իրենց խորհուրդները երկինքէն այնքան հեռու ըլլալուն համար: Այս ինչո՞ւ ուրիշները եռանդուն և ուրախ են, եթէ ոչ՝ բարձրերը բնակելնուն և Աստուծոյ մօտ մերձաւորութիւն ունենալնուն համար: Երբ որ արեգակը գարունին երկրի վրայ մեր եղած մասին կը մօտենայ, ի՜նչպէս բնութեան մէջ ամէն բան կը խնդայ անոր գալուն վրայ: Լեռներն ու դաշտերը կը կանանչնան՝ ծառերը ճիւղեր կ'արձակեն՝ տունկերը կը կենդանանան՝ թռչունները կ'երգեն և ամէն բան մարդուն աչքին առջևը կը խնդայ: Եթէ անգամ մը փորձ ընէինք ասանկ կեանք մը անցունելու Աստուծոյ հետ, և մեր սիրտերը վեր երկինքը պահելու, որչափ ուրախութեան գարուն մը պիտի գտնանք մեր մէջը: Որչափ շուտ պիտի մոռնայինք ձմեռուան նեղութիւններնիս, և կանուխ ելլայինք մեր մեծ Արարիչին փառաբա-

նութիւն երգելու. Ո՜վ քրիստոնեայ, վեր բարձրացիր. անոնք որ հոն ելան՝ աւելի տաք գտան հոն. և կարելի է թէ դուն ալ երբեմն անձամբ փորձը ըրած ես։ Ե՞րբ ամենէն շատ ուրախութիւն կը զգաս. չէ՞ որ երբ Աստուծոյ հետ հաղորդակցութիւն կ'ընես, և բարձրագոյն աշխարհի բնակիչներուն հետ կը խօսակցիս, և անոնց օթեւանները կը նայիս, և միտքդ կը լեցուի ան փառքին երևակայութիւններովը։ Եթէ փորձառութեամբ գիտես աս՝ գործին ինչ ըլլալը, կրնամ ըսել թէ հոգևոր ուրախութեան ինչ ըլլալը կը հասկընաս։ Եթէ՝ ինչպէս որ Դաւիթ մարգարէն կը դաւանի, Աստուծոյ երեսին լոյսը ցորենին ու գինիին առատութեան ժամանակէն աւելի ուրախութիւն կու տայ սրտին, ուրեմն անշուշտ անոնք՝ որ շատ կը մտնեն և շատ կը նային անոր, աս ուրախութիւնը ամենէն շատ պիտի ունենան։ Ուրեմն ո՞րուն մեղադիր ըլլալու ենք մխիթարութենէ ասանկ զուրկ ըլլալնուս համար, եթէ ոչ բուն մեր անհոգութերուն։ Աստուած փառաց թագ մը պատրաստեց մեզի, և խոստացաւ քիչ ատենէն գլուխնիս դնել անիկայ. իսկ մենք այնքան անհոգ ենք՝ որ վրան խորհիլ չենք ուզեր։ Ան հրաման կ'ընէ մեզի թէ նայեցէք և ուրախ եղէք. և մենք վրան անգամ չենք նայիր, ու տակաւին կը գանգատինք ուրախութիւն չունենալնուս համար։ Հաւատալով է՝ որ մենք "կը լեցուինք ուրախութեամբ և խաղաղութեամբ". վասնորոյ միայն հաւատալնիս շարունակելով անոնք ալ կրնան շարունակել։ Յայտնի է՝ որ սուրբերը կ'ուրախանան. և չեն կրնար ուրախանալ եթէ չշարունակեն յուսալնին։ Աստուծոյ Հոգին մեր միտքերուն՝ խոստումներուն վրայ մտածել տալով, և խորհուրդներնիս մեր ու-

րախութեանը տեղերը բարձրացնելով՝ մեզի ուրախութիւն կու տայ։ Ինչպէս որ ագահ մարդ մը ոսկի ցուցընելով կ'ուրախացունես, անանկ ալ Աստուած իր ժողովուրդը փրկել թէ երկինքը տանելով, և անոնց՝ ինքզինքը և իր քովը եղած իրենց հանգիստը ցուցընելով կ'ուրախացունէ։ Ան չվաւեր մեր ուրախութիւնները մեր ծոյլ եղած կամ ուրիշներով պարապած ատենը։ Անիկայ երկրին պտուղը ան ատենը կու տայ՝ երբոր մենք կ'արօրենք՝ կը ցանենք՝ անպիտան խոտերը կը քաղենք՝ ջուր կու տանք՝ և կը մշակենք ու համբերութեամբ անոր օրհնելուն կը սպասենք․ այսպէս կու տայ նաև հոգիին ուրախութիւնները։ Տէրոջը անունովը կ'աղաչեմ քեզի ընթերցող, եթէ՝ յարատև ուրախութիւն ունեցող կեանքին և բարի խղճմտանքին՝ որ հանապազօրեայ խնճոյք մըն է, յարգը գիտես, աս գործին սրտի մօզք ձեռք զարնես, և ավորիս երկնային խորհուրդներ ունենալու արհեստը․ ան ատենը հարիւրապատիկ ուրախութիւն պիտի վայելես, և արդիւնքը քու աշխատութեանդ առատապէս պիտի գերազանցէ։ Բայց աս է մարդուն թշուառութիւնը՝ որ թէպէտ ամէն մարդ բնականապէս տրտմութիւնը կ'ատէ և խիստ ուրախ ու զուարթ կեանքը կը սիրէ, սակայն քիչերը կը սիրեն ուրախութեան հասնելու ճամբան, կամ յօժար են ան նեղութիւնները քաշելու՝ որով անիկայ կը ստացուի։ Աչքերնուն առջևը ինչ որ կայ՝ ան կ'առնեն, և առաւել գոհ կ'ըլլան երկրաւոր հաճութիւններով՝ քան թէ միտքերնին և խորհուրդնին երկինք կը բարձրացունեն, որ հոն փնտռեն անիկայ։ Բայց ինչ որ ընեն հոն պիտի գտնեն ան ուրախութիւնը, եթէ ոչ անկէ զուրկ պիտի մնան։

Ն. Երկնային սիրտը մեղքի ծուլութիւններէն շատ աղէկ կը պահէ մեզ ։ Սիրտը զբաղեալ կը պահէ ան ։ Ծո՞յլ եղած ատեններս Սատանային առիթ կու տանք՝ որ մեզ փորձէ. ինչպէս որ անհոգ մարդիկ առիթ կու տան գողերուն ։ Երկնային սիրտը Նեեմիային պէս կրնայ պատասխան տալ փորձիչին թէ, «Ես մեծ գործով մը զբաղած եմ ու չեմ կրնար իջնել»։ Երկնային խորհուրդը պատեհութիւն չթողուր ցանկասէր՝ անառակ՝ փառասէր կամ աշխարհային ըլլալու ։ Եթէ քու հասարակ գործքերուդ մէջ անգամ օրինաւոր կերպով զբաղեալ ըլլաս, այնքան դիւրապատրաստ չես ըլլար փորձութեանց մտիկ ընել, և որչափ աւելի եթէ վերը Աստուծոյ հետ զբաղեալ ըլլաս ։ Մէկ դատաւոր մը կենաց ու մահուան դատաստան մը կտրելու նստած ատենը՝ կրնա՞յ ըլլալ որ համոզուի ելլելու և երթալ փողոցը տղոցը հետ խաղալու ։ Նոյնպէս ալ քրիստոնեան՝ երբոր իր յաւիտենական հանգիստը գննելու զբաղած է, Սատանային հըրապոյրներուն ականջ չդներ ։ Ան թագաւորութեան զաւկըները բնաւ ժամանակ ունենալու չեն չնչին բաներու անցընելու, մանաւանդ թագաւորութեան գործքերուն մէջ զբաղած ատենին. և աս զբաղմունքը սուրբերը փորձութենէ պահող գլխաւոր բաներուն մէկն է ։

Երկնային միտքը ամենէն աւելի ազատ կ՚ըլլայ մեղքէն, որովհետև աւելի ճշմարիտ գաղափարներ և աւելի կենդանի մտածութիւններ կ՚ունենայ հոգևոր բաներուն վրայ ։ Անանկ ներքին տեսութիւն մը և խորունկը թափանձել մը ունի մեղքին չարութեանը՝ արարածներուն ունայնութեանը՝ մարմնաւոր և ցանկական հաճութեանց անաս-

նականութեանը, որ փորձութիւնները անոր վրայ իշխանութիւն չեն ունենար. Սողոմոն կ'ըսէ, « Յիրաւի ամէն թռչուններն աչքերուն առջեւը պարապ տեղը վարմը կը լարուի»: Այս ընդհանրապէս պարապ տեղը Սատանան իր որոգայթները կը լարէ հոգին մոլորցունելու, թէ որ ան հոգին պարզապէս կը տեսնէ անոնք: Երկիրն է անոր փորձութիւններուն տեղը. և ան քրիստոնեան՝ որ երկիրը թողուցած՝ Աստուծոյ հետ կը քալէ, ի՞նչպէս ան որոգայթներէն կը բռնուի: Եթէ իմաստուններուն ու գիտնականներուն հետ կենցաղավարութիւն ընելը մարդը իմաստուն կ'ընէ, աւելի՝ Աստուծոյ հետ հաղորդակցութիւն ունենալը: Եթէ ճամբորդները իմաստութիւն և փորձառութիւն վաստըկած՝ ետ կը դառնան հայրենիք, ո՜րչափ աւելի երկինք ճանապարհորդութիւն ընողը: Եթէ մարմիննիս շատ բնակած տեղերնուս օդին և կլիմային կը յարմարի, լուսոյ Հօրը հետ բնակողներուն հասկացողութիւնն ալ աւելի լուսաւորուած ըլլալու է: Զարմանք չէ որ « իմաստութիւննին խաւարած ու Սատանայէն բռնուած» են աշխարհի մարդիկը՝ որ վարը կը բնակին և երկրաւոր կենցաղավարութենէ՚ի զատ կենցաղավարութիւն չեն գիտեր: Ի՞նչպէս կրնան բան մը տեսնել ճճիներն ու խլուրդները՝ որոնց բնակութիւնը միշտ հողին մէջն է: Քանի որ աս փոշին իրենց աչքերնուն մէջն է՝ զարմանք չէ, որ շահը՝ բարեպաշտութիւն կարծեն, մեղքը՝ շընորհք, աշխարհն՝ Աստուած, բուն իրենց կամքը՝ Քրիստոսի օրէնքը, և հետեւապէս դժոխքը՝ երկինք: Բայց երբոր քրիստոնեան իր աշխարհային խորհուրդներէն ետ կը քաշէ ինքզինքը և երկինքը Աստուծոյ հետ հաղորդակցութիւն կ'ընէ,

քրիստոնեայ․ եթէ յաւիտենականութեան կարծուած մերձաւորութիւնը սանկ զարմանալի ներգործութիւններ կ'ընէ ամբարիշտներու և աղջինէն այնքան աւելի իմաստուն կ'ընէ անոնք, ո՜հ ինչ հաղուագիւտ ազդեցութիւններ պիտի յառաջ բերէ քու վրադ՝ եթէ կարող ըլլաս միշտ Աստուծոյ վրայ մտածութիւններով և քու յաւիտենական վիճակիդ վրայ կենդանի խորհուրդներով ապրիլ։ Անտարակոյս հաւատացեալը՝ եթէ աղէկ բանեցունէ իր հաւատքը, սովորաբար աւելի ազդու տեսութիւններ պիտի ունենայ իր առողջութեան ատենը հանդերձեալ կենաց վրայ՝ քան թէ անհաւատը իր մահուան ատենը կ'ունենայ։

Երկնաւոր միտքը փորձութեանց դէմ պաշտպանուած է, նաև անոր համար որ իր զգացումները բոլորովին գրաւուած են ուրիշ աշխարհի մը բարձրագոյն զուարճութիւններովը։ Շատ սիրողը՝ և ոչ թէ միայն շատ գիտցողը՝ շատ դիւրաւ դէմ պիտի դնէ մեղաց ցանկութիւններուն։ Կամքը այնքան քաղցր հաճութիւն կը գտնայ բարութենէն, որքան որ հասկացողութիւնը ճշմարտութենէն. և աս բանին մէջ կը կայանայ քրիստոնէական զօրութեան մեծ մասը։ Եթէ հանապազ երկնից հաճոյական ճաշակը կը վայելես՝ դիւրաւ չես համոզուիր անկէ ետ կենալու։ Չես կրնար համոզել տղայ մը իր անուշեղէն ուտելիքը մէկդի ձըգելու՝ երբոր անոր համը բերանն է։ Երանի՜ թէ շատ ուտէիր ան ծածկուած մանանայէն և յաճախ ճաշակէիր երկնից հաճութիւնները։ Ասով ո՜րչափ պիտի հաստատուէին որոշումներդ․ և պիտի արհամարհէիր աշխարհիս յիմարութիւնները և սանկ տղայական խաղալիքներով խաբուիլը ծաղըր պիտի ընէիր, եթէ Սատանան գար Պետրոս

Առաքեալին՝ այլակերպութեան լերանը վրայ, ուր կը տեսնէր Մովսէսը և Եղիան՝ որ Քրիստոսի հետ կը խօսէին՝ և բոլոր այն փառքը իր աչքին առջևը, այնքան դիւրաւ կարող պիտի ըլլա՞ր համոզել որ իր Տէրը ուրանար, ո՛չ ։ Անանկ ալ եթէ անիկայ հաւատացեալ հոգիի մը գայ՝ անոր Քրիստոսի հետ լեռը յափշտակուած ատենը, ի՞նչ պիտի ըսէ անոր այն հոգին . "Ետե՛ւս գնա Սատանայ, կ'ուզես զիս համոզել չնչին հեշտութիւններով և յափշտակել իմ սիրտս աս իմ հանգիստէս ։ Կ'ուզես՝ որ աս ուրախութիւններս ոչինչի՞ հետ փոխեմ ։ Որ և իցէ պատիւ կամ հեշտութիւն աստ կը նմանի՞ . կամ թէ ինչ օգուտ պիտի ըլլայ ինծի ան՝ որուն համար աս պիտի կորսընցունեմ" ։ Բայց Սատանան կը սպասէ մինչև որ վար իջնենք և երկնից ճաշակը մեր բերնէն երթայ և տեսած փառքերնիս անգամ մոռնանք, ան ատենը դիւրաւ սիրտերնիս կը խաբէ ։ Թէպէտ Իսրայէլացիք վարը կ'ուտեն, կը խմեն և կ'ելլեն իրենց կուռքին առջևը խաղալու, բայց մարգարէն Մովսէս լեռանը վրայ անանկ չըներ ։ Ո՜հ, եթէ վերի քաղցրութեան ճաշակէն զգացած հաճութիւննիս միշտ մեր հոգիներուն մէջ մնար, ի՞նչ անարգանօք մեղաց կարթերը դուրս պիտի ձգէինք մեր բերաններէն ։

Ասկէ 'ի զատ՝ սիրտը երկնից վրայ հաստատուած ատենը՝ ան անձը Աստուծոյ պաշտպանութեանը տակը կ'ըլլայ ։ Եթէ ան ատենը Սատանան վըրանիս յարձակի՝ Աստուած աւելի պատրաստ է մեր պաշտպանութեանը համար օգնելու և անտարակոյս մեր քովը պիտի կենայ և ըսէ, "Իմ շնորհքս հերիք է ձեզի" ։ Երբոր մէկը Աստուածային օրհնեալ ճամբուն մէջն է, մեղաց հրա-

պտուղները անոր շատ չեն ներգործեր։ Ո՛վ քրիստոնեայ ընթերցող՝ քու փորձութիւններուդ մէջ աս դեղը գործածէ, այսինքն Աստուծոյ մօտ կեցի՛ր երկնաւոր միտքով մը. Քրիստոսի հետ քու վերի գործդ նայէ՝ և պիտի տեսնես որ՝ ասիկայ ուրիշ բաներէն աւելի առոյգ օգնութիւն կ'ըլլայ քեզի։ Կենաց ճամբան խոհեմ մարդը դէպ 'ի վեր կը տանի որ վարի դժոխքէն հեռանայ։ Մի՛տքըդ բե՛ր որ "Նոյ իր դարուն մարդոցը մէջ արդար ու կատարեալ մարդ մըն էր". վասն զի "Աստուծոյ հետ քալեց"։ Յիշէ՛ նաև որ Աստուած ըսաւ Աբրահամին, "Իմ առջևս քալէ՛ և կատարեալ եղի՛ր"։

5. Քու սիրտդ ժրաջանութեամբ երկինքի մէջ պահելը քու շնորհքներուդ ուժը հաստատ պիտի բռնէ և քու բոլոր պարտաւորութիւններուդ մէջ քեզի կենդանութիւն պիտի տայ։ Երկնային քրիստոնեան է կենդանի քրիստոնեան։ Երկինքէն օտար ըլլալնիս է՝ որ մեզ այսպէս թոյլ կ'ընէ։ Ի՛նչպէս զինուորը զէնքը վտանգը կը դնէ, և նաւավարը փոթորիկներուն ու ալիքներուն մէջէն կ'անցնի և մէկ դժուարութիւն մը եւս չբռներ զանոնք, երբոր անստոյգ ու կորստական գանձի մը վրայ կը խորհին։ Ուրեմն որչափ աշխոյժ ու կենդանի պիտի ըլլայ քրիստոնեան, եթէ յաճախ մտածութիւն ընէ իր յաւիտենական գանձին վրայ։ Անոր համար այսպէս ծանր կ'ընթանանք և այնքան ծուլութեամբ կը ջանանք, որ շատ քիչ կը մտածենք մրցանակին վրայ։ Դիտէ՛ ան մարդը՝ որ շատ երկինքը կը բնակի իր սրտովը, և պիտի տեսնես որ՝ անիկայ ուրիշ քրիստոնեաներուն պէս չէ. վերը տեսածներէն բան մը կ'երևի բոլոր իր կատարած պարտաւորութիւններուն և ըրած կեն-

ցաղավարութեանը մէջ։ Եթէ քարոզիչ է, ի՛նչ երկնաւոր ճաշակ մը կը գտնուի իր քարոզներուն մէջ։ Եթէ աշխարհական քրիստոնեայ է, ի՛նչ երկնային համ մը կը զգացուի անոր խօսակցութեանը՝ աղօթքներուն և վարմունքին մէջ։ Աս գործին մէջը կեցի՛ր և ուրիշները պիտի տեսնեն որ քու կենցաղավարութեանդ երեսը կը փայլի, և պիտի ըսեն, Անշուշտ ասիկայ "լեռը Աստուծոյ քովը կեցեր է"։ Բայց եթէ կը կենաս՝ կը գանգատիս թէ թմրած ու թոյլ ես, և Քրիստոս չես կրնար սիրել և ոչ անոր սիրոյը ուրախանալ, աղօթքներուդ մէջ հոգի չկայ և ոչ քու կատարած ուրիշ պարտաւորութիւններուդ մէջ, բայց և այնպէս զանց կ՚ընես ատ կենդանութիւն տուող զբաղմունքը, դուն ես գանգատանացդ տեղի տալու պատճառը։ Մի՛ թէ քու կեանքդ պահուած չէ՞ Աստուծոյ քովը Քրիստոսի հետ։ Ու որո՞ւ պիտի երթաս ան կեանքը գտնելու համար, եթէ ոչ՝ Քրիստոսի, և կամ ո՞ւր, եթէ ոչ՝ երկինք, "ուր որ Քրիստոս է։ Դուն չես ուզեր Քրիստոսի գալ որ կեանք ունենաս"։ Եթէ լոյս ու տաքութիւն կ՚ուզես՝ ինչո՞ւ արևին մէջ չես կենար։ Այսպէս սրտով երկինքը չճանչելուդ համար, հոգիդ մարած կանթեղի պէս և ըսած գործքերդ կրակ չունեցող զոհի պէս են։ Ամէն օր մէյմէկ ածուխ բե՛ր երկնաւոր սեղանէն և տե՛ս թէ զոհդ չա՞յրիր։ Կանթեղդ երկնաւոր բոցէն վառէ՛ և իւղը ամէն օր անկէ լեցո՛ւր ու տե՛ս թէ փառաւորապէս չը՞փայլի՛ր։ Մի՛շտ ան բորբոքած կրակին մօտը կեցի՛ր և տե՛ս թէ քու սէրդ եռանդուն չը՞լլար։ Աստուծոյ վրայ քու սէրդ պակսած ատենը՝ քու հաւատքիդ աչքը երկի՛նք բարձրացո՛ւր՝ նայէ՛ անոր գեղեցկութիւնը՝ մտածէ՛ անոր գերազանց ըս-

տարօդելեացը վրայ և տես թէ անոր անպատմելի քաղցրութիւնը և կատարեալ բարութիւնը թէ քու սիրտդ պիտի չյափշտակէ՞ ։ Ինչպէս որ աշխատութիւնը ախորժակ՝ ուժ և կենդանութիւն կու տայ մարմիններն, անանկ ալ աս երկնային աշխատութիւնները շնորհքը և հոգևոր կեանքը շուտով կը յառաջացունեն ։ Ասկէ 'ի զատ սուտ կամ օտար կրակ մը չէ՝ որ երկինքէն քու զոհերուդ համար կը բերես . երկնից վրայ քու ըրած մտածութիւններովդ սրտիդ մէջ փորփորած նախանձը շատ հաւանական է՝ որ երկնային նախանձ մը ըլլայ ։ Ոմանց եռանդը միայն իրենց կարդացած գիրքերէն պատճառած է, ոմանցը զգացումներու սաստկութենէն, ոմանցը ճարտարաբան քարոզիչէ մը ազդու խօսքերէն . բայց ան որ գիտէ երկնից աս ճամբան և իր եռանդը ան ճշմարիտ աղբիւրէն կը հանէ հանապազ , անոր հոգին պիտի նորոգուի կենաց ջուրովը և պիտի վայելէ ան հոգիին կենդանութիւնը , որ սուրբերուն յատուկ է ։ Աս «հաւատքով կրնաս Աբելին նման հատարակ մարդոցմէ աւելի աղէկ զոհը մատուցանել , և անով արդար ըլլալդ կրնայ վկայուիլ . քու պատարագներուդ վրայ Աստուծմէ վկայութիւն ըլլալով» թէ անկեղծութեամբ են ։ Երբոր ուրիշները «իրենց մարմինները կը կտրեն» Բահաղի քուրմերուն պէս զոհերնին չայրելուն համար , դուն Եղիային հոգին կրնաս շնչել և մտածութեան կառքով բարձրերը ելլել , մինչև որ միանգամայն քու հոգիդ և զոհդ փառաւորապէս բորբոքի , թէպէտ մարմինն ու աշխարհը իրենց թշնամութեան բոլոր ջուրը անոնց վրան հեղուն ։ Մի՛ ըսեր թէ՝ Մահկանացուները ինչպէս երկինք կրնան ելլել ։ Հաւատքը թևեր* ունի և մտածութիւնը անոր կառ-

* խանձաւ ։

քըն է։ Հաւատքը այլոց ապակիի պէս է քու զոհիդ և մտածութիւնով արևին կը բռնես անփկայ. միայն թէ շուտով եւ մ'առներ, այլ քիչ մը առեն բռնէ՛ հոն և հոգիդ պիտի զգայ անոր երջանիկ ներգործութիւնը։ Ընթերցող՝ չես խորհիր երբոր կը տեսնես եռանդուն Քրիստոնեայ մը, կը լսես անոր ջերմեռանդ աղօթքները և շինութիւն տուող խօսքերը, թէ «Ի՛նչ երջանիկ մարդ է աս, երանի՜ թէ իմ հոգիս ալ երանելի վիճակին մէջ ըլլար»։ Ուրեմն ահա ես հիմա քեզ կը խրատեմ Աստուծոյ կողմանէ, քու հոգիդ ճշդութեամբ ան գործին դի՛ր, յաճախ լուացուէ՛ աս Յորդանանին մէջ և քու բորոտ ու թմրած հոգիդ պիտի կենդանանայ, և պիտի «գիտնաս որ Իսրայէլի մէջ Աստուած կայ», և կրնաս աշխոյժ և ուրախ կենօք ապրիլ եթէ կամիս զանց չընես քեզի ընծայուած ողորմութիւնները։

6. Յաւիտենական փառքին վրայ հաւատքով յաճախ նայիլը ամէն նեղութեան մէջ ամենապատուական սփոփանք է։ Աս սփոփանքը հոգինիս զուարթացունելով մեր նեղութիւնները շատ կը թեթեւցունէ, կը կարողացունէ մեզ համբերութեամբ և ուրախութեամբ զանոնք կրելու, և այսպէս կը հաստատէ մեր դիտաւորութիւնները որ նեղութեան երկիւղովը զՔրիստոս չձգենք։ Երկինք տանող ճամբան՝ որչափ ալ որ խորտուփորտ ըլլայ՝ կրնայ ըլլալ որ ձանձրալի ըլլայ։ Ի՛նչ քաղցր հիւանդութիւն՝ նախատինք՝ բանտ՝ կամ մահ, որուն հետ մեր ապագայ հանգստեան ճաշակը կը վայելենք։ Ասիկայ նեղութիւնը եւս կը բռնէ հոգիէն, անանկ որ միայն մարմինին կարող ըլլայ դըպչիլ։ Եթէ երկնային հանգստեան ան քիչ մը (աւա՜ղ՝ որ շատ քիչ) ճաշակը չունենայի, իմ

մենք ան բոցերուն մէջ, որ մեր մէջը ձգողները կը լափէ։ Աբրահամ իր երկիրէն "ելաւ գնաց, ու չէր գիտեր թէ ուր կ՚երթայ . . . մինչեւ որ ինքը կը սպասեր ան հիմերով հաստատուած քաղաքին, որուն ճարտարապետը ու արարիչը Աստուած է"։ Մովսէս "աւելի մեծ հարստութիւն սեպեց Քրիստոսի նախատինքը, քան թէ Եգիպտոսի գանձերը. մինչեւ որ դիտելով կը սպասեր վարձքի հատուցմանը. Եգիպտոսը թողուց ու չվախցաւ թագաւորին բարկութենէն. մինչեւ որ համբերեց՝ որպէս թէ Անտեսանելին կը տեսնէր"։ "Ուրիշներն ալ չարչարուեցան ու չընդունեցին ազատութիւնը, որ լաւագոյն յարութեան հասնին"։ Մինչեւ անգամ Յիսուս՝ "մեր հաւատքին առաջնորդը ու կատարողը ան ուրախութեանը համար որ իր առջեւը կեցած էր, խաչը յանձն առաւ. ամօթը արհամարհեց, ու Աստուծոյ աթոռին աջ կողմը նըստաւ"։

Ասիկայ հաւատքին պատուական օգուտն է. հաւատքը միջոցն ու վախճանը մէկտեղ կը տեսնէ։ Մեր անհամբերութեանը եւ Աստուծոյ վրայ յանցանք գտնելնուս մեծ պատճառը աս է՝ որ մենք միայն չարիքին վրայ կը նայինք, ու մեր խորհուրդները չենք հաստատեր անկէ անդին եղածին վըրայ։ Անոնք որ Քրիստոս միայն խաչին վրայ եւ գերեզմանին մէջ կը տեսնեն՝ գլուխնին կը շարժեն եւ կորսուած կը կարծեն զինքը, բայց Աստուած կը տեսնէ անոր մեռնիլը՝ թաղուիլը՝ յարութիւն առնելը՝ փառաւորուիլը, եւ աս ամենը մէկ հայեցուածքով։ Հաւատքը աս կողմանէ Աստուծոյ կը նմանի, եթէ խոստմունքի դիտակը ունենայ իրեն օգնելու։ Կը տեսնենք որ Աստուած մեզ գետնին տակը կը թաղէ, բայց նախատես

չենք ան յարութեանը, երբ ամենս պիտի կենդանանանք: Եթէ պայծառ կերպով տեսնէինք երկինքը՝ իբրև Աստուծոյ մեզի ըրածներուն վախճանը, անշուշտ ոչ մէկ ըրածը մեզի վշտալի պիտի ըլլար: Եթէ Աստուած անգամ մը մեզ աս կերպ կարողութեան հասցունէ, ան ատենը պիտի տեսնենք՝ որ թէպէտ երկինքն ու մեղքը շատ հեռու են մէկզմէկէ, սակայն երկինք ու բանտ կամ աքսոր՝ երկինք ու կէտ ձուկին փորը կամ առիւծներուն գուբը՝ երկինք ու մաշեցունող հիւանդութիւն կամ մահ՝ մէկզմէկէ հեռու բաներ չեն: Այլ ինչպէս որ "Աբրահամ տեսաւ Քրիստոսի օրը և ուրախացաւ", անանկ ալ մենք մեր բոլորովին ինկած վիճակին մէջ կրնանք տեսնել ան օրը՝ որ Քրիստոս մեզի հանգիստ պիտի տայ, և անով ուրախանալ: Աղաչեմ քեզի ով քրիստոնեայ Աւետարանին պատուոյն և քու հոգւոյդ ալէկութեանը համար, մի՛ ձգեր աս երկնային արուեստը՝ որ սորվիս քու յետին նեղութեանդ ատենը, որ ատեն շատ կարօտ ես գործածել անիկայ: Ան որ սուրբ Ստեփաննոսին պէս "կը տեսնէ Աստուծոյ փառքը և Յիսուսն ալ որ Աստուծոյ աջ կողմը կը կայնի", համբերութեամբ կը տանի քարի անձրևներուն: "Տէրոջը ուրախութիւնը մեր զօրութիւնն է". և այդ ուրախութիւնը մեր ուրախութեան աղբիւրէն ելլելու է: և եթէ առանց մեր զօրութեանը քալենք, որչափ պիտի դիմանանք:

7. Ան՝ որուն կենցաղավարութիւնը երկնային է, ան է օտարական Քրիստոնեան ամէն ինչ բոլորովին երկրայիներուն: Երբոր մարդ մը օտար երկրի մը մէջ է, որքան կ՚ուրախանայ երբոր իր քաղաքացիներէն կամ իր ազգէն մէկը կը գտնէ. որչափ զուարճա-

լի բան է մէկտեղ խօսիլ իրենց հայրենեացը վրայ և իրենց երկրին ճանչուորներուն և գործքերուն վրայ ։ Ի՛նչ զուարճութիւնով խօսեցաւ Յովսէփ իր եղբայրներուն հետ, և հարցուց իր հօրը և իր Բենիամին եղբօրը վրայ ։ Անանկ հաճելի չէ՞ քրիստոնեային ալ՝ խորհրդով ու յուսով վեր երկինքը բարձրացող եղբայրներուն հետ խօսիլ և հարցունել իր Հօրը և իր Տէրոջը Քրիստոսի վրայ ։ Երբ աշխարհասէր մարդը աշխարհէն 'ի զատ բանի մը վրայ չխօսիր, և ուսումնականին խօսակցութիւնը մարդկային ուսման վրայ է, և հասարակ քրիստոնեայինը իր պարտաւորութեանցը վրայ . երկնային մարդը կը խօսի երկինքին վրայ և իր հաւատքին տեսած զարմանալի փառքին վրայ, և ան երջանիկ տեսութեանը վրայ, որով մենք հոն քիչ ատենէն պիտի տեսնուինք մէկզմէկու հետ ։ Ո՛հ․ ո՜րչափ սիրուն և օգտակար են անոր խօսակցութիւնները ։ Ի՛նչպէս սրտին կը թափանցեն անոր խօսքերը և կը կակուղցունեն անիկայ, և ունկնդիրները ուրիշ մարդ կ՚ընեն ։ “Անոր խրատը անձրևի պէս պիտի կաթէ, և անոր խօսքը ցօղի պէս պիտի իջնէ . անձրևի պէս կանանչեղէնի վրայ, ու առատ անձրևներու պէս խոտի վրայ . քանզի Տէրոջը անունը պիտի կանչէ և իր Աստուծոյն պատիւ պիտի տայ”։ Երկնից վրայ ըրած իր անոյշ խօսքերը ան ‘Նարդոսի պատուական եղին շիշին” նման է, որ “Քրիստոսի գլխուն վրայ թափուելով տունը եղին անուշահոտութեամբը լեցուեցաւ”։ Անոր մօտ եղողները սփոփանք ու քաղցրութիւն կը գտնեն անկէ ։ Երանելի է ան ժողովուրդը՝ որ երկնային հոգիի տէր քարոզիչ մը ունի ։ Երանելի են ան զաւկըները ու ծառաները՝ որ երկնային հոգիի տէր

հայր կամ տէրունին։ Երանելի է այն մարդը՝ որ երկ-
նային հոգիի տէր ընկեր մը ունի, որ իր ճամբաներուն
վրայ կը հսկէ, տկարացած ատենը կը զօրացունէ,
տրտմած ատենը կ'ուրախացունէ. և կը մխիթարէ
այն մխիթարութիւնովը որով ինք շատ անգամ ՚ը
մխիթարուի Աստուծմէ։ Ա՛ն է՝ որ քու հո-
գւոր կենացդ կրակը միշտ կը փչէ՝ որ բոցերէ,
և քու հոգիդ Աստուծոյ կը քաշէ, և Սամարացի
կնկանը պէս կ'ըսէ, "Եկուր տես մէկ մարդ մը՝ որ
ըսաւ ինծի ամէն ինչ որ գործեր եմ", մէկ մարդ
մը որ հոգիներնիս միահու չափ սիրեց։ "Արդեօք
անիկա՞յ է Քրիստոսը", "Օ՜ Աստուած ու Անի-
կայ ճանչնալը յաւիտենական կեանք չէ՞"։ Ա-
նոր փառքը տեսնելը սուրբերուն փառքը չէ՞։ Ե-
կո՛ւր աս մարդուն տունը և նստէ անոր սեղանը,
և քու հոգիդ երկնային խորտիկներով պիտի կե-
րակրէ. անոր հետ ճանապարհորդակից եղէր, ան
քեզ կ'առաջնորդէ և կը զօրացունէ երկնից ճամ-
բուն մէջ. անոր հետ գործի ընկեր եղիր, և քեզի
խորհուրդ պիտի տայ "պատուական մարգարիտը"
գտնելու։ Եթէ անիրաւութիւն ընես անոր, կրնայ
ներել քեզի՝ երբոր կը խորհի թէ Քրիստոս իր
մեծագոյն յանցանքները ներած է։ Եթէ բար-
կանաս, ան հեզ կ'ըլլայ խորհելով իր երկնաւոր
վարդապետին հեզութիւնը. կամ եթէ քեզի սըր-
դողէ՝ շուտով կը հաշտուի, երբոր կը մտածէ թէ
երկինքը յաւիտեան բարեկամ պիտի ըլլաք մէկ-
զմէկու։ Աս է բուն քրիստոնեան. և ամէն ա-
նոր քովը եղողները անոր ազդեցութիւնովը լա-
ւագոյն կ'ըլլան։ Որչափ անօգուտ է բոլոր ու-
րիշ տեսակ քրիստոնեաներուն ընկերութիւնը՝ ա-
սոր հետ բաղդատելով։ Եթէ երկինքէն մարդ մը
գար, ո՛րչափ պիտի փափաքէին մարդիկ ըսել՝ թէ

ինչ լոյս ունի միւս աշխարհէն, ինչ տեսեր է, և ինչ բաներ կը վայելէն հոն Աստուծոյ օրհնեալները։ Աս մարդը իրենց ամենէն աղէկ ընկեր և խօսակցութիւնը ամենէն օգտակար պիտի չսեպէին։ Ուրեմն ինչո՞ւ համար սուրբերուն ընկերութիւնը աւելի չես յարգեր և անոնց աւելի բան չես հարցըներ ու անոնց խօսակցութենէն աւելի զուարճութիւն չես գտներ։ Ասկէ ամէն սուրբ՝ անձամբ հոն պիտի երթայ և շատ ատեն հոգիով հոն է. ու շատ անգամ Աստուածային հայելիին մէջ տեսած է։ Ես աւելի կ'ընտրեմ մէկ երկնաւոր միտք ունեցող քրիստոնէի մը ընկերութիւնը, քան թէ ամենէն գիտնական վէճաբանողներուն կամ բարձր աստիճանի իշխանաւորին անձանցը։

8. Ոչ մէկը այնքան կը պատուէ զԱստուած. որքան որ ան, որուն կենցաղավարութիւնը երկինքն է։ Նախատինք չէ՞ մէկ հօր մը, որ իր զաւակները պտուղներուն կեղևները ուտեն՝ պատռտած հանդերձներ հագնին ու միայն որբիկաններու և մուրացկաններու հետ պտըտին։ Մեր երկնաւոր Հօրն ալ անանկ չըլլա՞ր, երբոր ինքզինքնիս անոր զաւակները կը կոչենք ու երկրաւոր բաներով ինքզինքնիս գոհ ընելու կ'աշխատինք, և կերպարանքնիս աշխարհի կերպարանքի պէս է, ու սրտերնիս հողին կը փակչի և յաւէտ անոր հետ մըտերիմ է, քան թէ միշտ մեր Երկնաւոր Հօրը։ Արդարև մենք թագաւորի զաւակներէ վար կ'ապրինք, և ոչ թէ մեր յոյսերուն բարձրութեանը՝ մեր Հօրը տանը աստիճանին և իր սուրբերուն համար բրած մեծ պատրաստութեանը համեմատ։ Աղէկ է որ գթած Հայր մը ունինք, որ թէ և իր զաւակները պատռտած հանդերձներով ալ ըլլան,

տակաւին զանոնք իբրև զաւակ կ'ընդունի։ Եթէ ան առաջ մեր վրայ սէր չցուցըներ, ոչ մենք՝ ոչ ալ ուրիշները կրնայինք գիտնալ անոր ժողովուրդը ըլլալնիս։ Բայց երբոր քրիստոնեայ մը կրնայ մտքովը վերը բնակիլ և ուրախանալ անտեսանելի բաներով, որչափ պատիւ ու փառք է Աստուծոյ տանը մէկը։ Տէրը վկայութիւն կու տայ անոր համար, թէ աս մարդը ինծի կը հաւատայ, խօսքիս կը վստահի, իմ խոստմունքիս վրայ կ'ուրախանայ՝ տակաւին խոստացուած բանը ձեռքը չանցած, կրնայ շնորհակալ ըլլալ ան բաներուն համար որ իր մարմնաւոր աչքերը բնաւ տեսած չեն. անոր ուրախութիւնը մարմինի վրայ չէ, անոր սիրտը ինծի հետ է. իմ ներկայութիւնս կը սիրէ և անշուշտ պիտի վայելէ անիկայ իմ թագաւորութեանս մէջ յաւիտեան։ "Երանի անոնց՝ որ տեսած չեն ու կը հաւատան։ Զիս փառաւորողները պիտի փառաւորեմ"։ Աստուած ի՛նչպէս փառաւորուած սեպեց ինքզինքը Քաղեբին ու Յեսուին ձեռքովը, երբոր գացին խոստացեալ երկիրը և ան տեղի պտուղներուն օրինակը իրենց եղբայրներուն բերին, և աղէկ խօսեցան ան բարի երկրին վրայ ու ժողովուրդը քաջալերեցին։ Ի՛նչ խոստմունք մը ու վարձք մը ընդունեցին։

9. Ան հոգին որ իր սէրը վերի բաներուն վըրայ չդներ, անհնազանդութեան կ'ընէ Աստուծոյ բանին, և կը զրկուի անոր շնորհալից և հաճելի յայտնութիւններէն։ Ան նոյն Աստուածը՝ որ հրաման ըրաւ քեզի, որ հաւատաս և քրիստոնեայ ըլլաս՝ հրամայեց նաև որ "վերի բաները փնտռես, ուր որ Քրիստոս կը նստի Աստուծոյ աջ կողմը, և վերի բաները մտածես, ոչ թէ աս երկրիս վրայինները"։ Ան նոյն Աստուա-

ծը որ արգիլեց քեզի մարդասպանութիւն՝ գողութիւն՝ կամ շնութիւն ընելը, արգիլեց նաև աս մեծ պարտաւորութիւնը զանց ընելը, և կը համարձակիս կամաւ անհնազանդ ըլլալ անոր։ Ինչո՞ւ համար մէկին խիղճ կ'ընես ու մէկալին չես ըներ։ Աս բանը որ քու հանգստութիւնդ է, ան քեզի պարտք ալ դրաւ ընել անիկայ, որ կրկին կապով արգիլուիս քեզի տրուած ողորմութիւնները մէկդի ձգելէն։ Ասկէ 'ի զատ եթէ չքանեցունես աս երկնային մտածութիւնը, երկնից վրայի բոլոր ան ամենափառաւոր ստորագրութիւնները՝ մեր ապառնի երանութեանը վրայ ան բոլոր յայտնութիւնները և մեր հանգստեանը պատուական խոստմունքները՝ ոչ ուրիշ բան՝ այլ կորսուած են քեզի։ Ասոնք չէ՞ն Սուրբ Գրոց երկինքին վրայի աստղերը և Աստուծոյ գրքին մէջի ոսկեղէն տողերը։ Ինծի անանկ կը թուի թէ, եթէ աշխարհը քեզի տան, աս խոստմունքներուն մէկ հատէն անցնելու չես։ Ինչպէս որ երկինքը բոլոր մեր ընդունած ողորմութիւններուն կատարելութիւնն է, անանկ ալ Աւետարանին մէջ՝ անոր խոստմունքները Աւետարանին բուն հոգին են։ Իրա՞ւ է որ Աստուծոյ բերնէն ելած մէկ հատիկ մխիթարական խօսքը այնքան արժէք ունի, որ աշխարհիս բոլոր հանգստութիւնները անոր քովը բան մը չեն արժեր։ Ու սակայն ատանկ պատուական խօսքերը զանց կ'ընես ու մէկդի՞ կը ձգես։ Աստուած ինչո՞ւ իր խորհուրդները այնչափ պիտի յայտնէ և առաջուց պիտի իմացունէ մեզի մեր ունենալու ուրախութիւնները, եթէ ոչ՝ անոր համար որ գիտնանք և ուրախանանք։ Եթէ մեր երանութիւնը առաջուց գիտնալու ուրախութիւնովը մեզ լեցունելու համար չըլլար, կրնար ըլլալ որ Աստուած

իր դիտաւորութիւնը իր քովը պահէր և բնաւ մեզի չիմացունէր՝ մինչև որ անիկայ վայելելու ըլլայինք ։ Մինչև անգամ մեր հանգիստը ձեռք ձգած ատեններս ալ կրնար ծածկել մեզմէ անոր յաւիտենական ըլլալը . և ան ատենը՝ անիկայ կորսընցունելու վախը կը պակսեցունէր մեր ուրախութեան քաղցրութիւնը ։ Բայց այնպէս հաճոյ թուեցաւ մեր Հօրը՝ որ բանայ իր խորհուրդը և մեզի գիտցունէ իր սրտին բուն դիտաւորութիւնը , որ մեր ուրախութիւնը կատարեալ ըլլայ և կարող ըլլանք ապրիլ իբրև ասանկ թագաւորութեան մը ժառանգներ ։ Ու արդ՝ մենք աս ամէնը զա՞նց ընենք ։ Աշխարհիս հոգերովը և տրտմութիւններովը ապրինք և Տէրը աս յայտնութիւնները մեզի բնաւ չըրածի պէս անոնցմով չուրախանա՞նք ։ Եթէ թագաւորը քեզ իրեն բդեշխ ընելու խօսք տար , ո՞րչափ անգամ աչքիդ առջևը պիտի բերէիր ան պաշտօնը և ինչ հաճելի խորհրդածութիւններ պիտի ընէիր անոր վրայ մինչև հասնէիր ան պատիւին ։ Ու հիմա Աստուած քեզի երկնից թագաւորութիւնը տալ խոստացեր է , և դուն երբեմն ձգուած կը թողուս անիկայ , որպէս թէ մոռցեր ես ։ Երանի՛ թէ սրտերնիս յոյսերնուս չափ երկինք բարձրանային և յոյսերնիս ալ աս անսխալ խոստմունքներուն չափ հաստատ ըլլային ։

10. Իրաւունքը ան է որ մեր սիրտը Աստուծոյ վրայ ըլլայ , քանի որ Աստուծոյ սէրը այնչափ առաջինով մեր վրայ է ։ Եթէ փառաց Տէրը կրնայ այնքան վար ծռիլ որ սիրտը մեղանչական հողին վրայ դնէ , ինծի անանկ կու գայ թէ մենք դիւրաւ համոզուելու ենք սրտերնիս Քրիստոսի և յաւիտենական փառքին վրայ դնել , և մեր սըրտին փափաքներովը ու հանապազօրեայ մտածու-

թիւններովը ելլել անոր որ ինք այնչափ կը խո-
նարհի մեզի։ Ո՛վ քրիստոնեայ, չե՞ս զգար
որ Աստուծոյ սիրտը քու վրադ հաստատուած է,
և քու՝ ինքզինքդ ալ՝ զանիկայ ալ մոռցած ա-
տենդ անգամ, ան տակաւին քեզ գթած սիրով
կը հոգայ։ Ամէն օր իր ողորմութիւնները ետե-
ւեդ չը՞խրկեր. քու հոգիիդ վրայ իր ներգործու-
թիւնները չը՞կատարեր. քու մարմինդ չը՞կերակ-
րեր, և թէ հոգիդ ու թէ մարմինդ չը՞պաշտպա-
ներ։ Շարունակ քեզ սիրոյ բազուկներով չը՞-
գրկեր և խօսք չը՞տար թէ, "Ամէն բաները բա-
րիի գործակից պիտի ըլլան քեզի". և բոլոր իր
վարմունքը քու ամենամեծ օգուտիդ չը՞յարմար-
ցըներ. և "իր հրեշտակներուն չա՞պսպրեր քեզի
համար" որ հոգ տանին վրադ։ Եւ դուն կրնա՞ս
վարի ուրախութիւններով յափշտակուիլ և մոռ-
նալ քու Տէրդ՝ քանի որ ան չմոռնար քեզ։ Ա՜հ.
ոսկալի՜ ապերախտութիւն։ Երբոր ան՝ իր մեր
վրայ ունեցած սիրոյն վրայ կը խօսի՝ մտիկ ըրէ
ինչ կ'ըսէ. "Սիոնը ըսաւ, Եհովան զիս թողուց,
ու Տէրը զիս մոռցաւ։ Միթէ կնիկը իր կաթնկեր
մանուկը կրնա՞յ մոռնալ, անանկ որ իր որովայնին
ծնունդեանը վրայ չգթայ. Թէև անոնք մոռնան,
բայց ես քեզ պիտի չմոռնամ։ Ահա ես քեզ
իմ ձեռացս մէջ նկարագրեցի. քու պարիսպներդ
միշտ իմ առջիս են"։ Եսայ. խթ. 14—16։ Բայց
երբոր մեր իր վրայ ունեցած համարումներնուս վը-
րայ կը խօսի, բանը ուրիշ կերպ կ'ըլլայ։ "Միթէ
կոյսը իր զարդերը կամ հարսը իր գօտին կը մոռ-
նա՞յ. բայց իմ ժողովուրդս անթիւ օրեր զիս մոռ-
ցաւ"։ Երեմ. Բ. 32 Որպէս թէ ըսէր, "Մէկ
առտու մը մարմինդ ծածկել և ունայն հանդերձ-
ներդ հագուիլը չես մոռնար. և ասոնք քու Տէր

Աստուծմէդ աւելի՞ արժէք ունեցող բաներ են․ և քու յաւիտենական կեանքէդ աւելի՞ հարկաւոր են։ Բայց և այնպէս օրերով կը մոռնաս ասոնք"։ Պատճառ չտանք Աստուծոյ՝ որ այսպէս վիճաբանի մեզի հետ։ Այլ թող մեր հոգիները Աստուծոյ բարձրանան և ամէն առտու դիմաւորեն անիկայ և մեր սրտերը ամէն րոպէ դէպ՚ի անոր ըլլան։

11. Մեր սիրտը շարունակ երկնից վրայ ըլլալու է, վասն զի շատ մեծ հաղորդութիւն ունինք անոր, և մեր յաւիտենական օթեւանը անոր վրայ է։ Հոն զետեղած է մեր Հայրը իր աթոռը։ Մենք կը կոչենք զինքը, "Ով մեր Հայրը, որ երկինքն ես"։ Անարժա՛ն զաւակներ՝ որ կրնան անանկ անձնատուր ըլլալ իրենց խաղալիքներուն, որ չխորհին սանկ Հօր մը վրայ։ Հոն է նաև Քրիստոս՝ մեր գլուխը՝ մեր Տէրը՝ և մեր կեանքը. և անոր չնայինք և հաղորդակցութիւն չընե՞նք անոր հետ կարելի եղածին չափ յաճախ՝ մինչև որ հասնինք զինքը երես առ երես տեսնելու։ "Որովհետև պէտք է որ երկինքը ընդունի զանիկայ մինչև ան ատենները՝ որ ամէն բաները կարգադրուին", վասնորոյ թող անոր հետ մեր սրտերն ալ ընդունին։ Հոն է "Նոր Երուսաղէմն ալ, որ մեր ամենուն մայրն է"։ Նաև հոն է մեր մեծ եղբայրներուն բազմաթիւ խումբը։ Հոն են մեր բարեկամները և ճանչուորները որոնց մարմինով եղած ատենինուն ընկերութիւնը շատ հաճելի էր մեզի, և անոնց բաժանմանը վրայ շատ ողբացինք. և աս բանն ալ քու խորհուրդներդ հոն չը՞քաշեր։ Անոնք երկրի վրայ ուր որ ալ ըլլային, պիտի երթայիր տեսութիւն ընէիր անոնց հետ. և ինչո՞ւ համար հոգիով աւելի յաճախ տեսութիւն չես ընէր անոնց հետ, և հոն անոնց հետ տեսնուելու

խորհրդովը տուածուց չեն ուրախանար։ "Սոկրատես կ'ուրախանար որ պիտի մեռնի, վասն զի կը հաւատար թէ պիտի տեսնէ Հոմերոսը՝ Հեսիոդոսը և ուրիշ երևելի անձինքը։ Որչափ աւելի կ'ուրախանամ ես՝ ըստ բարեպաշտ ծեր քարոզիչ մը, որ վստահ եմ թէ պիտի տեսնեմ Քրիստոս իմ փրկիչս՝ Աստուծոյ յաւիտենական Որդին իր առած մարմինովը, այնքան բազմաթիւ իմաստուն՝ սուրբ և հռչակեալ նահապետներէն՝ մարգարէներէն և առաքեալներէն 'ի զատ", և այլն։ Հաւատացեալ մը երկինք նայելու է, և որոց երանելի վիճակը մտածելով ինքնիրենը այսպէս խորհելու է. "Թէպէտ ես տակաւին ձեզի հետ կենալուս երջանկութիւնը չեմ վայելեր, սակայն ասիկայ իմ հանապազօրեայ մխիթարութիւնս է որ դուք Քրիստոսով իմ եղբայրներս և իմ ընկերակիցս էք, և անոր համար ձեր ուրախութիւնը իմ ուրախութիւնս է, և ձեր փառքը՝ ձեզի հետ իմ աս մերձ յարաբերութիւնովս՝ իմ փառքս է. մանաւանդ քանի որ կը հաւատամ նոյն Քրիստոսին և կը բռնեմ նոյն հաւատքը և հնազանդութիւնը, որով դուք այսպէս փառաւորուեցաք, և հոգիով ձեզի հետ կ'ուրախանամ և իմ հանապազօրեայ մտածութիւններուս մէջ ձեր երջանկութեանը վրայ կը խնդամ"։

Դարձեալ՝ մեր տունը և հայրենիքը վերն է։ "Վասն զի գիտենք որ եթէ մեր վրանի նման երկրաւոր տունը քակուի, մէկ շինուածք մը ունինք Աստուծմէ, անձեռագործ տուն մը՝ յաւիտենական՝ երկինքի մէջ"։ Բ Կորնթ. Ե. Ա։ Ուրեմն ինչո՞ւ համար աւելի յաճախ չենք նայիր անոր և "չենք հառաչեր մեր երկնաւոր բնակութիւնը հագնելու փափաքելով"։ Մեր հայրենիքը՝ եթէ շատ

Նուաստ ալ ըլլայ, անշուշտ չենք մոռնար, վասն զի մեր հայրենիքն է։ Եթէ օտար երկիր մը քշուած ըլլայիր, ո՛րքան յաճախ հայրենեացդ վրայ պիտի ըլլային քու խորհուրդներդ։ Ու ինչո՞ւ անանկ չեն երկինքին վրայով։ Աս երկրաւոր բնակարաններս ժամանակաւոր է, ամէն ժամ կ'ըսպասենք, որ անկէ պիտի բաժնուինք և ալ չտեսնենք։ Մենք հոս պանդուխտ ենք, ու մեր հայրենիքը երկինքն է։ Մենք ժառանգ ենք և ա՛ն է մեր ժառանգութիւնը՝ "անեղծ ու անարատ և անթառամ ժառանգութիւն մը՝ որ երկինքը պահուած է մեզի"։ Մենք հոս շարունակ նեղութեան ու կարօտութեան մէջ ենք, և մեր ստացուածքը հոն կը կենայ, որ է "լաւագոյն և մնայուն ստացուածք"։ Այլ և մեր հոգիներուն իսկ յոյսը հոն է. մեր նեղութեան ատենը ապաւէլու յոյսը, հոս տառապանաց ատեն երջանիկ ըլլալու յոյսը, բոլոր աս յոյսը երկինքը կը պահուի մեզի"։ Ինչո՞ւ համար՝ սիրելի քրիստոնեայք, այնքան շատ կապակցութիւն ունինք, բայց քիչ խորհուրդ ունինք ան տեղին վրայ, այնքան մեծ յարաբերութիւն և այնքան քիչ սէր։ Կը փայլէ՞ մեզի այնքան զուարճանալ օտարներուն ընկերութեամբը՝ որ մոռնանք մեր Հայրը և Տէրը, կամ թէ այնքան հաճութիւն զգալ մեզ ատողներէն և վշտացուցողներէն որ մոռնանք մեր ամենապատուական և խիստ սիրելի բարեկամները. կամ թէ այնքան սիրել ու խաբէ ըլլալ չնչին ու անցաւոր բաներուն, որ մոռնանք բուն մեր ստացուածքը և գանձը. կամ այնքան ճնշուած ըլլալ վախերով և կարօտութիւններով, որ մոռնանք մեր յաւիտենական ուրախութիւնը և հանգիստը։ Աստուած մեզ իր ստացուածքը կը սեպէ և կը հաստատէ թէ մենք իր ժողովուրդը

ըլլալնուս համար և մեզ աշխարհէն ընտրած ու զատած ըլլալուն համար մեզի օտարեկ պիտի ընէ։ Սակայն մենք ինչո՞ւ զինքը մեր բաժինը չենք սեպեր և այնպէս մեր սիրտերը վեր դէպ ՚ի երկին չենք բարձրացըներ, վասն զի ան բուն մեր Աստուածն է և ան տեղը բուն մեր ստացուածքը։ Մարդիկ տափրապար իրենց բաները չափէն աւելի կը սիրեն, չափէն աւելի կը յարգեն և չափէն աւելի հոգ կը տանին անոնց վրայ։ Երանի՜ թէ կարող ըլլայինք մեր ժառանգութեանը արժանին կէսին չափ հոգ տանիլ և կէսին չափ յարգել։

12. Մտածէ նաև որ երկինքէն ՚ի վար բան մը չկայ որ մտքերնիս անոր վրայ հաստատելու արժան։ Եթէ քու սիրտդ Աստուծոյ չտաս՝ որո՞ւ պիտի տաս։ Եթէ քու յաւիտենական հանգիստդ չհոգաս՝ ի՞նչ բան պիտի հոգաս։ Ուրիշ աստուած մը գտե՞ր ես, կամ ուրիշ բան մը որ յաւիտենական հանգստեան տեղ բռնէ քեզի։ Երկրի վրայ յաւիտենական երջանկութիւն մը գտա՞ծ ես։ Ո՞ւր է. ի՞նչ բանէ կը բաղկանայ. ո՞վ է գտնողը. ո՞վ է վայելողը, ո՞ւր կը կենայ ան մարդը. անունը ի՞նչ է։ Կամ թէ դո՞ւն ես միայն որ երկրի վրայ երկինք գտեր ես։ Ա՜հ խեղճ ողորմելի. քու գտածներուդ մի՛ վստահիր. քու շահիդ վրայ մի՛ պարծենար՝ մինչև որ փորձը քեզի չցուցընէ թէ պարծենալու է։ Ինքզինքդ մի՛ ներեր երկրի վրայ չեղած բանի մը ակնկալելովդ՝ վախնալով որ չըլլայ թէ փորձը քու հոգիիդ կորուստովը ընես, վասն զի աւելի դիւրին կերպով կրնաս ստուգել բանը, որ է աստուածային բանին տուած զգուշութիւններովը և քեզմէ առաջ եղող հազարաւոր հոգիներուն կորուստովը։ Եթէ «Սատանան հանէր քեզ փորձութեան լեռը և ցուցընէր քե-

զի աշխարհի բոլոր թագաւորութիւններն և անոնց
փառքը", անոնց մէջ բան մը չէր կրնար ցուցը-
նել՝ քու խորհրդածութեանդ արժանի, ալ ուր կը
մնայ քու հանդիստեդ նախապատիւ սեպելու ար-
ժանի բան մը։ Արդարև մեր պարտաւորութիւննե-
րուն և հարկին պահանջածին չափ յանձնառու ըլ-
լալու ենք վարի բաները հոգալու, սակայն ո՞ւր է ան
մարդը որ ինքզինքը աս սահմաններուն մէջ բանէ։
Բայց և այնպէս եթէ մեր հոգերը ու խորհուրդ-
ները կրցածնուս չափ թեթևցունենք ալ՝ տա-
կաւին ամենէն քիչն ալ դառն ու տաժանելի է։
Ով քրիստոնեայ, իմացի՛ր բոլոր աս բաներուն
ունայնութիւնը և վերի բաներուն պատուակա-
նութիւնը։ Եթէ քու խորհուրդներդ երթան՝
բոլոր աշխարհ պտըտին աշխատասէր մեղուի պէս
ծաղիկէ ծաղիկ՝ արարածէ արարած, ան բանե-
րուն յաւիտենականութեան հետ ունեցած վե-
րաբերութիւններէն ժողվուածներէն 'ի զատ մեղր
կամ անոյշ չեն կրնար բերել։ Թէպէտև Աս-
տուծոյ ամէն ճշմարտութիւնները պատուական
են և պէտք է պաշտպանել, սակայն ճշմարտու-
թեան բոլոր ուսմունքն ալ մեր հանգստեանը վե-
րաբերութիւնովը ըլլալու է, վասն զի բոլորովին
ճշմարիտ է ան խօսքը թէ, "Կրօնքի մէջ սնոտի
վիճաբանութիւն սիրողներուն սիրտը Աստուծոյ
սիրոյն մէկ կայծովը տաքցած չէ"։ Իսկ ազգային
ու եկեղեցական գործքերուն պէտք է հոգ տանիլ
նկատմամբ իրենց յաւիտենականութեան հետ ու-
նեցած վերաբերութեանը, այսինքն արժան է բո-
լոր ջանքով զգուշութիւն ու հոգ ունենալ անոնց
վրայ, որովհետև անոնք Աստուծոյ Նախախնա-
մութիւնը կը պարզեն և կը ծառայեն Աւետա-
րանը և Քրիստոսի թագաւորութիւնը հաստա-

տելու՝ և հետևապէս մեր և մեր յաջորդաց հոգիներուն փրկութեանը։ Մինչև անգամ աշխարհիս մէջ ըրած բոլոր գործքերնիս՝ առնելնիս՝ ծախելնիս՝ ուտելնիս՝ խմելնիս՝ տուն շինելնիս՝ ամուսնանալնիս՝ մեր խաղաղութիւնը և պատերազմը՝ քանի որ հանդերձեալ կենաց վերաբերութիւն չունին, հապա միայն մարմնին հաճութեանը կը ծառայեն, քրիստոնեայի մը յաճախ խորհրդածութեանը արժանի չեն։ Ու արդ՝ քու խիղճդ ալ չը՞սեր թէ երկինքէն և անոր հասնելու ճամբէն զատ հոգ ընելու արժանի բան չկայ։

Հիմա ո՛վ ընթերցող, աս խորհրդածութիւնները ծանրակշի՞ռ են՝ թէ ոչ։ Քու սիրտդ վերի բաներուն վրայ պահելը քու պարտքդ ըլլալը կրցի՞ ապացուցանել՝ թէ ոչ։ Եթէ ըսես՝ Ա՛չ, վստահ եմ որ խղճիդ դէմ կը վկայես։ Եթէ կը խոստովանիս որ համոզուեցար անիկայ քու պարտաւորութիւնդ ըլլալը, քու ալ լեզուդ քեզ պիտի դատապարտէ և ալ խոստովանութիւնը քեզի դէմ պիտի բերուի, եթէ կամաւ զանց ընես աս քու բերնովդ ընդունած պարտաւորութիւնդ։ Դուն կատարելապէս յօժարութիւն ունեցիր, և գործին կէսէն աւելին եղած կ'ըլլայ։ Ես հիմա քանի մը պարզ խրատներ ունիմ տալու աս մեծ գործին մէջ քեզի օգնելու համար. բայց՝ աւա՜ղ, որ պարապ է ըսել զանոնք, եթէ դուն զանոնք 'ի գործ դնելու յօժար չըլլաս։ Սակայն ես կ'առաջարկեմ անոնք քեզի, և Տէրը համոզէ քու սիրտդ ան գործը ընելու։

# ԳԼՈՒԽ ԺԲ

Խորհուրդներ թէ ինչպէս կարելի է երկրի վրայ երկնաւոր կեանք ։

Որչափ որ դուն երկնային կենցաղավարութեան մխիթարութիւններուն յարգը գիտես, նոյնչափ հիմա քեզի կը պատուիրեմ Աստուծոյ կողմանէ, նախ զգուշութեամբ հրաժարիլ քանի մը վտանգաւոր արգելքներէն, և ապա հաւատարմաբար և ջանիւք կատարել ան պարտաւորութիւնները որ մասնաւորապէս կ'օգնեն քեզի երկնային վարք մը տանելու ։

Նախ մտածենք ան արգելքները՝ որոնցմէ հրաժարելու ենք ամենայն զգուշութեամբ ։

1 . Որ և իցէ կամեցուած մեղքի մէջ ապրիլը մէկ արգելք մըն է երկնային կենցաղավարութեան ։ Ի՛նչ կործանում կ'ընէ ասիկայ քու հոգիիդ մէջ ։ Ի՛նչ ուրախութիւններ խափանած է, ի՛նչ աւերմունքներ բրած է մարդոց շնորհքներուն մէջ, և ի՛նչ՝ հոգիին զօրութիւն տուող պարտաւորութիւններու կատարումը արգիլած է ։ Ո՛վ քրիստոնեայ ընթերցող, եթէ դուն խղճիդ հակառակ կեցող մէկն ես, և կամաւ զանց կ'ընես կատարել որ և իցէ գիտցուած պարտաւորութիւններդ . եթէ գերի ես քու ախորժակիդ կամ որ և իցէ քու տիրող զգայութեանդ . եթէ հպարտութեամբ քու պատիւդ փնտռող ես . եթէ դաժան ու բարկացող ես, պատրաստ բորբոքելու ամէն խօսքի կամ նայուածքի կամ կարծեցեալ արհամարհանքի . եթէ քու գործքերուդ մէջ ուրիշները կը խաբես կամ անանկ մէկն ես որ կ'ուզես հարստանալ թէ ար-

դառնութեամբ ըլլայ և թէ անիրաւութեամբ. եթէ ատոնց մէկուն պէս է քու վիճակդ, կը համարձակիմ ըսել թէ երկինքն ու քու հոգիդ խիստ շատ ծածկուած են իրարմէ։ Աս քու աչքիդ մէջի գերանները թող պիտի չտան որ երկինք նայիս։ Անոնք "ամպ մը պիտի ըլլան քու և քու Աստուծոյդ մէջ տեղը"։ Երբոր ուզես յաւիտենականութեան վրայ մտածել, և ջանաս հանդերձեալ կեանքէն մխիթարութիւն քաղել; անմիջապէս քու մեղքդ առջևդ կ'ելլէ և քեզի կ'ըսէ, "Աս բաները քեզի չեն վերաբերիր. ինչպէս մխիթարութիւն պիտի ընդունիս երկինքէն դուն որ այնքան շատ հեշտութիւն կը վայելես մարմինին ցանկութիւններէն"։ Ի՛նչպէս պիտի կորէ՛ ատիկայ քու ուրախութիւններդ, և ան աւուր ու ան վիճակին վրայ ըրած խորհրդածութիւններդ քեզի նեղութիւն պիտի ընէ, և ոչ հաճութիւն։ Ինչպէս որ ջուրը կրակին է, անանկ պիտի ըլլայ ամէն կամաւ գործուած մեղքը քու մխիթարութեանցդ. որ ատեն դուն կը խորհիս զօրացունել, ան պիտի խափանէ զանոնք։ Բոլորովին անկարելի և անհնարին պիտի ըլլայ քեզ, որ թևերը կտրած թռչունի մը թռչելէն աւելի չկրնաս բարձրանալ աստուածային մտածութիւններու մէջ։ Մ՝եղքը աս երկնային կեանքին բուն արմատը կը կտրէ։ Ո՛վ մարդ՝ ի՛նչ կեանք մը կը կորսնցունես դուն։ Ի՛նչ հանապազօրեայ հաճոյքներէ կը զրկուիս անարգ ցանկութեան համար։ Եթէ կրնայ երկինքն ու դըժողքը մէկ տեղ գալ և Աստուած մեղք սիրող ըլլալ, ան ատենը կրնաս մեղքի մէջ ապրիլ՝ և միանգամայն յաւիտենական փառաց ու հաւատչեայն վայելել, և կրնաս երկնային կենցաղավարութիւն ունենալ, թէև կը տածես քու ապա-

կանեալ բնութիւնդ ։ Եւ զգոյշ եղիր որ քեզ երկինքէն չմերժէ, ինչպէս որ կը մերժէ սիրտդ ։ Եւ թէև դուն աս յանցանքը չունենաս և քու հոգիիդ մէջ տիրող մեղք մը չգիտնաս, խորհէ թէ ի՛նչ ցաւալի բան պիտի ըլլայ, եթէ վերջապէս ասանկ ելլէ քու վիճակդ ։ Ասնորոյ հսկէ՝ մանաւանդ միտք դիր մեղքի պատճառներէն և փորձութեան ճամբաներէն ետ կենալ ։ Ո՛րչափ կարօտ ենք ամէն օր աս աղօթքը ընելու. թէ “մեզ փորձութեան մի՛ տանիր, հապա չարէն մեզ ազատէ” ։

2. Ուրիշ արգելք մըն ալ որմէ զգուշութեամբ հրաժարելու է Երկրաւոր միտքն է ։ Աստուած և մամոնան, երկիրը և երկինքը չեն կրնար միանգամայն գրաւել քու սրտիդ հաճութիւնը ։ Ատեն երկնային հաւատացեալը իր Աստուծմովը կը պարծենայ և գալու փառքին յոյսովը կ՚ուրախանայ, կարելի է դուն քու աշխարհային յաջողութիւնովդ կը պարծենաս և հոս վարդանալու յոյսով կ՚ուրախանաս ։ Երբոր ան իր հոգին կը մխիթարէ, Քրիստոսի՝ հրեշտակներուն և սուրբերուն նայելով, նոյն ատենը դուն ինքզինքդ կը մխիթարես քու հպարտութիւնովդ, նայելով քու ստակներուդ՝ առնելիքներուդ և բարիքներուդ՝ քու հողերուդ և արջառներուդ կամ շէնքերուդ վրայ, և խորհելով մեծամեծաց հետ ունեցած բարեկամութեանդ վրայ՝ հարուստ ստացուածքներուն տուած հեշտութեանը վրայ՝ քեզմէ ետքը քու զաւկըներուդ թողելիք մեծ գումարին վրայ, և քու ընտանիքիդ յառաջդիմութեանը կամ սպասաւորներուդ շատնալուն վրայ ։ Եթէ Քրիստոս յիմար կոչեց զանիկայ, որ կ՚ըսէ « Ով անձ՝ շատ բարիքներ ունիս շատ տարիներու համար ժողված.

հանգչէ՛, կե՛ր, խմէ՛, և ուրախ եղիր", ո՛րքան աւելի անանկ ես դուն որ գիտութեամբ՝ նոյն բանը կը խօսիս քու սրտիդ մէջ ։ Աւա՜ղ ի՞նչ տարբերութիւն կայ աս յիմարին խօսքերուն և քու խորհուրդներուդ մէջ տեղը ։ Յիշէ՛ որ քու գործդ սիրտերը քննողին հետ է ։ Հարկաւ ո՛րչափ զըւարճութիւն և հանգիստ որ երկրէն կը վայելես, նոյնչափ կը պակսի Աստուծմով եղած զուարճութենէդ ։ Քու երկրաւոր միտքդ կրնայ համաձայնիլ քու արտաքին դաւանութեանդ և կատարած սովորական պարտաւորութիւններուդ, բայց չկրնար համաձայնիլ աս երկնային պարտաւորութեանը ։ Դուն ինքնին գիտես՝ թէ ո՛րքան քիչ և ցուրտ, ո՛րքան աճապարեալ և համառօտ եղան քու մտածութիւններդ վերի ուրախութեանց վրայ, անկէ հետէ որ տանանկ եռանդով ետեւէ ինկեր ես մարմնաւոր գործքերուդ ։ Ի՜նչ անիծեալ յիմարութիւն է շատերունը որ աստուածպաշտ կ՚երևին ։ Անոնք կը ձգեն ինքզինքնին շատ մը զբաղմունքներու մէջ՝ մինչև որ այնքան կը բեռնաւորին աշխատանքներով և այնքան հոգերու մէջ կը թաղուին՝ որ կռնակը լեռ մը ունեցող մարդու մը քալելու անյարմար եղածին չափ՝ անյարմար կ՚ըլլան Աստուծոյ հետ հաղորդակցութիւն ունենալու ։ և արեգակին վրայէն ցատկելու անկարող ըլլալնուն չափ՝ անկարող կ՚ըլլան երկնային մտածութեան մէջ բարձրերը ելլելու ։ Ու երբոր կը կորսնցունեն իրենց ունենալու երկինքը երկրի վըրայ՝ քանի մը փտած ապացոյցներով գոհ կ՚ընեն ինքզինքնին թէ իրենց բռնած ընթացքը օրինաւոր է, թէև ճշդիւ ինքզինքնին կը խաբեն ։ Կը խրատեմ քեզ՝ ով քրիստոնեայ, որ երկնային կեանքի մը հաճութեանը համը առեր ես, եթէ եր-

բէք կ՚ուզես այսուհետեւ ալ անոր ճաշակը վայելել՝ զգուշացի՛ր սա երկրաւոր միտքին մարդ կըլլող փոսէն : Ո՛չ թէ անգամ մը սա դիտաւորութիւնը մտնէ խորհուրդներուդ մէջ որ «հարստանաս, կ՚իյնաս փորձութեան ու որոգայթի՝ եւ շատ յիմարական ու վնասակար ցանկութիւններու մէջ»։ Ա՛ս բաները քու վերարկուիդ պէս թող պահես վրադ, որ երբոր պէտք ըլլայ կարենաս մէկդի ձըգելու. իսկ Աստուած եւ անոր փառքը քու սրտիդ կից պահէ : Մի՛շտ միտքդ ըլլայ որ «սա աշխարհիս սէրը Աստուծոյ դէմ թշնամութիւն է. ուստի ով որ կ՚ուզէ աշխարհի բարեկամ ըլլալ, ինքզինքը Աստուծոյ թշնամի կ՚ընէ»։ «Մի՛ սիրեք աշխարհս, ոչ ալ ինչ որ աշխարհիս մէջ է : Թէ որ մէկը աշխարհը կը սիրէ, անոր ներսիդին Հօրը սէրը չկայ»։ Ասիկայ պարզ խրատ մըն է. երանի անոր՝ որ հաւատարմաբար կ՚ընդունի անիկայ :

3. Օգտակա՛ր եղիր ամբողջ ընկերութեան :

Ո՛չ թէ կ՚ուզեմ համոզել քեզ որ ետ կենաս անոնց հետ հարկաւոր եղած կենցաղավարութենէն, կամ անոնց սիրոյ գործ մը ընելէն. մանաւանդ չեմ համոզեր ետ կենալ անոնց հոգիին օգուտ մը ընելու աշխատելէն, քանի որ պատեհութիւն ունիս կամ քանի որ յոյս կայ. ոչ ալ կ՚ըսեմ թէ զանոնք շուն եւ խոզ սեպէ, որ խրատելու, յանդիմանելու պարտաւորութենէդ փախչիս. այլ ըսա- յսպէս դատողութիւն ընելու չէ, քանի որ աղէկութեան յոյս մը կայ. մանաւանդ դէմ եմ անանց ընթացքին, որ կը վճռեն թէ սա կամ ան մարդիկը շուն կամ խոզ են, առաւելին երբէք հաւատարմաբար եւ սիրով զանոնք չխրատած կամ գուցէ զանոնք չճանչցած կամ հետերնին չխօսած : Բայց ամբարիշտ մարդոց հետ հարկաւոր չեղած ընկերու-

թիւնք և անպիտան ընկերներու հետ չափազանց մտերմութիւնն է, որմէ ետ կենալ կը համոզեմ քեզ։ Ո՛չ միայն յայտնի անառակ՝ հայհոյիչ՝ գինեմոլ՝ և աստուածպաշտութեան թշնամի եղող ընկերները մեզի վնասակար կ'ըլլան, թէպէտև ճշմարիտ է որ գլխաւորապէս ասոնցմէ զգուշանալու ենք, բայց նաև շատ յաճախ ընկերութիւն ընելը լոկ քաղաքավար և բարոյական անձանց հետ, որոնց խօսակցութիւնը պարապ և անօգուտ է, կրնայ ըլլալ որ մեր խորհուրդները երկինքէն դարձունէ։ Աս գործքն մեր ետ կենալու հակամիտութիւնը այնքան է, որ յորդառատ ու խիստ զօրաւոր օգնութիւններ պէտք են մեզի։ Քար մը կամ փայտի կոճղ մը այնքան յարմարութիւն ունի թռչելու և օդին մէջ բարձրանալու, որքան որ մեր սիրտերը բնականապէս ունին դէպ 'ի երկինք շարժելու։ Փայտերը երկինք չթռչելու համար արգելք դնել հարկ չէ, բաւական է որ օգնութիւն չընես. Նմանապէս եթէ մեր հոգիներն ալ մեծ օգնութիւն չգտնեն, անշուշտ շատ դիւրաւ ետ կը մնան վեր բարձրանալէն, թէև բնաւ ամենափոքր արգելքի մը չպատահին։ Խորհէ՛ աս բանին վրայ քեզի ընկեր ընտրելու ատեն։ Եթէ որ քու հոգիդ անանկ փափաք մը առած է երկնից վրայ՝ որ անիկայ դէպ 'ի վեր բարձրացունելու համար օգնութեան չես կարօտիր, այլ բոցերու պէս միշտ դէպ 'ի վեր ելլել կը նայիս քու առջևդ ամէն եղածները քեզի հետ վեր հանելով, այդպարև ան ատեն կրնաս այնքան բազմահոգ չըլլալ քու ընկերներուդ վրայ. բայց մինչև որ աս աստիճանք հասնիս՝ զգո՛յշ ըլլալու ես աս մասին, եթէ կը սիրես երկնային կեանքի մը զուարճութիւնները։ Քու աստուածային կեանքիդ ինչ

օգուտ պիտի ընէ լսել՝ թէ շուկան առուտուրները ինտոր կ'երթայ, օդը ինչպէս է կամ ինտոր պիտի ըլլայ կ'երևայ, կամ ինչ լուրեր կան ։ Ա՛ս է աշխարհային մարդոց խօսակցութիւնը ։ Քու սիրտդ դէպ ՚ի Աստուած բարձրացունելուդ ինչ օգուտ ունի լսել՝ թէ այսինչ քարոզիչը շատ երևելի է, այնինչ մարդը ջերմեռանդ քրիստոնեայ մըն է, կամ թէ ասիկայ պատուական քարոզ մըն էր, և անիկայ ազնիւ գիրք մըն է, կամ մօտիկ ընել մէկ դժուար բայց անպիտան վիճաբանութիւն մը ։ Ու սակայն՝ ըստ մեծի մասին աս է՝ արտաքին ձևով՝ սիրտը թմրած և լուկ միտքով քրիստոնեայ եղողներուն ամենէն քաղցր խօսակցութիւնը ։ Ու. ոչ այսչափ միայն, այլ նաև եթէ նոր կը սառնայ սիրտդ վերի երջանիկ ուրախութեանց վրայ մտածելու մէջ, միթէ սանկ խօսակցութիւնները փափաքդ չե՞ն մարեր և նորէն սիրտդ չե՞ն պաղեցուներ ։ Ամէն աս բանը փորձառու եղող և իր հոգիին կազմութեանը վրայ դիտողութիւններ ընողներուն դատմանը կը թողուքեմ ։ Մարդիկ չեն կրնար մէկ բանի մը վրայ աղէկ կերպով խօսիլ և ուրիշ բանի մը հոգ տանիլ. մանաւանդ մէկզմէկէ այնքան տարբեր բնութիւն ունեցող բաներու վըրայ ։ Դուք պատանիներ՝ որ շատ ենթակայ էք աս փորձութեանը, աղէկ մտածեցէք ըսածիս վըրայ. սիրտերնիդ երկինքը կրնա՞յ ըլլալ գինետունը ձեր գոռացող ընկերներուն մէջ՝ կամ ձեր խանութները անանկներուն հետ գործած ատեննիդ, որոնց սովորական խօսքերն են երդում՝ “գարշելի բաներ՝ կամ յիմարական խօսքեր՝ կամ խեղկատակութիւն” ։ Մանաւանդ՝ եթէ ասանկ ընկերներ ընտրէք՝ երբ աղէկը կրնայիք գտնել, և ամենէն աւելի ատանկներէն հաճութիւն

կը զգաք, դուք այնքան հեռու էք երկնային կեն-ցաղավարութենէ որ տակաւին բնաւ մասն ու բա-ժին չունիք երկինքէն, և այդ վիճակովը բնաւ հոն մտնելիք չունիք։ Եթէ ձեր գանձը հոն ըլլար՝ ձեր սիրտը այնչափ հեռու բաներու վրայ չէր կրնար ըլլալ։ Մէկ խօսքով, մեր ընկերները վայելելը մեր երկնից մէջ ունենալու երջանկու-թեանը մէկ մասը ըլլալու է, և արդեամբ անոնց ազդեցութիւնը զարմանալի կերպով մը մեր վը-րայ կըներգործէ՝ կամ դէպ՚ի երկինք մեր յառա-ջադիմութեանը կամ անկէ ետ մնալնուս։

Ե. Հրաժարէ՛ խափան եղող ճշմարտութեանց և լոկ կարծիքներու մէջ կայացած կրօնքի վրայ յաճախ վէճա-բանութիւններէ։ Սովորաբար երկնաւոր կեանքի վը-րայ ամենէն քիչ տեղեկութիւն ունեցողներն են կրօնքին արտաքին պարագաներուն վրայ սաստիկ վիճաբանողները։ Այն մարդը՝ որուն կրօնքը բո-լորովին իր կարծեացը մէջ կը կայանայ, շատ յա-ճախակի և մեծ նախանձաւորութեամբ կը խօսի իր կարծեացը վրայ. և ան՝ որուն կրօնքը Աստուծոյ և Քրիստոսի գիտութեանը և սիրոյն մէջ կը կա-յանայ, շատ հաճելի և ուրախ եղանակաւ մը կը խօսի ան երջանիկ ժամանակին վրայ, որ ատեն պիտի վայելէ զանոնք։ Հաւատացեալ ու պատ-ուական քրիստոնեայ մըն է անիկայ՝ որ քա-ջածանօթ ճշմարտութիւնները գիտէ աղէկ բանե-ցունել։ Սանորոյ կը խրատեմ քեզ՝ որ կը ցան-կաս երկնային կեանքին, չծախել քու խորհուրդ-ներուդ՝ ժամանակիդ՝ քու նախանձիդ՝ կամ քու խօսակցութեանդ մեծ մասը՝ քու հոգւոյդ վերա-բերութիւն չունեցող վիճաբանութիւններու վը-րայ. այլ երբ կեղծաւորները կուտերով կամ կե-ղևներով ինքզինքնին կը կերակրեն, դուն վե-

րին ուրախութիւններով կերակրուէ։ Կ'ուզեմ որ կարող ըլլաս Աստուծոյ ամէն ճշմարտութիւնները պաշտպանելու, և այս նպատակաւ կարդալու և ուսման հետևիս. բայց աւելի կ'ուզեմ որ գըլխաւորաբար գլխաւոր ճշմարտութիւնները սորվիս. իսկ յաւիտենականութեան վրայ քու խորհուրդներդ մէկդի ձգել տուող ոչ մէկ ճշմարտութիւն մը։ Ընդհանրապէս այն նիւթերը՝ որոնց վրայ գրեթէ վիճաբանութիւն չեն ըներ՝ խիստ ծանրակշիռ և մեր հոգիներուն շատ հարկաւոր ու յաճախակի պիտանի են։ Մանաւանդ աղէկ միտք առ Սուրբ Պօղոսի այս տեսակ խօսքերը, "Յիմարական ու անխրատ վէճերէն մէկդի քաշուէ, գիտնալով որ անոնցմէ կռիւներ կը ծնանին։ Ու Տէրոջը ծառային պէտք չէ կռիւ ընել"։ "Մէկդի կեցիր յիմարական վէճերէն ու ազգահամարներէն ու հակառակութիւններէն՝ և օրէնքի վրայով եղած կռիւներէն. ինչու որ անօգուտ են ու սնոտի"։ "Թէ որ մէկը ուրիշ կերպ բան մը սորվեցունէ, ու մօտիկ չըլլէ մեր Տէրոջը Յիսուս Քրիստոսին ողջամիտ խօսքերուն, և այն վարդապետութեանը՝ որ աստուածպաշտութեան համեմատ է, Անանկը հպարտացած է՝ ու բան մը չգիտեր, հապա վէճերով ու հակառակութիւններով ախտացած է. որոնցմէ կ'ըլլայ նախանձ, կռիւ, հայհոյութիւններ, գէշ կասկածներ, միտքով ապականուած ու ճշմարտութենէն հեռացած մարդոց զրաբանութիւնները, որոնք աստուածպաշտութիւնը շահավաճառութիւն մը կը սեպեն. անանկներէն մէկդի կեցիր"։

5. Օգնէ՛ որ խեղճ հայրդ և մայրդ հանգչին։ Անանկ հաճոյակրութիւն մը կայ Աստուծոյ և աս աչքին մէջ տեղը, որ քու սիրոյդ անոր՝ կամ ան

քու սրտիդ բնաւ պիտի չմօտենայ, քանի որ ասիկայ կը տիրէ սրտիդ մէջ։ Եթէ Հրեշտակները երկինքէն դուրս հանեց ասիկայ, հարկաւ քու սիրտըդ ալ պիտի չթողու անկէ ներս մտնել։ Եթէ մեր նախածնողքը դրախտէն դուրս մերժեց և մեր ու մեր Տէրոջը մէջ տեղը բաժանում դրաւ, և անոր անէծքը բոլոր աս վարի արարածներուն վրայ բերաւ, անշուշտ մեր սրտերուն ալ պիտի չթողու դրախտը մտնել, և պիտի աճեցունէ ան անիծեալ բաժանումը մեր Աստուծմէն։ Աստուծոյ հետ եղած հաղորդակցութիւնը մարդը ցած կը պահէ, և ան խոնարհութիւնն ալ նոյն հաղորդակցութիւնը կը յառաջացունէ։ Երբոր մէկ մարդ մը Աստուծոյ հետ շատ հաղորդակցութիւն կ'ընէ, և անոր փառաւոր ստորոգելեաց ուսմանը եռանդ եղած է, ինքզինքը կ'ատէ և մինչև հող ու մոխիր կը ցածցունէ, ու ադ՝ անձնատեցութիւնը իր ամենալաւ պատրաստութիւնն է կրկին Աստուծոյ առջևը ընդունելութիւն գտնելու։ Մանաւանդ հոգինիս Աստուծոյ առջևը խոնարհեցունելու համար որոշուած յատուկ աղօթքի մը օրէ ետքը կամ նեղութեան ժամանակները, որ ատեն հոգին ամենէն ցած կամ խոնարհ կ'ըլլայ, ամէն ատենէ աւելի համարձակութեամբ Աստուծոյ կը մօտենայ, և ամէն ատենէ աւելի երկնային կեանքին համը կ'առնէ։ Աստուծոյ ուրախութիւնը "խոնարհին՝ և կոտրած հոգի ունեցողին ու իր խօսքէն դողացողին վրայ է". և անանկ հոգիի մը ուրախութիւնն ալ Աստուծոյ վրայ է. և ուր որ փոխադարձ ուրախութիւն կայ մէկզմէկու վրայ, հոն պիտի ըլլայ ամենահամարձակ և բոլոր սրտանց ընդունելութիւն և յաճախակի հաղորդակցութիւն։ Բայց հպարտ հոգիին մէջ Աստուծոյ բնակելը

այնքան հեռու՝ բան մըն է իրմէն, որ բնաւ մէկ կերպով մը իրեն մօտենալու չթողուր ։ «Բարձրամիտը հեռուէն կը ճանչնայ» ։ «Աստուած ամբարտաւաններուն հակառակ կը կենայ, բայց խոնարհներուն շնորհք կու տայ» ։ Հպարտ միտքը իր գաղափարներուն՝ անձին՝ համարումին և մարմնաւոր ցանկութիւններու մէջ բարձր է, իսկ խոնարհ միտքը բարձր է Աստուծոյ համարումին և սուրբ փափաքներու մէջ ։ Միտքերուն աս երկու տեսակ բարձրութիւնը այնքան բանէ աւելի հակառակ են իրարու. վասն զի կը տեսնենք որ իշխանը իշխանի հետ կը պատերազմի՝ ոչ թէ հողագործի հետ ։ Ըղէ՛կ ուրեմն դուն քու աչքիդ առջևը արժէք ունեցո՞ղ մարդ մըն ես ։ Կ'ուրախանա՞ս, երբ կը լսես որ համարում ունիս մարդոց մէջ, և շատ կը տրամի՞ս երբոր կը լսես անոնց քեզ արհամարհելը ։ Ամենէն աւելի քեզ պատուողնե՞րը կը սիրես, և չպատուողները անարգ կը սեպե՞ս, թէև ուրիշ կողմէն անոնք աստուածապաշտ և արդարասէր մարդիկ եղած ըլլան ։ Կ'ուզես որ միշտ քու կա՞մքդ կատարուի, և ամէն քու քովդ եղողներուն քու դատողութիւնդ կանոն ու քու խօսքդ օրէ՞նք ըլլայ ։ Կը բարկանա՞ս երբոր քու կամքիդ կամ խօսքիդ դէմ կը կեցուի ։ Խոնարհութիւն մը տեսածիդ պէս ասիկայ անարգելի նուաստութիւն է՝ կ'ըսես. Աստուծոյ դէմ մեղանչած կամ եղբայրդ վիրաւորած ատենդ՝ յանցանքդ խոնարհութեամբ խոստովանելու դժկամա՞կ ես ։ Անա՞նկ մէկն ես դուն՝ որ իբրև օտար կը նայիս աղքատ աստուածապաշտին վրայ և գրեթէ կ'ամչնաս անոր ընկեր ըլլալու ։ Ինչոր որ բարձր՝ անանկ ալ ցած վիճակի մը մէջ չե՞ս կրնար ծառայել Աստուծոյ ։ Քու պարծանքդ աւելի խոնհե-

մութեամբ կամ խորամանկութեամբ քան թէ խոնարհութեա՛մբ զսպուած է։ Այդ փափաքի՞ս որ ամէն մարդոց աչքը քեզի ըլլայ, և ըսեն, "Աս է ան նշանաւոր անձը"։ Անծանօ՞թ ես քու սըրտիդ խաբէութեանը և չարութեանը վրայ։ Դեղի յանցանք գտնելէն և քու յանցանքդ խոստովանելէն աւելի քու անմեղութի՞ւնդ պաշտպանելու պատրաստ ես։ Դժուա՞ր է քեզի տանիլ անաչառ յանդիմանութեան մը կամ ընդունիլ պարզ խրատ մը։ Եթէ քու սրտիդ վրայ աս նշանները կը գտնուին, դուն հպարտ ես։ Դժոխքէն այնքան մաս ունիս սրտիդ մէջ, որ բնաւ ծանօթութիւն չես կրնար ունենալ երկինքի հետ։ Այնչափ նմանութիւն ունի քու հոգիդ Սատանային, որ բնաւ բարեկամութիւն չես կրնար ունենալ Աստուծոյ հետ։ Հպարտ մարդը ինքզինքը իր աստուածը կ'ընէ և իր անձը կուռքի տեղ կը դնէ, ան ատենը ի՞նչպէս կրնայ իր սէրը Աստուծոյ վրայ ըլլալ. կրնա՞յ ըլլալ որ իր սիրտը երկինքը ըլլայ։ Կրնա՞յ ըլլալ որ հնարագիտութեամբ և յիշողութեամբ խոնարհ և երկնային խօսուածքներ դնէ իր լեզուին վրայ. բայց իր սրտին մէջ որչափ որ խոնարհութիւն չկայ, այնչափ ալ երկինք չկայ։ Աւելի կը խօսիմ աս բանին վրայ, վասն զի ասիկայ շատ սովորական և վտանգաւոր մեղք մըն է բարոյականութեան մէջ, և շատ կը յառաջացունէ անհաւատութեան մեծ մեղքը։ Ո՛վ քրիստոնեայ, եթէ կ'ուզես շարունակ քու Տէրոջդ ներկայութեանը մէջ ապրիլ, հողի վրայ ինկիր և ան քեզ անկէ վեր պիտի առնէ։ "Անկէ՛ սորվէ՛ հեզ ու սրտով խոնարհ ըլլալ, և քու անձիդ հանգըստութիւն պիտի գտնես"։ Եթէ ոչ՝ քու հոգիդ պիտի ըլլայ "ալէծուփ ծովու պէս, որ չկրնար

հանդարտիլ. որ անոր ջուրերը՝ տիղմ ու ցեխ դուրս կը նետեն", և Աստուծոյ վրայ աս քաղցր ուրախութիւնը վայելելու տեղը, քու հպարտութիւնդ պիտի լեցունէ քեզ մշտնջենական անհանգստութեամբ։ Որովհետև ան որ իր անձը պըզտիկ տղու մը պէս կը խոնարհեցունէ, վերջը ամենէն մեծ պիտի ըլլայ երկնից թագաւորութեանը մէջ, վասնորոյ հիմա ալ ամենէն մեծը պիտի ըլլայ նոյն թագաւորութեան առհաւատչեայն վայելելու մէջ։ Աստուած "կոտրած ու խոնարհ հոգի ունեցողին հետ է, որ խոնարհներուն հոգին կենդանացունէ, և կոտրած սիրտերը ապրեցունէ"։ Ասանորոյ "Տէրոջը առջևը խոնարհեցէ՛ք, ու ան ձեզ պիտի բարձրացունէ"։ Նու "երբոր մէկը ցածնայ, ու դուն ըսես. Թող բարձրանայ, ան ատենը պիտի ազատէ զանիկայ՝ որ աչքերովը խոնարհած էր"։

6. Պատրաստ հոգին ալ ուրիշ պտուղ մըն է առ երկնային կեանքին։ Իսկ յիրաւի՝ կարծեմ թէ ադէկ հասկացողութեան տէր եղող մարդու մը ասկէ աւելի արգելք եղող բան չկայ։ Եթէ միայն մարմինին գործողութիւնը՝ շրթանց շարժումը՝ ծունկերուն կրկնումը ըլլար, մարդիկ այնքան ավորաբար երկինք պիտի ելլէին, որքան որ բարեկամի տեսութեան կ'երթան։ Բայց մեր խորհուրդները և փափաքները աշխարհէն զատել՝ բոլոր մեր շնորհքները զարգացունել և ատոնց ամէն մէկը իր առարկային ուղղել մինչև որ գործը մեր ձեռքերուն մէջ յաջողի յարատևելով, ասիկայ՝ այո՛ ասիկայ է դժուարութիւնը։ Ընթերցող՝ երկինքը քեզմէ վեր է, և ասկէ վեր առանց աշխատութեան և ջանքի՞ կը կարծես որ պիտի ելլես։ Այնա՞ս ալ երկրաւոր սիրտը երկինք հասցունել և

ան խոստացարանաց միտքը Աստուծոյ մատուցանել, քանի որ գանգատ ու անշարժ կը կենաս։ Եթէ ղ'ուան մը օդը պառկիլ և վեր դէպ'ի դագաթը նայելով հոն երթալ ուզելը այդ անդրափոխութեանը օգնութիւն ըլլէր, ամէն օր շատ ճամբորդներ պիտի ըլլային երկինք հասնող։ Բայց «երկնից թագաւորութիւնը ուժով կ'առնուի, և ուժեղները կը յափշտակեն անիկայ»։ Ինչպէս որ ան թագաւորութեանը կատարեալ ստացումը, անանկ ալ անոր աս առհաւատչեայները ձեռք ձըգելու համար ոյժ պէտք է։ Դուն ալ այսպէս չե՞ս զգար՝ թէև ես քեզի չըսեմ ալ։ Սիրտդ վեր կը բարձրանա՞յ, եթէ դուն չմղես զանիկայ. Դիտես որ երկինքն է քու բոլոր յոյսդ, և հոն բան մը քեզի հանգիստ չկրնար տալ, և երկնից վրայ յաճախ չխորհող սիրտը անկէ մխիթարութիւն չկրնար ընդունիլ, բայց և այնպէս չե՞ս փախցըներ քու պատեհութիւններդ և վարը չե՞ս տնտղնար, որ առեն վերը պարտելու էիր և Աստուծոյ հետ ապրելու էիր։ Չէ՞ որ դուն երկնային կեանքին քաղցրութիւնը կը զգաս և կը խոստովանիս, և զանիկայ վայելողները ամենալաւ քրիստոնեայ կը ճանչնաս, բայց դուն բնաւ փորձը չես ըներ։ Ան ծոյլին պէս՝ որ անկողինին վրայ կ'երկննայ կը պառկի, ու կ'աղաղակէ, Երանի՜ թէ աս կամ ան գործը կատարուէր, դուն ալ երկինքին վրայ կը խօսիս անհոգութեամբ և թեթև բանի մը պէս, և հանգիստ կը կենաս ու կ'ըսես, Երանի՜ թէ կարող ըլլայի միտքս երկինքի վրայ հաստատել։ Ճառերը գիրքեր կը կարդան՝ քարոզներ կը լըսեն ան յոյսովը որ Սուրբ Գրոց մէջ իրենց գըտածէն աւելի դիւրին և աւելի կարճ ճամբայ մը գտնեն աս գործը ընելու։ Կամ թէ խրատ կ'ու-

զէն երկնային կեանք մը վարելու, և եթէ խրա-
տը միայն մտիկ ընելը բաւական ըլլայ, կ'ուզեն
երկնային քրիստոնեայ ըլլալ, բայց եթէ կը ցուցը-
նենք անոնց իրենց ընելու գործը և կ'ըսենք թէ աս
ուրախութիւնները դիւրին կերպով չէք կրնար վա
յելել, ան ատենը քովերնուս կ'երթան ինչպէս որ
ան պատանին Քրիստոսի քովէն գնաց տրտմած։

Եթէ համոզուած ես՝ ով ընթերցող՝ որ աս
գործը քու երջանկութեանդ հարկաւոր է, ձեռք
զարկ անոր հաստատ դիտաւորութիւնով. եթէ սիր-
տըդ ետ քաշուի, յառաջ մղէ զանիկայ բանակա-
նութեան ուժովը. եթէ բանականութիւնդ դէմ
կենայ՝ Աստուծոյ հրամանը յառաջ բեր և քու
կարօտութիւնդ հանդերձ միւս խորհրդածութիւն-
ներով, որ ցուցուած են նախընթաց գլուխներուն
մէջ։ Թո՛ղ աս անզուգական գանձը առջևդ չկե-
նայ ձեռքդ ծոցդ դրած. և ոչ քու կեանքդ մըշ-
տընջենական սրտմաշուք մը ըլլայ միայն աշխատիլ
չուզելուդ համար, երբ կրնայ մշտնջենական ու-
րախութիւն մը ըլլալ։ Քանի որ մխիթարութիւն-
ները աչքիդ առջև կը կենան, մի՛ նմանիր հանդարտ՝
անմխիթար ոդւով բուրաստանի մէջ եղող մար-
դուն պէս որ չելլեր ծաղիկ փրցունելու, որպէս զի
անոնց քաղցրահոտութիւնը վայելէ։ Ես գիտեմ
որ կենդանի ջուրին ակը Քրիստոս է, բայց հորը
խորին է, և մինչև որ ջուրը անկէ չհանես՝ չես
կրնար անով զովանալ։ Գիտեմ թէ որչափ որ
հոգևորութիւն ունիս, այնքան պակաս կը կարօ-
տիս բոլոր աս ջանքին և ուժին. բայց քանի որ ըստ
մասին մարմնաւոր ես՝ աշխատութիւն պէտք է։
Պարթևները սովորութիւն մը ունէին որ առտու-
ները իրենց տղոցը կերակուր չէին տար՝ մինչև որ
քիչ մը աշխատելով երեսներնուն վրայ քրտինք

չերևնար, և պիտի տեսնես որ Աստուծոյ սովորական ընթացքն ալ աս է, չտալ իր զաւկըներուն իր ուրախութեանց ճաշակը մինչև որ անիկայ փընտռելով չսկսին քրտնիլ։ Դուն դատէ՛ ուրեմն թէ երկնային կեա՞նքը, թէ մարմնաւոր հեշտութիւնը աղէկ է. և անոր համեմատ ընտրութիւն ըրէ՛ իմաստուն մարդու մը պէս։ Սակայն քեզ քաջալերելու համար աս ալ ըսեմ թէ քու խորհուրդներդ հիմակուանէն աւելի զբաղեցունել հարկ չէ, միայն՝ զանոնք լաւագոյն և աւելի հաճելի առարկաներու վրայ ուղղելն է բանը։ Ամէն օր քանի՛ տեսանդուն խորհրդածութիւններ որ կ'ընես հիմա աշխարհային գործքերու և մանաւանդ ընդունայն և անպիտան բաներու վրայ, նոյնքան ըրէ ապառնի կենաց գերազանց փառքին վրայ, և քիչ ատենէն սիրտդ երկինքը պիտի ըլլայ։ Վերջապէս՝ "Ծոյլ մարդուն արտն է որ փուշերով ու եղինձներով ծածկուած է. և անոր ցանկութիւնը զինքը կը մեռցունէ, վասն զի անոր ձեռքերը աշխատիլ չեն ուզեր։ Ծո՛յլն է որ կ'ըսէ. Դուրսը առիւծ կայ, հրապարակին մէջը պիտի մեռցուիմ։ Ինչպէս որ դուռը իր ծղխնիներուն վրայ կը դառնայ, այնպէս ալ ծոյլը իր անկողինին վրայ։ Ծոյլը իր ձեռքը ամանին մէջը կը խօթէ, ու բերանը անգամ տանելու դժուարութիւն կը զգայ", թէև ինքզինքը կենաց հացով կերակրելու համար ալ ըլլայ։ Ի՞նչ է աս՝ եթէ ոչ բարձի թողի ընել մեր մխիթարութիւնները, և հետևաբար զանոնք գնող պատուական արիւնը։ Վասն զի "ան որ իր գործին մէջ թոյլ է, շռայլ մարդուն եղբայրն է"։ Քու հոգևոր գործիդ վերաբերելով՝ ասոնց իմաստը աղէկ միտք առ։

7. Նաև աս երկնային կեանքին ըրէ [illegible]

[illegible] օգտա-
[illegible] վտանգաւոր և գաղտնի
արգելք մըն է, երբոր գոհ կ'ըլլանք երկնային բա-
ներուն լոկ ուսմունքովը՝ անոնց վրայ մեր ունեցած
գաղափարովը կամ՝ անոնց վրայ ուրիշներուն խօ-
սելովն, որպէս թէ ասիկայ բաւական է մեզ
երկնային էակներ ըլլալու։ Ո՛չ մէկը անոնցմէ
աւելի աս որոգայթը իյնալու վտանգին մէջն է,
որոնք այլոց կրօնական պաշտամանցը առաջնոր-
դողներն են, մանաւանդ Աւետարանին քարո-
զիչները։ Ո՛հ որքան դիւրաւ կը խաբուին ա-
սոնք, երբոր ուրիշ բան մը այնքան չեն ըներ,
որքան որ երկնից վրայ կը կարդան՝ կը քննեն՝ կը
քարոզեն՝ կ'աղօթեն՝ և կը խօսին՝ խորհելով թէ
ասիկայ է երկնային կեանքը։ Նա՛ն՝ որ աս բո-
լորը լոկ պատրաստութիւն է. ասիկայ շէնքին նիւ-
թերը պատրաստել է միայն, ոչ թէ բուն շէնքը
կազմելը. մանաւանդ միայն ուրիշներուն համար
ժողվելն է աս, և ոչ թէ մեր անձամբ ուտել և
մարսելը։ Ինչպէս որ մէկը տանը մէջ նստած՝
կրնայ ճշդութեամբ գծագրել այլ և այլ երկիր-
ներուն պատկերները, ուր բնաւ գացած կամ
տեսած չէ, անանկ ալ կրնաս երկինքին ուրախու-
թիւնները այլոց քարոզել առանց քու սրտովդ
երբէք անոր մտնելու։ Այդ մարդը ուրիշնե-
րէն սորվելով կրնայ լուսոյ և գունոյ վրայ ճա-
ռել, նոյնպէս դուն կրնաս այլոց ցուցնել ան
երկնաւոր լոյսը, որով բնաւ քու հոգիդ լուսա-
ւորած չէ, և կրնաս ան հուրը յառաջ բերել
քու ժողովրդեանդ սրտին մէջ, որ քու սիրտդ
բնաւ տաքցուցած չէ։ Ի՛նչ երկնային խորհուրդներ
կային Բաղաամի մարգարէութեանց մէջ, բայց և
այնպէս իր հոգիին մէջ չկային անոնք։ Ա՛ռա-

ւանդ անանկ նենգաւոր փորձութեան մը տակ ենք մենք աս երկնային կեանքէն ետ մնալու, որ ոչ ուրիշ մէկը անոր ենթակայ է։ Երկնից վերայ քննութիւն և քարոզութիւն ընելը աւելի կը նմանի երկնային կեանքի քան թէ աշխարհի վըրայ խորհիլ և խօսիլը. և աս նմանութիւնը մեզ խաբելու վտանգ մըն է։ Ասիկայ ամենաթշուառ մահուամբ մեռնիլ է, այսինքն սովամահ ըլլալ անձամբ հացը սեղաններուն վրայ ըլլալուն համար. և ծարաւէն նուաղիլ, որ ատեն այլոց համար ջուր կը քաշենք, խորհելով թէ բաւական է գործերնիս անոր հետ ըլլալը՝ թէև մենք բնաւ չխմենք անկէ մեր հոգիները զովացունելու համար։

Երկրորդ՝ Այսպէս ցուցընելով թէ ինչ արգելքներ դէմ կը կենան աս գործին, կը յուսամ որ միտքդ դրած ես անոնց դէմ դնել՝ ուշադրութեամբ մտածել զանոնք և հաւատարմաբար հըրաժարիլ, եթէ ոչ՝ աշխատութիւնդ ընդունայն է։ Նաև հոս պարտաւոր եմ քեզի պահանջել, որ եթէ դուն երկինքին աս առհաւատչեայներուն ուրախութեանցը յարգը գիտես, խօսք տաս թէ խղճի արթնութեամբ պիտի կատարես աս հետևեալ պարտաւորութիւնները։

1. Համոզուէ՝ թէ երկինքն է միայն գանձը և երջանկութիւնը, և աշխատիլ ինչ գանձ և ինչ երջանկութիւն մը ըլլալը հասկընալու։ Եթէ ասիկայ գերագոյն բարի ըլլալը չհաւատաս, բնաւ քու սիրտդ անոր վրայ պիտի չհաստատես. և աս համոզումը քու զգացումներուդ մէջ խորին թափանցելու է, վասն զի եթէ լոկ գաղափար մը ըլլայ ան, գրեթէ ազդեցութիւն պիտի չունենայ։ Եթէ Եւայ անգամ մը անանկ կը համարի թէ զԱստուած վայելելէն և սիրելէն աւելի աղէկներ

պտուղին վրայ արժէք կը տեսնէ, այլ զարմանք չէ, եթէ Աստուծմէ աւելի ան գրաւէ անոր սիրտը։ Եթէ քու դատումդ մարմնին հեշտութիւնները Աստուծոյ ներկայութեան ուրախութիւններէն աւելի նախապատիւ համարի անգամ մը, այլ անկարելի է՝ որ քու սիրտդ երկինքը ըլլայ։ Ինչպէս որ վարի բաներուն ունայնութեանը վրայ տգէտ ըլլալն է, որ մարդոց այնքան չափազանց յարգել կու տայ զանոնք, անանկ ալ վերին բարձր ուրախութեանց վրայ տգէտ ըլլալն է մարդոց՝ ան ուրախութեանցը վրայ գրեթէ հոգ չընելուն պատճառը։ Եթէ կը տեսնես քսակ մը ոսկի և խակ կեղծ դրամ կը սեպես զանոնք, անիկայ քու զգացումներդ իրեն պիտի չքաշէ։ Բանի մը իրական գերազանցութիւնը չէ, այլ գերազանցութեան ճանաչումն է որ փափաքը կը գրգռէ։ Եթէ տգէտ մարդ մը գիրք մը տեսնէ, որուն մէջ կը պարունակուին արուեստից և գիտութեանց գաղտնիքը, համարակ գրուածքէ մը աւելի յարգութիւն չտար անոր, վասն զի չգիտեր անոր մէջը ինչ ըլլալը. բայց ան որ գիտէ, մեծ յարգութիւն կու տայ անոր, և մինչև անգամ ուտելէն խմելէն և քնանալէն ետ կը կենայ անիկայ կարդալու համար։ Ինչպէս որ Հրէայք սպաննեցին Մեսիան՝ անոր սպասած ատեննին, որովհետև չճանչցան զանիկայ, անանկ ալ աշխարհը հանգի՛ստ կ'աղաղակէ, և ժրութեամբ ուրախութիւն և երջանկութիւն կը փնտռէ. վասն զի չճանչնար անիկայ, որովհետև եթէ քաջ գիտնային անոր ինչ ըլլալը, չէին կրնար այնպէս արհամարհել յաւիտենական գանձը։

2. Նաև աշխատէ գիտնալու թէ երկինքը բուն քու երջանկութիւնդ է։ Արինայ ըլլալ որ խոստովանինք երկինքին ամենալաւ վիճակ ըլլալը, թէ-

յետև մենք անձամբ զանիկայ վայելելէն յուսա-
հատած ըլլանք, և կրնայ ըլլալ որ փափաքինք և
խնդրենք անիկայ, եթէ անիկայ ձեռք ձգելը մի-
այն հաւանական ալ կը թուի, բայց բնաւ չենք
կրնար խնդալ և ուրախանալ անոր վրայ մինչև որ
անոր մասնակից ըլլալնուս չափով մը համոզուած
չըլլանք ։ Ի՞նչ մխիթարութիւն է մերկ մարդու
մը՝ տեսնել այլոց փառաւոր հանդերձները Կամ
ի՞նչ ուրախութիւն է գլուխը խոթելու տուն մը
չունեցող մարդու մը՝ տեսնել այլոց հոյակապ շէն-
քերը ։ Չէ՞ որ բոլոր ասոնք աւելի պիտի շատ-
ցունեն անոր տառապանքը և աւելի զգայուն պի-
տի ընեն զինքը իր թշուառութեանը վրայ ։ Այս-
պէս՝ երբոր մէկ մարդ մը երկնից գերազանցու-
թիւնները գիտէ, բայց չգիտեր թէ ինք երբեք
պիտի վայելէ զանոնք թէ ոչ՝ փափաք մը և ջանք
մը յառաջ կու գայ, բայց գրեթէ շատ ուրախու-
թիւն չունենար սրտին մէջ ։ Ո՞վ իր սիրտը ու-
րիշին ստացուածքին վրայ կը հաստատէ ։ Եթէ
ձեր տուները՝ ձեր բարիքները՝ ձեր արջառները՝
ձեր զաւկները՝ ձերը չըլլան, այնչափ հոգ չէք տա-
նիր ու չէք ուրախանար անոնց վրայ ։ Վասնո-
րոյ ով քրիստոնեայ՝ մի հանգչիր՝ մինչև որ աս
հանգիստը կարող ըլլաս քուկդ կոչելու. բեր սիրտդ
կշիռքին քովը, դի՛ր սրբոց օրհնութիւնները մէկ
կողմը և քու հոգիիդ օրհնութիւնները միւս կողմը,
և ան ատենը դատէ թէ որչափ նմանութիւն կայ ա-
նոնց մէջ ։ Նոյն աստուածային պատգամը ունիս
հիմա ինքզինքդ դատելու, որով որ պիտի դատուիս
ան մեծ օրը ։ Սխալ չհասկընաս Սուրբ Գրոց տուած
սուրբի ստորագրութիւնը, որ ոչ անմեղ հա-
նես և ոչ դատապարտես ինքզինքդ սխալ պատ-
ճառներով ։ Վասն զի ինչպէս որ անհիմն յու-

սէրը կը ծառայեն մարդը չփոթեցունելու և չար
մարդոց կորստեանը ամենամեծ պատճառն է, ա-
նանկ ալ անհիմն կասկածները կը ծառայեն ու մեծ
պատճառ են որոց տարակուսութեան և տա-
ռապանացը ։ Սանորդ ապահովութեամբ սկսէ
քննութիւնդ և յառաջ վարէ գործը խորհրդա-
ծութեամբ և հաստատ դիտաւորութեամբ ․ և մի
վերջացուներ գործը՝ մինչև որ կարող ըլլաս որո-
շաբար ըսելու, թէ ես աս հանգստեանը մասնակ-
ցութիւն ունիմ կամ՝ տակաւին չունիմ ։ Ո՛հ
եթէ մարդիկ գիտնային թէ Աստուած բուն ի-
րենց Հայրն է, և Քրիստոս իրենց միակ փրկի-
չը և Դատաւորը և անոր առջևը պիտի ըլլայ բուն ի-
րենց յաւիտենական բնակութիւնը և հոն պիտի
բնակին և երջանիկ ըլլան յաւիտեան, ի՞նչպէս
կրնային չուզել աս բաներուն խորհուրդներովը
յափշտակուիլ ։ Եթէ քրիստոնեայ մը կը նայի
արևին՝ լուսինին՝ և աստղերուն վրայ և անոնք ա-
մէնը Քրիստոսով իրը կը սեպէ, և կըսէ, « Ա-
սոնք ան օրհնութիւններն են որ իմ Տէրս ինծի
շնորհեց և ասոնցմէ ալ անհամեմատ մեծ բաներ»,
ինչ սրբազան երևակայութիւններով և զմայլե-
ցուցիչ զգացումներով պիտի լեցուի իր հոգին ։

Որքան որ Աւետարանին շնորհացը դէմ, այն-
քան և աւելի բուն իրենց հանգստութեանը դէմ
կը մեղանչեն անոնք, որ իրենց անհաւատութեա-
նը պատճառանք բերելով ինքզինքնին անմեղա-
դիր ընել կը ջանան, և Աստուծոյ ու իրենց փրկ-
չին վրայ նախատալից ու անվստահութեան խոր-
հուրդներ կը մտածեն, որոնք նոր ուխտը գործքե-
րէ և ոչ թէ շնորհքէ եղածի պէս կը ցուցընեն ․
և զՔրիստոս յաւէտ իբրև թշնամի քան թէ փրկ-
կիչ ․ որպէս թէ ան յօժար եղած ըլլայ որ իրենք

իրենց անհաւատութեանը մէջ մեռնին, քանի որ անիկայ այնքան բազմաթիւ անգամ հրաւիրած է զիրենք անանկ եռանդուն սիրով, և ան մահուան ցաւերը որ իրենք պիտի քաշէին. ինք անոնց տեղը քաշեր է: Ի՛նչ զզուելի անձինք ենք մենք, որ կասկած կ'ունենանք մեր Տէրոջը դէմ, որ ատեն անոր սիրովը ուրախանալու էինք: Որպէս թէ մէկ մարդ մը կրնայ զՔրիստոս ընտրել, քանի որ ան զինքը չէ ընտրած. կամ թէ մէկը աւելի յօժար է երջանիկ ըլլալու՝ քան թէ Քրիստոս յօժար է զինքը երջանիկ ընելու: Մէկդի՛ ըրէ աս անարգական՝ չըսեմ հայհոյական խորհուրդները: Եթէ երբեք ասանկ խորհուրդներ տածեր ես քու սրտիդ մէջը, հանէ՛ զանոնք քեզմէ և զգո՛յշ եղիր, որ ալ ներս չպրդին: Աստուած իր ժողովրդեանը անունները երկինքը գրած է, ինչպէս որ դուն քու անունդ քու ստացուածքներուդ վրայ կը գրես, և մենք մեր անունը անկէ ջնջել և զանիկայ դժոխքին դրա՞նը վրայ գըրելու ջանանք: Բայց օրհնեալ է "Աստուած՝ որուն հիմը հաստատուն կը կենայ", և "Նորին "զօրութեամբը պահուած էք հաւատքով ան փրկութեանը համար՝ որ պատրաստուած է վերջի ժամանակը յայտնուելու":

3. Աշխատէ որ ըմբռնես թէ ո՛րչափ մօտ է քու հանգիստդ: Աւելի զգայուն կ'ըլլանք մեզի շատ մօտ սեպած բաներնուս վրայ, քան թէ ան որ հեռուէն կը տեսնենք: Երբոր պատիժները ու շնորհքները հեռու են, մեզի չվերաբերած բանի մը պէս կը խօսինք անոնց վրայ, բայց երբոր մեզի շատ մօտ գան, ան ատենը կը դողանք կամ կ'ուրախանանք: Աս է մարդոց՝ երկինքին վըրայ անզգայաբար խորհելուն պատճառը. որ ի-

րենց կուգայ թէ շատ հեռու է անիկայ իրենց-մէ. քսան. երեսուն կամ քառասուն տարի վերջը ըլլալու բանի մը պէս կը նային անոր վրայ: Որչափ աղէկ կ'ըլլար որ "մահուան վճիռը վըրանիս պահէինք", և յաւիտենականութեան վրայ իբրև մեր քովը կեցած բանի մը պէս նայէինք: Քանի որ ես անոր վրայ կը խորհիմ ու կը գրեմ, ան աւելի կը մօտենայ ինծի, և գրեթէ առանց զգալու անոր մէջ կը մտնեմ: Քանի որ դուն ալ ով որ ես՝ կը կարդաս ասիկայ, ժամանակը արագութեամբ կ'ընթանայ և քու կեանքդ կը հատնի "ցնորքի մը պէս": Եթէ ճշմարտիւ հաւատայիր որ վաղը պիտի մեռնիս, ինչ հոգողութեամբ և ուշի ուշով պիտի մտածէիր աս գիշեր երկնից վրայ: Երբոր Սամուէլ Սաւուղին ըսաւ թէ "Վաղը դուն ու քու որդիքդ իմ քովս պիտի ըլլաք", աս խօսքը սաստիկ ներգործեց անոր սրտին: Ու եթէ Քրիստոս հաւատացեալի մը ըսէր, թէ "Վաղը ինծի հետ պիտի ըլլաս, աս խօսքը առաջուց զանիկայ հոգիով երկինք պիտի տանէր: Ասանկ բռնէ ինքըզինքդ՝ որպէս թէ երկինք մտնելու վրայ ես, և ասիկայ մեծապէս կ'օգնէ քեզի աւելի հոգողութեամբ բանին վրայ խորհելու:

4. Թող քու յաւիտենական հանգիստդ շատ անգամ քու եռանդուն խօսակցութեանդ առարկան ըլլայ, մանաւանդ անոնց հետ, որ կրնան իրենց սըրտերէն խօսիլ, և իրենք անձամբ երկնային բնութեամբ համովցած են: Ցաւալի է որ քրիստոնեաները մէկտեղ եկած ատենը՝ առանց երկինքը իրենց իրարու հետ տեսնուելուն կամ հոն հասնելու ճամբուն վրայ խօսք մը ընելու՝ իրարմէ բաժնուին: Ցաւալի է որ այնքան ժամանակ

կ'անցունեն պարապ խօսակցութիւններով և անպիտան վէճերով առանց երկնից վրայ լրջութեամբ միջերնին խօսք մը ընելու ։ Ինծի անանկ կու գայ թէ մենք մեր հոգիները մեր հանգիստին վըրայ խօսելով բորբոքելու նպատակաւ մէկտեղ գալու ենք․ և քրիստոնեայի մը ան օրհնեալ ու փառաւոր վիճակը կենդանի և զօրաւոր կերպով ցուցընելը լսելը՝ մեզի ըսել տալու է, «Չէ՞ որ սիրտերնիս մեր ներսիդին կը բորբոքէր, երբ որ ինքը մեր հետը կը խօսէր ճամբուն վրայ, և գիրքերը կը մեկնէր մեզի»։ Եթէ Փելիքս կը դողայ՝ երբոր իր դատապարտութիւնը զօրութեամբ բացատրուած կը լսէ, ինչո՞ւ հաւատացեալը պիտի չը կենդանանայ, երբոր կը լսէ իր յաւիտենական հանգստեանը ստորագրութիւնը ։ Չար մարդիկ իրենց չարութեանը վրայ մէկտեղ խօսակցելով կը զուարճանան, ուրեմն քրիստոնեաներն ալ զուարճանալու չե՞ն Քրիստոսի վրայ խօսելով․ և երկնից ժառանգները՝ իրենց ժառանգութեանը վրայ ։ Ասիկայ մեր սիրտերուն կենդանութիւն կու տայ, ինչպէս որ «Յակոբին հոգին ողջացաւ» երբոր լսեց Գեսեմ երթալու հրաւէրը և տեսաւ ան կառքերը, որ զինքը իր Յովսէփ որդւոյն պիտի տանէին ։ Ո՞ւր էր որ մարդոց սովորական խօսակցութեանց հոսանքը աս գերագոյն և պատուական նիւթերուն դարձունելու վարպետութիւն և հաստատ կամք ունենայինք․ և երբոր մարդիկ սկսէին անպիտան բաներու վրայ խօսիլ՝ կարող ըլլայինք երկնից վրայօք խօսք մը ձգելու մէջ տեղը՝ և Պետրոս Առաքեալին իր կերակուրին վրայ ըսածին պէս ըսէինք, «Քաւ լիցի, ինչու որ պիղծ կամ անմաքուր բան մը ամենևին մտած չէ բերանս» ։ Ի՞նչ մեծ բարիք կրնանք միանգամայն ընել և ընդու-

նիլ աս ընթացքով ։ Մեզ անպիտան խօսակցութիւններէ եւ բանելու համար Քրիստոս իմացուց թէ, “ մեր խօսած ամէն դատարկ խօսքերուն համար դատաստանին օրը հաշիւ պիտի տանք” ։ Ուրեմն երբոր ընկերութեան մէջ ես, ըսէ Սաղմոսերգուին պէս, “ Թող իմ լեզուս իմ քիմացս փակչի, թէ որ Երուսաղէմը իմ գլխաւոր ուրախութենէս աւելի մեծ չհամարիմ” ։ Ջանանք պիտի տեսնես որ “ բժշկութիւն տուող լեզուն կենաց ծառ է” ։

5. Ամէն քու կատարած պարտաւորութիւններուդ մէջ ջանք ըրէ որ քու ըղձացումներդ աւելի մօտեցուցանես երկինքին ։ Աստուծոյ նպատակը կրօնական կարգադրութիւնները հաստատելուն մէջ աս էր՝ որ անոնք քայլեր ըլլան մեր առջեւը, որով մեզ դէպ 'ի մեր հանդիստը յառաջացունէ . եւ Քրիստոնէն ետքը անոնցմով ամէն օր մեր սիրտը վեր բարձրացունենք ։ Աս թող ըլլայ քու զանոնք գործածելու նպատակդ ալ, եւ անտարակոյս անյաջող պիտի չըլլաս ։ Որչափ կ'ուրախանաս քանի մը տող գիր ընդունելով մէկ բարեկամէդ, երբոր երես երեսի չես կրնար տեսնել զինքը ։ Ու մենք չե՞նք կրնար հաղորդակցութիւն ունենալ Աստուծոյ հետ իր սահմանած կրօնական կարգադրութիւններովը, թէեւ անձամբ այնքան հեռու ենք տակաւին ։ Մեր հոգիներն ալ ուրախանալու չե՞ն այն գրըուածքները կարդալով որ կը պարունակեն երկինքին համար մեզի եղած ուխտին խոստմունքը ։ Ի՞նչ յաղթութեան ուրախութիւնով կարդալու ենք աստուածային սիրոյն արտայայտութիւնները . եւ լսելու ենք մեր երկնային գաւառին վրայօք ։ Թէպէտեւ տակաւին չունինք անիկայ տեսնելու երջանկութիւնը ։ Մեծ ծովերով եւ ընդարձակ ցա-

մտքով բաժնուած մարդիկ՝ մեծ և շահաւոր գործեր յառաջ կը տանին գրութեամբ. և Քրիստոնեան չը՞կրնար աս իր հանգստեանը երջանիկ գործը յառաջ վարել՝ իմաստութեամբ իր կատարած պարտաւորութիւնէն հոգևոր օգուտ քաղելով: Ուրեմն եկո՛ւր մէկդի ձգէ՝ բաները արտաքին ձևով և սովորութեամբ ընելը և մարդոց գովութեանը նայելը, և ծունր կրկնէ աղօթքով, յուսալով որ ոտքի վրայ չելած սիրտդ աւելի մօտենայ Աստուծոյ: Երբոր կը բանաս քու Աստուածաշունչդ կամ մէկ ուրիշ գիրք մը, փափաքէ գտնել աստուածային ճշմարտութիւն մը պարունակող խօսք մը և անոր հետ նորին Սուրբ Հոգւոյն մէկ շընորհքը, որ կատարելագոյն ճաշակ մը տայ քեզի երկնից վրայ: Աստուծոյ տունը երթալու ատենըդ այսպէս ըսէ, "Կը յուսամ որ անկէ ետ չըդարձած իմ սէրս վառելու բան մը պիտի տեսնեմ կամ լսեմ Աստուծմէ, կը յուսամ որ անոր Սուրբ Հոգին իր ներկայութիւնը ինծի պիտի շընորհէ, և ան երկնային ուրախութիւններովը իմ սիրտս քաղցրացունէ. կը յուսամ որ Քրիստոս ճամբուն վրայ ինծի երևայ և իմ բոլորտիքս երկինքէն լոյս մը փայլատակէ. տուր որ լսեմ անոր հրահանգիչ և նորոգիչ ձայնը և կեղևները իմ աչքերէս իյնան, որ ես ան փառքը մինչև հիմա տեսածէս աւելի տեսնեմ: Կը յուսամ որ ետ չդարձած Տէրը իմ սիրտս իմ հանգստեանս տեսութեանը և իր Հօրը ներկայութեանը պիտի հանէ, որ ես ալ հովիւներուն պէս երկնային տեսիլքէն դառնամ փառաւորելով և օրհնելով զԱստուած ան ամէն բաներուն համար որ լսեցի ու տեսայ": Երբոր վայրենի և բնիկ Ամերիկացիք նոր տեսան՝ թէ Անգղիացիք կրնան մէկզմէ-

կու. հեռ նամակով խօսակցութիւն ընել, կարծեցին թէ նամակներուն մէջ ոգի կայ: Այսպէս քովը կեցողները պիտի զմայլին, երբոր քրիստոնեաները իրենց պարտաւորութիւնները կատարած ատեննին Աստուծոյ հետ հաղորդակցութիւն ստանան. պիտի զմայլին ըսելով թէ ինչ կայ Աստուածաշունչ կարդալուն մէջ և քարոզներուն ու աղօթքներուն մէջ, որ սրտերնին այնքան ուրախութիւնով կը լեցունէ և միտքերնին կը յափըշտակէ: Անշուշտ Աստուած զանց պիտի չընէր մեր պարտաւորութիւնները կատարելու ատեննիս մեզի շնորհք տալը, եթէ մենք մտադրութիւնը և փափաքը զանց չընէինք: Ասոնորոյ միտքդ պահէ միշտ աղօթք ընել քու հովիւիդ համար, որ Աստուած երկնային պատգամ մը դնէ անոր բերանը որ քու հոգւոյդ մէջ երկնային ճաշակ մը թողու:

6 Ամէն բանէ և ամէն պատահածէ խրատ առ, որ քու հոգիդ արթնցունես իրեն մօտեցող հանգստեանը վրայ: Որովհետև ամէն արարած և նախախնամութեան ամէն գործը մեր հանգստեանը միջոցներ են, վասնորոյ անոնք մեզ անոր կ'ուղղեն իբրև իրենց վախճանը: Աստուծոյ ամենաքաղցր վարմունքը մեզի հետ՝ հիմա եղածին կէսին չափ քաղցր պիտի չըլլար, եթէ մէկ ուրիշ ապագայ քաղցրութեան նշանը չըլլար: Լոկ առհաւատչեայն առած և բուն գումարը մէկդի ձգած կ'ըլլաս, եթէ ներկայ բարիքները ընդունիս և քու թագդ մոռնաս: Երանի՛ թէ քրիստոնեաները վարպետ ըլլային աս արուեստին մէջ: Կրնաս բանալ Աստուածաշունչդ, բայց պէտք է որ սովրիս արարչութեան և նախախնամութեան հատորներ ալ բանալ, որ հոն ալ կարդաս Աստուծոյ և ապագայ

փառաց վրայօք ։ Աս կերպով Քրիստոսի և երկ-
նից վրայ համարակ ճաշի մը առեն՝ շատ մարդոց հաղորդութեան առեն անգամ ունեցածէն աւելի ճաշակ կ'ունենանք ։ Եթէ յաջողութիւն գտնես աշխարհիս մէջ, թող ատիկայ քեզ աւելի զգայուն ընէ քու մշտնջենական յաջողութեանդ ։ Եթէ աշխատանքով յոգնած ալ ես, թող ատիկայ քու յաւիտենական հանգստեանդ վրայ ըրած խորհրդածութիւններդ աւելի անուշցունէ ։ Եթէ բաները ձախորդ երթան, փափաքդ թող աւելի եռանդուն ըլլայ որ տրտմութիւններդ ու նեղութիւնները յաւիտեան դադարին ։ Երբոր մարմինդ կը սփոփի կերակուրով կամ քունով, միտքդ բեր Քրիստոսի հետ վայելելու անըմբռնելի սփոփանքը ։ Եթէ կը լսես մէկ բարի լուր մը, միտքըդ բեր թէ՝ ինչ ուրախութեան աւետիս մը պիտի ըլլայ երբոր լսես Աստուծոյ փողը և Քրիստոսի արդարացունող վճիռը ։ Երբոր կը զուարճանաս սուրբերուն ընկերութեամբը, յիշէ թէ ինչ կատարեալ ընկերութիւն մը պիտի ըլլայ երկինքը ։ Եթէ Աստուած ինքզինքը քու հոգւոյդ կը յայտնէ, միտքդ բեր քու ամենաբարձր յառաջադիմութեանդ ժամանակը, որ առեն քու հաղորդութիւնդ և ուրախութիւնդ կատարեալ պիտի ըլլայ ։ Եթէ կը լսես չարերուն գոռացող ձայնը և աշխարհիս չփոթութիւնները, խորհէ երկնից երջանիկ միաբանութեանը վրայ ։ Եթէ կը լսես պատերազմի խռովութիւններ, յիշէ ան օրը, երբ կատարեալ խաղաղութեան մէջ պիտի ըլլաս յաւիտեան խաղաղութեան իշխանին թևերուն տակը ։ Աս կերպով ամէն բան և ամէն վիճակ մեր երկնային կեանքին օգնութիւն կ'ընեն, միայն թէ անոնցմէ օգուտ քաղելու միտք ունենանք ։

7. Յաճախ գործուէ փառաբանութեան հրեշտակային գործին մէջ: Որչափ երկնային ըլլայ գործդ՝ այնչափ երկնային կ'ըլլայ հոգիդ: Օ՛, Աստուած փառաբանելը հրեշտակաց և երկինքը եղող սուրբերուն գործն է. և մեր յաւիտենական գործը պիտի ըլլայ, և եթէ հիմա այն գործին մէջ շատ գտնուինք, աւելի մեր այն առենի վիճակին նման պիտի ըլլանք: Արովհետև փափաքը՝ հաւատքը և յոյսը՝ սէրէն և ուրախութենէն կարճ տևողութիւն ունին, վասնորոյ քարոզութիւնը՝ աղօթքը՝ և եկեղեցւոյ խորհուրդները՝ և մեր հաւատքն ու յոյսը արտայայտող և միանգամայն հաստատող ամէն միջոցներն ալ պիտի դադարին, ուր մեր սիրոյն և ուրախութեան յաղթական արտայայտութիւնները յաւիտեան պիտի շարունակուին: Երկրի վրայ երկինքին իմ գիտցած ամենակենդանի նմանութիւնս այն առենը կ'ըլլայ, երբ որ Աստուծոյ ժողովուրդը անոր գերազանցութեանն ու առատ մարդասիրութեանը վրայ խորին զգացումով և սէր ու ուրախութիւն բղխող սիրտերով մէկտեղ կուգան և մէկզմէկու ձայնակից կ'ըլլան փառաբանութիւն երգելով անոր՝ ցնծալից և ներդաշնակաւոր եղանակներով: Աս ուրախութիւնները Սուրբ Հոգւոյն վկայութեանը նման իրենց համար կը վկայեն թէ Աստուծմէ են. և իրենց երկնային ծագմանը վկայութիւնը իրենց հետ կը բերեն:

Չե՛նք գիտեր թէ որչափ կ'անիրաւենք ինքզինքնիս դուրս ձգելով մեր աղօթքներէն Աստուծոյ փառաբանութիւնը, կամ շատ քիչ տեղ ձգելով անոր, ինչպէս որ սովորաբար կ'ընենք, քանի որ բաւական առատ խոստովանութիւններ և խնդրուածքներ կը բանեցունենք: Ընթերցող, կը խնդրեմ քեզմէ որ միտքդ պահես ասիկայ. Թող

փառաբանութիւնը մեծ տեղ ունենայ քու կատա-
րած պաշտօններուդ մէջ. ինչպէս որ խոստովա-
նութեան և խնդրուածքի՝ նմանն ալ փառաբա-
նութեան համար պատրաստ նիւթ պահէ քովդ։
Աս նպատակաւ քու խօսակցութեանդ և անար-
ժանութեանդ չափ յաճախ քննէ Տէրոջը գե-
րազանցութիւնները և բարութիւնը, և քու գոր-
ծած մեղքերուդ չափ ալ յաճախ՝ քու ընդու-
նած բարիքներդ և քեզի խոստացուածները։ "Ու-
ղիղներուն կը վայլէ օրհնութիւն երգելը։ Շ-
նորհակալութիւն մատուցանողը զԱստուած կը
փառաւորէ։ Օրհնեցէք Տէրը, ինչու որ Տէրը
բարի է, սաղմոս ըսէք անոր անուանը, ինչու որ
քաղցր է։ Ամէն ատեն Աստուծոյ օրհնութեան
պատարագ մատուցանենք, այսինքն մեր շրթունք-
ներուն պտուղը՝ որ իր անունը կը դաւանին"։ Չէ՞
որ այնքան աս երկնային գործով պարապող Դա-
ւիթը խիստ երկնային հոգի մը ունէր։ Միթէ
երբեմն Մովսէսի երգն ու Դաւիթի սաղմոսները
միայն կարդալով եռանդնիս չը՞բորբոքիր։ Ո՜րչափ
աւելի եռանդ ու սփոփանք պիտի տայ մեզի, ե-
թէ մենք անձամբ վարժուած ըլլանք և շատ ան-
գամ՝ աս գործին մէջ գտնուինք։ Ո՜հ, ինչ յի-
մար է պատանեկութիւնը, որ մարմնոյ և մտաց
ոյժը անոտի հաճոյից և մարմնոյ ցանկութեանց
վրայ կը դնէ, որ այնքան յարմար է մարդուս աս
ամենապատուական գործին։ Եւ ինչ մեղսալից
յիմարութիւն է շատ քրիստոնեաներուն ըրածը,
որ հոգինին յարատև տխրութեան մէջ կը թաղեն
և գանգատներով ու հառաչանքներով կ՚անցու-
նեն օրերնին, և թէ՛ մարմնով թէ միտքով բո-
լորովին անյարմար կ՚ըլլեն ինքզինքնին աս քաղցր
ու երկնային գործին։ Աստուծոյ ժողովուրդին

հետ միաբանիլ և անոր փառաբանութիւն մատուցանելու տեղը՝ իրենց արժանաւորութեանը վրայ հայցուփորձ կ'ընեն և իրենց խեղճութիւնները կը քննեն . և առանկով զԱստուած իր փառքէն կը զրկեն ու ինքզինքնին իրենց մխիթարութենէն ։ Բայց աս պաշտօնին մէջ մեր մխիթարութեան ամենէն մեծ կործանիչը խելքերնիս եղանակին տալ և սիրտը անգործ թողուլն է, որ ան կատարելու էր գործին գլխաւոր մասը . իսկ եղանակը անիկայ արթնցունելու և զուարթացունելու համար գործածուելու է ։

8 · **Մեր Աստուծոյ անհուն սիրոյն վրայ հաստատուն խորհուրդներ պահէ հոգիիդ մէջ ։** Աերը սէր կը յանկուցանէ ։ Բիչ կը գտնուին այնքան վատթար անձինք՝ որ զիրենք սիրողները չսիրեն ։ Անտարակոյս մեր երկնաւոր կեանքին մասն է Աստուծոյ վրայօք խստութեամբ խորհուրդներ ունենալը, անանկ մէկը երևակայել անիկայ՝ որպէս թէ յաւէտ դատապարտել քան թէ փրկել կ'ուզէ մեզ ։ Ասիկայ ամենօրհեալն Աստուած Սատանայի նման դնել է ։ Երբոր մեր տգիտութիւնն ու անհաւատութիւնը Աստուծոյ պատկերը մեր երևակայութեանը մէջ սխալ և ծուռ կը քաշէ, ան ատենը կը գանգատինք թէ չենք կրնար սիրել զԱստուած, ոչ ալ անով ուրախանալ ։ Հազարաւոր քրիստոնեաներուն վիճակը աս է ։ Աւա՜ղ՝ որ առանկով Աստուծոյ հայհոյութիւն ըրած կ'ըլլանք և մեր ուրախութիւնները կը կորսնցունենք ։ Սուրբ Գիրքը մեզ կը վստահացունէ, թէ "Աստուած սէր է, բարկութիւն չունի, ամբարշտին մեռնիլը չուզեր, հապա որ ամբարիշտը իր ճամբայէն դառնայ ու ապրի" ։ Իսկ իր ընտրեալներուն վրայ շատ աւելի հաստատութեամբ վկայած է իր ու-

նեցած սէրը. և զանոնք փրկելու հաստատ դիտաւորութիւնը։ Երանի՜ թէ կարող ըլլայինք՝ բարեկամի մը վրայ ինչպէս որ կը խորհինք՝ անանկ խորհիլ միշտ Աստուծոյ վրայ. խորհիլ անանկ մէկու մը պէս որ մեզ անկեղծաբար կը սիրէ, մինչև անգամ մեր ինքզինքնիս սիրելէն աւելի. որուն սիրտը մեր վրայ է մեզի բարիք ընելու, վասնորոյ մեզի յաւիտենական բնակարան մը պատրաստած է որ միշտ իրեն հետ բնակինք. եթէ անանկ ըլլար՝ մեզի դժուար պիտի չըլլայ միշտ սիրտերնիս անոր հետ ընել։ Ի՛նչ որ սրտանց կը սիրենք՝ նոյն բանին վրայ շատ քաղցրութեամբ և աղատաբար պիտի խորհինք։ Կը վախնամ որ շատ քրիստոնեաներ աւելի բարձր խորհրդածութիւն կ'ընեն մտերիմ բարեկամի սիրոյն վրայ՝ քան թէ Աստուծոյ սիրոյն վրայ, և ինչ զարմանք է ան ատենը եթէ իրենց բարեկամները Աստուծմէ աւելի սիրեն, և Աստուծմէ աւելի վստահին անոնց, և ուզեն Աստուծմէ աւելի անոնց հետ բնակիլ։

Գ. Զգուշութեամբ պէտք է պահել Աստուծոյ Հոգւոյն ներշնչումները։ Եթէ երբեք քու հոգիդ աս երկրէս վեր բարձրանայ և աս երկնային կեանքին ծանօթանայ, Աստուծոյ Հոգին՝ Եղիա մարգարէին կառքին պէս եղած ըլլալու է քեզի, և մինչև անգամ բուն ան կենդանութեան սկզբունքն է, որով պիտի շարժիս և վեր ելլես։ Ա՜հ մի՛ վշտացուներ ուրեմն քու առաջնորդդ, մի՛ մերժեր քու կեանքդ. եւ մի՛ դարձուներ քու կառքըդ։ Դուն չես խորհիր թէ քու ամէն շնորհքներուդ կենդանութիւնը և քու հոգւոյդ երջանկութիւնը որքան կախում ունի Սուրբ Հոգիին պատրաստ և սրտանց հնազանդելէդ։ Երբոր Սուրբ Հոգին քեզ կը տանի առանձին աղօթքի,

կամ կ՚արգիլէ քեզ քու ժողքերէդ, կամ կը ցուցընէ քեզի քու երթալու ճամբադ, և դուն մի՛տիկ չես ըներ, զարմանք չէ՛ որ երկինքը քեզի օտար բան մը ըլլայ։ Եթէ դուն Հոգիին չես հետևիր, երբոր ան կ՚ուզէ քաշել քեզ Քրիստոսի և քու պարտաւորութիւններդ կատարելու, ի՞նչպէս երկինք տանի ան քեզ և քու սիրած Աստուծոյ առջևը հանէ։ Ի՛նչ գերբնական օգնութիւն և ի՛նչ մեծ համարձակութիւն մը կը ստանայ ան հոգին՝ Ամենակարողին մօտենալու ատենը, որ միշտ կը հնազանդի Սուրբ Հոգիին։ Եւ որչափ ետ քաշուելով՝ որչափ թոյլ և որչափ ամօթով պիտի մօտենայ Աստուծոյ ան հոգին՝ որ ետ կեցեր է ան Հոգիէն որ կ՚ուզէր զինքը առաջնորդել։ Քրիստոնեայ ընթերցող, չե՞ս իմանար երբեմն աշխարհիս զբաղմունքէն քաշուելու և Աստուծոյ մօտենալու զօրաւոր ազդում մը։ Հնազանդ մ՚ըլլար ան առաջարկութեանը. այլ կատարէ անիկայ. և քանի որ ան օրհնեալ զեփիւռը կը բանի՛ բաց առագաստներդ։ Որչափ աւելի որ Սուրբ Հոգիին դէմ կը կենանք, այնչափ սաստիկ պիտի վիրաւորուինք. և որչափ որ հնազանդինք, այնչափ արագ պիտի ըլլայ մեր ընթացքը։

10. Աս երկնաւոր հանգստեանը՝ իբրև ուրիշ օգնութիւն մըն ալ աս խրատը կու տամ քեզի, որ քու մարմնաւոր աշխատութիւններուդ վրայ պէտք եղած հոգը զանց ընես։ Մարմինդ օգտակար ծառայ մըն է քեզի, եթէ տաս անոր ճիշդ իրեն արժան եղած վարձը. բայց խիստ կործանիչ բռնաւոր մըն է, եթէ թողուս որ իր անպատշաճ փափաքները կատարէ. և ըմծացած դանակի պէս կ՚ըլլայ, եթէ անիրաւութեամբ զըկես անիկայ իր հարկաւոր եղած սնունդքէն։ Երբոր կը մտածենք թէ մարդիկ որ-

քան յաճախ սխալմունք կ՚ըլլան երկու ծայրն ալ անցնելով, և որքան քիչ անձինք կան՝ որ իրենց մարմինը ուղիղ կը գործածեն, չենք կրնար զարմանալ՝ որ այնչափ ետ կը բռնուին երկնից հետ հաղորդակցութիւն ունենալէն։ Շատ մարդիկ գերի են իրենց ախորժակներուն, և իրենց մարմինին ուղածներէն գրեթէ բան մը զանց չեն կրնար ընել. վասնորոյ կամաւ ինքզինքնին կու տան իրենց զբօսանքներուն կամ շահուն կամ՝ անօգուտ ընկերներուն, որ ատեն իրենց միտքերը Աստուծոյ և երկինքին բարձրացունելու էին։ Իսկ եթէ դուն քու հոգիդ կը սիրես, "մարմնոյ խնամք մի՛ տանիր ցանկութիւններու համար", այլ միտքդ պահէ որ "մարմնաւոր խորհուրդը մահ է. քանզի մարմնաւոր խորհուրդը Աստուծոյ դէմ թշնամութիւն է. ինչու որ Աստուծոյ օրէնքին չհնազանդիր, մանաւանդ չկրնար ալ. վասն զի մարմինով եղողները չեն կրնար Աստուծոյ հաճոյ ըլլալ։ Ապա ուրեմն եղբայրներ՝ պարտական ենք, չէ թէ մարմինին՝ մարմնաւորապէս ապրելու։ Ինչու որ եթէ մարմնաւորապէս ապրելու ըլլաք, պիտի մեռնիք. բայց թէ որ Հոգիով մարմինին գործքերը սպաննէք, պիտի ապրիք"։ Կը գտնուին անանկ անձինք ալ՝ որ իրենց մարմինին պէտք եղածը չընելով և անանկ իրենց ծառայելու անկարող ընելով անիկայ, իրենց երկնային ուրախութիւնը շատ կ՚արգիլեն. ասանկները եթէ միայն իրենց մարմնոյն անիրաւութիւն ըրած ըլլային՝ մեծ բան մը չէր. բայց իրենց հոգիներուն ալ կ՚ըլլեն, ինչպէս որ տունը աւրողը անոր մէջիններուն ալ վնաս կ՚ըլլէ։ Երբոր մարմինը հիւանդ է և հոգին կը նուաղի՝ որքան ծանր կը շարժինք, երկնից վրայ մեր ունեցած ուրախութիւններուն և խորհրդածութիւններուն մէջ։

## ԳԼՈՒԽ ԺԳ

Երկնային մտածութեան բնութիւնը, և անիկայ ըլլալու ամենայարմար ժամանակը՝ տեղը՝ և անոր ամենայարմար եղած բնաւորութիւնը։

Անգամ մըն ալ կ՚աղաչեմ քեզի ընթերցող՝ որ ըստ որում քու պարտաւորութիւնդ ըլլալը իմացած բանդ խիղճ կ՚ընես չկատարելու, և չես համարձակիր կամաւ դէմ դնել Սուրբ Հոգիին, և սրբոց փառաւոր ուրախութեանց ու հոգին ըղձալեցունող երկնային մտածութեանց կարգը գիտես, փութով սորվէ և շուտով ու հաւատարմութեամբ ՚ի գործ դնես հետևեալ խրատները։ Եթէ աս միջոցներով բոլոր քու շնորհքներուդ աճում մը չտեսնես, և դուն հասարակ քրիստոնեաներուն հասակէն աւելի չմեծնաս և քու դիրքիդ մէջ աւելի օգտակար ու ամէն խելացի մարդոց աչքին առջեւ աւելի պատուական չըլլաս, և եթէ քու հոգիդ Աստուծոյ հետ աւելի հաղորդակցութիւն չվայելէ և քու կեանքդ մխիթարութեամբ աւելի լեցուն չըլլայ և մխիթարութիւնը մահուան ժամուն քովդ աւելի պատրաստ չկենայ, ան ատենը աս խրատները մէկդի ձգէ՝ և յաւիտեան խաբեբայ կանչէ՝ զիս։

Ան պարտաւորութիւնը՝ որ ես այնքան թախանձանօք կը ստիպեմ քեզ զանիկայ կատարել, և կատարելու կերպը պիտի բացատրեմ հիմա քեզի, աս է որ "Քու հոգւոյդ բոլոր կարողութիւնները քու յաւիտենական հանգստեանդ մտածութեանը վրայ հաստատես և ակնածութեամբ ՚ի գործ դնես"։ Աս պարտաւորութեան բնութիւնը՝ հօս օրինակով քիչ մը պիտի բացատրեմ,

և յետոյ պիտի ցուցընեմ անիկայ կատարելու ամենայարմար ժամանակը և տեղը և անոր ամենայարմար եղած տրամադրութիւնը ։

Անպատշաճ չէ հոգևոր բաներու վրայ մտածութիւն և խորհրդածութիւն ընելու պարտաւորութեանը վրայօք մեր ստորագրած կերպը օրինակով հոս քիչ մը պարզել ։ Պարտաւորութիւն մը ըլլալը ամէնը կ՚ընդունին, բայց գործնականապէս շատերը կ՚ուրանան ։ Շատերը որ ուրիշ պարտաւորութիւններու վրայ խիղճ կ՚ընեն՝ ասիկայ դիւրաւ զանց կ՚ընեն ։ Իրենց սրտին մէջ կը նեղուին եթէ զանց ընեն քարոզ մը՝ ծոմապահութիւն մը կամ աղօթք մը, բայց և այնպէս բնաւ հոգ չեն ըներ՝ մտածութիւնը ( կարելի է բոլոր իրենց կենացը մէջ մինչև աս օրս ) զանց ընելնին, թէև անիկայ անանկ պարտաւորութիւն մըն է՝ որ բոլոր միւս պարտաւորութիւնները լաւագոյն կերպով կատարելու կ՚օգնէ. և անով կը մարսէ հոգին զճշմարտութիւնը որ անկէ սնունդ և մխիթարութիւն ընդունի ։ Աստուծոյ հրամանը Յեսուին աս էր, “ Աս օրինաց գիրքը քու բերնէդ չըպատուի, հապա գիշեր ցորեկ անոր վրայ մտածես, որ բոլոր անոր մէջի գրուածները պահես ու կատարես” ։ Ինչպէս որ մարսողութիւնը՝ կերակուրը մամաց ու արիւն կ՚ընէ, որմէ յառաջ կուգայ առողջութիւն և զօրութիւն, անանկ ալ մըտածութիւնը՝ ընդունուած և միտքը պահուած ճըշմարտութիւններէն ջերմեռանդ սէր՝ հաստատ դիտաւորութիւն և սուրբ կենցաղավարութիւն յառաջ կը բերէ ։

Աս մտածութիւնը հոգիին ամէն կարողութեանց գործադրութիւնն է ։ Անիկայ կենդանի եղողին գործն է և ոչ մեռելներուն ։ Գործ մըն է՝ որ

ամէն ուրիշներէն աւելի հոգեւոր և վսեմ է, վասն զի ոչ անանկ միտք մը որ մարմնաւոր և երկրաւոր է՝ չկրնար աղէկ կատարել անիկայ։ Առաջ երկնից հետ յարաբերութիւն ունենալու են հարկաւ, որ յետոյ կարող ըլլան ընտանեբար կենցաղավարել հոն։ Եւ ան հանդերձեալ մասնակցութիւն ունեցողները անանկ կը սեպեմ, երբոր զիրենք կը համեմատեմ որ իրենց հանդերձեալ մեծութիւններուն ուրախանան։ Եւ քեզ քրիստոնեայ սեպելով կը համոզեմ զքեզ որ գործունեայ քրիստոնեայ ըլլաս։ Եւ հոգիին գործողութիւնն է՝ որուն վրայ սիրով հաստատել կ'ուզեմ, վասն զի մարմնոյ աշխատութիւնը աս տեղ օգուտ չունի։ Եւ աս գործը հոգւոյն ամէն կարողութիւնը գրաւելու է, որ բան մը սորվելու հասարակ մտածութիւնէն զատուի, վասնզի հասկացողութիւնը բոլոր հոգին չէ, վասնորոյ բոլոր գործը չկրնար ընել։ Ինչպէս որ մարմինին մէջ ստամոքսը պէտք դարձունէ կերակուրը մարմնոյն և պատրաստէ լեարդին համար, և լեարդն ալ փայծաղը արիւնի պիտի դարձունէ և պատրաստէ սրտին և ուղեղին համար, անանկ ալ հոգիին մէջ հասկացողութիւնը ճշմարտութիւնները ընդունելու է՝ և պատրաստելու է զանոնք կամքին համար և ան ալ զգացումներուն համար։ Քրիստոս և երկինք այլ և այլ գերազանցութիւններ ունին. և անոր համար Աստուած զանազան կարողութիւններով կազմեց հոգին, որ անոնցմով ըմբռնէ ան գերազանցութիւնները։ Ինչ օգուտ կը քաղէինք անուշահոտ ծաղիկներէն, եթէ հոտառութիւն չունենայինք, կամ ինչ հաճութիւն պիտի զգայինք ճարտասանութենէն և երաժշտութենէն, եթէ լսողութիւն չունենայինք, կամ ինչ համ պիտի

զգայինք կերակուրներէն և խմելիքներէն առանց ճաշակի զգայարանքի։ Ասանկ ալ ինչ օգուտ ունի մեզի երկինքը կամ ինչ երջանկութիւն պիտի տայ մեզի բուն Աստուծոյ կատարելութիւնը, եթէ մենք սիրոյ և ուրախութեան զգացումները չունենանք. և ինչ զօրութիւն ու քաղցրութիւն հնար է ընդունիլ յաւիտենականութեան վրայ մտածութիւններ ընելով, քանի որ չես գործածեր հոգւոյն ան զգացումները, որով միայն կրնաս զգալ ան քաղցրութիւնը ու զօրութիւնը։ Սխալմունք է քրիստոնեաներուն խորհիլ թէ մտածութիւնը միայն հասկացողութեան և յիշողութեան գործն է, երբոր ամէն գրագէտ աղօթք կրնան ընել ասիկայ, կամ ան մարդիկը որ կ'առնեն ան բաները որոնց վրայ կը խորհին։ Աւաղ կը տեսնես թէ երկինքը լուկ յիշելէն և խորհելէն աւելի բան կայ ընելու։ Ան աշխատութիւններուն պէս որ ոչ միայն ձեռքին կամ ոտքին շարժումը՝ այլ բոլոր մարմնոյն գործողութիւնը կը պահանջեն. մտածութիւնն ալ բոլոր հոգւոյն կարողութիւնները 'ի գործ կը դնէ։ Ինչպէս որ ոչ միայն մեղաւորներուն հասկացողութիւնը՝ այլ նաև զգացումներն ալ աշխարհի վրայ են, և Աստուծմէ հեռացած ու կուռքերու դարձած, անանկ ալ պէտք է որ Աստուծոյ դառնայ ոչ միայն հասկացողութիւններնին, այլ նաև զգացումներնին. և ինչպէս որ իրենց բոլոր հոգին առաջ մեղքով լեցուած էր, անանկ ալ բոլորը Աստուծմով լեցուելու է հիմա։ Տես ինչպէս կը պատուիրէ Մարգարէն Դաւիթ երանելի մարդը. «Անոր կամքը Աստուծոյ օրէնքին մէջն է. և ցորեկ ու գիշեր անոր օրէնքին վրայ կը մտածէ»։

Ան մտածութիւնը կանոնաւոր և զգուշաւոր ե-

ղանակաւ ըլլալու է ։ Ինչպէս որ կանոնաւոր աղօթք կայ որ կ՚ընենք երբոր ինքզինքնիս բոլորովին ան պաշտօնին կու տանք . և կայ նաև վայրկենական աղօթք՝ երբոր ուրիշ գործով զբաղած ատեննիս կարճ խնդրուածքներ կը մատուցանենք Աստուծոյ . անանկ ալ կանոնաւոր մտածութիւն կայ որ կ՚ընենք երբոր ինքզինքնիս բոլորովին ան գործին կու տանք . և կայ հարևանցի մտածութիւն՝ երբոր գործով զբաղած ատեննիս բարի խորհուրդներ կ՚ունենանք մտքերնուս մէջ Աստուծոյ վրայ ։ Նաև ինչպէս որ կանոնաւոր ժամանակի մէջ եղած աղօթքէն զատ պատահական աղօթք ալ կ՚ըլլայ կարգէ դուրս մասնաւոր առիթով մը, անանկ ալ մտածութիւնը ։ Արդ կ՚ուզեմ համոզել որ քու հասարակ աշխատութեանցդ հետ խառնուած մտածութիւնը ընես, և ընես ան՝ նաև որուն մասնաւոր առիթներ կ՚առաջնորդեն քեզ, բայց յատկապէս կ՚ուզեմ որ քեզի հաստատուն և շարունակ պարտաւորութիւն մը ընես, ինչպէս որ քարոզ լսելը՝ աղօթք ընելը և սուրբ Գիրք կարդալը ըրած ես . և աղօթքին ու ուրիշ որոշեալ կանոնաւոր պաշտօններուն պէս ասի ալ թող ուրիշ գործ մը չընդմիջահատէ ։

Աս մտածութիւնը քու յաւիտենական հանգստեանդ վրայ ըլլալու է ։ Չեմ ուզեր որ ուրիշ մտածութիւններդ մէկդի ձգես, բայց ինչպէս որ երկինքը կատարելութիւնով ամէն բանէ գերագոյն է, հարկաւ մեր մտածութիւններուն մէջ ալ անանկ ըլլալու է ։ Ան բանը՝ որ ձեռքերնիս անցած ատենը ուրիշ բաներէն աւելի երջանիկ պիտի ընէ մեզ, վրան մտածած ատեններս ալ նոյնպէս ուրախ կ՚ընէ ։ Այնքան ուրիշ մտածութիւններ կան, որքան որ տող կայ սուրբ գրոց մէջ կամ

արարածներ տիեզերքին մէջ, կամ պատահմունքներ աշխարհիս նախախնամութեանը մէջ: Բայց ասիկայ՝ ճամբորդութիւն մըն է դէպի Սիոն լեռը՝ աշխարհիս թագաւորութիւնէն սրբոց թագաւորութիւնը՝ երկիրէն երկինք՝ անցաւոր ժամանակէն յաւիտենականութեան. ասիկայ արևէն՝ լուսինէն և աստղերէն վեր ու Աստուծոյ պարտէզին և դրախտին մէջ պտըտել է: Թէպէտ հեռու կ՚երևայ, բայց հոգիները արագընթաց են. թէ մարմնոյ մէջ և թէ մարմինէն զատ եղած ատեններն անոնց շարժումը արագ է: Պէտք չէ որ վախնաս աշխարհային մարդոց պէս, որ չըլլայ թէ աս խորհրդածութիւնները քեզ խենդեցունեն: Երկինք է ան ու չէ թէ գժոխք, որուն մէջ կը համոզեմ քեզ քալել: Ուրախութիւն է՝ և ոչ տրտմութիւն, որ քեզ կը համոզեմ ունենալ: Ո՛չ թէ պակասաւոր առարկաներու վրայ նայիլ կը ստիպեմ քեզ, այլ միայն սրբոց զմայլեցուցիչ փառքին՝ փառաց Աստուծոյն անպատմելի գերազանցութիւններուն և անոր Որդւոյն երեսէն ծագած ճառագայթներուն վրայ: Լոկ իր երջանկութեանը վրայ խորհիլը մարդ կը խենդեցունէ՞: Տառապեալը օգնութեան վրայ խորհելով, բանտարգեալը ազատութեան վրայ և կամ աղքատը ձեռք ձգելու հարստութեան և պատւոյ վրայ խորհելով կը խենդենա՞յ: Աւելի հաւանական է խորհիլ՝ թէ վշտով լեցուն աշխարհի մը մէջ բնակելու և աղքատութեան ու հիւանդութեան մէջ՝ ու չար մարդոց խռովութեանցը մէջ ապրելու խորհուրդը մարդ կը խենդեցունէ, քան թէ Քրիստոսի հետ երջանկութեան մէջ ապրելու խորհուրդը: «Եւ իմաստութիւնը արդարացաւ իր բոլոր տղոցմէն»: Գիտութիւնը տգէտներէն զատ թշնամի չունի:

ջանած պիտի ըլլայինք թէ ժամանակ վատնելու և թէ գործերնիս ընելու մէջ :

Զ. Աս ժամանակը ինչպէս որոշեալ՝ նաև յաճախ ըլլալու է : Քանի՛ անգամ ըլլալու է օրը կամ շաբաթը՝ չեմ կրնար որոշել, որովհետև մարդոց պարագաները տարբեր են իրարմէ . բայց Սուրբ Գիրքը ընդհանուր կերպով կը պահանջէ՝ որ յաճախ ըլլայ, երբոր կը յիշէ գիշեր ցորեկ մտածել : Ատոնորդ անոնք որ կրնան դիւրաւ իրենց աշխարհային գործերը ձգել, անոնց համար գոնէ օրը անգամ մը աղէկ կը սեպեմ ես : Երկնային մտածութեան մէջ յաճախութիւնը մասնաւորապէս հարկաւոր է :

Քու հոգւոյդ Աստուծմէ քաշուելը արգիլելու համար : Յաճախ կենակցութիւնը ընտանութիւն կու տայ, և ընտանութիւնը սէրն ու ուրախութիւնը կ'աճեցունէ : Աս պարապաւորութեան գլխաւոր նպատակը Աստուծոյ հետ ծանօթութիւն և ընտանութիւն պահելն է . վասնորոյ եթէ հազիւ երբեք կը կատարես անիկայ, Աստուծմէ օտար պիտի մնաս : Երբոր մէկ մարդ մը կը զգայ իր առ Աստուած ունեցած կարօտութիւնը՝ և հարկ եղած ատենը օգնութիւն կը խնդրէ անկէ, ան ատենը մեծ քաջալերութիւն մը կ'ըլլայ երթալ առ Աստուծոյն՝ որ արդէն կը ճանչնայ և հետը ծանօթացած է : "Ես գիտեմ ուր կ'երթամ, և որու կ'երթամ", կ'ըսէ երկնային քրիստոնեան, "ես աս ճամբէն անկէ առաջ շատ անգամ գացեր եմ : Նոյն Աստուածն է՝ որուն հետ ամէն օր հաղորդակցութիւն կ'ընեմ, և ճամբան իմ ամէն օրուան գացած ճամբաս է : Աստուած աղէկ կը ճանչնայ զիս և ես ալ քիչ մը ճանաչում ունիմ իր վրայ" : Ասոր հակառակ՝ ինչ տակաւին

ու վհատութիւն պիտի ըլլայ նեղութիւններու մէջ մնալով Աստուծոյ դիմելու պարտաւորող հոգիին, խորհիլ թէ, "Աւա՜ղ՝ ես չեմ գիտեր ուր կ՚երթամ. աս ճամբէն բնաւ գացած չեմ ես։ Երկնից ատեանին մէջ ծանօթութիւն ստացած չեմ։ Իմ հոգիս չճանչնար ան Աստուածը, որուն խօսելու եմ. և կը վախնամ որ ան ալ չճանչնար իմ հոգիս"։ Բայց մանաւանդ երբոր մահը կու գայ, և անմիջապէս նոյն Աստուծոյ առջևը պիտի ելլենք, և յոյս ունինք թէ անոր յաւիտենական հանգիստը պիտի մտնենք, ան ատենը տարբերութիւնը պարզապէս կ՚երևնայ. ան ատենը ինչ ուրախութիւն պիտի ըլլայ խորհիլ թէ, "Ես կ՚երթամ ան տեղը՝ ուր ամէն օր հաղորդակցութիւն կը վայելէի Աստուծոյ հետ, ան տեղը ուր այնքան յաճախ ուրախութիւններ վայելեր եմ, ան Աստուծոյն՝ որուն հետ ամէն օր կը տեսնուէի իմ մտածութիւններուս մէջ։ Իմ սիրտս արդէն երկինքն էր և շատ անգամ ճաշակեր է անոր կենդանացուցիչ քաղցրութիւնը. և եթէ աչքերս այնքան լուսաւորուեցան և հոգիս կազդուրեցաւ միայն անոր համը ճաշակելով, հապա ի՛նչ պիտի ըլլայ երբոր ազատաբար անով կերակրուիմ"։ Ընդհակառակն՝ ի՛նչ ահ ու դող պիտի ըլլայ խորհիլ թէ, "Ես անշուշտ պիտի մեռնիմ երթամ, բայց չեմ գիտեր՝ ուր. կ՚երթամ ինծի ծանօթ տեղէ մը անանկ տեղ մը, ուր ոչ ընտանութիւն և ոչ ծանօթութիւն ունիմ"։ Ահարկու բան է մեռնող մարդու մը օտար խորհուրդներ ունենալ Աստուծոյ և երկինքին վրայ։ Ես անանկ համոզուած եմ որ աս պարտաւորութեանը զանցառութեանը համար է՝ թէ մահը շատերուն և մինչև անգամ աստուածապաշտներուն դժուար և դառն կու

գայ։ Անոր համար կը համոզեմ քեզ որ յաճախ ի գործ դնես աս պարտաւորութիւնը։

Ու ինչպէս որ ամսկայ պիտի արգիլէ քու հոգւոյդ Աստուծմէ քաշուիլը, անանկ ալ կ'արգիլէ նոյն ան պարտաւորութիւնը կատարելու մէջ անվարժութիւնը։ Որչափ կոշտ ու անբնական կերպով ձեռք կը դնեն մարդիկ ան գործերն վրայ, որն որ հազիւ երբեք կը կատարեն։ Իսկ յաճախութիւնը պիտի սովորեցունէ քու սիրտդ ան գործին, ու աւելի դիւրին ու հաճելի պիտի ընէ քեզի։ Ան լեռը՝ որ առաջ ելած ատենդ շունչդ կը կտրէր և սիրտդ կը նեղէր, քեզի սովորութիւն ըլլալէն ետքը դիւրաւ և արագ կրնաս ելլել։

Աս պարտաւորութիւնը յաճախ 'ի գործ դնելով՝ ստացած եռանդդ ու աշխուժութիւնդ կորսնցունելէն ալ ազատ կը մնաս։ Եթէ երկու երեք օրը անգամ մը կերակուր ուտես, անկէ ըստացած զօրութիւնդ շուտ մը կը կորսուի. անանկ ալ եթէ սուրբ մտածութիւնով Քրիստոսի կը մօտենաս, և սիրոյ բորբոքով սիրտդ կը տաքնայ և անկէ ետքը շատ մը ատեն չես երթար, քու առջի պաղութիւնդ շուտ մը ետ կը դառնայ. մանաւանդ որովհետև գործը այնքան հոգևոր է և ապականեալ բնութեան յօժարութեանցը դէմ։ Ճշմարիտ է որ մինչև յաջորդ մտածութիւն եղած միջոցին կատարուած ուրիշ պաշտօնները, մանաւանդ առանձին աղօթքը շատ օգուտ կ'ընէ սիրտը վերը պահելու, բայց մտածութիւնը շատ ուրիշ պարտաւորութիւններուն կեանքն է. և երկնից մտաւոր տեսութիւնը մտածութեան կեանքն է

3. Ընտրէ նաև ամենայարմարէն ժամանակը։ Ամէն բան գեղեցիկ ու աղնիւ կ'ըլլայ իր պատշաճ ժամանակին։ Ժամանակին անպատշաճութիւնը

կրնայ ըլլալ որ քու աշխատութեանդ պտուղը կորսնցունէ և գործին մէջ դժուարութիւններ յառաջ բերէ և քու պարտաւորութենէդ մեղքի դարձունէ ։ Մի և նոյն ժամը մէկուն պատշաճ և ուրիշին մը անպատշաճ կրնայ ըլլալ ։ Արուեստաւորները և բանուորները ան ժամանակը գործածելու են, որ իրենց զբաղմունքը կը ներէ, թէ գործի մէջ՝ թէ ճամբու վրայ և թէ գիշերը արթուն եղած ատեններին ։ Անոնք որ օրուան մը մասն մը ուզեն՝ կրնան ընտրել, դիտելու են թէ որ ատեն իրենց ոգին աշխոյժ և մտածութեան յարմար է, նոյնը ընելու են իրենց աղօթելու ժամանակը ։ Ինծի միշտ իրիկուընը արեւուն մարը մտած ատենը ամէնէն յարմար եկած է ։ Աւելի փառաւոր կը յիշեմ ատիկայ իմէ բարի և իմաստուն մարդու մը փորձառութիւնն ալ ըլլալուն համար, վասն զի գրուած է, թէ "Իսահակ իրիկուան դէմ դաշտը ելեր էր աղօթք կամ մտածութիւն ընելու" ։

Տէրունական օրը խիստ յարմար է աս գործին. Ե՞րբ աւելի յարմար է մտածել մեր հանգստեանը վրայ, եթէ ոչ՝ ան հանգստեան օրը որ գալիքին օրինակն է մեզի ։ Ասիկայ հոգևոր պարտաւորութեանց համար յատկացած օր մը ըլլալով, ինծի անանկ կու գայ թէ աս օրը բնաւ զանց չըլլար անանկ հոգևոր գործ մը ։ Այս հաստատապէս կը սեպեմ թէ աս է Աբրակի աւուր գլխաւոր գործը, և շատ համաձայն՝ անոր հաստատութեանը նպատակին ։ Տէրունական օրէն 'ի զատ ինչ վայելուչ ժամանակ կայ Տէրոջը հետ հաղորդակցութիւն ընելու ։ Ինչ աւելի պատշաճ օր կայ երկինքը նկատելու, եթէ ոչ ան օրը՝ որ ինք յարութիւն առաւ երկրէն և կատարեալ յաղթութիւն ըրաւ մահուան ու դժոխքին ։ Ճշմարիտ Քրիս-

տօնէի մը ամենայարմար եղած բնաւորութիւնը՝ Յովհաննէս Աւետարանիչին պէս՝ «Կիրակի օրը Հոգին իր վրայ եկած» ըլլալն է։ Ինչ ինչ բան կրնայ մեզ աս Հոգիով եղած ուրախութեան տանիլ՝ եթէ ոչ մեր ապագայ փառքը հոգեւորապէս տեսնելը։ Աղէկ միտք առ ասիկայ, դուն որ Տէրոջը օրը միայն հրապարակական պաշտօնով կ'անցունես, առանձնական պաշտօնի ժամանակ չտալը եւ հետեւապէս աս հոգեւոր մտածութիւնը զանց ընելը շատ վնասակար է քու հոգւոյդ։ Դուն ալ որ Տէրոջը օրը ժամանակ ունիս ծուլութեան կամ անպիտան խօսակցութեան, եթէ մէկ անգամ ծանօթացած ըլլայիր աս մտածութեան գործին, ուրիշ զուարճութիւն չէիր ուզեր. ամենէն երկայն օրն ալ քեզի կարճ պիտի գար, եւ պիտի տրտմէիր որ գիշերը քու հաճութեանդ կարճըցուց։ Քրիստոնեաներ՝ թո՛ղ ձեր Կիրակիներուն աւելի մեծ մասը երկինքը դրուէ որ հոն քիչ ատենէն ձեր յաւիտենական Կիրակին պիտի ձեռք ձգէք։ Կիրակիները իբրեւ յաւիտենական փառքին տանող սանդուխին ոտքերը բռնէ՝ մինչեւ անոնք ամէնը անցնելով հոն հասնիս։ Մանաւանդ դուն որ աղքատ ես եւ չես կրնար ուզածիդ չափ ժամանակ գտնել շաբթու մէջ, նայէ որ աղէկ բանեցունես աս օրը, ինչպէս որ ձեր մարմինները իրենց աշխատութենէն կը հանգչին, ձեր հոգիներն ալ թող հանգիստ խնդրեն Աստուծմէ։

Ամէն աւուր եւ մանաւորապէս Կիրակի աւուր մշտատեւ պատշաճութենէն 'ի զատ՝ ուրիշ մասնաւոր պատեհութիւններ կան երկնային մտածութեան համար, զորօրինակ.

Երբ որ Աստուած սովորականէն աւելի չափով մը կը տաքցունէ քու հոգիդ վերէն կրակով, ան

ատենը աւելի թեթեւութեամբ կրնաս թռչիլ։ Ասանկ ատեն քիչ մը աշխատութիւնը արագ ընթացք մը կու տայ սրտիդ, որ ուրիշ ատեն շատ կ'աշխատիս քիչ մը արդիւնք յառաջ բերելու համար։ Դիտէ՛ թէ երբ կ'ելլեն Սուրբ Հոգիին հովերը եւ դէպ 'ի ո՛ւր Քրիստոսի Հոգին կը շարժէ քու հոգիդ։ "Առանց Քրիստոսի բան մը չենք կրնար ընել". վասնորոյ անոր գործի՝ վրայ եղած ատենը՝ մենք ալ գործելու ենք. զգո՛յշ եղիր որ անոր եկած ատենը ճամբէն դուրս կամ քունի վրայ չգտնուիս։ Երբոր Հոգին քու սիրտդ Պետրոսի պէս բանտը շղթաներու մէջ կը գտնէ, եւ "կողքդ խթելով" կ'ըսէ, "Շուտով ելի՛ր՝ եկո՛ւր իմ ետեւէս", զգո՛յշ եղիր որ ելլես ետեւէն երթաս, եւ շղթաներդ ինկած ու այն դռները բաց պիտի տեսնես, եւ ինչ ըլլալդ չիմացած ինքզինքդ երկինքը պիտի գտնես։

Աս պատրաստութեան համար ուրիշ մասնաւոր պատեհութիւն մըն ալ՝ նեղութեան կամ տառապանաց կամ փորձուելու վիճակի մէջ եղած ատենդ է։ Ե՞րբ առնելու ենք մեր կազդուրիչ դեղերը, եթէ ոչ՝ մարելու ատեններս։ Ո՞ր ատեն աւելի պատշաճ է դէպ 'ի երկինք ճամբորդութիւն ընել, եթէ ոչ՝ երբոր չենք գիտեր երկրին որ անկիւնը բնակինք հանգստութիւն գտնելու համար։ Կամ ե՞րբ մեր խորհուրդները աւելի հաղորդակցութիւն ունենալու են վերը, եթէ ոչ՝ վարը նեղութենէն 'ի զատ բան մը չունեցած ատեններս։ Տապանէն զատ ո՞ւր պիտի ըլլայ Նոյեան աղաւնին, երբոր ջուրերը բոլոր երկիր ծածկեր են եւ ան իր ոտքին թաթը դնելու տեղ չկրնար գըտնել։ Մեր Հօրը տունէն 'ի զատ ի՞նչ բանի վըրայ պիտի մտածենք, երբոր անառակ որդիին պէս

մարդկային մտունդէն անգամ զուրկ ենք ։ Անշուշտ Աստուած աս նպատակաւ կը խրկէ քու նեղութիւններդ ։ Երջանի՛կ ես՝ խեղճ մարդ, եթէ քու խեղճութիւնդ աս կերպով կը գործածես. և դուն ալ՝ որ հիւանդ ես, եթէ քու հիւանդութիւնդ աս կերպով կը գործածես ։ Պատշաճ է երթալ խոստացեալ երկիրը՝ երբոր բնաբրնիս ծանրացած է Եգիպտոս, և նեղութիւններնիս շատցած է անապատը ։ Ընթերցող՝ եթէ գիտնայիր ինչ կազդուրիչ դեղ մըն է քու նեղութեանցդ՝ յաւիտենական փառքին վրայ ուշադրութեամբ նայիլը, այնքան չէիր վախնար ան անփոյթ նեղութիւններէն, և աւելի կը գործածէիր ան սփոփանք ու կենդանութիւն տուող դեղը ։ "Իմ ներսի դիս հոգերուս շատցած ատենը", կ՚ըսէ Դաւիթ մարգարէն, "քու մխիթարութիւններդ իմ անձս կ՚ուրախացունէին" ։ "Ես այսպէս կը դատեմ", կ՚ըսէ Պօղոս առաքեալ, "որ աս ժամանակիս չարչարանքները բան մը չեն գալու փառքին քովը, որ մեզի պիտի յայտնուի" ։ "Վասնորոյ չենք ձանձրանար. բայց թէպէտ աս մեր դուրսի մարդը կ՚ապականի, սակայն մեր ներսի մարդը օրէ օր կը նորոգուի ։ Ինչու որ մեր վայրկենական թեթև նեղութիւնը խիստ մեծ ու չափազանց փառքի յաւիտենական տևողութիւն կը գործէ մեզի ։ Վասն զի մենք երևցած բաներուն չենք նայիր, հապա չերևցածներուն. ինչու որ երևցած բաները ժամանակաւոր են, բայց չերևցածները՝ յաւիտենական" ։

Ուրիշ ժամանակ մըն ալ մանաւանդապէս պատշաճ աս երկնային պաշտօնին՝ Աստուծոյ պատգամաւորներուն մեր մտնելը մեզի իմացուցած ատեններն է ։ Ե՞րբ աւելի անուշ կրնան ըլլալ

մեր հոգիներուն հանդերձեալ կենաց յուսալից խորհուրդները, եթէ ոչ՝ երբոր կը տեսնենք թէ աս կեանքը վերջանալու մօտ է։ Մեռնելու վրայ եղող մարդոցմէ աւելի ոչ մէկը կարօտ է այդ հաստատութիւն տուող ուրախութիւններու. և աս ուրախութիւնները մեր յաւիտենական ուրախութենէն հանելու է։ Արդարև երկնային ուրախութիւնները ամենաքաղցր կ'ըլլան, երբ բնաւ երկրաւոր բան մը հետերնին կապուած չէ, վասն որոյ մեռնելու վրայ եղող քրիստոնէից ուրախութիւնները շատ անգամ բոլոր իրենց վայելած ուրախութիւններուն ամենաքաղցրն է։ Ի՞նչ մարգարէական օրհնութիւններ իրենց որդւոցը տուին Իսահակ և Յակոբ նահապետները մեռնելու ատեննին։ Ի՞նչ երկնային երգով և աստուածային փառաբանութեամբ վախճանեցաւ Մովսէս մարգարէն։ Ի՞նչ երկնային խրատ ու աղօթք ընդունեցին Քրիստոսի աշակերտները իրենց Տերոջմէն, երբ իրենցմէ բաժնուելու վրայ էր։ Երբոր Պօղոս առաքեալ զոհ ըլլալու նուիրուած էր, ինչ երկնային յորդորանք և խրատ տուաւ Փիլիպպեցիներուն՝ Տիմոթէոսին և Եփեսոսի երեցներուն։ Որչափ մօտ էր Յովհաննէս աւետարանիչ Պատմոս կղզին՝ երկինքին, ան տեղը փոխադրուելէն քիչ մը առաջ։ Սուրբերուն ընդհանուր բնաւորութիւնն է՝ երկինքին ամենամօտ եղած ատեննին ամէն ատենէն աւելի երկնային ըլլալ։ Եթէ պատահի՝ ընթերցող, որ քու մեռնելու ժամանակիդ մօտենալը իմանաս, ո՜հ ո՛ւր ըլլալու է սիրտդ ան պահէն, եթէ ոչ՝ Քրիստոսի հետ։ Ինծի՛ անանկ կու գայ թէ՝ գրեթէ մինչև անգամ քու քովդ կայնած պիտի տեսնես անիկայ, և պիտի խօսի հետը իբրև քու հայրդ՝ քու եղբայրդ՝ քու

Երկրորդ . Երկնային մտածութեան անհնարա-կան եղած ատենին վերջերը բաւական է ըսել, թէ առանձին տեղ մը շատ յարմար կու գայ : Մեր հոգիները ամէն օգնութեան կը կարօտին ու գործին մէջ ամէն արգելքէ ազատ ըլլալու համար : Եթէ առանձին աղօթքի համար Քրիստոս կը հրամայէ մտնել մեր ներքին սենեակը, ու դուռը գոցել, որ մեր Հայրը գաղտուկը տեսնէ մեզ, մտածութիւնն ալ անանկ ըլլալու ենք : Որքան անգամ Քրիստոս ինքը կ'առանձնանար լեռ մը կամ անապատ մը կամ առանձնական տեղեր : Ո՛չ թէ պատահական մտածութեան համար աս խօսածը կու տամ, այլ կանոնաւոր մտածութեան համար : Ստանողդ եւ քաշէ ինքզինքդ ամէն ընկերութենէ՝ մինչեւ անգամ բարեպաշտներուն ընկերութենէն, որ քիչ մըն ալ քու Տէրոջդ ընկերութիւնը վայելես : Եթէ ուսումնականը՝ որ իր հնարագիտութիւնը եւ յիշողութիւնը միայն կը բանեցունէ, իր ուսումնքը բազմութեան մէջ յառաջ չկրնար տանիլ, դուն ալ հեռանալու ես բազմութենէ՝ որ պիտի գործածես քու հոգեւոր բոլոր կարողութիւններդ անանկ գերբնական նիւթի մը վրայ : Նոյնքան հեռու գացեր ենք աւելորդապաշտական առանձնութենէ, որ մինչեւ անգամ մտածական պաշտամունքին պահանջած առանձնութիւնն ալ մէկ դի ձգեր ենք : Հոգիս երբեք եղած է որ Աստուած թէ անձամբ եւ թէ իր հրեշտակներուն ձեռքը իր մարգարէներուն կամ սուրբերուն մէկուն երեւցած ըլլայ բազմութեան մէջ, այլ շատ անգամ կը կարդանք որ անոնց մինակ եղած ատենը երեւցաւ իրենց : Նայց քննէ թէ ինչ տեղ քեզի աղէկ կը յարմարի, տան մէջ թէ դուրսը : Իսահակին օրինակը, պարտէզն "դաշ-

տը ներել մտածութեան համար" համոզուած եմ որ շատերուն աղէկ կու գայ ։ Մեր Տէրը այնքան սովորութիւն էր ըներ պարտէզի մէջ առանձնանալ, որ մինչև անգամ Յուդան անիկայ մատնելու համար եկած ատենը՝ գիտէր՝ թէ ուր տեղ պիտի գտնէ զան. և թէպէտ իր աշակերտները հետը առաւ հոն գնաց, սակայն առանձին պաշտամունքի համար անոնցմէ զատուեր էր. և թէպէտ ուղղակի մտածելը չզրուցուիր՝ այլ միայն աղօթք ընելը, սակայն յայտնապէս կ'իմացուի. վասն զի առաջ հոգին տրտմած էր իր չարչարանացը և մահուանը վրայ ըրած դառն մտածութիւններովը, և յետոյ աղօթքով դուրս կը թափէ զան ։ Այսպէս Քրիստոս իրեն սովորական տեղ մը ունէր, և հետևապէս սովորական պարտաւորութիւնները կը կատարէր. նոյնպէս ընելու ենք և մենք ։ Ան տեղ մը ունէր առանձին՝ ուր կ'առանձնանար մինչև անգամ իր աշակերտներէն. նոյնպէս ընելու ենք մենք ալ ։ Անոր մտածութիւնները իր խորհուրդներէն յառաջ կ'երթային և կը ներգործէին ու կը թափանցէին անոր սիրտն ու հոգին. նոյնպէս ըլլալու է մերն ալ ։ Միայն թէ մեծ տարբերութիւն մը կայ առարկային վրայ. Քրիստոս կը մտածէ մեր մեղքերուն արժանացած չարչարանացը վրայ, անանկ որ բոլոր իր Հօրը բարկութիւնը անոր հոգիին վրայ իջաւ. բայց մենք պիտի խորհինք անոր ծախու առած փառքին վրայ, որ Հօր Աստուծոյ սէրը և Սուրբ Հոգւոյն ուրախութիւնը մեր խորհուրդներուն մէջ մտնէ, և զգացումներնիս արթընցունէ ու հոգինիս բորբոքէ ։

Երրորդ. Գործնական քու սրտիդ աս երկնային մտածութեան համար ունենալիք պատրաստութիւններուն վրայօք խրատ տալու եմ քեզի ։ Գոր-

ծին յաջողութիւնը շատ կախում ունի քու սըր-
տիդ վիճակէն։ Եթէ մարդուն միտքը Սուրբ
Հոգին տրտմեցունելու բան մը չունէր իր մէջ,
անտարակոյս սիրտը իր Փրկչին հաճելի բնակարա-
նըն էր։ Աստուած իր ան տեղը բնակութիւնը
չթողուց՝ մինչև որ մարդը մերժեց անիկայ բաժ-
կացունող գործքերով։ Եւ քաշուիլ կամ ա-
մըչնալ չէր մարդուն քովը՝ մինչև որ սիրտը մե-
ղանչական եղաւ, և անանկ մութ բանտ մը Աս-
տուծոյ՝ որ չէր կրնար հաճիլ հոն կենալ։ Եւ
եթէ աս հոգին իր առջի անմեղութեանը դառնար՝
Աստուած շուտ մը կը դառնար իր առջի բնակու-
թեանը, մինչև անգամ չափով մը նորոգուած՝
Սուրբ Հոգիէն մաքրուած և իր ցանկութիւննե-
րէն սրբուած ու Աստուծոյ պատկերովը գեղեց-
կացած ըլլալով, Տէրը Հայրն երբ կ'ընդունի անի-
կայ, Քրիստոս կը յայտնէ ինքզինքը անոր, և
Հոգին Սուրբ իրեն տաճար և բնակարան կ'ընէ
զանիկայ։ Ամէն որ սիրտը յարմարութիւն ըս-
տացած է Աստուծոյ հետ հաղորդակցութեան,
սովորաբար նոյնչափ կը վայելէ զանիկայ։ Ա՛ն
որոյ «ամէն զգուշութեամբ քու սիրտդ պահէ՛,
քանզի կենաց աղբիւրները անկէ է»։ Եւ ա-
ւելի մասնաւորապէս,

1. Կրցածիդ չափ զատէ՛ սիրտդ աշխարհէն։ Մէկ-
դի՛ դիր բոլորովին քու գործիդ՝ ձեռնութիւննե-
րուդ՝ վայելքներուդ և քու հոգիդ գրաւելու որ
և իցէ բանի մը խորհուրդները։ Կարելի եղա-
ծին չափ պարպէ՛ անիկայ, որ աւելի ընդունակ
ըլլայ Աստուծմով լեցուելու։ Եթէ մէկ աղա-
քին պաշտօն մը կարող ըլլաս սրտիդ մէկ մասը
մը կատարել, որ առեն ճնշուած միտը սրբել տեղ
է, սակայն աս գործը վստահ եմ որ չես կրնար։

Երբոր մտածութեան լեռը ելլեմ՝ ոսկիի դէզի մը քով կեցող աղքատ մարդուն պէս պիտի ըլլամ, որ կրցածին չափ առած ատենն ա՛լ կ՚ողբայ աւելի առնել չկրնալուն համար. այնպէս դուն ալ քու փոքր սրտիդ պարունակել կարող եղածին չափ պիտի ընդունիս զԱստուած և յաւիտենական փառքը, և գրեթէ բան մը պիտի չըլլայ քեզ արգիլող զանոնք բոլորովին ձեռք ձգելէն, այլ միայն քու հոգւոյդ անընդունակութիւնը: Անատենը այսպէս պիտի խորհիս, "Երանի՛ թէ աս հակացողութիւնը և աս զգացումները կարող ըլլային աւելի բան ընդունիլ: Աւելի իմ անյարմարութիւնս քան թէ ուրիշ բան մըն է պատճառը՝ որ մինչև անգամ աս տեղը իմ երկինքս չըլլար: Դրաւուցունէ Տէրը աս տեղն է եղեր, ու ես չգիտցայ՝: Ան լեռը հրեղէն ձիերով ու կառքերով լեցուն է՝, բայց իմ աչքերս գոցուած են, որ չեմ կրնար տեսնել զանոնք: Ա՛հ, ինչ սիրոյ խօսքեր ունի Քրիստոս խօսելու, և ինչ սիրոյ զարմանալիքներ՝ ցուցանելու, բայց ես տակաւին չեմ կրնար տանիլ անոնք: Երկինքը պատրաստ է ինծի, բայց իմ սիրտս պատրաստ չէ երկինքին": Վասնորոյ՝ ընթերցող, տեսնելով որ աս մտածութեան մէջ քու զԱստուած վայելելուդ շատ կախում ունի քու սըրտիդ ընդունակութենէն և վիճակէն, եթէ երբէք պիտի փնտռես, հոս փնտռէ զինքը բոլոր քու հոգիովդ: Քրիստոս ախոռը և մսուրը մի՛ ձգեր՝ որպէս թէ վերին սենեակներուդ համար աւելի պատուական հիւրեր ունիս: Քու բոլոր աշխարհային գործերուդ և խորհուրդներուդ ըսէ՛, ինչպէս որ Քրիստոս իր աշակերտացը ըսաւ, "Դուք հոս նստեցէք՝ մինչև որ ես երթամ հոն աղօթք

ատենը աւելի թեթեւութեամբ կրնայ թռչիլ։ Ասանկ ատեն քիչ մը աշխատութիւնը արագ ընթացք մը կու տայ սրտիդ, որ ուրիշ ատեն շատ կ'աշխատիս քիչ մը արդիւնք յառաջ բերելու համար։ Դիտէ՛ թէ երբ կ'ելլեն Սուրբ Հոգիին հովերը և դէպ 'ի ո՛ւր Քրիստոսի Հոգին կը շարժէ քու հոգիդ։ "Առանց Քրիստոսի բան մը չենք կրնար ընել". վասնորոյ անոր գործին վրայ եղած ատենը՝ մենք ալ գործելու ենք. զգո՛յշ եղիր որ անոր եկած ատենը ճամբէն դուրս կամ քունի վրայ չգտնուիս։ Երբոր Հոգին քու սիրտդ Պետրոսի պէս բանտը շղթաներու մէջ կը գտնէ, և "կողքդ խթելով" կ'ըսէ, "Հագուստդ ելի՛ր՝ եկո՛ւր իմ ետեւէս", զգո՛յշ եղիր որ ելլես ետեւէն երթաս, և շղթաներդ ինկած ու ամէն դռները բաց պիտի տեսնես, և ինչ ըլլայդ չիմացած ինքզինքդ երկինքը պիտի գտնես։

Աս պարտաւորութեան համար ուրիշ մասնաւոր պատեհութիւն մըն ալ՝ նեղութեան կամ տառապանաց կամ փորձուելու վիճակի մէջ եղած ատենդ է։ Ե՞րբ առնելու ենք մեր կազդուրիչ դեղերը, եթէ ոչ՝ մարելու ատեններս։ Ո՞ր ատեն աւելի պատշաճ է դէպ 'ի երկինք ճամբորդութիւն ընել, եթէ ոչ՝ երբոր չենք գիտեր Երկրին ո՛ր անկիւնը բնակինք հանգստութիւն գտնելու համար։ Կամ ե՞րբ մեր խորհուրդները աւելի հաղորդակցութիւն ունենալու են վերը, եթէ ոչ՝ վարը նեղութենէն 'ի զատ բան մը չունեցած ատեններս։ Տապանէն զատ ո՞ւր պիտի ըլլայ Նոյեան աղաւնին, երբոր ջուրերը բոլոր երկիր ծածկեր են և ան իր ոտքին թաթը դնելու տեղ չկրնար գըտնել։ Մեր հոգը տունէն 'ի զատ ի՞նչ բանի վըրայ պիտի մտածենք, երբոր անառակ որդիին պէս

մարդկային սնունդէն անգամ զուրկ ենք ։ Անշուշտ Աստուած սա նպատակաւ կը խրկէ քու նեղութիւններդ ։ Երջանի՛կ ես՝ խեղճ մարդ, եթէ քու խեղճութիւնդ սա կերպով կը գործածես. և դուն ալ՝ որ հիւանդ ես, եթէ քու հիւանդութիւնդ սա կերպով կը գործածես ։ Պատշաճ է երթալ խոստացեալ երկիրը՝ երբոր բեռերնիս ծանրացած է Եգիպտոս, և նեղութիւններնիս շատցած է անապատը ։ Ընթերցող՝ եթէ գիտնայիր ինչ կազդուրիչ դեղ մըն է քու նեղութեանցդ՝ յաւիտենական փառքին վրայ ուշադրութեամբ նայիլը, այնքան չէիր վախնար ան անվնաս նեղութիւններէն, և աւելի կը գործածէիր ան սփոփանք ու կենդանութիւն տուող դեղը ։ "Իմ ներսի դիս հոգերս շատցած ատենը", կ'ըսէ Դաւիթ մարգարէն, "քու մխիթարութիւններդ իմ անձս կ'ուրախացունէին" ։ "Ես այսպէս կը դատեմ", կ'ըսէ Պօղոս առաքեալ, "որ աս ժամանակիս չարչարանքները բան մը չեն գալու փառքին քովը, որ մեզի պիտի յայտնուի" ։ "Վասն որոյ չենք ձանձրանար. բայց թէպէտ աս մեր դուրսի մարդը կ'ապականի, սակայն մեր ներսի մարդը օրէ օր կը նորոգուի ։ Ինչու որ մեր վայրկենական թեթև նեղութիւնը խիստ մեծ ու չափազանց փառքի յաւիտենական առաւելութիւն կը գործէ մեզի ։ Վասն զի մենք երևցած բաներուն չենք նայիր, հապա չերևցածներուն. ինչու որ երևցած բաները ժամանակաւոր են, բայց չերևցածները՝ յաւիտենական" ։

Ուրիշ ժամանակ մըն ալ մասնաւորապէս պատշաճ աս երկնային պաշտօնին՝ Աստուծոյ պատգամաւորներուն մեր մեռնելը մեզի իմացուցած ատենները է ։ Ե՛րբ աւելի անուշ կրնան ըլլալ

մեր հօրիններուն հանդերձեալ կենաց յուսալից խորհուրդները, եթէ ոչ՝ երբոր կը տեսնենք թէ այս կեանքը վերջանալու մօտ է: Մեռնելու վրայ եղող մարդոցմէ աւելի ոչ մէկը կարօտ է այն հաստատութիւն տուող ուրախութիւններու. և այս ուրախութիւնները մեր յաւիտենական ուրախութենէն հանելու է: Որովհետև երկնային ուրախութիւնները ամենաքաղցր կ'ըլլան, երբ բնակերպաւոր բան մը հետերնին կապուած չէ, վասն որոյ մեռնելու վրայ եղող քրիստոնէից ուրախութիւնները շատ անգամ բոլոր իրենց վայելած ուրախութիւններուն ամենաքաղցրն է: Ի՜նչ մարգարէական օրհնութիւններ իրենց որդւոցը տուին Իսահակ և Յակոբ նահապետները մեռնելու ատեննին: Ի՜նչ երկնային երգով և աստուածային փառաբանութեամբ վախճանեցաւ Մովսէս մարգարէն: Ի՜նչ երկնային խրատ ու աղօթք ընդունեցին Քրիստոսի աշակերտները իրենց Տէրոջմէն, երբ իրենցմէ բաժնուելու վրայ էր: Նոբոր Պօղոս առաքեալ քով ըլլալու նուիրուած էր, ինչ երկնային յորդորանք և խրատ տուաւ Փիլիպպեցիներուն՝ Տիմոթէոսին և Եփեսոսի երէցներուն: Որչափ մօտ էր Յովհաննէս աւետարանիչ Պատմոս կղզին՝ երկինքէն, ան տեղը փոխադրուելէն քիչ մը առաջ: Սուրբերուն ընդհանուր բնաւորութիւնն է՝ երկինքին ամենամօտ եղած ատեննին, ամէն ատենէն աւելի երկնային ըլլալ: Եթէ պատահի՝ ընթերցող, որ քու մեռնելու ժամանակիդ մտենալը իմանաս, ո՜հ, ո՞ւր ըլլալու է սիրտդ ան ատենը, եթէ ոչ՝ Քրիստոսի հետ: Ինծի՛ անանկ կու գայ թէ՝ գրեթէ. մինչև անգամ քու քովդ կայնած պիտի տեսնես անիկայ, և պիտի խօսիս հետը իբրև քու հայրդ՝ քու էրիկդ՝ քու

Երկրորդ. Երկնային մտածութեան ամենայարմար եղած տեղին վրայօք բաւական է ըսել, թէ առանձին տեղ մը շատ յարմար կու գայ։ Մեր հոգիները ամէն օգնութեան կը կարօտին աս գործին մէջ ամէն արգելքէ ազատ ըլլալու համար։ Եթէ առանձին աղօթքի համար. Քրիստոս կը հրամայէ մտնել մեր ներքին սենեակը, ու դուռը գոցել, որ մեր Հայրը գաղտուկը տեսնէ մեզ, մըտածութիւնն ալ անանկ ըլլալու են։ Որքան անգամ Քրիստոս ինքը կ'առանձնանար լեռ մը կամ անապատ մը կամ՝ առանձնական տեղեր։ Ոչ թէ պատահական մտածութեան համար աս խրատը կու տամ, այլ կանոնաւոր մտածութեան համար։ Ազատոց ետ քաշէ ինքզինքդ ամէն ընկերութենէ՝ մինչև անգամ բարեպաշտներուն ընկերութենէն, որ քիչ մնայ քու Տէրոջդ ընկերութիւնը փախցնես։ Եթէ ուսումնականը՝ որ իր հնարագիտութիւնը և յիշողութիւնը միայն կը բանեցունէ, իր ուսմունքը բազմութեան մէջ յառաջ չկրնար տանիլ, դուն աւելի հեռանալու ես բազմութենէ՝ որ պիտի գործածես քու հոգւոյդ բոլոր կարողութիւնները անանկ գերբնական նիւթի մը վրայ։ Որքան հեռու գացեր են աւելորդապաշտական առանձնութենէ, որ մինչև անգամ մտածական պաշտամունքին պահանջած առանձնութիւնն ալ մէկ դի ձգեր են։ Հազիւ երբեք եղած է որ Աստուած թէ անձամբ և թէ իր հրեշտակներուն ձեռքը իր մարգարէներուն կամ սուրբերուն մէկուն երևցած ըլլայ բազմութեան մէջ, այլ շատ անգամ կը կարդանք որ անոնց մինակ եղած ատենը երևցաւ իրենց։ Նայց քննէ թէ ինչ տեղ քեզի աղէկ կը յարմարի, ատեն մէկ թէ դուրսը. Իսահակին օրինակը, այսինքն "դաշ-

ալ ըլլալ մտածութեան համար" համոզուած եմ որ շատերուն աղէկ կու գայ ։ Մեր Տէրը այնքան սովորութիւն էր ըներ պարտէզի մէջ առանձնանալ, որ մինչև անգամ Յուդան անիկայ մատնելու համար եկած ատենը՝ գիտէր թէ ուր տեղ պիտի գտնէ զան . և թէպէտ իր աշակերտները հետը առաւ հոն գնաց, սակայն առանձին պաշտամունքի համար անոնցմէ զատուեր էր. և թէպէտ ուղղակի մտածելը չըրուցուիր՝ այլ միայն աղօթք ընելը, սակայն յայտնապէս կ'իմացուի. վասն զի առաջ հոգին տրտմած էր իր չարչարանացը և մահուանը վրայ ըրած դառն մտածութիւններովը, և յետոյ աղօթքով դուրս կը թափէ զան ։ Այսպէս Քրիստոս իրեն սովորական տեղ մը ունէր, և հետևապէս սովորական պարտաւորութիւնները կը կատարէր . նոյնպէս ընելու ենք և մենք ։ Ան տեղ մը ունէր առանձին՝ ուր կ'առանձնանար մինչև անգամ իր աշակերտներէն. նոյնպէս ընելու ենք մենք ալ ։ Անոր մտածութիւնները իր խորհուրդներէն յառաջ կ'երթային և կը ներգործէին ու կը թափանցէին անոր սիրտն ու հոգին . նոյնպէս ըլլալու է մերն ալ ։ Միայն թէ մեծ տարբերութիւն մը կայ առարկային վրայ . Քրիստոս կը մտածէ մեր մեղքերուն արժանացած չարչարանացը վրայ, անանկ որ բոլոր իր Հօրը բարկութիւնը անոր հոգիին վրայ իջաւ . բայց մենք պիտի խորհինք անոր ծախու առած փառքին վրայ, որ Հօր Աստուծոյ սէրը և Սուրբ Հոգւոյն ուրախութիւնը մեր խորհուրդներուն մէջ մտնէ, և զգացումներնիս արթընցունէ ու հոգիներնիս բորբոքէ ։

Երրորդ . Դարձեալ քու սրտիդ աս երկնային մտածութեան համար ունենալիք պատրաստութիւններուն վրայօք խրատ տալու եմ քեզի ։ Կոր-

ծին յաջողութիւնը շատ կախում ունի քու սըրտիդ վիճակէն։ Երբոր մարդուն սիրտը Սուրբ Հոգին տրտմեցունելու բան մը չունի իր մէջը, անտարակոյս սիրտը իր Փրկչին հաճելի բնակարանըն էր։ Աստուած իր ան ներքին բնակութիւնը չթողուց՝ մինչև որ մարդը մերժեց անիկայ բարկացուցող գործքերով։ Եւ քաշուիլ կամ ամըչնալ չկար մարդուն քովը՝ մինչև որ սիրտը մեղանչական եղաւ, և անանկ մութ բան մը Աստուծոյ՝ որ չէր կրնար հաճիլ հոն կենալ։ Եւ եթէ աս հոգին իր աչքի անմեղութեանը դառնար՝ Աստուած շուտ մը կը դառնար իր աչքի բնակութեանը, մինչև անգամ չափով մը նորոգուած՝ Սուրբ Հոգիէն մաքրուած և իր ցանկութիւններէն սրբուած ու Աստուծոյ պատկերովը գեղեցկացած ըլլալով, Տէրը իբրև իրը կ՚ընդունի անիկայ, Քրիստոս կը յայտնէ ինքզինքը անոր, և Հոգին Սուրբ իրեն տաճար և բնակարան կ՚ընէ զանիկայ։ Ո՛րքան որ սիրտը յարմարութիւն ընտացած է Աստուծոյ հետ հաղորդակցութեան, սովորաբար նոյնչափ կը վայելէ զանիկայ։ Ս[illegible] որոյ "ամէն զգուշութեամբ քու սիրտդ պահէ՛, քանզի կենաց աղբիւրները անկէ է"։ Եւ աւելի մասնաւորապէս,

1. Կրցածիդ չափ զատէ՛ սիրտդ աշխարհէն։ Մէկդի դիր բոլորովին քու գործիդ՝ նեղութիւններուդ՝ վայելքներուդ և քու հոգիդ գրաւելու որ և իցէ բանի մը խորհուրդները։ Կարելի եղածին չափ պարպէ՛ անիկայ, որ աւելի ընդունակ ըլլայ Աստուծմով լեցուելու։ Եթէ մէկ տարաքին պաշտօն մը կարող ըլլայ ըլլալ տանդ մէկ մասը կատարել, ալ տան մնացած մասը ուրիշ տեղ է, սակայն աս գործը վստահ եմ որ չես կրնար։

Երբոր մտածութեան լեռը ելլեմ՝ ոսկիի դէզի մը քով կեցող ագահ մարդուն պէս պիտի ըլլամ, որ կրցածին չափ առած ատենն ալ կ՚ողբայ աւելի առնել չկրնալուն համար. այնպէս դուն ալ քու փոքր սրտիդ պարունակել կարող եղածին չափ պիտի ընդունիս զԱստուած և յաւիտենական փառքը, և գրեթէ բան մը պիտի չըլլայ քեզ արգիլող զանոնք բոլորովին ձեռք ձգելէն, այլ միայն քու հոգւոյդ անընդունակութիւնը: Ան ատենը այսպէս պիտի խորհիս, «Երանի՜ թէ այս հաւաքողութիւնը և այս զգացումները կարող ըլլային աւելի բան ընդունիլ: Աւելի իմ անկարողութիւնս քան թէ ուրիշ բան մըն է պատճառը՝ որ մինչև անգամ այս տեղը իմ երկինքս չըլլար: Իրաւցունէ Տէրը այս տեղն է եղեր, ու ես չգիտցայ՝: Աս լեռը հրեղէն ձիերով ու կառքերով լեցուն է՝, բայց իմ աչքերս գոցուած են, որ չեմ կրնար տեսնել զանոնք: Ո՜հ, ինչ սիրոյ խօսքեր ունի Քրիստոս խօսելու, և ինչ սիրոյ զարմանալիքներ՝ ցուցանելու, բայց ես տակաւին չեմ կրնար տանիլ անոնք: Երկինքը պատրաստ է ինծի, բայց իմ սիրտս պատրաստ չէ երկինքին»: Վասնորոյ՝ ը՛նթերցող, տեսնելով որ այս մտածութեան մէջ քու զԱստուած վայելելդ շատ կախում ունի քու սըրտիդ ընդունակութենէն և վիճակէն, եթէ երբեք պիտի փնտռես, հոս փնտռէ զինքը բոլոր քու հոգիովդ: Քրիստոս ախոռը և մսուրը մի՛ ձգեր՝ որպէս թէ վերին սենեակներուդ համար աւելի պատուական հիւրեր ունիս: Քու բոլոր աշխարհային գործերուդ և խորհուրդներուդ ըսէ՛, ինչպէս որ Քրիստոս իր աշակերտացը ըսաւ, «Դուք հոս նստեցէք՝ մինչև որ ես երթամ հոն աղօթք

քնեմ", կամ թէ ինչպէս որ Աբրահամ իր ծառաներուն ըսաւ, երբոր ինք գնաց Իսահակ որդին զոհ մատուցանելու, "Դուք հոս մնացէք, և ես մինչև հոն երթամ ու երկրպագութիւն ընեմ, և նորէն ձեզի դառնամ": ինչպէս որ "քահանաները Ովսիա թագաւորը շուտով տաճարէն հանեցին", ուր որ խունկ պիտի ծխէր, երբոր բորոտութիւն տեսան անոր վրայ. անանկ ալ դուրս ձգէ դուն ան խորհուրդները քու սրտիդ տաճարէն, որոնց վրայ Աստուծոյ տհաճութեան նշանը կը գտնուի :

Զ. Զգո՛յշ եղիր որ ջերմութեամբ՝ և ոչ թէ սրտի և մտքի թեթևութեամբ ձեռք զարնես աս գործին : Խնեթև բան չկայ սրբազան բաներուն մէջ : "Աստուած իրեն մօտեցողներուն մէջ սուրբ պիտի սեպուի": Աս հոգևոր՝ գերազանց՝ և հոգենորոգ պաշտօնները՝ երթէ աղէկ գործածուին, շատ օգտակար են. բայց երբ անհաւատարմաբար ի գործ դրուին՝ շատ վտանգաւոր : Վասնորոյ աշխատէ՝ ամենախորին ըմբռնում ունենալ Աստուծոյ ներկայութեանը վրայ, և անոր անըմբռնելի մեծութեանը վրայ : Երթէ Եսթեր թագուհին թագաւորին չէր կրնար մօտենալ մինչև որ "թագաւորը ոսկի գաւազանը չերկնցունէր", մտածէ՝ ուրեմն ինչ յարգանօք մօտենալու ես անոր՝ որ աշխարհներ իր բերնին խօսքովը ստեղծեց, և երկիրը որպէս թէ իր ձեռքի թաթին մէջ կը բռնէ. արեգակը՝ լուսինը և աստղերը իրենց ընթացքին մէջ կը բռնէ, և ալեկոծեալ ծովուն սահման կը դնէ : Դուն անոր հետ հաղորդակցութիւն ընել կ'երթաս՝ որուն առջևը երկիրը կը շարժի և դևերը կը դողան, և անոր առջևը պիտի կենաք դուն և բոլոր աշխարհ ձեր վերջին

վճիռը առնելու։ Ա՜հ խորհէ՛, թէ «Այս՝ ան ատենը կենդանի ըմբռնումներ պիտի ունենամ անոր վեհափառութեանը վրայ։ Իմ թմրած հոգիս ան ատենը պիտի արթննայ և անզգայութիւնս մէկ դի պիտի կենայ. և ինչո՞ւ հիմա պիտի չարթննամ անոր մեծութեան զգացումովը, և անոր անուանը երկիւղը իմ հոգիս պիտի չգրաւէ»։ Մտածէ՛ նաև ըմբռնել քու ընելու ջանացած գործիդ մեծութիւնը, և խորին զգացում ունենալ անոր կարևորութեանը և պատուականութեանը վրայ։ Եթէ երկրաւոր դատաւորի մը ատեանը քու կենացդ համար ջատագովութիւն ընելու ըլլայիր, զգացումով և ոչ թէ թուլութեամբ պիտի խօսէիր, բայց և այնպէս ասոր քովը բան մը չէ։ Եթէ Դաւիթի Գողիաթին դէմ ունեցած գործին պէս գործի մը մէջ ըլլայիր, որուն ամբողջ թագաւորութեան մը բարելաւութիւնը կախուած էր, ինքնին առնելով ասոր քովը ոչինչ է։ Ըսենք թէ՝ Յակոբ Նահապետին գօտեմարտութեանը պէս գործի մը մէջ ըլլայիր, կամ լեռանը վրայ Քրիստոսի երեք աշակերտներուն տեսածը տեսնէիր, ի՛նչ խորին զգացումով և ո՜րչափ յարգանօք պիտի մօտենայիր և նայէիր։ Եթէ երկինքէն լոկ հրեշտակ մը տեսանուէր՝ որ քու ամէն մտածութիւն ըրած ատենդ քովդ գար կենար, ի՜նչ երկիւղով պիտի լեցուէիր։ Միտք բեր ուրեմն թէ ինչ հոգիով Տէրոջը առջևը ելլելու ես, և ինչ զգացումով ու ակնածութեամբ ամէն օր հաղորդակցութիւն ընելու ես անոր հետ։ Միտք բեր նաև սա գործին երջանիկ արդիւնքը, եթէ յաջողի անիկայ՝ արդիւնքը պիտի ըլլայ Աստուծոյ ներկայութեանը ընդունուիլդ՝ և երկրի վրայ քու յաւիտենական փառքիդ սկզբնա-

ձգը քու առջևդ է։ Մի՛ արհամարհեր աս հրաւէրը, և մի՛ սկսիր նոր քաշուիլ պատճառանքներ բերելով. ինչ որ ըլլաս, թէ՛ հարուստ՝ թէ աղքատ՝ թէ հիւանդանոցը ըլլաս, թէ ճամբաները՝ թէ ցանկերը, իմ պաշտօնս է՝ եթէ կարելի է, ստիպել քեզ որ ներս մտնես. և երանի անոր՝ որ Աստուծոյ թագաւորութեանը մէջ հաց պիտի ուտէ։ Մանանան քու վրանիդ բոլորտիքը կը կենայ. դուրս ել՝ ժողվէ, տա՛ր ներս և կեր. աս բանին համար պիտի ցուցընեմ քեզի թէ ինչպէս պիտի գործածես քու զգացումներդ՝ առանձնախօսութիւնդ և աղօթքդ։

Ն՛ախ. Մտածութիւն ըրած ատեննիս առաջ յիշողութեան կ՛երթանք՝ և անկէ կ՛առնենք ան վարդապետութիւնները՝ որ մեր մտածութեան առարկաները պիտի ըլլան, ինչպէս յաւիտենական կենաց խոստմունքները, որոց փառքին ստորագրութիւնը, յարութիւնը ևայլն։ Յետոյ կը բերենք անոնք մեր դատմանը, որ ուշադրութեամբ նայի անոնց վրայ ու ճիշդ տեսութիւն մը և ուղիղ որոշում մը ունենայ մեր երկնային երջանկութեան կատարելութեանց վրայ, ընդդէմ մարմինին և զգայութեան փափաքներուն. անանկ որ Տէրը մեր սիրտերուն մէջ փառաւորենք, մինչև որ սուրբ զմայլումով լեցուինք։ Բայց գլխաւոր բանը ոչ միայն մեր դատողութիւնը, այլ մեր յաւիտենական հանգիստին ճշմարտութեանը վրայ մեր հաւատքն ալ գործածելն է. որով ըսել կ՛ուզեմ թէ՛ խոստմունքներուն և թէ՛ ան բաներուն վրայ մեր ունեցած փափաքին և անոնց մեր մասնակցութիւն ունենալուն ճշմարտութեանը վրայ։ Եթէ մենք իրօք և հաստատապէս հաւատայինք՝ թէ կայ անանկ փառք մը, և թէ քիչ օրէն

պիտի տեսնենք անիկայ . ո՛հ , ինչպէս պիտի շարժէին մեր զգացումները ։ Ո՛ն կեանքին վրայ ի՛նչ սքանչելի ըմբռնումներ պիտի յառաջ բերէր ։ Ի՛նչ սէր՝ ինչ անձուկ պիտի զարթուցանէր մեր մէջը ։ Ո՛հ , որչափ պիտի գրգռուէր ամէն զգացում . ի՛նչպէս պիտի յափշտակուէինք ուրախութիւնով՝ փոքր ինչ վստահութիւն ունենալով ան փառքին մեր մասնակից ըլլալուն ։ Երբոր հաւատքը՝ որ ան պիտի առաջնորդէ ճամբան , հանդարտ կը կենայ , բնաւ մի յուսար որ սէրը և ուրախութիւնը շարժի ։ Ասանորդոյ հանապազ հաւա՛տք ’ի գործ դիր , և դի՛ր անոր առջևը խոստմունքին ձրի ըլլալը՝ Աստուծոյ մարդիկ փանիկայ ընդունելու թախանձելը՝ Քրիստոսի բարերարութիւնը՝ Քրիստոսի սիրոյն բոլոր վկայութիւնները՝ անոր հաւատարմութիւնը իր գործին՝ և անոր սիրոյն մեր մէջը եղած վկայութիւնները . դի՛ր ասոնք ամէնը մէկտեղ և խորհէ՛ թէ ասոնք չե՞ն վկայեր Տէրոջը բարի կամքը մեր փրկութեանը վրայ , և պատշաճապէս մեր անհաւատութեանը դէմ չե՞ն բերուիր ։ Այսպէս երբոր դատողութիւնը որոշում կ՚ընէ և հաւատքը կ՚ըմբռնէ մեր երջանկութեան ճշմարտութիւնը , ան ատենը մեր մտածութիւնը կը յառաջանայ զգացումներնիս զարթուցանելու . և մասնաւորապէս սէրը՝ փափաքը՝ յոյսը՝ քաղցրութիւնը կամ համարձակութիւնը՝ և ուրախութիւնը ։

1 . Սէրը առաջին զգացումն է . որ կը գրգռուի երկնային մտածութեան մէջ . անոր առարկան բարութիւն է ։ Ո՛ս տեղն է՝ ո՛վ քրիստոնեայ , քու գործիդ հոգենորոգ մասը ։ Դի՛ր քու յիշողութեանդ՝ յետոյ քու դատողութեանդ և քու հաւատքիդ , և յառաջ բե՛ր անոնցմէ քու հանգըս-

տեանց գերազանց յատկութիւնները, ներկայացուր անոնք քու սիրոյ զգացմանդ և ինքզինքդ որպէս թէ ուրիշ աշխարհի մը մէջ պիտի գտնես։ Խօսէ՛՝ և սէրը կրնայ մոլիկ ըլլել, միայն ցուցուր աս բաները և սէրը կրնայ տեսնել։ Աշխարհին զազանական սէրն է որ կոյր է, աստուածային սէրը խիստ արագատես է։ Թո՛ղ քու հաւատքդ ցուցընէ սրտիդ քու յաւիտենական բնակութեանդ շքեղ շէնքերը և քու Հօրդ տանը փառաւոր զարդերը. թո՛ղ քու հաւատքդ Աստուծոյ տանի սիրտդ և կարելի եղածին չափ անոր մօտեցունէ, և ըսէ անոր, «Այս է՛ Զինուորցը՝ Տէր Եհովան՝ ՍՐ ԵԼ. աս է ան՝ որ բոլոր աշխարհները իր խօսքովը ստեղծեց, և երկիրը կը բանէ՝ ազգերուն կ'իշխէ՝ ամէն դիպուած իր կամքին պէս կարգի կը դնէ՝ իր թշնամիները կը սանձէ՝ ծովուն բարձրացած ալիքները կը զսպէ, հովերը կը կառավարէ՝ արևուն՝ իր ընթացքին մէջ ընթանալ, և աստղերուն՝ իրենց ճամբաները ճանչնալ կու տայ։ Ա՛ս է որ սիրեց քեզ 'ի յաւիտենից՝ կանչեց քեզ յարգանդին մէջ՝ տուաւ քեզի աս հոգին՝ քեզ ծնաւ և լոյս ցուցուց քեզի, և կարգեց քեզ իր երկրային արարածոց գլխաւորներուն հետ, և զարդարեց քեզ քու ունեցած հասկացողութիւնովդ՝ գեղեցկացուց քեզ իր ձիրքերովը. և քու կեանքդ կը պահէ և բոլոր անոր պիտոյքները կը հոգայ, և կը զատէ քեզ ամէնաթշուառ և ամէնավատթար մարդոցմէն։ Ա՛հ, ահա՛ քու սիրոյդ արժանի մէկ առարկայ մըն է ասիկայ։ Հոս քու հոգիդ սիրովդ լեցուելու է։ Ա՛ս տեղը ո՛րչափ սէր 'ի գործ դնես՝ կ'արժէ։ Ա՛ս է ան Տէրը՝ որ շնորհեց քեզի իր պարգևները։ Սեղան կը պատրաստէ քու առջիդ քու թշնամիներուդ դիմացը և քու բաժակդ

խիստ լեցուն կ՚ընէ՝։ Ո՛վ է ան՝ որ հրեշտակները և սուրբերը կը փառաբանեն և երկնային զօրքերը յաւիտեան կը մեծացունեն”։ Այսպէս ճանչցիր Աստուծոյ փառաւորութիւնը և բաց անոր գերազանցութիւնները քու սրտիդ առջեւ, մինչև որ սիրոյ սուրբ հուրը սկսի հրահրել քու սրտիդ մէջ։

Եթէ կ՚իմանաս որ քու սէրդ տակաւին բռնկած չէ, յառաջ վարէ՝ քու սիրտդ և ցուցուր անոր կենդանի Աստուծոյ Որդին, որուն անունն է “Սքանչելի, Խորհրդակից, Հզօր Աստուած, Յաւիտենականութեան Հայր, Խաղաղութեան իշխան”։ Ցուցուր անոր սրբոց Թագաւորը իր փառաց աթոռին վրայ, “առաջինը ու վերջինը, ան որ է՝ և էր՝ և պիտի գայ, որ կենդանի է՝ և մեռաւ, և ահա կենդանի է յաւիտեանս յաւիտենից, որ խաղաղութիւն ըրաւ քեզի՝ խաչին վրայ թափած իր արիւնովը”. և քեզի խաղաղութեան բնակարան մը պատրաստած է իր քովը. իր մեծ պաշտօնն է խաղաղութիւն ընել. իր թագաւորութիւնը խաղաղութեան թագաւորութիւն է. իր Աւետարանը խաղաղութեան Աւետարան է, և իր ձայնը խաղաղութեան ձայն է քեզի։ Մօտեցիր անոր և նայէ՛։ Չե՞ս լսեր անոր ձայնը։ Ան՝ որ Թովմաս առաքեալին հրամայեց թէ, “եկո՛ւր և տե՛ս գամերուն նշանները, և դիր քու մատդ իմ վէրքերուս մէջ”, քեզի ալ կը կանչէ, “Մօ՛տ եկուր և տե՛ս Տէրը քու Փրկիչդ, և մի՛ ըլլար անհաւատ, այլ հաւատացեալ. խաղաղութիւն քեզի, մի՛ վախնար՝ ես եմ”։ Աղէկ նայէ անոր վրայ։ Չե՞ս ճանչնար։ Ան է որ քեզ դժոխքին անդունդէն հանեց, քու դատապարտութեանդ վճիռը ետ ըրաւ, քու վրադ գալու ա-

Հագարին պէս նատեր կու լայիր և հոգիդ ալ
կորսուելու դրեր էիր, ու ան քեզի մխիթարու-
թեան աղբիւր մը բացաւ, և աչքերդ ալ բացաւ
որ տեսնես անիկայ: Որչափ անգամ տեսաւ քեզ
Եղիայի վիճակին մէջ ինկած որ կը փափաքէիր
մեռնիլ ազատիլ քու խեղճութենէդ. և քու առ-
ջևդ անկարծելի մխիթարութեան սեղան մը դրաւ,
և խրկեց քեզ իր գործին՝ կազդուրեալ և քա-
ջալերեալ: Որչափ անգամ եղաւ որ մարգարէին
ծառային պէս աղաղակեցիր, "Աւա՜ղ՝ ինչ պիտի
ընենք հիմա, վասն զի զօրքը մեզ պատեր է", և
ան ատենը քու աչքերդ բացաւ որ "քեզի դէմ
եղողներէն աւելի քու կողմէդ եղողներ" տեսնես:
Որչափ անգամ Յովնանի պէս քու կեանքէդ
տժգոհ եղած և ձանձրացած ատենդ՝ քաղցրու-
թեամբ քեզի ըսաւ, "Աղէ՞կ կ'ընես" ինծի "նե-
ղանալովդ" կամ ինծի դէմ գանգատելովդ: Քա-
նի՛ անգամ ապսպրեց քեզի, որ "արթուն կենաս
և աղօ՛թք ընես". զղջաս և հաւատաս, "և եկաւ
քեզ քնացած գտաւ", բայց և այնպէս իր սիրոյ
քղանցքովը ծածկեց քու ղանցառութիւնդ, և
քաղցրութեամբ ջատագովութիւն ըրաւ քու կող-
մանէդ, թէ "հոգին յօժար է, բայց մարմինը տը-
կար": Արդ պաղ կրնա՞ս մնալ՝ երբոր աս բա-
ներուն վրայ խորհիս: Կրնա՞ս ինքզինքդ բռնել՝
երբ միտքդ կը բերես աս անսահման գթութիւն-
ները: Այսպէս՝ ընթերցող, ցուցո՛ւր քու սրտիդ
Քրիստոսի բարութիւնը, այսպէս համոզէ՛ քու
սառուցեալ հոգիդ՝ մինչև որ կարող ըլլաս Դա-
ւիթին հետ ըսելու, "Սիրտս բորբոքեցաւ ներ-
սիդիս. մտածութեանս մէջ կրակ վառեցաւ": Ե-
թէ ասոնցմով սէրդ չբորբոքի, Քրիստոսի բոլոր
անձնական գերազանցութիւնները ունիս ատոնց

վրայ աւելցուներու. բոլոր քեզի ըրած մասնաւոր ողորմութիւնները, քեզի ունեցած բոլոր քաղցր և մօտ յարաբերութիւնները և քու յաւիտեան անոր հետ բնակելուդ երջանկութիւնը: Միայն թէ ոչ միայն մեռք խորհէ ասոնց վրայ, այլ ճիշդ սրտիդ առջևը դիր անոնք. և խօսէ՛ անոր՝ ինչպէս Քրիստոս Պետրոսին խօսեցաւ երեք անգամ ա-նոր հարցունելով՝ թէ, "զիս կը սիրե՞ս". մինչև որ տրտմեցաւ և ըսաւ, "Տէր դուն գիտես որ ես քեզ կը սիրեմ": Այսպէս տրտմեցո՛ւր և ամչցո՛ւր սիրտդ՝ մինչև որ սթափի իր թմրութենէն, և կարող ըլ-լայ ճշմարտապէս ըսելու, "Այս գիտեմ և իմ Տէրս գիտէ որ զինքը կը սիրեմ":

2. Երկնային մտածութեան մէջ ասկէ ետքը գրգռուելու զգացումը փափաքն է: Այս զգացմանը առարկան հեռացած կամ տակաւին ձեռք չձըգ-ուած բարիք մըն է: Եթէ սէրը տաք ըլլայ, փափաքը պաղ չըլլար: Այսպէս խորհէ ինքնիրենդ, "Ո՜հ ի՛նչ անըմբռնելի փառք էր որ ես տեսայ. ի՛նչ գերագոյն գեղեցկութիւն. ի՛նչ երանելի են ան հոգիները որ հիմա կը վայելեն անիկայ. որոնք իմ հեռուէն և թանձր ամպերու մէջէն տեսածէս հազար անգամ աւելի պայծառ կը տեսնեն ան բաները. ի՛նչ մեծ տարբերութիւն կայ իմ ու ա-նոնց վիճակին մէջ. ես կը հառաչեմ՝ անոնք կ՚եր-գեն. ես զԱստուած կը բարկացունեմ՝ անոնք կը հաճեցունեն անիկայ: Ես խեղճ ու ողորմելի եմ Յովբին կամ Ղազարոսին պէս, իսկ անոնք կա-տարեալ ու անարատ: Ես հոս աշխարհի սիրա-վը պղշկած եմ, որ սակայն անոնք Աստուծոյ սի-րովը յափշտակուած են: Անոնք իմ հոգերուս և վախերուս մէկը չունին. անոնք առանձին ար-տասուք չեն թափեր. տրտմութիւններով չեն

նուաղիր. բոլոր աս արտասուքները անոնց աչքե-
րէն սրբուած է։ Ո՜հ երջանիկ ու հազար ան-
գամ երջանիկ հոգիներ։ Աւա՜ղ որ ես աս մեղ-
ւոյից մարմնին մէջ բնակիմ պիտի, քանի որ իմ
եղբայրներս և ընկերներս Աստուծոյ հետ կը բնա-
կին։ Անոնց բարձր վայելմունքը տեսնելէն և
անոնց մասնակից ըլլալէն որչափ հեռու է իմ
բնակած տեղս։ Ի՞նչ նուաստ և տկար խոր-
հուրդներ ունիմ Աստուծոյ վրայ. ի՞նչ պաղ
զգացումներ դէպ'ի անոր։ Որքան քիչ ունիմ
ես ան կենդանքէն' ան սէրէն և ան ուրախութենէն,
որով անոնք միշտ կ'ապրին։ Ո՜րչափ շուտով
ան քիչն ալ կ'երթայ' և զիս աւելի թանձր խա-
ւարի մէջ կը թողու։ Երբեմն երբեմն կայծ մը
կ'իյնայ սրտիս վրայ, և երբոր վառել կը նայիմ կը
մարի, կամ լաւ ևս բսեմ' իմ պաղ սիրտս կը
մարէ անիկայ։ Բայց անոնք անոր լուսովը կը լու-
սաւորուին, և միշտ ուրախութեան աղբիւրէն կը
խմեն։ Հոս կռիւներով մէկզմէկ կը վշտացու-
նենք, որ ատեն անոնք մէկ սիրտ ու մէկ բերան
են, և հանապազ կատարեալ միաբանութեամբ
երկնային Ալէլուիաներ կ'երգեն։ Ա՜հ, ինչ խըն-
դոյք մը կը տեսնէ իմ հաւատքս ու միանգամայն
ինչ ցաւի մէջ է հոգիս։ Ո՜վ երջանիկ հոգիներ,
չեմ կրնար և չեմ համարձակիր նախանձիլ ձեր
երջանկութեանը վրայ. յաւէտ իմ եղբայրներուս
աղէկութեանը վրայ կ'ուրախանամ, և կը խնդամ
ան օրը միտքս բերելով' երբ ես ալ ձեր ընկե-
րութեանը մէջ պիտի մտնեմ։ Ես ոչ թէ ձեր
ադ տեղէն ելլել կ'ուզեմ, այլ կ'ուզեմ որ ես
ալ ձեր քովը ըլլալու երջանկութիւնը վայելեմ։
Ինչո՞ւ ես հոս կենամ' լամ' ու սպասեմ։ Իմ
Տէրս գնաց. անիկայ աս երկրէն ելաւ և մտաւ

իր փառքը. իմ եղբայրներս գացին, բարեկամներս հոն են. իմ տունս՝ յոյս՝ ամէն ունեցածս հոն է։ Քանի որ ես այսքան հեռու եմ իմ Աստուծմէս, մի՞ զարմանաք ըսելով ինծի թէ՝ «Իրեղի ի՞նչ եղաւ՝», եթէ հիմա գանգատիմ, որպէս Միքան կը գանգատէր իր կուռքին համար, ու իմ հոգիս կենդանի Աստուծոյ համար սիրտ չգանգատի՞։ Եթէ զինքը վայելելու յոյս չունենայի, կ'երթայի անապատներուն մէջ ինքզինքս կը ծածկէի, և անծանօթ անապատներուն մէջ կը պառկէի ու կ'աղաղակէի, և իմ օրերս անօգուտ փափաքներով կ'անցունէի. բայց քանի որ ան երկիրը ինծի սահմանուած հանգիստն է, և ես պիտի հասնիմ ան վիճակին, և իմ հոգիս որ ըստ օրէ կը մօտենայ, և գրեթէ արդէն հոն է, ես պիտի սիրեմ ու պիտի ցանկամ, պիտի նայիմ և փափաքիմ, և իմ սրտիս խորութենէն այսպէս պիտի կանչեմ, մինչև ե՞րբ՝ ո՛վ Տէր, մինչև ե՞րբ կը թողուս աս հոգին, որ հառաչէ և հեծէ, և չես բանար անոր որ կը սպասէ և կը ցանկայ քու քովդ ըլլալ”։ Այսպէս քրիստոնեայ ընթերցող. թո՛ղ քու խորհուրդներդ փափաքին, մինչև որ քու հոգիդ անձկութեամբ աղաղակէ Դաւիթին պէս, “Ո՛վ Տէր՝ քու փրկութեանդ ցանկացայ”։ Ու ինչպէս որ Քրիստոսի մայրն ու եղբայրները՝ երբոր բազմութեանը պատճառաւ քովը չէին կրնար երթալ, մարդ խրկեցին ըսելու՝ թէ “Քու մայրդ և եղբայրներդ դուրսը կայներ են, ու քեզ տեսնել կ'ուզեն”, քու խնդրուածքդ ալ անանկ թող ըլլայ, և պիտի ընդունի քեզ, վասն զի ըսաւ, “Անոնք որ Աստուծոյ խօսքը կը լսեն ու զանիկայ կը կատարեն, իմ մայրս ու եղբայրներս են”։

3. Երկնային մտածութիւնով դրդուելու ուրիշ մէկ զգացումն ալ յոյսն է։ Անիկայ հոգիին հաստատութիւն կուտայ նեղութեան ատեն. զօրութիւն կուտայ դէմ դնելու ամենամեծ դժուարութեանց. ամենամեծ փորձութեանց դիմանալ կուտայ. պարտաւորութիւնները կատարելու ոյժ կուտայ և մեքենային բուն ան զսպանակն է որ կը շարժէ բոլոր անիւները։ Ո՞վ կը հաւատար կամ ջանք մը կ'ընէր երկինքի համար, եթէ ինք անիկայ ստանալու յոյս չունենար։ Ո՞վ աղօթք կ'ընէ, եթէ Աստուծմէ ընդունելու յոյս չունենայ։ Եթէ քու յոյսդ մեռնի՝ քու պարտաւորութիւններդ չես կատարուիր, ջանքերդ ալ կը տկարանան, ուրախութիւնդ ալ կը հատնի և հոգիդ ալ կը մեռնի։ Իսկ եթէ քու յոյսդ գործի մէջ չըլլայ՝ այն քուն, մեռնելու մօտ բան մըն է։ Վասնորոյ քրիստոնեայ ընթերցող, երբ որ քու զգացումներդ դէպ 'ի երկինք կը բարձրացունես, մի՛ մոռնար քու յոյսդ ալ վեր հանել։ Այսպէս խորհէ՛ և փաստաբանութիւն ըրէ՛ քու սրտիդ հետ։ "Ինչո՞ւ համար վստահութեամբ և ուրախութեամբ պիտի չյուսամ, երբոր իմ հոգիս ասանկ գնած փրկիչ մը ձեռքն է. և թագաւորութիւնը ասանկ առատապարգև Աստուծոյ մը իշխանութեանը տակն է։ Երբեք ցուցըրցա՞ծ է ամենափոքր դժկամակութիւն մը իմ աղէկութեանս, կամ ամենափոքր յաժարութիւն մը իմ կործանմանս։ Միթէ երդուած չէ՞ր, թէ 'մեռնողին մեռնիլը չեմ ուզեր, այլ կ'ուզեմ որ դառնայ ու ապրի՛։ Բոլոր իր վարմունքն ալ նոյնը չե՞ն վկայեր։ Ան իմ փրկանքիս համար զիս չզգուշացո՞ւց՝ երբոր ես բնաւ չէի վախնար, վասն զի կ'ուզէր որ ես անկէ ազատէի։ Իմ երջանկութեանս

համար ալ չիմացուց ինծի, երբ ես խորհուրդ-
ջուներ անոր վրայ, որովհետեւ կ'ուզէր որ ես ա-
նիկայ վայելէի։ Ո՛րքան անգամ զիս իրեն և իր
Օծեալին քաշեց, ու ես ետ կեցայ։ Ո՛րչափ ան-
դադար կը թախանձէր իր Հոգին իմ սիրտս։ Ու
բոլոր ատ բաները պիտի ընէ՞ր, եթէ իմ կորսուիլս
ուզած ըլլար։ Պիտի չյուսա՞մ, եթէ մէկ արդա-
րասէր ու կարող մարդ մը բան մը խոստանայ ը-
նել ինծի։ Ու չյուսա՞մ՝ երբոր Աստուծոյ դա-
շինքը և երդումը ունիմ։ Ճշմարիտ է որ փառքը
մեզի աներևոյթ է. մենք որոց օթևանները տե-
սած չենք, բայց Աստուծոյ խոստմունքը մեր տե-
սութենէն աւելի ստոյգ չէ՞։ Մենք տեսութեամբ
պիտի չփրկուինք, այլ յուսով. բայց յոյսը որ կը
տեսնուի՝ յոյս չէ, վասն զի ան բանը որ կը տեսնէ
մէկը՝ ալ ինչո՞ւ պիտի յուսայ։ Հապա թէ որ
չտեսած բաներնուս կը յուսանք, ալ համբերու-
թիւնով կը սպասենք անոր'։ Ես մարմինի կարո-
ղութեան վրայ իմ ունեցած յոյսես ամօթով ե-
լած ունիմ, բայց Աստուծոյ խոստմունքին վրայ ե-
դած 'յոյսը ամօթով չձգեր'։ Իմ ամենածանր
տառապանացս մէջ պիտի ըսեմ. Տէրը իմ բա-
ժինս է, ատ պատճառով անոր պիտի յուսամ։
Տէրը բարի է իրեն սպասողներուն, ու զինքը
փնտռող հոգիին։ Տէրոջը փրկութեանը սպա-
սելը, և լռութեամբ յուսալը աղէկ է։ Վասն զի
Տէրը յաւիտեան չմերժեր. այլ թէև ցաւ կու
տայ, իր ողորմութեանը շատութիւնովը գթութիւն
ալ կ'ընէ'։ Թէև նուաղիմ և մեռնիմ, բայց և
այնպէս պիտի յուսամ. վասն զի 'արդարը իր
մահուան ատենը ապաւէն կ'ունենայ'։ Թէև հո-
ղին ու խաւարման մէջ պառկիմ, սակայն 'մար-
մինս յոյսով պիտի հանգստանայ'։ Ու երբոր իմ

քաղաքավարութեան ամէն ընդդիմութեան դէմ չեմ դներ։ Ո՞վ զիս ետ պիտի բռնէ կամ ինչէ՞ն պիտի վախնամ։ Աստուած իմ կողմնակի՞ս է՝ թէ ինծի դէմ է աս գործին մէջ։ Քրիստոս իմ քովս պիտի կենա՞յ թէ ոչ։ Եթէ Աստուած և Քրիստոս իմ կողմս է, ո՞վ պիտի ըլլայ ինծի հակառակ՝։ Ես աս գործին իմ զօրութիւնովս ձեռք կը զարնեմ՝ թէ յուսա Քրիստոսի իմ Տէրոջս զօրութիւնովը։ Ես ամէն բանի կարող չեմ անով որ զիս կը զօրացունէ՝։ Ինք երբէք թշնամիէ մը յաղթուեցա՞ւ։ Յիրաւի վրան յարձակեցան, բայց բնաւ չկրցան յաղթել։ Ուրեմն ինչո՞ւ իմ մարմնոյս գործին դժուարութիւններուն առջեւ կը դնէ։ Ամենակարողութեան անկարելի բան կա՞յ։ Պետրոս չը՞կրնար համարձակ ծովուն վրայ քալել՝ եթէ Քրիստոս հրաման տայ։ Եթէ կը սկսի ընկըղմիլ՝ Քրիստոսի տկարութենէ՞ն է՝ թէ իր հաւատքին պակասութենէն։ Ես արժանի՝ եմ դըժոխք երթալու՝ եթէ մահկանացուաց սպառնալիքներուն զիջանիմ, նոյնպէս ալ արժանի եմ երկինքէն մերժուելու՝ եթէ լեզուի յանդիմանութիւնը կրնայ զիս վախցունել ու անկէ փախցունել։ Ինչ՛ եթէ հայր՝ մայր՝ կամ էրիկ՝ կամ կին կամ թէ երկրի վրայ ամենէն մտերիմ բարեկամս ըլլայ, (եթէ անանկ մարդը բարեկամ կրնայ կոչուիլ, որ զիս դատապարտութեան կ՚ուզէ քաշել,) պիտի ընծայե՞մ ան ամէնը և պիտի չհրաժարի՞մ անոնցմէ, որոնք զիս Քրիստոսէն ետ բռնել կ՚ուզեն։ Անոնց բարեկամութիւնը Աստուծոյ թըշնամութեանը հաւասար կու գա՞յ, կամ իմ դատապարտեալ հոգիիս մխիթարութիւն մը կրնա՞յ ըլլալ։ Ես մարդոց փափաքներուն զիջանելով սիրոս Տէրոջս դէմ խռովցունե՞մ պիտի։ Ո՛չ, ծնկան

վրայ եկած ինծի աղաչեն, ես ընթացքս դադրեցունելու և վրանին նայելու չեմ. պիտի գոցեմ ականջներս որ անոնց աղաղակը չլսեմ. կ՚ուզեն շողոքորթեն կ՚ուզեն սրդողեն. թող բերաննին ու շուրթերնին ինծի դէմ բանան, ես միտքս դրեր եմ Քրիստոսի զօրութիւնովը անոնց դէմ դնել և անոնք իբրև փոշի սեպել: Եթէ զիս պատիւով հրապուրեն՝ աշխարհիս թագաւորութիւնները անգամ երկրի կղկղանքէն վեր բան մը պիտի չսեպեմ. Ո՛վ երջանիկ հանգիստ. ո՛վ փառաւորեալ վիճակ. ո՞վ կը փոխարինէ քեզ երազներու և շուքերու հետ: Ո՞վ կրնայ մէկը հրապուրել կամ փոխցունել որ քեզմէ ետ կենայ: Ո՞վ պիտի չջանայ՝ չպատերազմի՝ չհսկէ և չվազէ, ան ալ ուժով՝ և մինչև վերջին շունչը անգամ, քեզ ստանալու համար: Անշուշտ անոնք միայն՝ որ քեզ չեն ճանչնար. և քու փառքիդ չեն հաւատար":

5. Երկնային մտածութեան մէջ գործածուելու վերջին զգացումը ուրախութիւնն է: Սէրը՝ փափաքը՝ յոյսը և համարձակութիւնը ամէնը կը ծառայեն մեր ուրախութիւնը զարթուցանելու: Ասիկայ այնքան փափաքելի է 'ի բնէ ամէն մարդու, և այնքան էականապէս հարկաւոր է մեր երջանկութեանը՝ որ կը յուսամ թէ հարկ չէ շատ համոզել քու կեանքդ զուարճալի ընող բանի մը համար: Ասնորոյ սեպելով թէ արդէն համոզուած ես որ մարմնին հեշտութիւնները անասնական և կորստական են, և քու իրական ու աւետարանական ուրախութիւնդ երկինքէն ըլլալու է, համոզելու փոխարէն պիտի անցնիմ կերպին վրայ խօսելու: Ընթերցող, եթէ նախընթաց գործքերը աղէկ կարգին դրեր ես, քու հանգիստդ

քեղի տեսանելի եղած է, դուն կը հաւատաս անոր ճշմարիտ ըլլալուն, համոզուած ես անոր դերազանցութիւններուն, սիրահարեալ ես անոր, կը ցանկաս, կը յուսաս և միտքդ դրած ես քաղցութեամբ մարմնջիկ ամենայն ձեռք ձգելու համար։ Բայց ուրախութիւնը ասոնց մէջը գործ մը ունի՞։ Մենք ձեռքերնիս անցած բարիքին վրայ կ՚ուրախանանք. ներկայ բարիքն է որ ուրախութեան առարկայ կ՚ըլլայ, և դուն պիտի ըսես, թէ "Աւա՜ղ որ տակաւին այդ բարիքին հասած չեմ"։ Բայց քիչ մըն ալ խորհէ ինքնիրենդ։ Պզտիկ բան մըն է Աստուծոյ պարգևի մուրհակ ունենալը։ Իր անսխալ խոստումները ուրախութեան հիմն չե՞ն։ Նոր թագաւորութիւնը մանկու հանապազօրեայ ակնկալութեամբը ապրիլը ոչի՞նչ բան մըն է։ Իմ ապագայ կենացս մէջ փառաւորուելու վստահութիւնս բաւական հիմն չէ՞ անպատմելի ուրախութիւն ունենալու։ Ուրախութիւն չէ՞ թագաւորութեան մը ժառանգ եղողին՝ խորհիլ՝ իր քիչ ատենէն ունենալիք բաներուն վրայ, թէև հիմա ծառայէ մը տարբեր չըլլայ։ Չէ՞ որ պատուէր և օրինակ ունինք "Աստուծոյ փառաց յուսովը պարծենալու"։

Հիմա ուրեմն՝ ով ընթերցող՝ անգամ մըն ալ ձեռք առ հոգիդ և տար անիկայ ամենաբարձր լեռանը գագաթը, ցուցուր անոր Քրիստոսի թագաւորութիւնը և անոր փառքը, և ըսէ անոր, "Ահա ամէնը քու Տէրդ քեզի պիտի տայ, որ անոր հաւատացեր և անիկայ սիրեցեր ես։ Քու Հայրդ հաճեցաւ որ թագաւորութիւնը քեզի տայ։ Կը տեսնե՞ս այս սքանչելի փառքը՝ որ քու վրադ կը կենայ։ Բոլոր ասոնք քու ժառանգութիւնդ են։ Ա՛յս թագը քուկդ է, այս զուարճու-

թիւնները քուկդ է, ու ընկերները՝ ու գեղեցիկ տեղերը՝ ամէնը քուկդ են. որովհետեւ դուն Քրիստոսինն ես և Քրիստոս քուկդ. երբոր դուն անոր հետ միացար, անոր հետ մեկտեղ բոլոր աս բաներն ալ ունեցած եղար": Այսպէս տար քու սիրտդ խաւարացեալ երկիրը, ցուցո՛ւր անոր գեղեցիկ լեռները և պտղաբեր ձորերը, ցուցո՛ւր անոր քու ծաղկած խաղողի ողկոյզներդ որ համազուփ թէ կաթէն ու մեղրէն լաւագոյն բաներ բըղխող օրհնեալ երկիր է անիկայ: Մտիր սուրբ քաղաքին դռներէն և "Նոր Երուսաղեմին" փողոցները պտըտէ. "Սիօնին չորս կողմը և անոր բոլորտիքը պտըտէ, աշտարակները համրէ՛, ուշադրութեամբ դիտէ անոր պարիսպները, անոր պալատները զննէ՛ ու պատմես" քու հոգիիդ: Չէ՞ որ Աստուծոյ փառքը ունի, և չէ՞ որ անոր լուսաւորութիւնը խիստ պատուական քարի նման է, ակնվանիի երեւոյթով յասպիս քարի պէս": Տես "քաղաքին պարիսպին տասներկու հիմերը, և անոնց վրայ՝ Գառնուկին տասներկու առաքելոց տասներկու անունները: Եւ անոր պարիսպին շինուածքը յասպիս քարէ է. ու քաղաքը զուտ ոսկի է՝ մաքուր ապակիի նման: Եւ քաղաքին պարիսպին հիմերը ամէն տեսակ պատուական քարերով զարդարուած են: Եւ տասներկու դուռները տասներկու մարգարիտ են. ամէն մէկ դուռը մէյմէկ մարգարիտ է; ու քաղաքին հրապարակը մաքուր ոսկի է, թափանցիկ ապակիի նման. և անոր մէջը տաճար չկայ. ինչու որ Տէր Աստուած Ամենակալը՝ ու Գառնուկը անոր տաճարն է: Եւ քաղաքը արեւի ու լուսինի պէտք չունի, որ զանիկայ լուսաւորեն. ինչու որ Աստուծոյ փառքը զանիկայ կը լուսաւորէ, ու անոր ճրագը Գառ-

նուէն է։ Եւ փրկուած ազգերը անոր լուսովը պիտի քալեն։ Ու խօսքերը հաւատարիմ ու ճըշմարիտ են. և սուրբ մարգարէներուն Տէր Աստուածը իր Հրեշտակը" և իր Որդին "ղրկեց՝ իր ծառաներուն ցուցընելու ինչ որ շուտով պէտք է ըլլայ"։ Բոլոր ասոնց համար այսպէս ըսէ՛ քու հոգիիդ. "Ա՛հ իմ հոգիս՝ աս է քու հանգիստդ, և աս պիտի ըլլայ յաւիտեան քու բնակելու տեղըդ"։ Թո՛ղ բոլոր "Սիօնի" որդիքը "ուրախանան, և Յուդայի աղջիկները թո՛ղ ցնծան. ինչու որ Տէրը մեծ է ու խիստ օրհնեալ է մեր Աստուծոյն քաղաքին մէջը՝ իր սուրբ լեռանը վրայ. գեղեցիկ բարձրութիւնով բոլոր երկրի ուրախութիւնը Սիօն լեռն է. Աստուած անոր պալատներուն մէջը ապաւէն գիտցուած է"։

Տնկաւին յառաջ գնա՛, սէր ունեցող հոգին յաճախակի վեր կ'ելլէ և երկնային Երուսաղեմին փողոցները ընտանեբար կը պտըտի. տեսութիւն ընելով նահապետաց ու մարգարէից հետ, առաքեալները բարևելով և մարտիրոսաց խումբերուն վրայ զմայլելով. այսպէս քու սիրածդ որպէս թէ փողոցէ փողոց պտըտցո՛ւր. բե՛ր անիկայ մեծ Թագաւորին պալատը, տա՛ր անիկայ որպէս թէ սենեակէ սենեակ և ըսէ անոր, "Ահա հոս պիտի բնակիմ, հոս պիտի ապրիմ, հոս զԱստուած պիտի փառաբանեմ. և հոս պիտի սիրեմ ու սիրուիմ։ Քիչ ատենէն ես ալ ան երկնային երգիչներուն մէկը պիտի ըլլամ և աւելի կատարելութեամբ պիտի երգեմ. Ես ալ աս երջանիկ ընկերութեան մէջ պիտի մտնեմ և իմ ձայնս անոնց հետ միանալով պիտի հնչեցունէ ան քաղցր մեղեդիները։ Արտասուքներս պիտի օրհնուին, հառաչանքներս ցընծութեան ձայնի պիտի փոխուին; և իմ կաւեղէն

խրճիթիս տեղը աս պալատը պիտի վայելեմ, բան-տարգելութեան տեղնիս Հնոտի լաթերը աս չը-քեղ Հագուստներուն պիտի փոխուին, և աս ա-նարգ մարմինս մէկ դի պիտի մնայ ու անանկ ար-փիափայլ՝ Հոգևոր մարմին մը պիտի Հագնիմ», «Ինչու որ առջի բաները անցան»: «Փառաւոր բա-ներ կը պատմուին քեզի Համար, ո՛վ Աստուծոյ քաղաքը»: Երբոր աս փառաւոր տեղին վրայ կը նայիմ, գարշելի տեղի մը և սարսափելի բանտի մը պէս կ՚երևայ երկիրը: Ո՜Հ, ո՛րչափ տարբե-րութիւն կայ տկար, Նուաստ, Հառաչող, մեռած և դերեզմանի մէջ փտած մարդու մը և աս յաղ-թող, լուսափայլ սուրբերէն եղող մէկուն մէջ տե-ղը: Աս տեղը՝ «Հաճութիւններուն գետէն պիտի խմեմ, գետի վտակները պիտի ուրախացունեն Աս-տուծոյ քաղաքը»: Եթէ Իսրայէլը օրինաց լու-ծին տակը՝ «ամէն բանին առատութեանը Համար» ուրախութեամբ և յօժար սրտով Տէր Աստուծոյ ծառայութիւն ընելու էր, անշուշտ ես փառքին առատութեանը Համար ուրախութեամբ և յօ-ժար սրտով պիտի ծառայեմ անոր: Եթէ Հա-լածեալ սուրբերը «իրենց ստացուածքին կողոպ-տումը ուրախութեամբ ընդունեցին», ես ուրա-խութեամբ պիտի չընդունիմ բոլոր իմ ըրած վը-նասներուս տասանակ մէկ լեցուն փոխարինութիւնը: Եթէ «Հրեաներուն կոչունքի և ուրախութեան օր էր ան օրը», որ իրենց թշնամիներէն Հանգստա-ցան, և տրտմութիւննին ուրախութեան, ու սու-գերնին բարի օրուան դարձաւ, ուրեմն ինչ օր պիտի ըլլայ ան օրը իմ Հոգիիս, որուն Հանգստութիւնը և վիճակին փոփոխութիւնը անՀամեմատ մեծագոյն պիտի ըլլայ: «Երբոր մոգերը տեսան ան աստղը» որ «Քրիստոսի կ՚առաջնորդէր», «շատ մեծ ուրա-

խութիւնով ուրախացան՝. բայց քիչ ատենէն պիտի տեսնեմ ես անիկայ, որ բուն խինդն է Առաւօտեան պայծառ Աստղը՝։ Եթէ աշակերտները գերեզմանէն ելան մեծ ուրախութիւնով՝ երբոր լսեցին թէ իրենց Տէրը յարութիւն առեր է՝, ի՜նչ պիտի ըլլայ իմ ուրախութիւնս՝ երբոր տեսնեմ զանոր փառքով թագաւորելը ու զիս ալ անոր հետ երջանիկ հաղորդակցութիւն ունենալու բարձր պատիւը ընդունած։ Ան ատենը ես իրաւցընէ մոխիրի տեղ փառք, սուգի տեղ ուրախութեան իւղ, կոտրած հոգիի տեղ՝ գովութեան պատմուճան՝ պիտի ունենամ, և Սիոնը ինծի յաւիտենական գերազանցութիւն և շատ դարերու ուրախութիւն պիտի ըլլայ՝։ Աւրեմն ինչո՞ւ չթօթվուիմ՝ չելլեմ հողին փոշիէն, և չզարդարեցունեմ իմ զգեստներս։ Ինչո՞ւ համար անոնք հաճոյքները ոտքի տակ առնելով, ապագայ փառաց հաճոյքներով չեմ կերպարաներ ինքզինքս։ Ինչո՞ւ համար իմ կեանքս մշտատև ուրախութիւն չէ և երկնիքին համը միշտ իմ հոգիիս քիմքին վրայ չէ՞"։

Հոս պէտք է ծանուցանեմ որ հարկ չէ աս ըղձացումները ճիշդ աս կարգովը կամ ամէնը մէկանց 'ի գործ դնել։ Երբեմն քու զգացումներուդ մէկը աւելի կարօտ կ'ըլլայ զօրանալու, կամ միւսներէն աւելի կենդանի կ'ըլլայ. կամ թէ՝ եթէ ժամանակդ կարճ է, մէկը մէկ օրը՝ միւսը յաջորդօրը կրնայ 'ի գործ դրուիլ. որ աս ամէնը քու խոհեմութեանդ կը թողում որոշել։ Պատեհութիւն մըն ալ ունիս, եթէ կ'ուզես բանեցունել անիկայ, հակառակ կամ աւելի խառն զգացումներ գործածելու, ինչպէս ընդդէմ մեղաց, որ կ'ուզէ զրկել քու հոգիդ աս անմահ ուրախութիւններէն. աստուածային երկիւղ՝ որ չըլլայ թէ անոր պարգևնե-

րը չարաչար գործածես. Աստուծմէ ամչնալ առուգ ընել անոնք չարաչար գործածելուդ համար. անկեղծ զղջում. անձին մեղադրանք. սրտիդ վըրայ նախանձութիւն. և գթութիւն անոնց վրայ՝ որոնք աս անմահ ուրախութիւնները կորսնցունելու վտանգին մէջն են:

Երկրորդ: Հիմա նայելու ենք թէ՝ ինչպէս կը յառաջանայ երկնային մտածութիւնը առանձնախօսութեամբ և աղօթքով: Մտածութիւնը քայողութեան պէս է, որ ճշմարտութիւնները, և պարտաւորութիւնները լոկ բացատրելը հազիւ երբեք անանկ յաջող արդիւնքներ յառաջ կը բերէ, ինչպէս անոնք եռանդուն կերպով խղճին ուղղելը. և մանաւանդ երբոր աստուածային օրհնութիւնը ջերմեռանդութեամբ կը մաղթուի՝ որ ասանկ ջանքերուն հետ երթայ:

1. Առանձնախօսութիւն ընելով իմացիր քու վիճակիդ վրայ քու հոգւոյդ հետ փաստաբանութիւն ընելը որ անով սիրտդ զօրացունես: Անկեղծաբար վիճաբանութեան մտիր սրտիդ հետ: փաստաբանութիւն ըրէ անոր հետ ամենազգու և սրտաշարժ ոճով ու թախանձէ ամենազօրաւոր և ծանրակշիռ փաստերով: Ասիկայ ամէն դարու՝ Աստուծոյ սուրբ մարդոցը ըրած բանն է. Այսպէս Դաւիթ կը գրէ, "Ինչո՞ւ կը ցածնաս ո՛վ իմ հոգիս, և ինչո՞ւ իմ ներսիդիս անհանգիստ ես. Աստուծոյ յուսա. ինչու որ անգամ մըն ալ զանիկայ պիտի գովեմ իր երեսին փրկութեանը համար": Ու դարձեալ, "Ո՛վ իմ անձս օրհնէ Տէրը, ու ան ամէնը որ իմ ներսիդիս է, անոր սուրբ անունը: Ո՛վ իմ անձս օրհնէ Տէրը, և անոր բոլոր բարերարութիւնները, մի մոռնար". Աս առանձնախօսութիւնը գործածուելու է հոգե-

ին այլ և այլ զգացումներուն և անոր այլ և այլ պիտոյից համեմատ ։ Մէկու մը՝ ինք իր անձին քարոզութիւն ընելն է ասիկայ. վասն զի ինչպէս որ ամէն ծառայ գործածող կամ ընտանիքի տէր եղող բարի մարդը իր տանը քարոզիչն է, անանկ ալ ամէն բարի քրիստոնեայ իր հոգւոյն քարոզիչն է ։ Վասնորոյ քարոզիչ մը այլոց քարոզելու ատեն՝ ինչ ճամբայ որ կը բռնէ, նոյնը բռնել ջանալու է ամէն քրիստոնեայ ինք իրեն խօսելու ատենը ։ Գիտէ՛ ամենասրտաշարժ քարոզիչին խօսքերը և խօսելու կերպը, քեզի օրինակ բռնէ՛ անիկայ. և ինչ ճամբայ որ ան կը բռնէ իր ժողովրդեանը սրտերուն, դուն ալ նոյնը բռնէ՛ քու սրտիդ ։ Այսպէս ըրէ՛ քու երկնային մտածութեանդ ատենը. բացատրէ ինքզինքիդ ան բաները որուն վրայ կը խորհիս. անոնց վրայ հաւաքէ, հաստատէ՛ Սուրբ Գիրքով, և յետոյ քու վրադ առ անոնք՝ անոնց բնութեանը և քու կարօտութեանդ նայելով ։ Պէտք չէ ասոր դէմ առարկութիւն բերել՝ ինքզինքդ աս բանին տկար զգալդ ։ Աստուած չը՞ հրամայեր քեզի որ «Սուրբ Գիրքը քու որդւոցդ կրկին և կրկին անգամ սորվեցունես. և թէ տանդ մէջ նստած ատենդ, թէ ճամբայ գացած ատենդ, և թէ պառկելու ու ելլելու ատենդ՝ անոնց վրայ խօսիս» ։ Ու եթէ քու զաւակացդ սորվեցունելու կարողութիւն ունիս, շատ աւելի քու անձիդ կրնաս սորվեցունել. և եթէ կրնաս աստուածային բաներու վրայ խօսիլ այլոց, ինչո՞ւ քու սրտիդ ալ չես կրնար ։

2. Երկնային մտածութիւնը կը յառաջանայ՝ ինչպէս որ առանձնախօսութեան մէջ մեր անձերուն խօսելով՝ անանկ ալ աղօթքի մէջ Աստուծոյ խօսելով ։ Սովորական աղօթքը շատ պատշա-

ճութեամբ կրնայ միանալ մտածութեան հետ իրրև նոյն պարտաւորութեանը մէկ մասը։ Ո՛րչափ անգամ կը տեսնենք որ Դաւիթ մի և նոյն Սաղմոսին մէջ, մէյմը իր հոգիին հետ կը խօսի՝ մէյմըն ալ Աստուծոյ։ Առաքեալը կը հրամայէ մեզի, որ "սաղմոսներով և օրհնութիւններով և հոգևոր երգերով մէջերնիս խօսակցինք". և անտարակոյս ասոնց մէջ Աստուծոյ ալ կրնանք խօսիլ։ Ասիկայ հոգիին մէջ աստուածային ներկայութեանը զգացումը կը պահէ. և կը ծառայէ անիկայ մեծապէս զօրացունելու և հրահրելու։ Արդհետև Աստուած մեր խորհուրդներուն ամենաբարձր առարկան է, վասնորոյ անիկայ հոգւոյ աչօք մեր տեսնելը՝ անոր խօսիլը և անոր հետ փաստաբանութիւն ըլլալը՝ մտածութեան գործին որ և իցէ մասէն աւելի կը բարձրացունէ հոգին. և կը գրգռէ զգացումները։ Ինչ և մեր անձերնուս խօսած ատեննիս՝ անզգայ մնանք, սակայն երբոր խօսքերնիս Աստուծոյ կը դարձունենք, անոր ահաւորութիւնը մեզի կ՚ազդէ. և անոր սրբութիւնը և մեծ վայելչութիւնը՝ որուն կը խօսինք, բանը աւելի ազդու և խօսքերը աւելի թափանցող կ՚ընէ։ "Իսահակ դաշտը ելեր էր աղօթք ընելու" գրուած տեղը՝ ծանօթութեան մէջ "մտածութիւն ընելու" գրուած է, վասն զի Եբրայեցերէն բառը երկուքն ալ կը նշանակէ։ Այսպէս մեր մտածութեանցը մէջ առանձնախօսութիւնը և աղօթքը մէկտեղ խառնելը՝ երբեմն մեր սրտին՝ երբեմն Աստուծոյ խօսելով՝ կարծեմ" աս երկնային գործին մէջ առնելու ամենէն վերին քայլերնիս է։ Բայց կարծելու ալ չենք թէ միայն աղօթքով անցնիլ և մտածութիւնը ձգելով ալ կ՚ըլլայ. վասն զի ասոնք որոշ պարտաւորութիւններ են, և երկուքն

ալ կատարուելու են ։ Ինչպէս որ մեկին՝ անանկ ալ միւսին կարօտ ենք, և անոր համար որն որ զանց ընենք ; մեր անձերուն անիրաւութիւն կ'ընենք ։ Ասկէ 'ի զատ՝ անոնց մէկուն միայնակը երաժշտութեան՝ բանաստեղծութեան հետ միանալուն յարմարութիւն մը կ'առնէ. վասն զի մէկզմէկու ոյժ կու տան ։ Մտածութեան մէջ մեր անձին խօսիլը աղօթքով առ Աստուած խօսելէն առաջ ըլլալու է ։ Աս արժան կարգադրութիւնը չափահասներուն համար՝ մարդիկ շատ քիչ յարգութեամբ և եռանդով կը խօսին Աստուծոյ քան թէ պիտի խօսէին հրեշտակի մը, եթէ իրենց երևար. կամ դատաւորի մը, եթէ խօսէին անոր իրենց կենացը պաշտպանութեանը համար ։ Աղօթքի մէջ երկնից Աստուծոյն խօսելիս շատերուն կարծածէն աւելի ծանրակշիռ գործ մըն է ։

---

## ԳԼՈՒԽ ԺԸ

Թէ ինչպէս կ'օգնեն ուրիշ առաքինութիւնները երկնային մտածութեան, և թէ ինչպէս կը պաշտպանուի անիկայ խաբեբայ սիրտէն ։

Երկնային մտածութեան ամենադժուար մասը մեր սրտին մէջ երկնային բաներուն մէկ կենդանի զգացումը պահելն է ։ Աւելի դիւրին է ամբողջ օր մը երկնից վրայ լոկ խորհիլը, քան թէ քառորդ մը կենդանի ու ջերմեռանդ ըլլալ ան խորհուրդներուն մէջ ։ Հաւատքը տկար է, վասն զի մենք ըստ մասին նորոգուած ենք, և ան հաւատքին գործը ընդդիմութիւններով լեցուն

աշխարհի մը դէմ է․ և գերբնական ըլլալովը՝ հակառակ է ակարանալու և նուաղելու, եթէ շարունակ չըզգուշանք։ Զգայութիւնք մարմնոյ զօրութեանը համեմատ զօրաւոր է․ և բնական ըլլալով՝ քանի որ բնութիւնը կը շարունակէ՝ ան ալ կը դիմանայ։ Հաւատոյ առարկաները հեռու են, բայց զգայութեան առարկաները հոս են։ Մի՞նչև երկինք երթալու ենք որ մեր ուրախութիւնը գտնենք։ Այնքան դիւրին բան մը չէ ուրախանալ անանկ բանի մը վրայ, որ մենք տեսած չենք և տեսնողն ալ չկայ քովերնիս, ան ալ ըսէ Աստուածաշունչին խոստմունքովը․ որչափ որ տեսած և ունեցած բաներնուս վրայ ուրախանալը։ Կատարեալ հոգևոր խոհեմութիւն մը պիտի ըլլայ զգայութիւնը մէջ առնել հաւատքին օգնելու համար։ Աղէկ գործ մը ըրած պիտի ըլլանք՝ բարեկամներ ընելով ան բաները որ սովորաբար թշնամի են մեզի․ և մեզ Աստուծոյ քաշելու միջոցներ ընելով ան բաները՝ որ այնքան յաճախակի մեզ Աստուծմէ եւս բաժնելու միջոց կ՚ըլլան։ Ինչո՞ւ համար Աստուած մեզի տուաւ մեր զգայարանքը և միանգամայն անոնց առարկաները, եթէ անոնք չեն ծառայեր իրեն փառաբանութիւն տալու գործին մէջ։ Ինչո՞ւ համար Սուրբ Հոգին Նոր Երուսաղէմին փառքը անանկ ոճով մը կ՚ըստորագրէ, որ մինչև անգամ մարմնին հաճելի կու գայ։ Մի՞թէ անոր համար՝ որ կ՚արծենք թէ երկինքը ոսկիէ և մարգարիտէ շինուած է, և սուրբերն ու հրեշտակները կ՚ուտեն և կը խմեն։ Ո՛չ՝ այլ ան բաները մեր կարող եղած կերպովը ըմբռնելու օգնելու համար, և ասոր այլաբանական խօսքերը հայելիի պէս առջևնիս դնելու համար է, որուն մէջ անկատար կերպով պիտի տես-

նենք այն բաները, մինչև որ հասնինք անմիջապէս և իրապէս տեսնելու: Նոյն այս գլուխը՝ երկնային մտածութիւնը զգալի առարկաներէն ինչպէս օգնուիլը ցուցընելէն 'ի զատ՝ պիտի ցուցընէ նաև թէ ինչպէս հաստատ պահելու է անիկայ, երբոր սիրտը կամ միտքը ուրիշ առարկաներու վրայ կը թափառի:

Ուստի. Զգալի առարկաները երկնային մտածութեան օգնելու համար՝ այս խրատը կու տամ, որ զգալի բաներէն զօրաւոր ենթադրութիւններ կամ օրինակներ հանես, և բաղդատես զգայութեան առարկաները հաւատոյ առարկաներուն հետ:

4. Երկնային մտածութեան մէջ քու զգացումներուդ օգնելու համար՝ քու զգայութեանդ կարելի եղածին չափ զօրաւոր օժանդակներ'ը առ: Ան համարձակութեամբը խորհէ՛ վերին ուրախութեանց վրայ, ինչ համարձակութեամբ որ Սուրբ Գիրքը կը բացատրէ զանոնք: Քու ըմբռնումներդ զգայական բաներու նմանցուր, թէ սէրը և թէ ուրախութիւնը կը յառաջանայ ընտանի ծանօթութիւն պահելով: Երբոր կը ջանանք խորհիլ Աստուծոյ և յաւիտենական փառաց վրայ, Սուրբ Գիրքին անոնք ցուցընելու կերպը չգանեցունելով, ըմբռնումնիս կը ցնդի և բան մը չենք ունենար խորհուրդներնիս վրան հաստատելու. այնքան հեռու կը դնենք զանոնք մեզմէ, որ այն բաներուն վրայ ունեցած խորհուրդներնիս անընդել կ'ըլլան, և պատրաստ կ'ըլլանք ըսելու, թէ ինչ որ մեզմէ վեր է՝ մեզի ոչինչ է: Եթէ Աստուծոյ և յաւիտենական փառաց մեր ըմբռնումներէն վեր ըլլալը միայն խորհինք, սէր յառաջ չգար և սէրէն աւելի ուրախութիւն չգոյանար: Աստուծոյ որ-

քան որ Կրիստոս ինքզինքը քեզի մօտ կը դնէ, դուն ալ այնքան մօտ ըմբռնէ՛ անիկայ քեզի, որ աստուածային բնութեանը կրկին անմատչելի չըլլայ։ Կրիստոսի վրայ բուն մեր փառաւորեալ բնութեանը մէջ եղածի՛ այս խորհէ՛։ Փառաւորեալ սուրբերուն վրայ կատարեալ եղած մարդոց այս խորհէ՛։ Ինքզինքդ իբրև Յովհաննէս առաքելային ընկեր երևակայէ՛, երբոր անիկայ Նոր Երուսաղէմը կը զննէր և կը նայէր իր տեսած աթոռներուն՝ փառքին՝ երկնային զօրքերուն և լուսափայլ շքեղութեանը վրայ։ Ինքզինքդ անոր ճանապարհորդակից ըրէ՛ երկնային Թագաւորութեանը մէջ, և ըսէ՛ թէ տեսած ես բոլոր սուրբերը "Ճերմակ հանդերձներ հագած, և ձեռքերնին արմաւենիներ բռնած", և լսած ես "Աստուծոյ ծառային՝ Մովսէսին երգը ու Գառնուկին երգը"։ Եթէ իրօք տեսած ու լսած ըլլայիր աս բաները, ի՜նչ մեծ յափշտակութեան մէջ պիտի ըլլայիր։ Ու աս ենթադրութիւնը քու վրադ ըրած ատենդ՝ որչափ հաստատ ըլլայ հաւատքդ և որչափ իրական մօտ ըլլայ քու գաղափարդ անոնց վրայ, այնքան աւելի քու մտածութիւնդ սիրտդ կը բորբոքէ։ Առանց զգականաց այս ան բաներուն պատկերը շինելու՝ Սուրբ Գրոց անոնց վրայ ըրած ստորագրութիւնը մտքիդ առջևը բերելով՝ կարելի եղածին չափ կենդանի պատկեր մը նկարագրէ՛ քու մտքիդ մէջ, մինչև որ կարող ըլլաս ըսելու, "փառքի նշոյլ մը կ'երևայ ինծի. անանկ կու գայ ինծի թէ սրբութեան և փառաբանութեան աղաղակներ կը լսեմ. և Աբրահամին՝ Դաւիթին՝ Պետրոսին՝ Պօղոսին և ուրիշ յաղթող հոգիներուն քովը կեցեր եմ։ Ինծի անանկ կու գայ թէ կը տեսնեմ մինչև անգամ

Աստուծոյ Որդին ամպերով եկած և աշխարհը անոր ատեանին առջևը կեցած՝ իրենց վճիռը ընդունելու, և կը լսեմ որ կ'ըսէ, 'Եկէ՛ք իմ Հօրս օրհնածները', և անոնք խնդալով կը մտնեն իրենց Տէրոջը ուրախութիւնը։ Ես բաներուն վրայ տեսած երազներս անգամ երբեմն ներգործած են ինծի, և աս իրաւացի ենթադրութիւնները շատ աւելի ազդելու չե՞ն ինծի։ Ի՞նչ պիտի ըլլար արդեօք՝ 'եթէ լսէի Պօղոս առաքեալին հետ ան 'չըպատմուելու խօսքերը'։ Կամ սուրբ Ստեփաննոսին հետ տեսնէի 'երկինքը բացուած և Քրիստոս Աստուծոյ աջ կողմը կայնած'։ Անշուշտ աս մէկ տեսարանը կ'արժէր անոր վրայ եկած քարի անձրևը։ Կամ ինչ պիտի ըլլար՝ եթէ Միքիային պէս տեսնէի 'Տէրը իր աթոռին վրայ նստած՝ ու երկինքի բոլոր զօրքերը անոր բոլորտիքը աջ կողմը ու ձախ կողմը կայնած'։ Ես՝ Աստուծոյ մարգիկը տեսակ բաներ տեսան, ես ալ քիչ ատենէն՝ անոնց մինչև մեռած ատեննին տեսածէն շատ աւելին պիտի տեսնեմ." Այսպէս կը տեսնես թէ որչափ կը գրգռուին մեր զգացումները աս երկնային գործին մէջ, եթէ երանութեան վիճակին վրայով զօրաւոր և ընտանի օրինակներ առնենք մեր մարմնաւոր զգայարաններէն, ինչպէս որ Սուրբ Հոգին կը զիջանի իր իմաստները ան ոճով մեզի բացատրել։

2. Մեր զգայարանաց աս երկնային գործը յառաջացունելու միւս կերպը երկնային վայելքները երկրաւոր վայելքներուն հետ բաղդատելն է. զոր օրինակ. Զօրաւոր փաստաբանութիւն մը կրնաս ընել սրտիդ հետ՝ հեշտասէր մարդոց ապականեալ հաճութիւնները վերին ուրախութեանց հետ բաղդատելով։ Խորհէ՛ ինքնիրենդ, "Ան-

չափ հաճելի է մեղաւորին՝ չարութիւն ընել, և ճշմարտապէս հաճելի պիտի չըլլա՞յ Աստուծոյ հետ ապրիլը։ Եթէ գինեմոլը իր գաւաթէն անանկ հաճութիւն կը վայելէ, որ դատապարտութեան վախը ձգել չտար ան սովորութիւնը. եթէ շնացողը աւելի յօժար է զրկուիլ իր պատիւէն՝ ստացուածքէն՝ և հոգւոյն փրկութենէն՝ քան թէ իր անասնական հաճութիւններէն. եթէ դժոխք տանող ճամբան ասանկ հաճութիւններ կրնայ տալ, ուրեմն որքան պիտի ըլլան սրբոց հաճութիւնները երկինքին մէջ։ Եթէ ագահը այնչափ հաճութիւն կը գտնէ իր հարստութենէն և փառասէրը իշխանութեան բարձրերէն և պատուոյ անուններէն, ուրեմն ի՛նչ հաճութիւն պիտի ունենան սուրբերը յաւիտենական գանձերէն և երկնային պատիւներէն, ուր որ իշխանութիւններէն ու պետութիւններէն վեր պիտի դասուինք և Քրիստոսի փառաւոր հարսը պիտի ըլլանք։ Որչափ հաճութեամբ հեշտասէրը կը հետևի իր զբօսանքներուն առտուընէ մինչև իրիկուն՝ կամ կը նստի թուղթ կամ նարտ խաղալու օրերով և գիշերներով։ Ո՜հ ինչ պիտի ըլլայ ուրեմն մեր ուրախութիւնը՝ երբոր մեր հանգիստին հասնինք և նայինք կենդանի Աստուծոյ երեսը, և փառաբանութիւն երգենք Նոր ու Գառնուկին",

Նկատէ՝ նաև վերին ուրախութիւնները ըմբռ- [illegible] Այսպէս խորհէ՝ ինքնիրենդ. "Որչափ անոյշ է կերակուրը իմ քիմքիս՝ անօթի եղած ատեն, մանաւանդ եթէ Իսահակին բաժին պէս 'իմ սիրած խորտիկս' ըլլայ։ Ուրեմն ի՛նչ հաճութիւն պիտի ունենայ իմ հոգիս՝ երբոր ճաշակէ 'զՔրիստոս կենդանի հացը' և 'անոր սեղանէն ուտէ ու

խմէ իր Թագաւորութեանը մէջ՝ ։ Եթէ սառ ջուր մը այնքան անուշ էր Յիսուսին՝ իր անօթութեան ատենը, որ իր անդրանկութեանը պէս տուող գին մը տուաւ անիկայ ծախու առնողը համար, ո՛րչափ պիտի յարգեմ ուրեմն ես սա անապական կերակուրը ։ Ո՛րչափ հաճելի է ջուրը յետին ծարաւութեան ատեն, որուն ներգործութիւնը հազիւ թէ բաւական բացատրուած կ՚ըլլայ ըսելով թէ, ‘Սամփսոն խմեց, և ոգին իրեն դարձաւ՝ ։ Ո՛հ, ո՛րչափ հաճելի պիտի ըլլայ իմ հոգւոյս՝ խմել ան ‘կենաց ջուրին աղբիւրէն, որմէ ով որ խմէ յաւիտեան պիտի չծարաւի՝ ։ Ո՛րչափ հաճելի են անուշահոտ բուրմունքը հոտոտելեաց, կամ երաժշտութիւնը լսելեաց՝ և գեղեցիկ տեսարանները տեսանելեաց ։ Ի՛նչպէս անուշահոտ պիտի բուրէ ուրեմն ան ‘պատուական իւղը, որ Թափուեցաւ՝ մեր փառաւորեալ Փրկչին գլուխը · և պիտի Թափուի բոլոր իր սուրբերուն գլուխը. և քաղցր հոտը բոլոր երկինքը պիտի լեցունէ ։ Ո՛րչափ հաճելի է ‘երկնային զօրաց՝ երաժշտութիւնը ։ Ո՛րչափ հաճելի պիտի ըլլան վերին իրական գեղեցկութիւնները ։ Եւ ո՛րչափ չքնաղ ան անձեռագործ շինուածքը, ան տունը՝ ուր Աստուած ինքը կը բնակի, Աստուծոյ քաղաքին՝ ճեմելիքները և տեսարանները և երկնային դրախտը"։

Համեմատէ՛ նաև վերին ուրախութիւնները [illegible] ։ Ասոնք զգայութեան հաճութիւններէն գերազոյն են, բայց ո՛րչափ աւելի բարձր են երկնից ուրախութիւնները ։ Ուրեմն խորհէ՛ որ "եթէ Արքիմիդէս անանկ կը յափշտակուի իր մաթեմաթիքական գիւտերովը՝ որ մահուան սպառնալիքներուն ալ չէն կրնար իր գործը ձգել տալ, այլ իր մտածութիւն-

Բաղդատէ՛ նաեւ երկնից գերազանցութիւնները արարչութեան ու փառաւոր գործերուն հետ, որ մեր աչքերը կը տեսնեն։ Ի՜նչ իմաստութիւն՝ կարգադրութիւն և բարութիւն կը տեսնուի անոնց մէջը․ ի՜նչպէս կը փայլի Արարիչին փառքը աշխարհի կազմակերպութեանը մէջ։ «Տէրոջը գործքերը մեծ են․ անոնք սիրողներուն բոլորէն կը քննուին»։ Ի՜նչ աստուածային ճարտարութիւն կայ մարդոց և անասնոց մարմիններուն կազմութեանը մէջ։ Ի՜նչ գերազանցութիւն՝ ամէն մէկ տունկին վրայ, և ի՜նչ գեղեցկութիւն ծաղիկներուն վրայ։ Որչափ զանազան են խոտերուն՝ տունկերուն՝ պտուղներուն և հանքերուն գոյները՝ ձևերը և օգտակարութիւնը։ Ի՜նչ սքանչելիքներ կը բովանդակին երկրի ու անոր բնակիչացը վրայ․ զոր օրինակ․ Ովկիանոսին ջուրերը իրենց շարժումներովը և ընդարձակութեամբը, և գարնան՝ աշնան՝ ամառուան և ձմեռուան եղանակներուն շարունակ յաջորդութիւնը։ Ուրեմն այսպէս մտածէ՛, «Եթէ աս բաները՝ որ լոկ ծառաներ են մեղանչական մարդոց, այնքան լեցուն են սքանչելիքներով, ալ ան տե՞ղը ի՜նչ պիտի ըլլայ, ուր Աստուած ինքը կը բնակի և Քրիստոսով կատարեալ եղած արդար մարդոց համար պատրաստուած է․ ի՜նչ փառաւորութիւն կայ ադ աստղերուն ամենափոքրին վրայ։ Ի՜նչ լուսափայլ մարմին մըն է լուսինը և ամէն մէկ մոլորակները։ Ի՜նչ անըմբռնելի փառք կայ արեւին վրայ։ Բայց ասոնք ամէնը ոչինչ են երկինքի փառքին քովը։ Ադ արեւը անպիտան բանի պէս մէկդի պիտի ձգուի․ անոր լուսափայլութիւնը իմ Տէրոջս տանը պայծառութեանը քովը խաւարէն աւելի ուրիշ բան մը չէ։ Ես ինքս ադ արեւին չափ պայծառ պիտի ըլլամ։ Բայց աս

Երկիրը իմ Հօրս միայն պատուանդանն է։ Աս որոտումը ոչինչ է անոր ահարկու ձայնին քովը։ Աս հովերը ոչինչ են իր բերնին շունչին քովը։ Նմէ՝ թէ չարերուն և թէ բարիներուն վրայ խրկած անձրևը և ծագեցուցած արևը՝ այսքան սքանչելի են, ո՜րչափ սքանչելի և ո՜րչափ փառաւոր պիտի ըլլայ ան արևը որ ո՛չ ուրիշ մէկու մը, այլ միայն սրբոց և հրեշտակաց վրայ պիտի ծագի»։

Մերին ուրախութիւնները բաղդատէ՝ նաև «Նախախնամութեան» եկեղեցիին մէջ և աշխարհի վրայ ըրած զարմանալիքներուն հետ։ Սքանչելի բան պիտի չըլլա՞ր տեսնել՝ որ ծովը պատի պէս կենայ աջ կողմը և ձախ կողմը, և մէջ տեղը ցամաք գետինը երևայ և Իսրայէլի ժողովուրդը ապահով մէջէն անցնի, իսկ Փարաւոնն ու իր զօրքը խեղդուին. կամ տեսնել Եգիպտոսի տասն հարուածը. կամ քարին ջուր բղխեցունելը. կամ երկրին բացուիլ ու չարերը կլլելը։ Բայց ասոնցմէ շատ մեծագոյն բաներ պիտի տեսնենք. ո՛չ միայն աւելի զարմանալի, այլ և աւելի հաճելի բաներ. ո՛չ արիւն և ոչ բարկութիւն խառնուած. և ո՛չ պիտի աղաղակենք Բեթսամիւսի մարդոցը պէս, «Աս Սուրբ Տէր Աստուծոյն առջևը ո՞վ կրնայ կայնիլ»։ Ո՜րչափ սքանչելի բան մըն է տեսնել՝ որ արևը դադրած կենայ երկինքը, կամ «Աքազին արևու ժամացոյցը տասն աստիճան ետ դառնայ»։ Բայց մենք պիտի տեսնենք որ արև պիտի չըլլայ, կամ լաւ եւս է ըսել, յաւիտեան արև մը պիտի տեսնենք՝ որուն պայծառութիւնը անհունապէս մեծագոյն է։ Ի՞նչ գեղեցիկ կեանք մը պիտի ունենայինք, եթէ մեր խնդրելովը անձրև գար կամ հով փչէր, կամ մեր աղօթքովը երկինքէն կրակ իջնէր և մեր թշնամիները կործանէր՝ ինչպէս որ

Եղիա ըրաւ․ կամ մեռեալը յարուցանէինք Եղիսէին պէս․ կամ հրաշքով ախտաւորը բժշկէինք․ և զանազան լեզուներ խօսէինք առաքելոց պէս։ Իսկ անոնք ոչինչ են ան հրաշալիքներուն հետ բաղդատմամբ, որ պիտի տեսնենք և վայելենք Աստուծոյ քովը․ և անոնք ամէնն ալ բարութեան և սիրոյ զարմանալիքներ ըլլալով։ Մենք անձամբ ասոնցմէ աւելի զարմանալի շնորհքներ պիտի ընդունինք։ Յովնան յարութիւն առաւ միայն ձուկին փորը երեք օր թաղուած վիճակէն․ իսկ մենք շատ տարուան փտութենէ և հողէն պիտի յարութիւն առնենք․ և ան հողը արևին պայծառութեանը պիտի հասնի․ և ան փառքը յաւիտեան պիտի տևէ։ Անտարակոյս՝ եթէ դիտենք Նախախնամութեան հասարակ գործերը անգամ, ինչպէս արևուն շարժմունքը՝ ծովուն մակընթացութիւնը՝ երկրիս հաստատութիւնը՝ պարտէզի մը պէս անձրևով ջրուիլը, չար ու խանգարեալ աշխարհը կարգի մէջ պահուիլը՝ և շատ ուրիշներն ալ՝ ամէնը զարմանալի են։ Բայց ի՞նչ պիտի ըլլան անոնք Աստուծոյ Որդին քովը, աստուածային վեհափառութեան ատենին և երկնային զօրաց կարգին քովը։

Աւելցուր ասոնց վրայ ան մեծամեծ նախախնամութիւններն ալ՝ որ դուն ինքդ վայելեր ես․ և բաղդատէ՛ զանոնք այսուհետև ընդունելիք շնորհքներուդ հետ։ Նայէ՛ քու աղայութեան ու չափահաս ատենի և յաջողութեան ու ձախորդութեան ատենի ընդունած պարգևներուդ վրայ, այլ և այլ տեղեր և զանազան յարաբերութիւններու մէջ ընդունած շնորհքներուդ վրայ․ Միթէ ազնիւ ու անհամար՝ առատ և զուարճալի չե՞ն անոնք։ Որչափ քաղցր եկաւ քեզի, երբոր Աստուած քու տարակոյսներդ լուծեց՝ երկիւղներդ

ցրուեց՝ արգիլեց այն դժուարութիւնները՝ որուն մէջ քու խորհուրդներդ կ՚ուզէին քեզ ձգել. մեղմացուց քու ցաւերդ՝ բժշկեց քու հիւանդութիւններդ և հանեց քեզ որպէս թէ մահէն ու գերեզմանէն։ Սուրբն Այոպէս մտածէ՛, «Այնթէ առնք այնքան քաղցր ու պատուական են, որ առանց անոնց իմ կեանքս մշտական խեղճութիւն մը պիտի ըլլար, եթէ անոր Նախախնամութիւնը երկրի վրայ զիս այնքան բարձրացուց և ՝քաղցրութիւնը զիս մեծցուց՝, ուրեմն որչափ քաղցր պիտի ըլլայ անոր փառաւոր ներկայութիւնը. որչափ պիտի բարձրացունէ զիս իր յաւիտենական սէրը և որչափ մեծ պիտի ըլլամ ես անոր մեծութեանը հետ հաղորդութիւն ունենալով։ Այնթէ պանդխտութեան և պատերազմի ատեն ասանկ պարգևներով կը պահէ զիս, աղ ինչե՛ր պիտի չշնորհէ յաղթութեանս հայրենիքս հասած ատենս։ Այնթէ այսչափ բարիքներ կուտայ ինծի Աստուած՝ իմ մեղաւոր մը եղած ատենս, ուրեմն որչափ բան պիտի պարգևէ երբոր կատարեալ սուրբ մը ըլլամ։ Այնթէ ասանկ շնորհքներ կը վայելեմ իրմէ այնքան հեռու եղած ատենս, ի՛նչ վայելքներ պիտի ունենամ իր անմիջական ներկայութեանը մէջ, ուր միշտ պիտի կենամ իր աթոռին առջևը»։

Սերին ուրախութիւնները՝ աս տեղ հոգևոր փորձանքներով վայելած մխիթարութիւններու հետ ալ բաղդատէ՝ Աստուածաշունչ մատեանը քեզի գիշեր ցորեկ մխիթարութիւն բղխող երկու բաց աղբիւր մը չէ՞։ Քու վիճակիդ ի՛նչ յարմար խոստմունքներ կու գան միտքդ, որ կրնաս Դաւիթին հետ ըսել, «Թէ որ քու օրէնքդ իմ ուրախութիւնս չ՚ըլլար, ան ատենը կորսուած պիտի ըլլայի իմ տրտմութեանս մէջ»։ Սուրբն Այոպէս

խորհէ՛ ինքնիրենը. «Եթէ աս աստուածային բանը այնքան լեցուն է մխիթարութեամբ, ի՛նչ երջանկութեան առատաբուղխ աղբիւրներ պիտի գըտնենք բուն Աստուծոյ քովը: Եթէ անոր Գիրքը այնքան հաճելի է, ի՛նչ պիտի ըլլայ անոր ներկայութեանը փառքը: Եթէ մեր Տէրոջը դաշինքին ձեռագիրը և իր թագաւորութեանը համար մեզի տուած կտակը այնքան հաճելի է, բուն թագաւորութիւնը ձեռք ձգելնիս ինչ պիտի ըլլայ: Եթէ խոստմունքը այնքան անոյշ է, կատարո՞ւմը ինչ պիտի ըլլայ»: Մտածէ՛ նաև. «Ի՛նչ հաճութիւններ վայելած եմ քարոզութեանցն: Երբոր կը նստիմ մտիկ ընել քարոզիչի մը՝ որուն խօսքերը երկնային և սրտառուչ են, ի՜նչ եռանդով կը լեցուի սիրտս: Ինծի անանկ եկած է երբեմն՝ որ գրեթէ երկինքը կարծած եմ ինքզինքըս: Ո՛րչափ անգամ տառապեալ սրտով ժողովքի գացեր և ուրախ սրտով դարձեր եմ: Քանի՜ քանի անգամ գացեր եմ մտքիս մէջ տարակոյսներով, և Աստուած սիրտս հանդարտեցուցած է, Քրիստոսով իր ունեցած սիրոյն վրայ զիս համոզելով: Ի՛նչ կազդուրիչ մխիթարութիւններ վայելած եմ, որ ամէն տեսակ դժբաղդութեան մէջ զիս կը զօրացունեն: Եթէ Մովսէսի երեսը այնքան փառքով կը փայլէր, ուրեմն ի՛նչ փառք պիտի ըլլայ Աստուծոյ երեսը: Եթէ գեղեցիկ են աւետիս բերողին՝ խաղաղութիւն ու փրկութիւն քարոզողին ոտքերը, ո՜րչափ գեղեցիկ է ուրեմն խաղաղութեան Իշխանին երեսը: Եթէ աս գանձը այնքան պատուական է երկրաւոր անօթներու մէջ, երկինքը դիզուած գա՛նձը ինչ պիտի ըլլայ: Երանելի են ան աչքերը որ հոն տեսնուած բաները կը տեսնեն, և ան ականջները՝ որ հոն լսուած

քաները կը լսեն։ Հոն մտիկ պիտի ընեմ Եղիա՝ Եսայի՝ Երեմիա՝ մարգարէները, Յովհաննէս՝ Պետրոս՝ և Պօղոս՝ առաքեալները, ո՛չ թէ՝ հակառակորդներուն և ո՛չ թէ բանտարգելութեան հալածանաց և նախատանաց մէջ կը քարոզեն, այլ յաղթութեան հանդէս կատարելով Անոր անուանը փառաբանութիւն կերգեն՝ որ զիրենք բարձրացուց ան պատուոյն և փառքին":

Մտածէ՛ դարձեալ՝ "Ի՛նչ ուրախութիւն է աղօթքով Աստուծոյ մօտենալու արտօնութիւն ունենալը և անոր առջևը ընդունելութիւն գտնելը, որ կրնամ միշտ Աստուծոյ երթալ և իբրև իմ ամենահաւատարիմ բարեկամս, իմ վիճակս առջևը դնել և սիրտս անոր բանալ։ Բայց առաւել անպատմելի ուրախութիւն պիտի ըլլայ, երբոր ամէն պարգև չխնդրած ընդունիմ. և իմ ամէն կարօտութիւններս և նեղութիւններս վերնան և իմ հոգւոյս բաժինը և ժառանգութիւնը Աստուած ինքն ըլլայ": Հաղորդութեան վրայօք ալ այսպէս մտածէ, "Ի՛նչ ուրախութիւն է որ ես ընդունուիմ անոր սեղանը նստիլ, և հոն կնքէ ինծի իր ուխտը։ Բայց ան տեղը եղած բոլոր կենդանութիւնը և հաճութիւնը այսուհետև ըլլալիք հաճութեանց վրայ զիս վստահացունելու համար է։ Ո՛հ ի՛նչ մեծ տարբերութիւն պիտի ըլլայ Քրիստոսի երկրի վրայ ըրած վերջին ընթրիքին և ան մեծ օրուան Գառնուկին հարսանեաց ընթրիքին մէջ։ Ան ատենը պատրաստուած տեղը փառաւոր երկինքները պիտի ըլլան. սպասաւորները՝ հրեշտակաց և սրբոց բոլոր զօրքը. Յուդա և չհաւատացած հրաւիրեալ չկայ հոն, այլ խոնարհ հաւատացեալները պիտի բազմին անոր քովը, և իրենց ձայնը պիտի ըլլայ իրենց փոփոխակի մէկզմէկ սի-

յնելը և մեկնելով ուրախանալը"։ Նու՞որոց հա-ղորդակցութեանը վրայ այսպէս խորհէ՛ ինքնիրենդ. «Ի՜նչ հաճութիւն է բնակիլ ուշիմ և երկնային քրիստոնեաներու հետ։ Մարգարէն Դաւիթ ասոնց համար կ'ըսէ թէ, «Անոնց վրայ է իմ բո-լոր հաճութիւնս»։ Ո՜հ ի՜նչ զուարճալի ընկե-րութիւն մը պիտի վայելեմ վերը։ Եթէ Յովբ երանելին տեսած ըլլայի ան խեղճ վիճակին մէջ՝ ի՜նչ համբերութեան պատկեր մըն էր, իսկ ի՜նչ ուրախութիւն պիտի ըլլայ անիկայ փառքի մէջ տեսնելը։ Որչափ հաճելի բան էր տեսնել որ Պօղոս ու Շիղա երգ կ'երգեն երբոր ոտքերնին կոճղներու մէջ դրուած էր, իսկ որչափ աւելի հաճելի պիտի ըլլայ երկինքը անոնց երգերը լսելը։ Ի՜նչ քաղցրանուագ կ'երգէր Դաւիթ իր քնարովը, բայց որչափ աւելի հաճելի պիտի ըլ-լայ լսել ան անոյշ երգեցողը երկնային դասերուն մէջ։ Ի՜նչ չէի տար ժամ մը պատուաւոր Պօ-ղոս առաքեալին հետ տեսութիւն ընելու համար՝ երրորդ երկինքէն նոր վար եկած ատենը։ Բայց քիչ ատենէն ես անձամբ պիտի տեսնեմ ան բա-ները՝ և տեսածս պիտի վայելեմ"։

Մտածէ՛ դարձեալ սուրբերուն հետ ժողով-քով զԱստուած փառաբանելու վրայ. «Ի՜նչ երջանիկ կը համարէի ինքզինքս՝ եթէ ան հովիւ-ներուն տեղը ըլլայի, որոնք տեսան երկնային զօր-քերու բազմութիւնը և լսեցին անոնց զԱստուած օրհնելը՝ ըսելով, «Երկնից բարձրութեանը մէջ Աստուծոյ փառք, ու երկրիս վրայ խաղաղութիւն մարդոց մէջ հաճութիւն»։ Բայց ես անկէ աւելի փառաւոր բաներ պիտի տեսնեմ ու լսեմ։ Որչափ երանելի պիտի սեպէի ինքզինքս, եթէ լսէի Քրիս-տոսի իր Հօրը շնորհակալութիւն մատուցանե-

ըլ. Խակ ո՞րքան աւելի՝ երբոր լսեմ անոր զիս 'օրհնեալ' կոչելը : Եթէ անանկ ուրախութիւն եղաւ ուխտին տապանակը ետ բերած ատեննին կամ տաճարը կրկին անգամ շինած ատեննին, ուրեմն ի՜նչ պիտի ըլլայ 'Նոր Երուսաղէմը' մտած ատեննիս : Եթէ Սողոմոնի թագաւոր օծուելու հանդէսին ատենը ժողովուրդին ուրախութենէն երկիրը կը դղրդէր, ի՜նչ ցնծալի ծափահարութիւն պիտի ըլլայ եկեղեցւոյ Թագաւորին երևցած ատենը : Եթէ 'երկրին հիմերը դրուած ատենը առաւօտեան աստղերը մէկտեղ փառաբանութիւն կ'ընէին, ու Աստուծոյ բոլոր որդիները ցնծութեամբ կ'աղաղակէին', ի՜նչ ցնծալի փառաբանութիւն պիտի ըլլայ երբոր փառաց աշխարհը հիմնադրեալ և կատարեալ է և գագաթի քարը դրուած, և 'սուրբ քաղաքը՝ իր երկանը համար զարդարուած հարսի մը պէս պատրաստուած է':"

Խորհրդածէ նաև երկինքը վայելելիք ուրախութիւններդ երկնից ճամբուն վրայ սրբոց վայելածներուն հետ : Ե՞րբ Աստուած ինքզինքը փոքր ինչ յայտնեց իր սուրբերէն մէկուն, որ անոր ուրախութիւնը ան յայտնութեանը համեմատ չեղաւ : Ի՜նչպէս զմայլած էր Պետրոս առաքեալ՝ այլակերպութեան լեռանը վրայ եղած ատենը : "Ռաբբի" կ'ըսէ. "աղէկ է որ հոս կենանք. ու երեք խրճիթ շինենք. մէկը քեզի, և մէկը Մովսէսին, ու մէկը Եղիային": Որպէս թէ ըսել կ'ուզէր, "Տէր՝ ալ չերթանք վար ան հալածիչ ապստամբներուն մէջը, նորէն չդառնանք մեր նուաստ ու տառապանաց վիճակին : Հիմա հոս ենք՝ աւելի աղէկ չէ՞ ըլլար որ հոս մնանք : Աս տեղ լաւագոյն ընկերութիւն և աւելի քաղցր հաճութիւն չե՞նք վայելեր": Ի՜նչպէս յափշտակուած էր Պօղոս ա-

ռաքեալ իր տեսած տեսիլքովը ։ Ո՜րչափ կը փայլէր Մովսէսի երեսը Աստուծոյ հետ խօսելէն վերջը ։ Անոնք արտաքոյ կարգի առհաւատչեաններ էին . բայց բան մը չէին այն կատարելապէս երջանիկ ընող տեսիլքին քովը, որ հանդերձեալին մէջ պիտի յայտնուի ։ Ո՜րչափ անգամ կը կարդանք և կը լսենք մեռնող սուրբերուն վրայով որ ուրախութեամբ լեցուեր են . և երբ որ իրենց մարմինը յետին աստիճան հիւանդութիւն ու ցաւ կը կրէր, այնքան վայելեր են երկինքը իրենց հոգիովը, որ ուրախութիւններին շատ աւելօք գերազանցեր է իրենց տրտմութենէն ։ Եթէ աս կրակին մէկ կայծը այնքան փառաւոր է՝ մինչև անգամ ճախորդութեան ծովուն մէջ, ուրեմն բուն փառքը ի՞նչ պիտի ըլլայ ։ Ո՜հ ինչ ուրախութիւն զգացին մարտիրոսները կրակի բոցերուն մէջ ։ Անոնք ալ մեզի պէս մարմին ու արիւն էին . վասնորոյ գերազանց բան մը եղած ըլլալու է այն, որ անոնց հոգիները ուրախութիւնով կը լեցունէր երբոր մարմիններին կ'այրէր ։ Խորհէ՛ ընթերցող՝ քու մտածութիւններուդ մէջ, թէ «Անշուշտ այն փառքին մէկ զարմանալի առհաւատչեայն ըլլալու է, որ կրակին բոցերը հեշտ կ'ընէր, և այն ահարկու վիճակը սիրով ընդունել կու տար ։ Ուրեմն ի՛նչ պիտի ըլլայ բուն այն փառքը ։ Ի՜նչ օրհնեալ հանգիստ՝ որ անոր խորհուրդները Պօղոս առաքեալին փափաքել տուին մեռնելու և Քրիստոսի քովը ըլլալու . և նոյն խորհուրդներովը սուրբերը բնաւ ինքզինքնին աղէկ վիճակի մէջ չեն սեպեր՝ մինչև որ չմեռնին ։ Սանտըրս անուն մարտիրոսը սիրով կը գրկէ այն ցիցը՝ որուն վրայ ինք պիտի կապուի այրուելու համար, և կը գոչէ, Բարի եկա՛ր խաչ, ու ես աւելի ուրախու-

թեամբ պիտի չգրկե՞մ իմ երանութիւնս, աղաղակելով Սարէն եկար Թագ : Պրատֆօրտ կը համբուրէ ան փայտի դէզը՝ որուն վրայ ինք պիտի այրուի . ու ես չհամբուրե՞մ փրկիչը : Ու ուրիշ խեղճ մարտիրոսուհի մը կ'ուրախանայ որ իր ոտքը նոյն կոճղին մէջ կը դրուի, ուր իրմէ առաջ մարտիրոսի մը ոտքը դրուեր էր, ու ես չե՞մ ուրախանար՝ որ իմ հոգիս պիտի բնակի նոյն փառաց տեղը՝ ուր ինծմէ առաջ գացին Քրիստոս և իր առաքեալները : Քանի որ ուրիշները սիրով կ'ընդունին կրակին բոցերը՝ փայտին դէզը՝ բանտերը՝ աքսորը՝ անգութ ծաղրաբանութիւնները և ծեծերը, ու ես ծանծրութի՞ւն սեպեմ Քրիստոսն ու փառքը. քա՛ւ լիցի" :

Դարձեալ՝ երկնային թագաւորութեան փառքը եկեղեցւոյ [illegible]՝ և Քրիստոսի իր խոնարհ կեանքին մէջ ունեցած փառքին հետ բաղդատէ : Եթէ Քրիստոսի՝ մեղաւորներուն տեղը չարչարուիլը անանկ գերազանցութիւն ունէր, ուրեմն ի՞նչ պիտի ըլլայ՝ Քրիստոս իր [illegible]օրը ալ կո[illegible]նուած ատենը : Եթէ եկեղեցին իր մեղքերուն ու թշնամիներուն մէջ այնքան գեղեցկութիւն ունի, որքան գեղեցիկ պիտի ըլլայ ան՝ Գառնուկին հարսնիքին : Որչափ զարմանալի էր Աստուծոյ Որդին ծառայի կերպարանքին մէջ : Ծնած ատենը՝ նոր աստղ մը կ'երեւնայ և օտարականները հոն կ'առաջնորդէ՝ որ երկրպագութիւն ընեն անոր մսուրի մը մէջ. երկնային զօրքերը իրենց եղանակներովը անոր ուրախութիւն ծննդեանը հանդէսը կը կատարեն, տաճարին տղայ եղած ատենը՝ վարդապետներուն հետ վիճաբանութիւն կ'ընէ. երբոր իր պաշտօնին ձեռնամուխ կ'ըլլայ՝ ջուրը գինի կ'ընէ. քանի մը հացով ու քանի մը ձու-

կով հազարաւորները կը կերակրէ. բորոտները կը սրբէ. հիւանդները կը բժշկէ. կաղերը կը շըտկէ. կուրաց աչքերը կը բանայ և մեռելները կը յարուցանէ: Որչափ զարմանալի ըլլալու է ուրեմն անոր երկնային փառքը: Եթէ անանկ՝ էշը հեծած Երուսաղէմ մտած ատենը՝ ծառերու ճիւղեր կը կըտրուէին, լաթեր կը փռուէին և Ովսաննաներ կ'երգուէին, հապա ինչ պիտի ըլլայ՝ երբոր իր հրեշտակաց հետը գայ իր փառքովը: Եթէ անոնք՝ որ անոր "արքայութեան Աւետարանը քարոզելը" լսեցին, խոստովանեցան թէ, "Երբէք մէկը աս մարդուն պէս խօսած չէ", ուրեմն անոր մեծվայելչութիւնը իր արքայութեանը մէջ տեսնողները պիտի ըսեն. "Անաւ աս փառքին պէս փառք եղած չէ": Եթէ իր թշնամիները զինքը բռնելու եկած ատեննին՝ ետ ետ կ'երթան ու գետինը կ'իյնան, եթէ մեռնելու ատենը երկիրը կը շարժի՝ տաճարին վարագոյրը կը պատռի՝ արևը կը խաւարի՝ սրբոց մեռեալ մարմինները յարութիւն կ'առնեն և քովը կեցողները կը խոստովանին թէ. "Յիրաւի ասիկայ Որդի Աստուծոյ էր", ո՜հ ի՞նչ որ պիտի ըլլայ ան՝ որ ատեն մեռեալները բոլորը պիտի ելլեն և կենան անոր առջևը, և նորէն պիտի շարժէ՝ "ո՛չ թէ միայն երկիրը, հապա նաև երկինքը". որ ատեն աս արևը երկինքէն պիտի վերցուի և յաւիտեան պիտի խաւարի անոր փառքէն. և ամէն լեզու անիկայ Տէր և Թագաւոր պիտի դաւանի: Եթէ յարութիւն առած ատենը՝ մահն ու գերեզմանը իրենց իշխանութիւնը կորսնցուցին, եթէ հրեշտակները քարը գլտորցուցին՝ պահապանները ան աստիճան վախցուցին որ "մեռածի պէս" եղան, և աւետիս խրկեցին իր աշակերտացը, և եթէ վերջապէս երկինքը համբարձաւ անոնց աչքին

տանջեր, ուրեմն ի՛նչ իշխանութիւն՝ ազատութիւն ու փառք ունեցած պիտի ըլլայ հիմա ան, որն որ մենք ալ պիտի փայլեցնենք անոր հետը: Անոր երթալէն վերջը՝ կրնա՞ն քանի մը խեղճ ձկնորսներ և վրանագործներ բժշկել կաղերը՝ կոյրերը ու հիւանդները, բանալ բանտերը, կործանել անհնազանդները, յարուցանել մեռեալները և զարմացունել իրենց հակառակորդները. եթէ այսպէս, ի՛նչ աշխարհ մը պիտի ըլլայ ուրեմն ան տեղը՝ ուր ամէն մէկը ասոնցմէ աւելի մեծ գործքեր կրնան ընել: Եթէ Աւետարանին քարոզութեանը հետ անանկ զօրութիւն կենայ՝ որ յայտնէ սրտին գաղտնիքը՝ խոնարհեցունէ հպարտ մեղաւորը և ամենէն խստասիրտն ալ դողացունէ, եթէ կրնայ մարդոց իրենց գիրքերը այրել տալ՝ կալուածքնին ծախելով գինը բերել առաքելոց ոտքը դնել տալ, եթէ կրնայ հազարաւորները դարձի բերել և աշխարհը տակն ու վրայ ընել, եթէ անոր վարդապետութիւնները կրնան առեանը կեցող բանտարգելայի մը բերնէն աթոռին վրայ եղող դատաւորը դողացունել, եթէ Քրիստոս և անոր սուրբերը սանկ իշխանութիւն և պատիւ ունին իրենց նուաստութեան՝ և չարչարանք ու նախատինք կրելու ատենը, ուրեմն ի՛նչ իշխանութիւն և բարձր աստիճան պիտի ունենան իրենց փառաց թագաւորութեանը ատենը:

Բաղդատէ՛ նաև վերջին օրը քու վրադ ըլլալիք փառաւոր փոփոխութիւնը ան շնորհաց փոփոխութեանը հետ՝ որ Սուրբ Հոգին գործեց քու սրտիդ վրայ: Չկայ ամենափոքր իրական շնորհք մը վրադ, որ Հնդկաստանի գանձերէն աւելի արժէք չունենայ. ոչ մէկ սրտանց փափաք մը Քրիստոսի վրայ՝ որ աշխարհիս թագաւորութիւն-

ներքէն աւելի յարգի չըլլայ։ Նորոգուած բնու-
թիւնը Աստուծոյ պատկերն է. որով Քրիստոս
մեր մէջը կը կենայ և Աստուծոյ Հոգին մեր մէջը
կը բնակի. Աստուծոյ երեսէն ծագած ճառագայթ
մըն է. Աստուծոյ սերմն է, որ մեր մէջը կը մնայ.
բանական հոգիին միակ գեղեցկութիւնն է. աս-
կայ ամէն ազնուականութենէ վեր կ'ազնուացունէ
մարդը և իր Արարչին հաճոյ եղածը որը ըլլալը հա-
կընալու և անոր կամքը ընելու ու անոր փառքը
ընդունելու ընդունակ կ'ընէ։ Արդ՝ եթէ աս մա-
նանեխի հատը այնքան պատուական ըլլայ, ալ
ի՞նչ պիտի ըլլայ "Աստուծոյ պարտէզին մէջ աճե-
լը եղած կենաց ծառը"։ Եթէ կենաց մէկ կայ-
ծը, որ ան ալ խանգարումներու դէմ պիտի պա-
տերազմի և պէտք յարուցանէ քանի մը փափաք
ու քանի մը հառաչանք՝ այսչափ արժէք ունենայ,
ի՞նչ փառաւոր ըլլալու է ուրեմն ան կենաց աղ-
բիւրը։ Երբոր Աստուծոյ նման կ'ըսուինք՝ որ
ատեն մեղանչական մարմինով կաշկանդեալ ենք,
անշուշտ շատ աւելի Աստուծոյ նման պիտի ըլլանք
երբոր մեր մէջը մեղք բուսած բանը չկենայ։ Եթէ
երկինքի վրայ եղած փափաքն ու սէրը այնքան
ազնիւ է, ի՞նչպէս պիտի ըլլայ բուն երկինքը։ Ե-
թէ մեր նախատեսութեամբն ու հաւատալովը եղած
ուրախութիւնը այնքան քաղցր է, կատարելապէս
վայելելուն ուրախութիւնը ի՞նչ պիտի ըլլայ։ Ո՛ր-
չափ ուրախ կ'ըլլայ քրիստոնեան, երբոր կը զգայ
թէ իր սիրտը կը սկսի կակուղնալ ու հալիլ մեղաւորաց
ապերախտութեանը խորհուրդներովը. աս տրտմու-
թիւնը անգամ՝ ուրախութիւն կու տայ իրեն։
Ո՜հ՝ ի՞նչ պիտի ըլլայ ուրեմն՝ երբոր ճանչնանք՝
սիրենք՝ ուրախանանք և փառաբանենք ամենայն
կատարելութեամբ։ Այսպէս մտածէ ինքնիրենդ,

"Ի՜նչ փոփոխութիւն էր ան, ելլել ան վիճակէն՝ որուն մէջ ծնած ու բազմաժամանակեայ սովորութեամբ հաստատուած էի, և հազարաւոր մեղքեր իմ հաշիւիս անցած էին. և եթէ այնպէս մեռնէի, յաւիտեան պիտի դատապարտուէի: Ի՜նչ սքանչելի փոփոխութիւն, արդարանալ բոլոր ան ծանր յանցանքներէն և ազատիլ բոլոր ան ահաւոր հարուածներէն, և երկնից ժառանգ ըլլալ: Ո՛րչափ անգամ՝ իմ նորոգուելուս վրայ խորհած ատենս ապաշաւած եմ. Երջանի՜կ օր, և օրհնեալ ըլլայ Տէրը՝ որ ես տեսայ ան օրը: Ուրեմն ի՜նչպէս պիտի ապաշաւեմ երկինքը, Երջանի՜կ յաւիտենականութիւն. և օրհնեալ ըլլայ Տէրը՝ որ զիս անոր հասցուց: Եթէ Աստուծոյ հըրեշտակները իմ դարձիս վրայ ուրախացան, անշուշտ նաև իմ երանութեանս համար ուրախակից պիտի ըլլան՝ իմ փրկութեանս օրը: Շնորհքը մեղաւորներուն մէջէն հանած կայծ մըն է, մարմինով աշխարհին սեւութենէն ծածկուած, և երբեմն ալ սրտի ապականութիւնով իմ տեսութենէս ծածկուած. բայց իմ յաւիտենական փառքս առանց ամպերով պատած պիտի չըլլայ, ոչ ալ իմ ճրագս գրուանի տակ պիտի ըլլայ, այլ լեռան վըրայ, Սիօն լեռանը վրայ, Աստուծոյ լեռանը վըրայ":

Աղէկ բաղդատէ՛ մէրը ունենալիք ուրախութիւններդ անոր առհաւատչեաներուն հետ՝ որ Սուրբ Հոգին հոս կու տայ քեզի: Միթէ Աստուած երբեմն մասնաւոր կերպով ինքզինքը չյայտնե՞ց քու հոգիիդ, և կաթիլ մը փառք չկաթեցո՞ւց անոր վրայ. պատրաստ չէ՞ր սիրտդ ըսելու, "Երանի՜ թէ միշտ առանց ըլլար հոգիս". մինչ չաղաղակեցի՞ր ան մաքրութիւնին հետ, ողորմելի վիճա-

կի մէջ երկայն ատեն տպաւորելէն ետքը, "Անկաւ, եկաւ"։ Բնաւ երկինքի վրայ կենդանի քարոզ մը լսած ատենդ, կամ ան օրհնեալ վիճակին վըրայ քու առանձին մտածութիւններուդ մէջ չիմացա՞ր քու նուաղեալ հոգւոյդ կենդանանալը և քու մարած սիրտդ գլուխը վերցանելը և երկնից լոյսը քու հոգւոյդ վրայ ծագիլը։ Այսպէս մտածէ՛ նաև ինքնիրենդ. "Ի՞նչ պիտի ըլլայ աս գըրաւը կատարեալ ժառանգութեան քովը։ Բոլոր աս լոյսը որ այսչափ կը զմայլեցունէ և կ'ուրախացունէ զիս՝ միայն երկինքէն վառուած մէկ կանթեղ մըն է՝ զիս աս խաւար աշխարհէն հոն տանելու համար։ Եթէ ոմանք աստուածապաշտ անձինք անանկ ներգործուեցան ուրախութեամբ՝ մինչև որ աղաղակեցին, 'Ա՛ս քաշէ՛ Տէ՛ր ձեռքդ, ալ չենք դիմանար՝. ի՛նչ պիտի ըլլայ ուրեմն իմ ուրախութիւններս երկինքը, երբ իմ հոգիս այնքան մեծ կարողութիւն մը պիտի ստանայ զԱստուած տեսնելու և վայելելու, որ թէև անոր լոյսը արևին լոյսէն հազարաւոր անգամ սաստիկ ըլլայ, տակաւին իմ աչքերս կարող պիտի ըլլան յաւիտեան անոր նայելու"։ Կամ՝ եթէ երկնից առհաւատչեային աս քաղցր ճաշակը տակաւին չես զգացեր, (վասն զի ամէն հաւատացեալ զգացած չէ զանոնք) ան ատենը քու արդէն զգացած ուրախութիւններդ գործածէ՛, որ այսուհետև զգալիքներուդ վրայ լաւագոյն գաղափար ունենաս։

Երկրորդ. Հիմա պիտի ցուցընեմ թէ ինչպէս պաշտպանելու է երկնային մտածութիւնը՝ սրտին թափառական վիճակէն։ Աս տեղ մեր գլխաւոր գործը պիտի ըլլայ, նախ՝ պարզել աս բանին մէջ ինչ վտանգ կենալը, և ապա ասիկայ պիտի ուղղէ մէջ անոր ամենայարմար դարմանը գտնելու։ Պի-

տի տեսնենք որ սիրտը մեծ ընդդիմութիւն ունի աս երկնային գործին, կամ անկէ ետ քաշուելով՝ կամ չնչին գործի մը պէս բռնելով՝ կամ միշտ ուրիշ պատրուակներու խոտորելով կամ հարեւանցի ընելով ու գործը անկատար թողելով: Որդ՝ եթէ դուն աս գործին տուած հաճութեանը յարգը գիտես, վասնորոյ աս վտանգաւոր չարիքներուն դէմ կենալու ես հաւատարմաբար:

1. Գիտի տեսնես որ՝ մէկ գործ մը չկայ աշխարհի մէջ՝ որմէ քու սիրտդ ասկէ աւելի ետ կը քաշուի: Ո՜հ ի՛նչ պատճառանքներ չբերեր: Ի՛նչ ջատագովութիւններ չգտներ ինքզինքը ետ քաշելու: Եւ երբոր բոլորովին համոզուած ալ ըլլայ թէ իր պարտաւորութիւնն է, ինչպէս կը տընտընայ, ո՛րչափ կանկ կ'առնէ: Կամ ասիկայ պարտք ըլլալուն ու չըլլալուն վրայ տարակոյսներ կը հանէ: Այսպէս կ'ըսէ քեզի, "Ասիկայ քարոզիչներու յարմար գործ մըն է, որ ուրիշ գործ չունին, կամ անանկ անձանց համար որ շատ պարապ ատեն ունին": Եթէ քարոզիչ ես, այսպէս կ'ըսէ, "Ասիկայ ժողովուրդին պարտաւորութիւնն է. բաւական է որ դուն անոնց կրթութեանը համար կը մտածես, թող անոնք մտածութիւն ընեն իրենց լսածներուն վրայ", Որպէս թէ քու պարտաւորութիւնդ միայն անոնց կերակուրը եփել ու պատրաստել է, և անոնք ինքզինքնին պիտի ուտեն՝ մարսեն և սնունդ առնեն անկէ: Եթէ բոլոր ասոնցմով չըլլայ, քու սիրտդ ուրիշ գործեր պիտի ցուցընէ քեզի, կամ ուրիշ պարտաւորութիւն մը պիտի հանէ առջեւդ, վասն զի ան կ'ուզէ որ ինչ գործ ըլլայ՝ ըլլայ, աս չըլլայ: Երբեմն կ'ըսէ քեզի. "Ուրիշ պարտաւորութիւններդ աւելի մեծ են, վասնորոյ աս մէկդի դնելու ես, վասն

զի ժամանակդ ամենուն ալ չօգտեր ։ Մոռցի՛ր ու քարոզելը հոգւոց փրկութեանը համար՝ աս առանձին մտածութիւններէն յառաջ դասուելու է" ։ Որպէս թէ ժամանակ չունիս դուն քու փրկութեանդ համար հոգ տանելու, այլոց փրկութիւնը հոգալուդ համար, կամ այլոց վրայ ունեցած քու մարդասիրութիւնդ այնքան մեծ է, որ կը պարտաւորէ քեզ զանց ընել քու յաւիտենական բարեկամութիւնդ, և կամ որպէս թէ մեր հոգևոր վիճակին հոգ տանելէն լաւագոյն ճամբայ մը կայ՝ ինքզինքնիս այլոց օգտակար ընելու ։ Հարկաւ երկինքը ամենալաւ կրակն է կանթեղնիս վառելու, և ամենալաւ գիրքն է քարոզիչի մը ուսմանը համար, և եթէ համոզուէինք աս գիրքը աւելի կարդալու, եկեղեցին աւելի երկնային լոյսեր պիտի ունենար. և երբոր ուսմունքնիս ըլլայ աստուածային՝ և զգացմունքներնիս աստուածային, քարոզութիւննիս ալ աստուածային կ՚ըլլայ, և կրնանք արդարապէս աստուածաբանք կոչուիլ ։ Կամ թէ՝ երբոր քու սիրտդ բան մը չունենայ աս գործին դէմ ընելու, տնտնալով և յապաղելով կը վատնէ ժամանակը, այսօր կը խոստանայ, վաղն ալ ինչ կ՚ընէ չըներ՝ զանց կ՚ընէ գործը, կամ թէ պարզապէս կը մերժէ, և իր անկամայութիւնը առարկութիւն կը բերէ քու ունեցած փաստերուդ դէմ ։ Ըմլոր ասոնք կը խօսիմ սրտին մարմնաւոր ըլլալու աստիճանին համեմատ, վասն զի գիտեմ թէ՝ որչափ որ հոգևոր ըլլայ ան, այնչափ աւելի քաղցր պիտի գայ անոր աս գործը՝ աշխարհիս վրայ գտնուած բոլոր գործերէն ։

Արդ՝ ի՞նչ ընելու է ։ Կ՚ընե՞ս, եթէ ըսեմ ։ Եթէ չաշխատող սպասաւոր մը ունենաս, կամ չքալող ձի մը, ի՞նչ կ՚ընես ։ Չե՞ս ըսեր թէ՝ Ասոր ի՞նչ պիտի ընեմ

տանք. վրանի՛ն նայելու համար պիտի պահեմ: Ու-րեմն այնպէս հաւատարմաբար վարուէ՛ սրտիդ-հետ, համոզէ՛ որ աշխատի, մի՛ ընդունիր անոր հրաժարիլը, յանդիմանէ՛ ետ քաշուելուն համար և իշխանութիւն բանեցո՛ւր անոր վրայ: Քու խորհուրդներդ չե՞ս կրնար կառավարել, քու մտածած բանդ քու ընտրելովդ չէ՞. մանաւանդ բանի մը վրայ ասանկ դատողութիւն ունեցած ատենդ: Անշուշտ Աստուած քու նոր բնութեանդ հետ քու խորհուրդներդ կառավարելու կարողութիւն ալ տուած է: Նորէն քու ապականեալ բնութեանդ գերի՞ եղար: Ձեռք առ իշխանութիւնդ. քեզի օգնութեան կանչէ՛ Քրիստոսի Հոգին, որ բնաւ ետ չքաշուիր ասանկ բարի գործքէ մը, ոչ ալ պիտի հրաժարի ասանկ արդար փափաքի մը օգնութիւն ընելէն: Այսպէս ըսէ՛ անոր, "Տէ՛ր՝ դուն իմ բանականութեանս իշխանութիւն տուիր իմ խորհուրդներուս և զգացումներուս վրայ, անոնց վրայ իմ ունեցած իշխանութիւնս քեզմէ է, և հիմա, ահա անոնք չեն հնազանդիր քու իշխանութեանդ: Դուն հրամայեցիր որ իմ խորհուրդներս և զգացումներս բանեցունեմ երկնային մտածութեան գործին, բայց անոնք կ'ապստամբին և խստապարանոց ըլլալով կը մերժեն ան պարտաւորութիւնը: Չե՞ս օգներ ինծի՝ որ քու տուած իշխանութիւնդ բանեցունեմ անոնց վրայ: Խրկէ՛ քու Սուրբ Հոգիդ՝ որ քու հրամաններուդ ույժը կարող ըլլամ անոնց վրայ 'ի գործ դնելու և ազդու կերպով ստիպելու որ հնազանդին քու կամացդ": Ասանկով պիտի տեսնես որ սիրտդ պիտի հպատակի, անոր ընդդիմութիւնը պիտի յաղթուի և ետ քաշուիլը ցնծալի յօժարութեան պիտի դառնայ:

Զ. Նաև հաւանական է որ քու սիրտդ քեզ խաբէ ազդեամբք մտածութիւն ընելու տեղը, ըն-ղին խորհրդածներով ժամանակը անցունելով. գուցէ երբոր ժամ մը ունիս մտածութեան համար, ժամանակը կ'անցնի՝ սիրտդ գործին վրայ չտաքցած։ Պարտաւորութիւն մը ասանկ չկատարածի պէս կատարելը այնքան շատերուն կործանմանը պատճառ կ'ըլլայ, որքան որ անոր զանցառութիւնը։ Ա՛ս կողմանէ թո՛ղ քու աչքդ միշտ սրտիդ վրայ ըլլայ։ Ա՛յնքան մի՛ նայիր ան գործով անցուցած ժամանակիդ, որքան որ կատարուած գործին ինչպէս և որչափ ըլլալուն։ Մէ՛կ սպասաւորի մը գործէն կրնաս գատել թէ արդեօք ժի՞ր էր իր գործին մէջ թէ ոչ։ Հարցո՛ւր ինքզինքիդ թէ "Մինչև հիմա ո՛րչափ սէր բորբոքեցաւ սրտիս մէջ, և ո՛րչափ մօտեցայ երկինքին"։ Մի՛ խորհիր՝ թէ քու սիրտդ աս գործը թուլութեամբ ընելուն համար, աւելի աղէկ կ'ըլլայ անիկայ ձըգելը. վասն զի աս կերպով անշուշտ բոլոր հոգեւոր հնազանդութիւնը պիտի վերջացունես, քանզի ամենալաւ սիրտերն ալ՝ ըստ մասին նորոգուած ըլլալով՝ պիտի դէմ գնեն այնչափ՝ որչափ որ մարմնաւոր են տակաւին։ Բայց յաւէտ մտածէ որ քու բնութիւնդ ապականեալ է, և անոր մեղանչական բնութիւնները Աստուծոյ հրամանէն վեր չեն, ոչ ալ մէկ մեղքը կրնայ ուրիշ մեղք մը արդարացունել, և Աստուած մեր զգացումները գրգռելու միջոցներ սահմանած է։ Երկնային մտածութիւնը որ անձին վրայ խորհելով և դատողութիւն ընելով կը կատարուի, զօրաւոր միջոց մըն է սէր վառթուցանելու և միանգամայն աճեցունելու։ Ուստի աս պարտաւորութիւնը զանց մի՛ ըներ, մինչև որ զգաս թէ քու սէրդ քեզ կը

քաշէ, ինչպէս որ առանց տաքցած ըլլալդ զգա-լու՝ կրակէն ետ չես քաշուիր. Հապա աս գործը շարունակէ, մինչև որ սէրը բորբոքի, և ան ա-տենը սէրը քեզ պիտի տիրէ և յառաջ վարէ գործին մէջ:

3. Քու սիրտդ նաև պիտի խոթուի երկնային մը-տածութեան գործէն ուրիշ առարկաներու: Անհոգ սպասաւորի պէս՝ ո՛վ որ տեսնէ, կը կենայ՝ հետը խօսակցութիւն կ'ընէ: Երբոր պէտք է թէ եր-կինքէն 'ի զատ բան մը չըլլայ միտքիդ մէջ, անի-կայ կը խորհի քու զբաղմունքիդ վրայ, քու նե-ղութիւններուդ վրայ, կամ տեսած թռչունիդ՝ ծա-ռիդ կամ տեղիդ վրայ: Ասոր դարմանն ալ առաջինին պէս է, հոգէ՛ և ո՛յժ բանեցուր: Ը-սէ՛ քու սրտիդ. «Ի՞նչ ես հոս եկայ որ աշխար-հի գործքերուն՝ մարդոցը՝ տեղերուն՝ լուրերուն կամ ունայնութիւններու՞ն վրայ խորհիմ. կամ երկինքէն 'ի զատ որ և իցէ բանի՞ մը վրայ՝ որչափ ալ աղէկ ըլլայ ան: Չե՞ս կրնար ժամ մը ար-թուն կենալ՝: Բոլոր աշխարհը պիտի ձգես և երկինքը յաւիտեան Քրիստոսի հետ պիտի բնա-կիս, և չե՞ս ձգեր մէկ ժամ մը մտածութիւնով Քրիստոսի հետ բնակելու համար: Ո՞ւր է սէրդ քու բարեկամիդ վրայ: Ասկէ աւելի չե՞ս սիրեր Քրիստոս և քու յաւիտենական՝ ու օրհնեալ բնակարանդ»: Եթէ թափառական խորհուրդ-ներու գիշատիչ թռչունները կը յափշտակեն երկնից համար ըրած մտածութիւններդ, անոնք քու խորհուրդներուդ կեանքն ու ուրախութիւնը կը յափշտակեն. վասնորոյ վռնտէ անոնք քու զօ-հեդ և զգուշութեամբ քու սրտիդ գործին վրայ պահէ:

4. Մտածութիւնը հարևանցի ընել և շուտ մը

Քրիստոնէին ալ ճամբայ մըն է, որով քու սիրտդ կը խաբէ քեզ: Աշխարհ դիւրաւ կ'իմանաս ու-րիշ գործերու մէջ: Առանձին աղօթքի ատեն քու սիրտդ չ՞ստիպէր որ վերջացունես, և յա-ճախ չ՞ուղարկեր որ ըլլնայ: Անանկ ալ երկ-նային մտածութեան մէջ սիրտդ կը ձանձրանայ և երկնային ճամբորդութենէն կը դառնի՝ տակա-ւին ալդէկ մը չտարցած: Բայց Հոգւոյն ըսէ՛ Աս-տուծոյ անունովը որ դադրի և առանց մեծ գործ մը կիտուակես չընէ: Այսպէս ըսէ անոր. "Յի-մար սիրտ, եթէ քիչ մը ատեն մուրաս ու աղա-չես և ողորմութիւնը չառած երթաս, քու մու-րալդ պարապը չերթա՞ր: Եթէ ճամբուդ փախ-ճանքին չհասած կը կայնիս, ըրած ճամբորդու-թիւնդ չը՞կորսուիր: Դու կուգաս քու ժառանգելիք փառքիդ մէկ տեսութիւնը վայելելու յոյսով, և երբոր՝ ըսուանը դաղամթը կը մտնաս՝ կը կայնիս, ու բան մը չառած ետ կը դառնաս: Դու կու-գաս Աստուծոյ հետ խօսելու յոյսով, և զինքը չը-տեսած կ'երթա՞ս: Դու կուգաս ինքզինքդ մը-խիթարութեան աղբիւրի մէջ լուալու, և ան դի-տաւորութիւնով քու աշխարհային խորհուրդնե-րէդ կը մերկանաս, և միայն ջուրին եզերքը կը դպչիս ու ետ կը դառնաս: Դուն որ կուգաս խոստացեալ երկիրը լրտեսելու, ետ մի դառնար առանց խաղողի ողկոյզի մը որ քու եղբայրնե-րուդ ցուցընես՝ անոնց քաջալերութեանը հա-մար: Թող իմանան քու օրտէդ ուրախութե-նէն՝ գինիին ճաշակելդ, և դէմքիդ զուարթութե-նէն՝ իւղով օծուիլդ, և քու մնութեանդ ու խո-սակցութեանդ անուշութենէն՝ կաթով ու մեղրով կերակրուիլդ: Ատ երկնային բոցը ալիքի տաք-ցունէ քու սառուցեալ սիրտդ, և փափուկ ու հա-

փևոր պիտի ընէ անիկայ, բայց ժամանակ կ'ուզէ որ ներգործէ"։ Այսպէս շարունակէ՝ գործը մին-չև որ արդիւնք մը տեսնուի, մինչև որ քու շը-նորհքներդ սկսին բանիլ, և զգացումներդ բո-լորին և հոգիդ վերին ուրախութիւններուն հաղ-որդուի. կամ եթէ չկրնաս աս փափաքներուն ա-մենուն մէկէն հասնիլ, ուրիշ ժամանակ աւելի թախանձանօք ըրէ՛ նոյն գործը։ "Երանի է ան ծառային, որն որ իր Տէրը եկած ատենը՝ անանկ ըրած պիտի գտնէ"։

## ԳԼՈՒԽ ԺԶ.

### Երկնային մտածութեան օրինակ և բոլոր երկրին վերլա-քանութեան մը։

Այս օրդ՝ ընթերցող, խղճիդ վկայութեանը դէմ չդնելով քու շնորհքներդ ինչպէս աղօթ-քով՝ անանկ ալ մտածութիւնով ամէն օր 'ի գործ դիր։ Անանկ տեղ մը առանձնացիր՝ քեզի յար-մար եղած ժամանակ մը ընտրելով. և բոլոր աշ-խարհային խորհուրդները մէկդի ձգելով՝ աչքերդ դէպ 'ի երկինք բարձրացուր ամենայն յարգանօք և ուշադրութեամբ։ Յիշէ որ հոն է քու յաւի-տենական հանգիստդ. միտք առ անոր գերազան-ցութիւնը և իրականութիւնը. և գնա զգայու-թենէն հաւաքէ՝ երկնաւոր ուրախութիւնները երկրաւորներուն հետ բաղդատելով։ Ան ատենը քու աս մտածութիւններուդ հետ կարճառօտ ա-ղօթքներ խառնէ, մինչև որ քու փառաւորանու-

թիւնդ յարգութեամբ Աստուծոյ հետ և ուշադրութեամբ քու սրտիդ հետ լմնցունելով՝ թմրութենէն բորբոքած բոցի փոխուիս, պարտաւորութիւնները մոռցող և աշխարհը սիրող մեղաւորի մը վիճակէն՝ զԱստուած եռանդով սիրողի մը վիճակին փոխուիս, վախկոտ ու տարակուսողի մը վիճակէն՝ հաստատուն քրիստոնեայի մը վիճակին, և անպտուղ տխրութենէն ուրախալից կեանքի մը փոխուիս. մէկ խօսքով՝ մինչև որ սիրտդ երկրէն երկինք՝ և վարը կենցաղավարելէն Աստուծոյ հետ քալելու փոխուի. և քու սիրտդ հանգչի որպէս թէ Քրիստոսի ծոցը՝ քու յաւիտենական հանգստեանդ վրայ ասանկ մտածութիւն մը ընելով՝ որ հոս գրուած է քեզի օգնութիւն ըլլալու համար։

1. «Հանգի՛ստ։ Ի՜նչ քաղցր է անոր ձայնը։ Ի՜նչ ներդաշնակաւոր կու գայ ականջիս։ Իմ սրտիս վրայ կենդանութիւն ու կազդուրութիւն տուող դեղի մը պէս կը կենայ, և անկէ կենդանութեան ողիներ կ'արձակէ, որ հոգւոյս բոլոր երակները նետել կու տան։ Հանգի՛ստ, ո՛չ թէ քարին՝ գետինը հանգչելուն պէս հանգիստ, ոչ ալ աս մարմինին գերեզմանը հանգչելուն պէս, և ոչ մարմնաւոր աշխարհին փափաքածին պէս հանգիստ։ Երջանի՜կ հանգիստ, որ ատեն 'չենք հանգչիր ո՛չ ցորեկը ո՛չ ալ գիշերը՝ ըսելով. Սուրբ՝ Սուրբ՝ Սուրբ՝ Տէր Ամենակալ. որ ատեն պիտի հանգչինք մեղքէն՝ բայց ո՛չ զԱստուած պաշտելէն. նեղութենէն ու տրտմութենէն՝ բայց ո՛չ ուրախանալէն։ Երջանի՜կ օր, երբ պիտի հանգչիմ Աստուծոյ քովը և իմ Տէրոջս ծոցը. պիտի հանգչիմ ճանչնալով՝ սիրելով՝ ուրախանալով և փառաբանելով, որ ատեն կատարեալ հոգի և մարմին մէկտեղ կատարելապէս պիտի վայելեն ամե-

նախատակեալն Աստուած, և Աստուած որ սէր է՝ կատարելապէս պիտի սիրէ զիս և իմ վրաս ունեցած սիրովը անոր հանդէպ, ինչպէս որ ես ալ պիտի հանդիպիմ իր վրայ ունեցած սիրովս. և իմ վրաս ուրախանալով պիտի ուրախանայ և երգելով պիտի ցնծայ, ինչպէս որ ես ալ իրմով պիտի ցնծամ և ուրախանամ:

2. Որչափ մօտ է այն ամենօրհնեալ ուրախալից օրը. արագընթաց կը վազէ: Ան որ գալու է, պիտի գայ, ու պիտի չուշանայ՝: Թէպէտ կ'երեւի թէ իմ Տէրս կ'ուշացունէ գալը, բայց քիչ մը ատենէն հոս պիտի գտնուի: Քանի մը հարիւր տարին ինչ է, երբոր անցնի: Անշուշտ անոր նըշանք պիտի երեւայ, ինչպէս յանկարծ պիտի յարձակի անփոյթ աշխարհին վրայ, ինչպէս որ փայլակը արեւելքէն կ'ելլէ՝ ու մինչեւ արեւմուտք կ'երեւնայ: Ան որ ասկէ գնաց՝ սանկ պիտի գայ. գրեթէ փողին ձայնը ականջս կու գայ. գրեթէ կը տեսնեմ որ ամպերով և հրեշտակներուն հետ կու գայ մեծ փառքով:

3. Ով անհոգ մեղաւորներ՝ ի՞նչ պիտի ընէք հիմա. ո՞ւր պիտի պահուիք. ինչո՞վ պիտի ծածկուիք: Լեռները գացին. երկինքները ու երկիրը՝ որ կային, կ'անցնին. կրակը ամէն բան կը լափէ ձեզմէ 'ի զատ՝ որ դուք հրոյ ճարակ պիտի ըլլաք յաւիտեան: Երանի՜ թէ՝ երկրին չափ շուտով սպառէիք, և երկինքին չափ շուտով հալէիք: Ահ սա փափաքները պարապ են հիմա: Պատանուկը ինքը ձեր բարեկամը պիտի ըլլար, ձեզ պիտի սիրէր և կառավարէր և հիմա պիտի փրկէր՝ բայց այն ատենը դուք չուզեցիք, և հիմա ալ ժամանակը անցաւ: Մի՛ կանչեր Տէ՛ր՝ Տէ՛ր. անցա՛ւ ո՛վ մարդ՝ անցա՛ւ ատենը: Ի՞նչ անդին աս-

դին կը նայիս, մինչ մէկը կրնայ աղտոտել քեզ-ուր կը վազես, մէկը կրնայ պահել. խնդրէ ու աղօթէ, որ ինքզինքդ սա վիճակին բերես:

4. Ահա արդ՝ երանելի՛ սուրբեր՝ որ հաւատացիք ու հնազանդեցաք. ասոր է հատուցում և համբերութեան փոխարէնը: Ա՛յս է՝ որուն համար աղօթք կ'ընէիք ու կը սպասէիք: Հիմա կը զղջա՞ք ձեր քաշած նեղութիւններուն և տրտմութիւններուն համար, ձեր ունեցած անձնուրացութեանը և և սուրբ ընթացքին համար: Հիմա ձեր աշխատութեան արտասուքներուն դառն կու գան՝ թէ քաղցր: Տեսէ՛ք, ի՛նչպէս խնդում երես կը նայի վրանիդ Դատաւորը. անոր նայուածքին մէջ սէր կայ. և անոր քաղցր ու պայծառ դէմքին վրայ դրուած է, փրկիչ՝ Տէր և Գլուխ: Մտի՛կ ըրէք ձեզ կը կանչէ, և կ'ըսէ ձեզի, Կայնեցէ՛ք հոս իմ աջ կողմս: Ո՜հ փախնաք. որովհետև հոն կը դնէ իր պսակները: Ի՛նչ ուրախալից վճիռ է. Եկէ՛ք իմ Հօրս օրհնածները, աշխարհի սկիզբէն ձեզի համար պատրաստուած թագաւորութիւնը ժառանգեցէք': Ձեր ձեռքէն կը բռնէ ու կը տանի, դուռը կը բացուի. թագաւորութիւնը իրն է, և անոր համար ձերն ալ է. ձեր տեղը հոն իր աթոռին առջևն է: Հայրը կ'ընդունի ձեզ իբրև իր Որդւոյն նշանածը և կու տայ ձեզի փառաց թագը. թէև բոլորովին անարժան՝ բայց ան թագը գլուխնիդ պիտի դրուի: Ասիկայ ձրի փրկարար շնորհքին առաջադրութիւնն է և յաւիտենական սիրոյ դիտաւորութիւնը: Օրհնեալ շնորհք: Օրհնեալ սէր: Ո՜հ ինչ սէր և ուրախութիւն պիտի ծագի ան ատենը. բայց չեմ կրնար պատմել և ոչ կրնամ ըմբռնել:

5. Ասիկայ ան ուրախութիւնն է՝ որ փրկուա-

Բէ-Նով յետոյ յետաձգուեցաւ, ան Թագը՝ որ խաչով առացուեցաւ։ Իմ Տէրս լացաւ՝ որ հիմա իմ արտասուքս սրբուի. արիւն Թափեց՝ որ ես հիմա ուրախանամ. ինք երեսէ ձգուեցաւ՝ որ ես հիմա երեսէ չձգուիմ. ինք ան տանը մեռաւ՝ որ ես հիմա ապրիմ։ Ի՞նչ ձրի ողորմութիւն՝ որ այսչափ անարգ խեղճը կրնայ վեր առնել։ Ինծի ձրի, Թէպէտ Քրիստոսի շատ սուղ։ Ձրի՜ շնորհք, որ զիս ընտրեց՝ երբ հազարաւորները ձգուեցան։ Որ ատեն իմ մեղսակիցներս դժոխքը կ'իյնին, ես հոն հանգիստ պիտի ուրախանամ, պիտի ապրիմ հոս բոլոր աս սուրբերուն հետ։ Երջանի՜կ տեսութիւն իմ հին ծանօթներուս հետ, որոնց հետ աղօթք եմ ըրեր, լացեր եմ, նեղութիւն եմ քաշեր և խօսեր եմ աս օրուանը և աս տեղին վրայ։ Տեսայ որ գերեզմանը չկըրցաւ ձեզ բռնել, մի և նոյն սէրը ձեզ փրկեց ու փառաւորեց ալ։

6. “Ո՛րչափ մեր կաւեղէն խրճիթներուն, մեր քանտերուն՝ մեր երկրաւոր բնակութիւններուն նման չէ։ Աս ուրախութեան ձայնը մեր պանդատներուն, մեր անձկալի հառաչանքներուն ու հեծեծանքներուն չնմանիր. և ոչ աս ներդաշնակաւոր փառաբանութիւնները ան ծաղրաբանութիւններուն՝ նախատինքներուն կամ յիշոցքներուն ու անէծքներուն՝ որ երկրի վրայ կը լսէինք։ Աս մարմինը մեր ան ատենի ունեցածին պէս չէ. և ո՛չ աս հոգին ան հոգիին պէս. ոչ ալ աս կեանքը մեր ան ատենի վարած կեանքին պէս։ Մենք փոխեցինք մեր տեղը՝ վիճակը՝ մեր հանդերձը՝ խորհուրդները՝ մեր նայուածքը՝ խօսուածքը և ընկերները։ Առաջ՝ սուրբերը տկար ու անարգ էին. և այնքան հպարտ ու դաժան՝ որ

հոգւով կրնայինք իրենց ունեցած շնորհքները նըշմարել. բայց հիմա ո՛րչափ փառաւոր էակներ են սուրբերը։ Ո՞ւր է հիմա անոնց մեղանչական մարմինը, որ կը ձանձրացունէր զիրենք և իրենց քովի եղողները։ Ո՞ւր են հիմա մեր տարաձայն դատողութիւնները՝ կանչած նախատական անուններնիս՝ հերձուածողութեան ոգիները՝ բորբոքած կիրքերը, սուր նայուածքները՝ անգութ դատաստանները։ Հիմա ամէնս մէկ դատողութիւն ունինք՝ մէկ անուն՝ մէկ սիրտ՝ մէկ բնակարան և մէկ փառք։ Անո՜յշ հաշտութիւն։ Երջանի՜կ միաբանութիւն։ Ալ այսուհետև Աւետարանը մեր պակասութիւններովը պիտի չնախատուի։ Ալ ո՛վ իմ հոգիս՝ այսուհետև պիտի չողբաս սուրբերուն նեղութիւնները կամ եկեղեցիին աւերմունքները, ոչ ալ քու նեղութեան մէջ եղող բարեկամներուդ համար տրտմութիւն պիտի քաշես և ոչ անոնց մահուան անկողիններուն կամ գերեզմաններուն վըրայ պիտի լաս։ Ալ բնաւ պիտի չկրես քու տաղի փորձութիւններդ Սատանայէն՝ աշխարհէն կամ քու անձէդ։ Քու ցաւերդ և հիւանդութիւններդ բոլորը բժշկուեցան. ալ քու մարմնոյդ տկարութիւններով ու նեղութիւններով պիտի չբեռնաւորի, քու գլխուդ ու սրտիդ ցաւը՝ քու անօթութիւնդ ու ծարաւդ՝ քունդ ու աշխատանքդ բոլորը անցան։ Ի՜նչ սքանչելի փոփոխութիւն է աս։ Անտէն ախոռը ելլել, հալածիչ մեղաւորներուն մէջէն փառաբանիչ սուրբերուն մէջ, անարգ մարմինէ մը ասանկ մարմնի՝ որ երկնից պայծառութեանը պէս կը փայլի. Աստուծոյ բարկութեան խմացողութենէն անիկայ սիրով կատարելապէս վայելելու. բոլոր իմ կասկածներէս ու երկիւղներէս աս ժառանգութեանը, որն որ բոլոր

տարակոյսներս կը վերջացունէ , մահուան վրայ բոլոր սոսկալի խորհուրդներէս աս ու բախալից կեանքին : Երջանի՛կ փոփոխութիւն : Մնա՛ք բարով յաւիտեան՝ մեղք ու տրտմութիւն . Մնաս բարով իմ քարեղէն՝ հպարտ՝ անհաւատ սիրտս , իմ աշխարհային՝ հեշտասէր՝ մարմնաւոր սիրտս . և բարի՛ եկար հիմա իմ բոլորովին սուրբ՝ ու երկնային բնութիւնս : Մնաս բարով ապաշխարութիւն՝ հաւատք ու յոյս . և բարի եկար սէր՝ ազատութիւն և փառաբանութիւն : Ով հիմա պիտի հնձեմ՝ առանց արօրելու և առանց ցանելու , պիտի հնձեմ իմ ազատութիւնս առանց քարոզիչի և առանց խոստմունքի , այլ ամէն բան բուն Աստուծոյ երեսէն : Ինչ խառնուրդ որ գտնուի առուներուն մէջ , բուն ակը զուտ ազատութենէն զատ բան չկայ : Ահա հոս յաւիտենականութիւնը զիս պիտի պատէ , և միշտ պիտի ապրիմ և յաւիտեանս յաւիտենից պիտի փառաբանեմ Տէրը . երեսս պիտի չկընճռոտի , ոչ ալ մազերս պիտի ճերմկի . Վասն զի պէտք է որ աս ապականացու մարմինը անապականութիւն հագնի , ու աս մահկանացուս անմահութիւն հագնի , և մահը յաղթութեան մէջ ընկղմի . ո՞ւր է ո՛վ մահ՝ քու խայթոցդ . ո՞ւր է ո՛վ գերեզման՝ քու յաղթութիւնդ՝ : Իմ ժառանգութեանս տարիները պիտի չհատնին . ոչ ալ այսուհետև մահուան խորհուրդներով ինքզինքս պիտի նեղեմ : Եւ ոչ պիտի կորսնցունեմ իմ ազատութիւնս՝ անիկայ կորսնցունելու երկիւղով : Երբոր միլիոնաւոր դարեր կ՚անցնին , իմ փառքս տակաւին նոր սկսած է . և երբ աւելի միլիոններ կ՚անցնին , անով վախճանին աւելի մօտեցած չըլլար : Ամէն օր բոլոր օրը ցորեկ է . ամէն ամիս

հունձքի ատեն է, ամէն տարի Յոբելեան է. և մեր հասակին ամէն մասը չափահաս մարդու հասակ է. և բոլոր ատիկայ մէկ յաւիտենականութիւն մըն է: Ո՛րչանի՛կ յաւիտենականութիւն. իմ փոքրիկ փառքը, ու կատարելութեանս կատարելութիւնը:

7. Ո՛հ թմրած ու երկրային սիրտ. ո՛րչափ ցրտութեամբ կը խորհիս աս կենդանացուցիչ օրուանը վրայ. տաքնալ կ՚ուզես տիզմի մէջ նստիլ, քան թէ Աստուծոյ պալա՞տը պտըտիլ: Աշխարհային գործքերո՞դ միտքդ կու գան հիմա, կամ թէ քու ցանկութիւններուդ՝ երկրաւոր զուարճութիւններուդ և ուրախ ընկերութիւններո՞ւդ վրայ կը մտմտաս: Քեզի աւելի աղէ՞կ կու գայ հոս կենալ՝ քան թէ վերը Աստուծոյ հետը ըլլալ: Աս տեղի ընկերները աւելի աղէ՞կ են. ու հաճութիւնները աւելի մե՞ծ են: Օ՛ն արի՛, ունայն պատճառանքներ, մի՛ բռներ, մի՛ յապաղեր. Աստուած կը հրամայէ. և ես կը հրամայեմ. գօտիդ մէջքդ կապէ, լեռը ելիր, վերցո՛ւր աչքդ ու նայէ հաւատքով և ուշադրութեամբ: Մի՛ նայիր ետ անապատի ճամբուն վրայ, նայէ միայն անոր համար որ ժառանգելիք թագաւորութիւնդ բաղդատես ան ահագին անապատին հետ, և աւելի ազդու զգացում ունենաս անոնց մեծ տարբերութեանը վրայ: Հոն է քու Հօրդ փառքը, հոն պիտի երթաս՝ ո՛վ իմ հոգիս՝ երբոր բաժնուիս աս մարմինէն. և երբոր քու Տէրոջդ զօրութիւնը կրկին կենդանացունէ քեզ և մարմնոյդ հետ միացունէ, հոն Աստուծոյ հետ պիտի բնակիս յաւիտեան: Հոն է հոյակապ Նոր Երուսաղէմը. մարգրտէ դուռները ու հիմունքը և փայլուն ոսկիէ փողոցները: Ան արևը որ բոլոր աշխարհս

կը լուսաւորէ, անպիտան պիտի ըլլայ հոն. դուն անգամ մը փայլուն արևին չափ պայծառ պիտի ըլլաս. Աստուած արեգակը պիտի ըլլայ և Քրիստոս լոյսը, և անոր լուսովը դուն պիտի լուսաւորուիս։

8. «Ո՛վ իմ հոգիս 'անհամբերութենով' կը տարակուսի՞ս Աստուծոյ խոստմունքէն՝։ Շատ կասկած ունիմ քու վրադ, եթէ արդեամբք հաւատացած ըլլայիր անոր՝ անիկայ աւելի ազդեցութիւն պիտի ընէր քեզի։ Մ՚իթէ Աստուծոյ ըստարագրութեամբը և անոր կնիքովը ու իր երդումովը հաստատուած չէ՞ անիկայ։ Մ՚իթէ Աստուած սուտ կրնա՞յ խօսիլ։ Մ՚իթէ ան որ ինքը ճշմարտութիւն է՝ կրնա՞յ սուտ ըլլալ։ Ի՞նչ կարօտութիւն ունի Աստուած քեզի շողոքորթութիւն ընելու կամ խաբելու։ Ինչո՞ւ իր կատարելիքէն աւելի խոստմունք պիտի ընէ քեզի։ Մ՚ի համարձակիր ամենիմաստ, ամենակարող և հաւատարիմ Աստուծոյ վրայ սանկ պակասութիւն մը դնել։ Անոր որքան խոստմունքները կատարուեցան քու վրադ քու դարձի եկած տենէդ։ Մ՚էկ խաբեբայ խոստմունք մը այնքան զօրաւոր կերպով պիտի կատարէ՞ Աստուած։ Ո՛վ թշուառ սիրտ անհաւատութեան։ Աստուած քեզի հանդիստ մը տալ խոստացեր է, և դուն ետ կը կենաս անկէ։ Աւելի դիւրին է որ քու աչքդ՝ ականջդ և բոլոր քու զգայարանքներդ քեզ խաբեն, քան թէ Աստուծոյ մէկ խոստմունքը պարապը ելլէ վրադ։ Կրնաս աւելի վստահիլ Աստուծոյ պատգամին մէջ գրուած խօսքին, քան թէ եթէ քու աչքովդ տեսած ու ձեռքովդ շօշափած ըլլայիր։ Վստա՞հ ես որ դուն ողջ ես, կամ թէ երկրի վրայ կեցեր ես, կամ թէ արևը կը

տեսնես : Այնչափ ստոյգ է բոլոր աս փառքը ամպերուն, նոյնքան ստոյգ է որ ես ան աստղերէն բարձր պիտի ըլլամ և յաւիտեան պիտի բնակիմ սուրբ քաղաքը և ուրախութեամբ իմ փրկչիս փառաբանութիւնները պիտի հնչեցունեմ, եթէ դուրս չձգուիմ աս 'անհաւատութեան չար սրտո–վը՝, որ կ՚առաջնորդէ 'ապստամբ ըլլալու կենդա–նի Աստուծմէն՝ :

9. "Ու եթէ աս հանգիստը այնքան քաղցր և այնքան ստոյգ է, ուրեմն ինչ է աս անհոգ ու–խորհին միտքը. գիտե՞ն իրենց անհոգ եղած բա–նին ինչ ըլլալը : Կա՞ծ են անոր վրայօք եղած խօսքերը, թէ տակաւին քուն են կամ թէ մեռած են : Ստուգապէս գիտե՞ն իրենց առջևը եղած թագին ինչ ըլլալը. երբ այսպէս անհոգ կը նըս–տին կամ չնչին բաներու խնդքերնին տուած են : Անտարակոյս անոնք ցնորած են՝ որ այսպէս միտք կը դնեն իրենց ժամբուն պաշարին, քանի որ այն–քան շուտպաւ կը մղուին ուրիշ աշխարհ մը, և յաւիտենական երջանկութիւնը անստոյգ է : Եթէ դատողութեան մէկ կայծ մը մնացած ըլլար քո–վերնին՝ բնաւ պիտի չփոխարինէին իրենց հան–գիստը աշխատանքի հետ և ոչ իրենց փառքը աշ–խարհային ունայնութեանց հետ, և ոչ պիտի յան–դըգնէին փոխարինել երկինքը մեղսալից հեշտու–թեան հետ : Խենդ մարդիկ : Երանի թէ ան–գամ մը միտք առնէիք՝ թէ ինչ վտանգի մէջ կը ձգէք ինքզինքնիդ, ալ ան տունը կ՚արհամարհէիք աս հրապուրիչ կարթերը : Յաւիտեան օրհնեալ ըլլայ ան օրը որ ազատեց զիս աս յանկուցիչ խաւարէն :

10. "Մօտեցիր յառաջ ո՛վ իմ հոգիս, քու [illegible] : Ահա հոս կայ բան մը որուն

արժան է զանիկայ գործածել, բան մը որ արժանի է սիրոյ։ Տե՛ս՝ ինչ գեղեցկութիւն երևան կ՚ելլէ։ Միթէ բոլոր աշխարհիս գեղեցկութիւնները հոս միացած չե՞ն։ Միթէ բոլոր ուրիշ գեղեցկութիւն տգեղութիւն չէ՞. ալ հիմա համոզանքի կը կարօտի՞ս սիրելու համար. ահա հաճութեան տեսարան մը կայ հոս քու աչքերուդ և խնճոյք մը բոլոր քու հոգւոյդ կարողութիւններուն. աղաչանքի՞ կը սպասես՝ որ ճաշակես անիկայ։ Կրնաս քիչ մը փայլուն հողը և շրջող կաւի մը կտորը սիրել՝ ու չե՞ս կրնար սիրել այն Աստուածը՝ այն Քրիստոսը և այն փառքը՝ որ այնքան ճշմարտութեամբ և անհամեմատ սիրելի են։ Դուն կրնաս սիրել քու բարեկամդ՝ այն քեզ սիրելուն համար, և բարեկամի մը սէրը Քրիստոսի սիրոյն պէ՞ս է։ Անոնց քեզի համար լալը կամ արիւն թափելը քու նեղութիւններդ չվերցուներ, ոչ ալ քու արտասուացդ կամ արեանդ փոխելը կը կեցունէ. բայց քու Տէրոջմէդ թափուած արտասուքը և արիւնը գերագոյն աստիճանի բժշկութեան զօրութիւն մը ունին։ Ո՛վ իմ հոգիս, եթէ սէրը սիրոյ արժանի է՝ և սէր յառաջ կը բերէ, տե՛ս ինչ անըմբռնելի սէր կայ քու առջևդ. քու սիրոյդ բոլոր շտեմարանները հոս պարպէ և տակաւին բաւական չէ։ Երանի՛ թէ աւելի սէր կենար քու մէջդ, երանի՛ թէ հազարաւոր անգամ աւելի ըլլար։ Թո՛ղ առաջ անոր ծառայութիւն ըլլայ՝ որ ինք առաջ ծառայեց քեզի։ Թո՛ղ այն ընդունի քու հոգւոյդ առջի պտուղը և զօրութիւնը, որ զօրութիւն՝ կեանք ու սէր տուաւ քեզի համար։ Ո՛վ իմ հոգիս, եթէ մէկ բան մը իր գերազանցութեանը համար կը սիրես՝ ահա հոն է լուսոյ ակը, իսկ աս՝ խա-

տարման երկիր է։ Ո՜վ պլպլացող աստղերդ ու փայլուն լուսինդ՝ և լուսապայծառ արեգակդ ամէնը ուրիշ բան չեն, այլ քու Հօրդ տունէն կախուած լապտերներ են, որ լոյս տան քեզի, քանի որ աս խաւար աշխարհիս վրայ կը պտըտիս։ Բայց որչափ քիչ տեղեկութիւն ունիս անոր ներսիդին եղած փառքին և հրաշալութեանը վրայ։ Եթէ մէկը կը սիրես քեզի ունեցած յարմարութեանը համար, Քրիստոսէն յարմար ո՞վ կայ. անոր աստուածութիւնը և մարդկութիւնը՝ կատարելութիւնը և առատութիւնը՝ յօժարութիւնը և հաստատութիւնը բոլորը կը քարոզեն թէ անիկայ քու ամենայարմար բարեկամդ է։ Գթութենէն ինչ աւելի յարմար բան կայ՝ քու խեղճութեանդ, և փառքէն ու կատարելութենէն յարմար ինչ բան կայ՝ քու մեղքիդ ու պղծութեանդ։ Ի՞նչ աւելի յարմար տեղ կայ քեզի երկինքէն ՚ի զատ։ Միթէ աս աշխարհս քու փափաքներուդ համաձայն կու գա՞յ. բաւական ատեն փորձը չըրի՞ր. կամ եթէ կը սիրես աշխարհը քու անձնական շահդ անոր հետ կապուած ըլլալուն համար և անոր հետ ունեցած մեծ յարաբերութիւններուդ համար. երկինքէն ՚ի զատ ո՞ւր տեղ աւելի մեծ շահ և աւելի մեծ յարաբերութիւն ունիս։ Եթէ ծանօթութիւն ու ընտանութիւն կը փնտռես, թէպէտև քու աչքերդ բնաւ տեսած չեն քու Տէրդ, բայց և այնպէս լսած ես անոր ձայնը, ընդունած ես անոր պարգևները և կ՚ապրիս անոր ծոցը։ Ո՞վ սորվեցուց քեզի ճանչնալ քու անձդ և ճանչնալ զինքը։ Ո՞վ բացաւ քեզի ան առաջին պատուհանը՝ որմէ դուն երկինք նայեցար։ Մոռցա՞ր որ քիչ մը ատեն առաջ քու սիրտդ անհոգ էր՝ ու ան արթընցուց անիկայ, կարծր էր՝ ու

կանկուղցուց ; ապստամբ էր՝ և հնազանդեցուց , խաղաղ էր՝ ու խռովեց , ամբողջ էր՝ ու կոտրեց , և կոտրած մնաց մինչև որ ինք դարձեալ բժշկեց անիկայ ։ Մոռցա՞ր ան տառեններըդ՝ երբ քու լալդ տեսաւ ու լսեց քու առանձին ըրած հառաչանքդ ու հեծեծանքդ , և թողուց ամէն բան որ գայ քեզ մխիթարէ . և խիր թէ իր գիրկը առաւ քեզ և հարցուց . Խեղճ հոգի , ի՞նչ եղաւ քեզի , կու լա՞ս դուն՝ քանի որ ես այնքան լացեր եմ ։ Մի՛ փախնար քու վէրքերդ առողջարար են և ոչ մահաբեր ։ Ես որ քեզի վնաս չեմ ուզեր՝ ես բացի ան վէրքերը , թէև քու արիւնդ կը հանեմ՝ բայց չեմ հաներ քու կեանքդ ։ Անոր ձայնը իմ ականջիս է տակաւին՝ որ ինչպէս քաղցրութեամբ զիս վեր առաւ ։ Ինչպէս զգուշութեամբ պատեց իմ վէրքերս , ինծի անանկ կու գայ թէ տակաւին կը լսեմ անոր ձայնը՝ որ կ՚ըսէ , Խեղճ մոլար , թէպէտ և դուն անիրաւութեամբ փորձեցար ինծի հետ , և զիս մէկդի ձգեցիր , բայց ես անանկ չեմ ըներ քեզի ։ Ինչպէս և զիս ու բոլոր իմ շնորհքներս արհամարհեցիր , սակայն և այնպէս անոնք ու ես բոլորս ալ քուկդ ենք ։ Ի՞նչ ունենալ կ՚ուզես՝ որ ես կրնամ տալ քեզի ։ Ես ի՞նչ բան կրնաս ուզել , որ ես կարող չըլլամ տալ քեզի . Եթէ քեզի հաճութիւն տուող բան մը ունիմ , պիտի վայելես անիկայ ։ Առողջութի՞ւն կ՚ուզես ։ Ես ձրիապէս կը ներեմ քեզի բոլոր քու պարտքդ ։ Շնորհք ու խաղաղութի՞ւն կ՚ուզես ։ Երկուքն ալ պիտի ընդունիս ։ Զի՞ս կ՚ուզես ։ Ահա ես քուկդ եմ . քու Բարեկամդ՝ քու Տէրդ՝ քու Եղբայրդ՝ քու Էրիկդ և քու Փրկիչդ ։ Միթէ Հա՞յրը կ՚ուզես ։ Ես քեզ անոր կը տանիմ և պիտի վայելես զինքը ինծմով՝ ։ Ասոնք

եին իմ Տէրոջս քաջալերական խօսքերը ։ Իսկ ես ամենէն եւս երբոր տարակոյս ունեցայ իր սիրոյն վրայ, դրեթէ միտքս է տակաւին իր յագեցուցիչ փաստերը ։ Դա այսչափ բան ըրի՛ ով մեղաւոր՝ իմ սէրս յայտնելու համար, և տակաւին կը տարակուսի՞ս ։ Այսչափ ժամանակ է ես ինքզինքս ու իմ սէրս քեզի նուիրած եմ, և տակաւին իմ քուկդ ըլլալս յօժար ըլլալս կամ չըլլա՞լս կը հարցունես ։ Ի՞նչ աւելի սուղ գինով մը քեզի ըսեմ թէ ես քեզ կը սիրեմ ։ Զի՞ս հաւատալ՝ որ իմ դառն չարչարանքներս սէրէն յառաջ եկաւ ։ Ես Աւետարանին մէջ առիւծ ըրած եմ ինքզինքս քու թշնամիներուդ՝ իսկ քեզի գառնուկ ․ և կ'արհամարհե՞ս իմ գառնուկի նման բնութիւնս ։ Եթէ յօժար ըլլայի թողուլ քեզ որ կորսուիս, ի՞նչ հարկ կար որ այնչափ բան ընէի և այնչափ բան քաշէի ։ Ի՞նչ հարկ կար որ քու ետնէդ ըլլայի այնչափ համբերութիւնով և թախանձանօք ։ Ինչո՞ւ քու կարօտութիւններըդ կը պատմես ինծի, ես չունիմ ինծի ու քեզի բաւական ․ կամ քու անարժանաւորութիւնդ, վասըն զի եթէ դուն ինքնին արժանի եղած ըլլայիր, իմ արժանաւորութի՞ւնս ինչ պիտի ընէիր ։ Երբեք ես արժանաւորները կամ արդարները փըրկած ունիմ, կամ թէ կա՞յ անանկ մէկը երկրի վրայ ։ Եթէ բան չունիս, եթէ կորսուած ու խեղճ՝ անօգնական և երեսէ ձգուած ես, կը հաւատա՞ս որ ես ամենաբաւական փրկիչ մըն եմ ․ և կ'ուզե՞ս ընդունիլ զիս ․ ահա ես քուկդ եմ ․ ընդունէ զիս ։ Եթէ դուն յօժար ես, ես յօժար եմ ․ և ո՛չ մեղքը՝ ո՛չ Սատանան կարող պիտի ըլլայ աւրել աս միաբանութիւնը՝ ։ Ասոնք էին ասո՛նք՝ ան օրհնեալ խօսքերը որ անոր հոգին

խօսեցաւ ինծի իր Աւետարանէն, մինչև զիս անոր տուքը ձգել ու աղաղակել տուաւ, Իմ փրկի՛չս և իմ Տէ՛րս. իմ սիրտս դո՛ւն կոտրեցիր, և դուն նորոգեցիր, դուն յաղթահարեցիր զիս և իմ սիրտս վաստըկեցար. ա՛ռ անիկայ. քո՛ւկդ է. եթէ ասանկ սիրտ մը հաճոյ է քեզի՝ ա՛ռ անիկայ. եթէ ո՛չ՝ ինչպէս որ հաճոյ է քեզի՝ անանկ ըրէ անիկայ՝: Այսպէս ո՛վ իմ հոգիս կրնաս միտքդ բերել այն քաղցր ընտանութիւնը որ ունեցած ես Քրիստոսի հետ. վասնորոյ եթէ ընտանութիւնը սէր յառաջ կը բերէ, թո՛ղ տուր սիրտդ երթայ անոր: Ան է որ կեցաւ անկողիններդ քովը հիւանդութեանդ ատենը՝ ցաւերդ մեղմեց՝ քու յոգնած անձիդ կազդուրումն տուաւ և քու վախերդ վերցուց: Միշտ պատրաստ գտնուեցաւ այն՝ երբոր դուն եռանդով խնդրեցիր զինքը՝ քեզի յայտնուեցաւ թէ հրապարակաւ թէ առանձին, գտնուեցաւ քեզի ժողովքի մէջ՝ քու տունդ՝ քու սենեակդ՝ դաշտը և գիշերը արթընցած ատենդ ու քու ամենամեծ վըտանգներուդ մէջ:

«Եթէ առատաշնորհութիւնն ու գթութիւնը քու սէրդ կը քաշեն, ուրեմն ո՛րչափ անհամեմատ պարտաւոր եմ ես սիրել անիկայ: Բոլոր այն պարագաները որով լեցուած է իմ կեանքս՝ ամէն այն տեղերը՝ որ ես երբեք բնակեր եմ, ամէն այն ընկերութիւնները և անձինքը որոնց հետ ես ընկերութիւն ըրեր եմ, բոլոր իմ գործքերս ու յառաջերութիւններս, ամէն վիճակ՝ որուն մէջ գըտնուած եմ, և ամէն փոփոխութիւն՝ որ կրեր եմ, ամէնը կ՚ըսեն ինծի թէ այն աղբիւրը ուրմէ ասոնք կու գան՝ առատաբուղխ բարութիւն է: Տէ՛ր, ինչ բարձր աստիճան սէր պարտաւոր եմ քեզի: Եւ ո՛րչափ կ՚աճի միշտ իմ պարտքս քեզի: Ալ ո՛ր-

չափ սիրելու եմ ես տասանկ սիրոյ փոխարէն ։ Բայց միթէ կրնա՞մ համարձակիլ խորհելու քեզի հատուցում կամ քու բոլոր սիրոյդ իմինովս փոխարէն մը ընելու ։ Միթէ իմ մէկ սակս կը փոխարինէ՞ քու ոսկիի հանքերուդ, իմ հազիւ երբէք զգացած փափաքներս՝ քու մշտատև առատաշնորհութեանդ, իմս որ ոչինչ է կամ իմս չէ, կրնա՞յ փոխարինել քուկդ, որ անհուն է և բուն քու կդ է ։ Միթէ կըրնա՞մ համարձակիլ սիրոյ բաղդատութիւն ընել քեզի հետ, կամ իմ փոխ առած ու նուաղած կայծս սիրոյ արեգակին առջևը դնել ։ Կրնա՞մ սիրել նոյն՝ ինքն Սիրոյն չափ բարձր՝ խորունկ՝ լայն և երկայն սիրով, կամ անոր մեծութեանը համեմատ սիրով՝ որ ստեղծեց զիս և սիրեց ու ինք տուաւ ան իմ ունեցած քիչ սէրս ալ ։ Ինչպէս որ չեմ կրնար հաւասարիլ քեզի զօրաւոր գործքերու մէջ և ո՛չ կրնամ աշխարհներ ստեղծել՝ պաշտել և կառավարել, անանկ ալ սիրոյ մէջ չեմ կրնար հաւասարիլ քեզի ։ Ո՜հ Տէր՝ ես կը զիջանիմ. յաղթահարուած եմ Օրհնեա՜լ մարտ ։ Յառաջ դնա յաղթութեամբ և աւելի՛ զօրացիր ու յաղթութեան հանդէս թող կատարուի քու սիրովդ ։ Սիրոյ գերիները պիտի քարոզեն քու յաղթութիւնդ. երբոր զիս յաղթանակով տանիս երկրէն՝ երկինք, մահուանէ՝ կեանքի, դատաստանի ատեանէն՝ աթոռը, ես ու բոլոր սեռնողները ամէնս պիտի խոստովանինք՝ թէ դուն յաղթեցիր, և բոլորը պիտի ըսեն. “Նայեցէք որչափ կը սիրէր զանիկայ”։ Բայց և այնպէս տո՛ւր որ սիրեմ քու սիրոյդ հպատակելով իբրև քու փրկած գերիդ, թէև ո՛չ իբրև քու հաւասարդ ։ Միթէ բնաւ երբէք սիրելու չե՞մ քու սիրոյդ չափին հասնիլ չկրնալուս համար ։ Երանի՛ թէ կարող

ըլլայի խորին զգացումով ըսել. Ես կը օրհնեմ քեզ՝ ինչպէս որ կը սիրեմ իմ մտերիմս և իմ անձըս։ Թէպէտ չեմ կրնար ըսել առաքելային պէս, թէ Քրիստո՛ս որ կը սիրեմ զքեզ, սակայն կրնամ ըսել. Տէ՛ր՝ գիտես որ կ՚ուզեմ սիրել քեզ։ Ես բարկացած եմ իմ սրտիս որ քեզ չսիրեր, կը յանդիմանեմ՝ բայց օգուտ չըներ, պատճառ կը ցուցընեմ և շատ կը փափաքիմ որ համոզեմ՝ բայց չեմ տեսներ որ իրեն ներգործութիւն մը կ՚ընէ. կրօնական պաշտամունքներով կը շինեմ և կը գրգռեմ անիկայ, բայց տակաւին չեմ զգար իմ մէջս թէ կը տաքնայ։ Անարժա՛ն հոգի. միթէ սիրոյ եղական առարկային վրայ ուղղած չե՞ս աչքդ հիմա։ Չէ՞ որ սրբոց երջանիկ փառքին վրայ կը նայիս հիմա։ Ու չե՞ս սիրեր անիկայ։ Միթէ բանական հոգի չե՞ս դուն. և բանականութիւնը իմացունելու չէ՞ քեզի որ երկիրը խաւարին բանտ մըն է երկնային փառքին քովը։ Դուն ալ հոգի չե՞ս, և չե՞ս սիրեր զԱստուած որ Հոգի է և հոգիներուն Հայրը՝։ Ինչո՞ւ այնչափ կը սիրես քու կորսուելու կաւեղէն մարմինըդ. և աւելի երկնային փառքը չես սիրեր։ Պիտի սիրե՞ս երբոր հոն երթաս, երբոր Տէրը հանէ քու մարմինդ գերեզմանէն՝ և տայ քեզի արևի պէս փայլիլ փառքի մէջ յաւիտեանս յաւիտենից, ան ատենը պիտի սիրե՞ս թէ ո՛չ։ Միթէ ան տեղը սէր ունեցողներու ժողովք չէ՞։ Միթէ ան կեանքը սիրոյ վիճակ մը չէ՞։ Չէ՞ որ Գառնուկին հարսանեաց մեծ օրն է ան։ Չէ՞ որ ան տեղի գործը սիրե՛լ է, ուր որ հոգիները Քրիստոսով կը լեցուին. Ո՛վ իմ հոգիս, հո՛ս սկսէ ուրեմն ան գործը։ Սիրով նուաղէ՝ հիմա, որ հոն սիրով զօրանաս։ Ինքզինքդ Աստուծոյ

սիրոյն մէջ պահէ և թող ո՛չ մահը՝ ո՛չ կեանքը և
ո՛չ բնաւ բան մը զատէ քեզ անկէ՝ . և պիտի մը-
նաս սիրոյ կատարելութեան մէջ յաւիտեան և
բնաւ բան մը պիտի չդառնացունէ և չջնջէ քու
զուարճութիւնդ , վասն զի Տէրը սիրոյ քաղաք մը
պատրաստեր է , տեղ մը՝ որ հոն սէր հաղորդէ իր
ընտրեալներուն , ՙև անոր անունը սիրողները անոր
մէջը պիտի բնակին՝ ։

11 . ՙՄԽԻԹԱՐՈՒԷ՛Ք ուրեմն ո՛վ իմ թմրած հոգիս ։
Շնորհաց լուսոյն տակը քնանալը ապօրինաւոր
բան է , և աւելի ապօրինաւոր է փառաց լուսոյն
մօտեցած ատենը քնանալը ։ Յառա՛ջ եկուր ո՛վ
իմ թոյլ ու թանձր հոգիս . քու Տէրդ կը հրա-
մայէ քեզի որ ՙուրախ ըլլաս , ու դարձեալ ուրախ
ըլլաս՝ ։ Բաւական մնացիր քու մարմնոյդ բան-
տին մէջը , ուր որ Սատանան քու բանտապետդ
էր , հոգերը քու երկաթներդ՝ վախերը քու խա-
րազաններդ էին և քու կերակուրդ տառապանաց
հաց ու ջուր . ուր որ տրտմութիւնները քու բը-
նակարանդ և մեղքն ու թշնամիները քու անկո-
ղինդ , և անհաւատ սիրտդ ան դուռները ու նի-
գերը եղած են որ քեզ ներսը պահեցին . իսկ
արդ՝ ուխտին Հրեշտակը հիմա քեզ կը կանչէ , և
կ՚ըսէ քեզի ՙելի՛ր ու եկո՛ւր իմ ետեւէս՝ ։ Ո՛ն
արի՛ ո՛վ իմ հոգիս , և զուարթութեամբ հնա-
զանդէ՛ . և դռներուդ կղպանքները ու նիգերը
բոլորը պիտի բացուին . Գառնուկը ուր որ երթայ
ետեւէ՛ն գնա ։ Սանկ առաջնորդի հետեւելու
վախնալո՞ւ է ։ Կրնա՞յ արեւը խաւարի առաջնոր-
դել քեզ ։ Ան՝ որ քեզ մահուանէ փրկելու
համար ինք մեռաւ , մահուա՞ն պիտի առաջնորդէ
քեզ ։ Անոր ետեւէն գնա՛ և ան քեզի պիտի
ցուցընէ Աստուծոյ դրախտը , քեզի ՙՆոր Երու-

սաղէմը տեսնել պիտի տայ և կենաց ծառէն ճաշակել ։ Յասուծոյ եկուր իմ մարած հոգիս, հանէ՛ վրայէդ ձմեռուան հանդերձներդ ․ Թող տեսնուի ուրախութեան և գովութեան պատմուճաններովդ՝ որ գարունը եկած է, և ինչպէս որ հիմա հանգստութիւններդ կանաչցած կը տեսնես, անանկ ալ քիչ ատենէն պիտի տեսնես զանոնք ճերմըկած ու հնձուելու պատրաստ, և ան ատենը քու Տէրդ քեզ պիտի կանչէ որ հնձես ու ժողվես և ժառանգես ։ Միթէ մինչև ան ատենը իմ ուրախութիւններս պահելու եմ ։ Գարունի ուրախութիւնները հունձքի ուրախութիւններէն առաջ չը՞լլար ։ Մէկ բան մը չժառանգած ան բանին ունեցած իրաւունքդ ոչի՞նչ բան է ։ Ժառանգը գիրքին աղէկ վիճակի մէջ չէ՞ ։ Իմ Տէրս ինծի սորվեցուց իր փառքին յոյսովը ուրախանալ և բանտին կղպանքներէն տեսնել ան փառքը, ձայն մը ինծի կը հրամայէ որ 'արդարութեան համար հալածուած ատենս ցնծամ և ուրախ ըլլամ, ինչու որ իմ վարձքս շատ է երկինքը'։ Գիտեմ թէ կ'ուզէ որ իմ ուրախութիւնս՝ տրտմութիւններէս աւելի ըլլայ ․ և որչափ ալ կը հաճի խոնարհ և կոտրած սիրտ եղողին, սակայն աւելի կը հաճի իրմով ուրախացող հոգիին ։ Եթէ իմ Տէրս սեղան մը պատրաստեր է աս անապատին մէջ, և զարդարեր է անիկայ յաւիտենական փառաց խոստմունքներով և իմ աչքես հրեշտակային կերակուր դրեր է, եթէ յաճախակի և թախանձանօք կը հրաւիրէ զիս, որ նստիմ ուտեմ և չխնայեմ, եթէ աս բանին համար ինծի խելք՝ հաւատք և ուրախ բնաւորութիւն է տուեր, կարելի՞ է որ իմ ուրախանալս չուզէ ։ Միթէ մեզի հրամայած չէ՞ թէ 'Տէրոջմով ուրախացիր'. և

խոստացած չէ՞ թէ 'անիկայ կու տայ քեզի քու սրտիդ խնդրուածները': Մի՞թէ քեզի պատուիրուած չէ՞ թէ 'ամէն ատեն ուրախ եղիր', այլև թէ 'ուրախութեամբ երգէ՛ ու ցնծա՛': Ուրեմն ինչո՞ւ վհատիմ: Եթէ ես յօժար ըլլամ, իմ Աստուածս յօժար է: Ան իմ ուրախութեանս վրայ կ'ուրախանայ: Ան կ'ուզէ որ իմ հաստատուն ընթացքս ու հանապազօրեայ գործս ըլլայ իրեն մօտ կենալ անկասկած մտածութիւններով, և այրել անոր բարութեան վրայ ամենաքաղցր խորհրդածութիւններով: Երջանի՛կ զբաղմունք՝ յարմար Աստուծոյ որդւոցը: Բայց քու խնճոյքըդ ո՛վ իմ Տէրս, ոչի՛նչ է ինծի առանց ախորժակի: Դուն երկնից խորտիկները իմ առջևս դրեր ես, բայց աւա՜ղ, որ ես կոյր եմ և չեմ կրնար տեսնել զանոնք. Հիւանդ եմ ու անոնց համը չեմ առներ. այնչափ թմրած եմ որ ձեռքս չեմ կրնար երկնցունել զանոնք առնելու համար: Ա՛ անօրոյ խոնարհութեամբ աս շնորհքը կը խնդրեմ թէ՝ ինչպէս որ երկինքը քու խօսքովդ ինծի բացիր, անանկ ալ բանաս աչքերս որ տեսնեմ անիկայ, և սիրտս անոր վրայ ուրախանայ. եթէ ոչ՝ երկինքը ինծի երկինք պիտի չըլլայ: Ո՛վ դուն կենաց Հոգի, փչէ՛ իմ քովս եղած շնորհքներուդ վրայ, բանէ՛ ձեռքէս և վե՛ր առ զիս երկնքէն որ 'քեզ սիրողներուն համար պատրաստած' փառքը տեսնեմ:

«Մէկ դի՛ գացէք՝ ուրեմն դուք հոգի տանջող հոգեր ու վախեր, և դուք՝ սրտմաշուք տրտմութիւններ: Կոնէ քիչ մը մէկ դի՛ կեցէք, դուք կայնեցէ՛ք հոն վարը, մինչև որ ես ելլեմ վեր ու տեսնեմ իմ հանգիստս: Ճամբան նոր է ինծի, բայց Քրիստոսի նոր չէ: Հոն էր անոր փառա-

ւոր աստուածութեան յաւիտենական բնակութիւնը. և հոն բերաւ նաև իր փառաւորեալ մարմինը: Իր գործը անիկայ ծախու առնել էր, նաև իր գործն է պատրաստել անիկայ և մեզ անոր համար պատրաստել, և անոր հասցունել: Ճշմարտութեան յաւիտենական Աստուածը ինծի խոստացաւ, երդում ըրաւ ու կնիք դրաւ, որ «Քրիստոսի հաւատալով պիտի չկորսուիմ, այլ յաւիտենական կեանք ունենամ»: Յուսով հոն պիտի տարուի իմ հոգիս և քիչ ատենէն իմ մարմինս ալ անոր ետևէն: Ու կրնա՞յ ըլլալ որ իմ լեզուս ըսէ թէ ես անշուշտ քիչ ատենէն Աստուծոյ հետ պիտի բնակիմ, և տակաւին իմ սիրտս ներսիդիս չցնծայ: Կրնա՞մ ասանկ բան մը հաւատքով ըսել ու չուրախանալ: Ո՜վ հաւատք, ո՜րչափ ազդու կը զգամ հիմա քու ակարութիւնդ. բայց թէև անհաւատութիւնը խաւարեցունէ իմ լոյսս և թուլցունէ իմ կեանքս և մարէ ուրախութիւնս, սակայն կարող պիտի չըլլայ յաղթել և կորսնցունել զիս: Թէև բոլոր իմ հանգստութիւններուս նախանձի, բայց և այնպէս մինչև անգամ հոս պիտի ընդունիմ անոնց մէկ քանին, և եթէ ան չորդիլէր, ո՜րչափ առաւել պիտի ունենայի: Երկնից լոյսը սրտիս վրայ պիտի ծագէր, և գրեթէ այնքան ընտանի պիտի ըլլայի հոն՝ որչափ որ հոս երկրի վրայ: Եկո՛ւր ուրեմն ո՜վ իմ հոգիս, դադրէ՛ անհաւատութեան աղէտ խօսքերուն միտք ընելէն. դուն կարող ես պատասխան տալ բոլոր անոր փաստերուն, և եթէ կարող ալ չըլլաս՝ տակաւին անարգէ՛ ու ոտքի տակ առ զանոնք: Եկո՛ւր ասդին, մի՛ կենար և նայիր գերեզմանին վրայ և ալ մի՛ վախներ նայիր այդ ոսկորները՝ հողէն ու մոխիրէն դուրս առնելու. քանզի

ող գիրերը շուտով պիտի սրբուին · Այլ վե՛ր առ
աչքերդ և երկի՛նք նայէ և տե՛ս քու անունդ
ոսկեղէն գիրերով գրուած՝ մակագրուած Գառնու-
կին կենաց գիրքին մէջ: Ինչ պիտի ըլլար՝ եթէ
հրեշտակ մը ըսէր քեզի թէ երկինքը տեղ մը
պատրաստուած է քեզի համար, որ ստուգապէս
յաւիտեան քուկդ պիտի ըլլայ, տանիկ լուր մը
պիտի չուրախացունէ՞ր քեզ: Ու կ'արհամարհե՞ս
Խոստմունքին անսխալ Բանը, որ տրուեցաւ Հո-
գիէն և մինչև անգամ Աստուծոյ Որդիէն: Դի-
ցուք թէ տեսնէիր հրեղէն կառք մը որ քեզի հա-
մար գար և քեզ երկինքը տանէր Եղիա մարգա-
րէին պէս . չէի՞ր ուրախանար: Բայց քու Տէ-
րըդ կը վստահացունէ քեզ որ Ղազարոսի մը
հոգին հրեշտակները տարին Աբրահամին գոգը:
Գինեմոլը այնքան կ'ուրախանայ իր գաւաթին վը-
րայ կամ որկրամոլը իր խորտիկներովը, ու ես՝ որ
քիչ ատենէն երկինք պիտի երթամ՝ ուրախանալու
չե՞մ: Եթէ կերակուրը ու խմելիքը կը հաճե-
ցունէ զիս անօթի ու ծարաւ եղած ատենս, եթէ
հաճութիւն կը զգամ պտըտելով և պարտէզներու
ու աղէկ տուներու մէջ բնակելով, եթէ գեղե-
ցիկ առարկաները աչքս կը զուարճացունեն, և
անոյշ հոտերը հոտոտելիքս կամ քաղցր եղանակ-
ները լսելիքս, երկնային երանութեան նախաճա-
նօթութիւնը պիտի չուրախացունէ՞ զիս: Այն-
քան անոյշ հաճութիւն մը կը զգամ իմ գիրքե-
րուս զբաղելով, որ ինծի անանկ կու գայ թէ
կրնամ աշխարհը մէկդի ձգել ու մեծատունները
և հարուստները մեղքնալ, որ չեն գիտեր այս
երջանկութիւնը, ի՛նչ պիտի ըլլայ ուրեմն իմ եր-
ջանկութիւնս երկինքը, ուր իմ գիտութիւնս կա-
տարեալ պիտի ըլլայ · Եթէ Սաբայի Թագու-

Հին երկրի ծայրերէն եկաւ Սողոմոնին իմաստութիւնը լսելու՛, և անոր փառքը տեսնելու. ո՛րչափ զուարթութեամբ ես երկրէն երկինք երթալու եմ, որ տեսնեմ Յաւիտենականին փառքը և հասնիմ ան աստիճան իմաստութեան, որուն հետ երկրի ամենէն իմաստուններն ալ բաղդատելով՝ ուրիշ բան չեն, այլ յիմար ու բթամիտ։ Եթէ Աստուած երկրի իշխան ընէր զիս, և կարող ըլլայի ՛լեռները շարժել մէկ խօսքով կամ մէկ դպչելով մը ախտերը բժշկել', ասանկ իշխանութեան ու պատիւներու վրայ ուրախանալու չէի՞, և աւելի չուրախանա՞մ որ իմ անունս երկինքը գրուած է։ Երբոր իմ ծնողքներս ու իմ մտերիմ և սիրելի բարեկամներս կը վայելեմ՝ չեմ կրնար չուրախանալ, մանաւանդ երբոր մտերմութեամբ զգացումներս իմ բարեկամիս կը հաղորդեմ, ո՛րչափ անոյշ է ան սիրոյ զգայութիւնը։ Ո՛հ, ինչ պիտի ըլլայ ուրեմն բնակիլ Աստուծոյ յաւիտենական սիրովը։ Ա՜հ ո՛րչափ բարի ու որչափ վայելուչ է որ եղբայրները իրարու հետ միաբանութեամբ բնակին'։ Ո՛րչափ երջանիկ ո՛րչափ հաճելի է տեսնել ընտանիք մը որ մէկզմէկու հետ սիրով կ'ապրին. այր և կին՝ ծնողքը ու զաւկըները և սպասաւորները ամէնը սիրով մէկզմէկու հետ կը վարուին. տեսնել քաղաք մը որ մէկզմէկու հետ սիրով կը բնակին առանց նախանձելու՝ առանց կռիւի կամ հակառակութեան՝ առանց դատաստաններու՝ առանց հերձուածի կամ բաժանմունքներու՝ այլ ամէն մարդ իր ընկերը իր անձին պէս սիրելով, խորհելով թէ որչափ բան որ ընեն մէկզմէկու՝ քի՛չ է, և ջանալով սիրոյ մէջ մէկզմէկէ անցնիլ։ Ուրեմն ի՛նչ երջանիկ ընկերութիւն պիտի ըլլայ երկնից ընտանիքը. և

«Նոր Երուսաղէմի ան խաղաղ բնակիչները, ուր ո՛չ բաժանում կայ և ոչ տարբեր դատողութիւն, ոչ սիրոյ պաղութիւն և ոչ օտարութիւն կայ. խաբեբայ բարեկամութիւն չկայ, ոչ մէկ դաժան նայուածք մը. ո՛չ մէկ բարկութեան դէմք մը կամ խորհուրդ մը, այլ ամէնը մէկ են Քրիստոսով, որ ան ալ մէկ է Հօրը հետ և ամէնք կ՚ապրին անոր սիրովը՝ որ նոյն ինքը սէր է: Հոգին աւելի իր սիրած տեղն է քան թէ իր բնակած տեղը: Ուրեմն որչափ մեծ միաւորութիւն պիտի ունենայ իմ հոգիս Աստուծոյ հետ, երբոր անանկ սրտանց՝ զօրաւոր և անդադար սէր ունենամ անոր վրայ: Ո՛հ թշուառ ու անհաւատ սիրտ՝ որ ասանկ օրուան՝ ասանկ գործքին և ասանկ կեանքին վրայ այնքան նուաստ ու այնքան տկար ուրախութիւններով կրնաս մտածել: Բայց իմ ապագայ վայելմունքս աւելի կենդանի պիտի ըլլայ:

«Ո՛րչափ զուարճալի է ինծի զննել ու քննել արարչութեան աս ստորին կարգի գործքերը: Ի՛նչ գեղեցիկ շինուածքի մը մէջ կը բնակինք, գետինը այնպէս զարդարուած է խոտերով՝ ծաղիկներով և ծառերով ու կ՚ոռոգուի աղբիւրներով և գետերով, վրանիս ծածկուած է խիստ ընդարձակ ու բարձր կամար մը սքանչելի կերպով զարդարուած: Ի՛նչ սքանչելիք կը պարունակեն արեգակը՝ լուսինը՝ աստղերը և ծովերն ու հովերը: Իսկ եթէ Աստուած ասանկ տուն մը պատրաստեց ապականացու մարմնին համար և բանտարգեալ հոգիին համար, և եթէ այսքան միլիոնաւոր զարմանալիքներ կը շնորհէ իր թշնամեացը, ալ ի՛նչ բնակարան պիտի ըլլայ ան՝ որ իր ընտիր և սիրասուն զաւակացը համար կը պատրաստէ. և ո՛ր-

չափ պիտի գերազանցէ՝ Նոր Երուսաղէմին փառքը այս աշխարհիս բոլոր ներկայ փառքէն։ Ելի՛ր ուրեմն ո՛վ իմ հոգիս, բարձրացի՛ր քու մտածութիւններովդ, և ան փառքին վրայ ըրած խորհրդածութիւններդ թո՛ղ այս վարի գերազանցութիւններուն վրայ ունեցած խորհրդածութիւններէդ ան համեմատութեամբ գերազանցեն։ Ո՜հ վախնա՛ր որ այս մարմինէն և այս աշխարհէս կ'ելլես, քանի որ սոսկ երջանիկ փոփոխութեան մը մէջ պիտի մտնես, այլ ըսէ՛ ինչպէս որ մէկը ըսաւ մեռնելու ատենը, թէ Ուրախ եմ և գրեթէ ուրախութենէս պիտի ցատկեմ որ եկաւ ան ժամանակը՝ երբ ան ամենակարող Եհովան որուն վեհափառութեանը զմայլած եմ բնութեան գործքերը քննած ատենս, որուն բարութիւնը պաշտեցի և հաւատքով իրեն ցանկացայ ու փափաքեցայ, հիմա պիտի ցուցընէ ինծի ինքզինքը երես առ երես՝։

«Ո՜րչափ զարմանալի են նաև Նախախնամութեան գործքերը։ Ո՜րչափ զուարճալի բան է տեսնել ան մեծ Աստուածը, որ հոգ կը տանի քանի մը խոնարհ և աղօթող բայց անարգուած անձանց յառաջադիմութեանը և ապահովութեանը վրայ, և միտք բերել ան յատուկ շնորհքները՝ որով իմ կեանքս զարդարուած ու քաղցրացած է։ Ո՜րչափ անգամ աղօթքներս լսուեցան՝ արտասուքներս սրբուեցան՝ ու տառապեալ հոգիս մխիթարութիւն գտաւ։ Ո՜րչափ անգամ իմ Տէրըս քաջալերութիւն տուաւ ինծի։ Աս փորձառութիւնները՝ իմ Հօրս սիրոյն այս պայծառ վկայութիւնները ի՜նչ հաստատութիւն կու տան իմ երկչոտ ու անհաւատ սրտիս։ Ան ի՛նչ երջանիկ օր պիտի ըլլայ ուրեմն երբ պիտի ունենամ ամէն ո-

զգաստութիւն, կատարեալ աղքատութիւն, և կատարելապէս պիտի վայելեմ ազատութեան Տէրը, որ ատեն ծովեզերքը ելած՝ ետևս պիտի նայիմ կատղած ծովերուն վրայ, որմէ ապահովութեամբ անցայ, որ ատեն միտքս բերեմ քաշած ցաւերս ու տրտմութիւններս և վախերս ու թափած արտասուքս, և ժառանգեմ այն փառքը՝ որ էր աս ամենուն վախճանը: Եթէ աշխարհագրութիւններուն հետ կաթիլ մը կենդանի հաւատք խառնուած ըլլար, ի՜նչ երկնառաք սիրտ մը պիտի կրէի իմ ներսիդիս: Խիստ կը փափաքիմ հաւատալու, ՚ո՜վ Տէր, օգնէ՝ իմ անհաւատութեանս՚:

«Ի՜նչ քաղցր են քեզի ո՜վ իմ հոգիս՝ հոգևոր պաշտամունքները: Ի՜նչ հաճութիւն կը զգաս աղօթք ու շնորհակալութիւն մատուցանելէն, երկնային քարոզներ մտիկ ընելէն և սուրբերուն հետ ընկերութիւն ընելէն, և տեսնելով որ ՚Տէրը օրէ օր փրկուածները կ՚աւելցնէ եկեղեցիին՚: Ի՜նչպէս կրնամ ըմբռնել ուրեմն այն ուրախութիւնը, որ պիտի վայելեմ երկինքը կատարեալ եկեղեցին տեսնելով և երկնային տաճարը ընդունելով, ու երկնային զօրքին հետ Տէրը յաւիտեան գովաբանելով: Եթէ Աստուծոյ խօսքը Յոբին՝ իր քիմքին հաճոյքէն քաղցր էր, և Դաւիթին՝ մեղրէն ու քամուած մեղրէն, և Երեմիային սրտին ուրախութիւնը ու խնդութիւնն էր, ո՜րչափ երանելի օր մը պիտի ըլլայ այն, երբոր կատարելապէս վայելենք աս Խօսքին Տէրը, և այլ պէտք չըլլայ աս գրուած կանոնները և խրատմունքները և ոչ ուրիշ գիրք մը, այլ միայն փառաւոր Աստուծոյ երեսը: Եթէ Քրիստոսի՝ երկրի վրայ խօսելուն ամէն ականջ դնողները կը զարմանային

անոր իմաստութեանը ու պատասխաններուն ու բերնէն ելած շնորհալի խօսքերուն վրայ, ալ ես որչափ պիտի սքանչանամ երբոր տեսնեմ զինքը փառքի մէջ։ Եթէ անոր փառքին ակնկալութիւնը խաչը յանձն առնել կու տայ ուրիշներուն, և մինչև անգամ ազատութիւնը չընդունիլ, դուն չե՞ս կրնար զուարթ ըլլալ աւելի փոքր նեղութիւններու մէջ։ Եթէ ան ակնկալութիւնը մարտիրոսութեան բոցերը կը քաղցրացունէ, չը՞կրնար քաղցրացունել քու կեանքդ՝ հիւանդութիւնդ կամ բնական մահդ։ Նոյն երկինքը չէ՞ որ, անոնք ալ՝ ես ալ պիտի երթանք։ Մի՞թէ անոնց Աստուածը՝ անոնց Քրիստոսը և անոնց պսակը՝ նոյնը իմս ալ չէ՞։ Ես միթէ առանկ աղօտ աչքով՝ թուլցած սրտով ու ծռած դէմքո՞վ նայելու եմ անոր վրայ։ Անոր փոքր ինչ առհաւատչեայն ես անձամբ վայելած եմ, և որքան աւելի հաճելի էր անիկայ որ և իցէ երկրաւոր բաներէն, ուրեմն անոր կատարեալ վայելմո՞ւնքը ինչ պիտի ըլլայ։

«Ի՛նչ գեղեցկութիւն կայ հոս Հոգիին անկատար շնորհքներուն վրայ։ Աւա՜ղ, ո՜րքան փոքր են ատոնք կատարեալ վիճակներնուս մէջ մեր վայելելիքին հետ բաղդատելով։ Ի՜նչ երջանիկ կեանք մը պիտի վարէի հոս, եթէ միայն կարող ըլլայի ուզածիս չափ սիրել զԱստուած, եթէ կարող ըլլայի բոլորովին սիրով լեցուիլ, և միշտ սիրել։ Ո՜վ իմ հոգիս, ի՞նչ կու տայիր առանկ կեանք մը ունենալու համար։ Եթէ Աստուծոյ վրայ փափաքածիս պէս ըմբռնումներ և անոր խօսքին վրայ փափաքածիս պէս գիտութիւն ունենայի, եթէ կարող ըլլայի կատարելապէս իրեն ապաւինիլ իմ ամէն նեղութիւններուս մէջ, եթէ ամէն պարտաւորութեան մէջ ուզածիս չափ աչ-

խոյժ ըլլայի, եթէ կարող ըլլայի զԱստուած իմ շարունակ փափաքս և ուրախութիւնս ընել, աշխարհին բոլոր պատիւները ու հեշտութիւնները աչքիս չէր երևար ։ Ի՜նչ երջանիկ վիճակի մէջ պիտի ըլլաս քիչ ատենէն, ո՛վ իմ հոգիս, երբ աս բաները ուզածէդ աւելի պիտի ունենաս և քու կատարեալ սէրդ Աստուծոյ անմիջական տեսութեանը առջևը պիտի 'ի գործ դնես, և ո՛չ թէ հիմակուան պէս խաւարի մէջ և հեռուէն ։

«Եթէ Քրիստոսի մեղանչական ու հալածեալ եկեղեցին այնքան գեղազանց է մէկ անհատ շնորհալի հոգիէ մը, ուրեմն ինչ պիտի ըլլայ ան եկեղեցին՝ երբոր բոլորը ժողվուի և բոլորովին փառաւորուի և արտասուաց ձորէն Սիոն լեռը ելլէ. և ալ ո՛չ մեղանչէ և ոչ չարչարուի ։ Հին Երուսաղեմին փառքը խաւար ու տգեղութիւն պիտի ըլլայ Նորին փառքին քովը ։ Ուրեմն ո՜րչափ պատճառ պիտի ունենամ ցնծալու և ուրախ ըլլալու, երբոր տեսնեմ թէ ո՛րչափ փառաւոր է երկնային տաճարը և միտքս բերեմ եկեղեցւոյ նուաստութիւնը երկրի վրայ ։

12. «Բայց աւա՜ղ՝ ես իմ մտածութիւններուս զբաղելով ինչպէս մոռցե՛ր եմ ։ Ես կարծեցի թէ բոլոր աս ժամանակը իմ սիրտս մտադրութիւն կ՚ընէ, բայց կը տեսնեմ որ անանկ չէ ։ Ի՞նչ կենդանութիւն կ՚ըլլայ պարապ խորհուրդներուն ու խօսքերուն մէջ առանց զգացումի ։ Ո՛չ Աստուած և ոչ ես հաճութիւն կը զգամ անոնցմէ ։ Ո՞ւր էիր անարժան սիրտ՝ երբոր ես յաւիտենական գանձերը կը բանայի քեզի ։ Ամօթ չէ՞ քեզի որ այնքան կը գանգատիս կենաց անհանգստութիւններուն համար և տժգոհ կ՚ըլլաս Աստուծմէ՝ քեզի տրտմութիւններ տալուն համար, որ ատեն հը-

ընչտակաց ուրախութիւններր կ'առաջարկէ քեզի՝ բայց 'ի զուր։ Եթէ աղէկ ժառանգութիւն ընէիր ինծի, կենդանութիւն պիտի զգայիր և ուրախութեամբ պիտի ցնծայիր ու պիտի մոռնայիր քու ցաւերդ և տրտմութիւններդ։ Չէի գիտեր որ իմ սիրտս այնքան դժկամակ է եղեր ուրախանալու։

13. «Տէ՛ր՝ դուն իմ կատարեալ ուրախութիւններս երկինքին պահեցիր, վասնորոյ օգնէ՛ ինծի որ փափաքէի մինչև որ ժառանգեմ անիկայ, և ցանկամ երբոր ուզածիս պէս չեմ կրնար ուրախանալ։ Ով իմ հոգիս, տրտմալից փորձառութեամբ գիտես որ տակաւին քու հանգիստդ հասած չես։ Ո՛հ՝ ե՞րբ պիտի հասնիմ ան ապահով ու հանդարտ նաւահանգիստը՝ ուր որ աս փոթորիկներուն՝ ալիքներուն և վտանգներուն մէկը չկայ, ու ալ ձանձրալի և անհանգիստ գիշեր մը կամ օր մը պիտի չունենամ։ Ան տեղը իմ կեանքս առանց յոյսով ու վախով՝ ուրախութեամբ ու տրտմութեամբ խառնուած պիտի չըլլայ, և ոչ մարմինն ու հոգին պիտի հակառակին իմ ներսի դիս, ոչ ալ հաւատքն ու անհաւատութիւնը՝ խոնարհութիւնն ու հպարտութիւնը յարատև կռուի մէջ պիտի ըլլան։ Ե՞րբ պիտի անցնին աս հոգիի տանջանք եղող երկիւղները և հոգերը ու վիշտերը։ Ե՞րբ պիտի ելլեմ աս հոգիի հակառակող՝ ու անիկայ որոգայթի մէջ ձգող՝ խաբեբայ ու ապականացու մարմինէն, աս ունայն ու սրտամաշուք աշխարհէն։ Ո՛ւր, որ պիտի կենամ ու տեսնեմ Քրիստոսի եկեղեցին հակառակութիւններու մէջ տարուբերած ու շահախնդրութեան և խանգարեալ կարծիքներու ծառայած։ Երկնային Երուսաղէմը աս խանգարումներուն մէկը

չունի, հոն պիտի տեսնեմ կատարեալ հոգիներուն միաձայն հաւանութիւնը՝ հնազանդելով և փառաւորելով իրենց յաւիտենական Թագաւորը։ Ո՜րչափ լաւագոյն է հոն դռնապան ըլլալ քան թէ աս խռովալից աշխարհին իշխան։ Ինչո՞ւ համար աւելի ձանձրացած չեմ աս ձանձրալի վիճակէն։ Ինչո՞ւ ասանկ կը մոռնամ իմ հանգստեանս տեղը։ Ո՛ն՝ արի՛ ուրեմն ո՜վ իմ հոգիս՝ բորբոքած ու եռանդուն փափաքներով։ Մի՛ սպասեր մինչև աս մարմինին քեզի հետ փափաքիլ կարող ըլլալուն, մի՛ յուսար որ զգայութիւնը քու օրհնեալ առարկադ ըմբռնելու կարող ըլլայ, և իմացունէ քեզի թէ ինչ բանի փափաքիլ 'պէտք է։ Միթէ երկնային հանգստեան վրայ քու ունեցած փափաքներուդ թուլութիւնը ամենազզուելի ապերախտութեան ու յիմարութեան յանցանք չը՞ գներ վրադ։ Քու Տէրդ ասանկ սուղ գինով ձեռք ձգէ հանգիստը քեզի համար, ու դուն անոր յարգը չե՞ս ճանչնար։ Ինք առաջ երթայ՝ որ այնքան փառաւոր տեղ մը օթեւան մը պատրաստէ քեզի պէս խեղճի մը համար, և դուն դժկամա՞կ ես երթալ անիկայ ժառանգելու։ Փառաց Տէրը քու ընկերութիւնդ փափաքի և դուն անորը չե՞ս փափաքիր։ Երկիրը կատարեալ դժո՞ղք մը ըլլալու է քեզի որ դուն Աստուծոյ հետ ըլլալու յօժարիս։ Նայէ ամենասիրելի արարածներուն և ամենափափաքելի վիճակին վրայ և ըսէ ո՞ւր կ'ուզես կենալ՝ եթէ ոչ Աստուծոյ հետ։ Աղքատութիւնը բեռ մըն է, հարստութիւնը որոգայթ, հիւանդութիւնը անախորժ՝ առողջութիւնը անհաստատ՝ դաժան աշխարհը քու գարշապարդ կը խածնէ՝ զուարթ աշխարհը սիրտդ կը խայթէ, աշխարհը որչափ որ սի-

րես ու անով ուրախանաս, այնքան կը վնասէ ու վտանգի մէջ կը ձգէ իր սիրողը, եթէ չսիրես՝ ինչո՞ւ պիտի փափաքիս անոր: Եթէ աշխարհը քեզ գովէ, այդ մեծաւորութիւնը տարափոխիկ հիւանդութիւնով ախտացեալին շունչին պէս պիտի ըլլայ քեզի. իսկ եթէ խստութեամբ վարուի՝ կարծեմ քու սէրդ պիտի չհրապուրէ: Եթէ քու յաջող աշխատութիւններդ և քու աստուածապաշտ բարեկամներդ՝ Աստուծոյ հետ եղած կեանքէ աւագոյն կ՚երևան քեզի, ժամանակ է ուրեմն որ Աստուած զանոնք առնէ քեզմէ: Եթէ քու ուսմունքներդ քաղցր կու գան քեզի՝ դառն ալ չե՞ն գար. և որչափ ալ քաղցր ըլլան, ի՞նչ պիտի ըլլան անոնք ճշմարտութեան Աստուծոյն յաւիտենական տեսութիւններուն քովը: Քու բարեկամներդ քեզի հաճութիւն կու տան, և չէ՞ որ սրտամաշուք ու վիշտ ալ կ՚ըլլան: Անոնք Աստուծոյ շնորհքովը նորոգուած բայց տակաւին մեղանչական ալ չե՞ն. մարդասէր են, բայց չէ՞ որ մէկէն ալ կը վիրաւորուին: Խոնարհ են՝ բայց աւա՜ղ՝ որչափ ալ հպարտ: Անոնց շնորհքները քաղցր և ձիրքերնին այլոց օգտակար է, բայց միթէ անոնց ապականութիւնը դառն և անկատարութիւննին վնասակար չէ՞, և այսչափ դժկամանք ես անոնցմէ զատուիլ քու Աստուծոյդ երթալու համար:

«Ո՛վ իմ հոգիս աս տրտմալից աշխարհէն վեր նայէ: Այսչափ ատեն է տառապանաց դառն գաւազանը կրեցիր ու տակաւին չհասկըցա՞ր անոր նշանակութիւնը: Ամէն հարուած քեզ ասկէ վռնտելու համար չէ՞: Անոր ձայնը Տէրոջը ան խօսքին պէս չէ՞ որ Եղիային եղաւ, ըսելով, ‘Հոս ի՞նչ բան ունիս’: Կը մոռնա՞ս քու Տէրոջդ գու-

շահութիւնը, թէ ‘Ինծմով խաղաղութիւն պիտի ունենաք, այլ աշխարհի մէջ նեղութիւն’։ Ո՛հ իմ սիրելի Տէրս կ'իմանամ քու միտքդ, անիկայ իմ մարմինիս մէջ գրուած ու ոսկորներուս վրայ փորագրուած է։ Քու միտքդ իմ սրտիս կը նայի. քու գաւազանդ կը վարէ զիս, իսկ սիրոյ մետաքսեայ լարդ կը քաշէ, բայց աս ամէնը՝ քեզի բերելու համար է։ Տէ՛ր, աստանկ սիրտ մը արժանի՞ է որ դուն ընդունիս։ Արժանի ըրէ և ան ատենը քուկդ կ'ըլլայ, նախ՝ ա՛ռ անիկայ քեզի և յետոյ զի՛ս։ Ես չնչին կաւը քիչ մը կեանք ունի շարժելու, բայց վեր չբարձրանար։ Տկար մանուկը իր փափկասիրտ մօրը նայածին պէս՝ ան ալ քեզի կը նայի և ձեռքերը կ'երկնցունէ և կը ցանկայ որ վեր առնես քովդ։ Թէպէտ չեմ կրնար ըսել, Իմ հոգիս քեզի կը ցանկայ, սակայն կրնամ ըսել, թէ կը փափաքիմ անանկ ցանկացող սրտի մը։ ‘Հոգին յօժար է մարմինը տկար’։ Իմ հոգիս կ'աղաղակէ ‘քու թագաւորութիւնդ գայ’, կամ թէ ես քու թագաւորութեանդ գամ, բայց մարմինս կը վախնայ որ իմ աղօթքս կը լսես և խօսքիս պէս կ'ընես։ Օրհնեա՛լ ըլլայ քու շնորհքդ՝ որ կը գործածէ իմ բնութեանս տկարութիւնները, զանոնք վերցունելու համար. վասն զի իմ վախերէս կը վախնամ, և տրտմութիւններուս համար կը տրտմիմ ու մեծագոյն փափաքներուս կը փափաքիմ. և այսպէս իմ փափաքներուս հանելու տաժանելի միջոցները կ'աճեցունեն իմ ձանձրութիւնս, և անիկայ ինծի հառաչել կու տայ որ հանգիստս հասնիմ։

“Յիրաւի Տէ՛ր՝ ‘երկու կողմանէ ալ նեղի մէջ եմ, չեմ գիտեր ո՛րը ընտրեմ’, բայց դուն գիտես թէ ո՛րը տալու ես, ‘մեկնիլ և քեզի հետ ըլլալը

շատ աւելի աղէկ է, բայց մարմինի մէջ կենալը հարկաւոր կ'երեւայ՝ ։ Գիտես որ ես քու գործերդ ձանձրացած չեմ, այլ տրտմութենէն ու մեղքէն. ես յօժար եմ կենալու քանի որ դուն կը բանեցունես զիս, բայց կ'աղաչեմ քեզի՝ ալ մի՛ կենար երբոր աս գործը կատարուի, և որչափ ժամանակ որ ես հոս կենալու եմ, կը խնդրեմ որ աւելի բարեկարգուիմ ու զօրանամ. աւելի աղէկցո՛ւր զիս, և ամենալաւ վիճակիս մէջ զիս քեզի առ ։ Չեմ համարձակիր այնքան անհամբեր ըլլալ՝ որ քեզ թախանձեմ թէ կարճեցունես իմ ժամանակս, զիս անպատրաստ յափշտակելով, վասն զի գիտեմ թէ որքան կախում ունի իմ յաւիտենական վիճակս՝ աս կեանքին մէջ ըրած յառաջադիմութենէս ։ Ոչ ալ կ'ուզեմ կենալ հոս՝ երբոր գործը լմննայ, և կենալ հոս մեղանչական վիճակի մէջ՝ քանի որ իմ եղբայրներս հոն յաղթութեան հանդէս կը կատարեն ։ Քու ոտքըդ կը ճզմէ՛ աս որդը՝ քանի որ ան աստղերը կը փայլին փառաց երկինքը ։ Սակայն՝ ես ալ անոնց պէս քու զաւակդ եմ ։ Քրիստոս ինչպէս անոնց՝ անանկ ալ իմ Գլուխս է, ուրեմն ինչո՞ւ այնքան մեծ հեռաւորութիւն կայ մէջերնիս ։ Բայց ես կը խոստովանիմ որ քու ճամբաներդ արդար են. թէպէտ մենք ամենս զաւակ ենք, սակայն ես անառակ որդի եմ և անոր համար պատշաճ է որ աս օտար երկրին մէջ կեղևներով կշտանամ, որ ատեն անոնք միշտ քեզի հետ ըլլալով՝ քու փառքըդ կը ժառանգեն ։ Անոնք ալ ատեն մը իմ վիճակիս մէջն էին, ու ես ալ քիչ ատենէն անոնց պէս պիտի ըլլամ ։ Անոնք աս ամենաբարձր վիճակին չհասած ամենանուաստ վիճակի մէջ գըտնուեցան. չթագաւորած չարչարուեցան, մեծ նե-

ղութիւններէ եկան, և հիմա քու աթոռիդ առա-ջևն են՛. և գոհ չե՞մ ըլլար որ ես ալ անոնց պէս ընդունիմ այն պսակը. և խմես անոնց գաւաթէն՝ երկնից թագաւորութեանը մէջ անոնց հետ չնըա-ռած՛։ Տէ՛ր՝ ես գոհ եմ որ քու սահմանած ժա-մանակիդ չափ կենամ և քու ուզած տեղդ եր-թամ, և այսպէս դուն պիտի բարձրացունես զիս քու յարմար դատած ատենդ, և առնես քու ամբարդ երբոր զիս հասունցած կը տեսնես։ Իսկ հիմա՝ կը փափաքիմ, թէպէտ չեմ աժգո-հիր, կը հառաչեմ և կը ցանկամ, թէպէտ ա-նանկ չեմ աճապարեր որ յանցանք մը ըլ-լայ Տէրոջս առջևը. յօժա՛ր եմ քեզի սպասել. բայց ոչ թէ քեզ կորսնցունել, և երբոր կը տես-նես զիս որ քեզմէ աս հեռաւորութեան մէջ բա-լորովին գոհ եմ, զօրացո՛ւր իմ նուաղած փա-փաքներս և բորբոքէ՛ իմ սիրոյս մարած կայծը, մի՛ թողուր զիս մինչև որ կարող ըլլամ անկեղ-ծութեամբ աղաղակել, Ինչպէս որ եղջերուն ջու-րի վտակներուն կը փափաքի, անանկ ալ իմ ան-ձըս քեզի կը փափաքի ո՛վ Աստուած. Հոգիս ծա-րաւի է Աստուծոյ՝ կենդանի Աստուծոյն։ Ե՞րբ պիտի գամ ու երևնամ Աստուծոյ առջին։ Իմ կենցաղավարութիւնս երկինքն է, ուսկից Փրկիչը կը սպասեմ։ Վերի բաները կը մտածեմ, ուր որ Քրիստոս կը նստի, և իմ կեանքս պահուած է։ Հաւատքով կը քալեմ ու չէ՛ թէ երևոյթով, և ալ աւելի կ՛ուզեմ մարմինէն հեռանալ, ու Տէրոջը քովը կենալ՛։

“Ի՛նչ կ՛ուզէ ինծմէ աս ունայն աշխարհը, և ի՞նք ինչ ունի որ իմ փափաքներս Աստուծմէ իրեն քաշելու չափ ցանկալի երևնայ ինծի, կամ դըժ-կամակ ընէ զիս վեր բարձրանալու։ Երբոր կը

Նայիմ անոր վրայ ուշադիր աչօք, գոռացող անապատի մը պէս կ'երեւայ ինծի անիկայ, և անոր բնակչացը խիստ մեծ մասը՝ վայրենի ճիւաղներ։ Բոլոր անոր գեղեցկութիւնը աղտեղութիւն կը սեպեմ, և բոլոր անոր հեշտութիւնները քանի մը կաթիլ զզուման արտասուքով կրնամ ընկղմել, կամ թէ հառաչանքի մը հովը կրնայ ցրուել անոնք բոլորը։ Չըլլայ որ աս մարմինը կարող ըլլայ այնքան հրապուրել իմ հոգիս, որ աս ձանձրալի կեանքը քու ամոռիդ բոլորտիքը եղած ուրախութիւններէն նախապատիւ սեպէ։ Ու թէպէտ մահը զզուելի կու գայ մեր բնութեանը, սակայն թո՛ղ քու շնորհքդ այնքան ցանկալի ցուցընէ քու փառքդ, որ արհաւիրքներուն թագաւորը իմ ուրախութիւններուս պատգամաւորը ըլլայ ինծի։ Թո՛ղ իմ հոգիս բռնի չարձակի, և իր բնակութենէն իր կամքին դէմ չբաժնուի, այլ քաշէ՛ անիկայ քեզի քու սիրոյդ գաղտնի զօրութիւնովը, ինչպէս որ գարնան ծագող արեւը դուրս կը հանէ կենդանիները իրենց ձմռան խորշերէն. դիմաւորէ՛ անիկայ կէս ճամբան և հրապուրէ՛ անիկայ քեզի, ինչպէս որ մագնիսը իրեն կը ձգէ երկաթը։ Ասանորդ փարատէ՛ ան ամպերը որ քու սէրդ ինծմէ կը ծածկեն. կամ վերցո՛ւր ան կեղեւները որ կ'արգիլեն աչքերս քեզ տեսնելէն, վասն զի քու երեսէդ ծագած ճառագայթները և քու մեծ փրկութեանդ առհաւատչեայն միայն կրնան հոգիի մը ըսել տալ անկեղծաբար, 'Հիմա արձակէ՛ քու ծառադ խաղաղութիւնով'։ Բայց քու սովորական յայտնութիւններդ չե՛ն որ ասոր կը բաւեն, որչափ որ գործը մեծ է, նոյնպէս ըլլալու է քու օգնութիւնդ ալ։ Ո՜հ աս երկիւղներուս տեղը՝ զօրաւոր փափաքներ դիր իմ ներ-

սրտիս, և մեռնելու աս դժկամակութեանս տեղը դէպ'ի քեզի զօրաւոր ցանկութիւն։ Քանի որ քեզմէ հեռու եմ, թո՛ղ իմ հոգիս այնքան սրտանց հառաչէ՝ որքան որ իմ մարմինս հիւանդութեան ատեն առողջութեան համար կը հառաչէ։ Եւ եթէ տակաւին ժամանակ ունիմ կենալու երկրի վրայ, տո՛ւր որ ապրիմ քու մէջդ առանց աշխարհի, ինչպէս որ երբեմն կ'ապրէի աշխարհի մէջ առանց քեզի։ Քանի որ միտք ունիմ խորհելու, տո՛ւր որ քեզ չմոռնամ. կամ՝ քանի որ լեզու ունիմ բարբառելու, տո՛ւր որ ուրախութեամբ քեզ յիշեմ. կամ՝ քանի որ շունչ կայ բերանս, թո՛ղ շնչէ ու հառաչէ քեզի համար. և քանի որ ծունկ ունիմ կրկնելու՝ թող հանապազ կրկնէ անիկայ քու ոտացդ պատուանդանին քովը. և երբոր հիւանդութիւնով կը կապես զիս, ինծի ոյժ տո՛ւր, և 'արցունքներս քու տիկիդ մէջը դիր՝։

«Ինչպէս որ իմ մարմինս կը փափաքէր ան բանին՝ որմէ հոգիս կը զզուէր, անանկ ալ հիմա թո՛ղ իմ հոգիս փափաքի ան օրուանը, որմէ իմ մարմինս կը զզուի, որ իմ բարեկամներս այնչափ տրտմութիւնով չսպասեն իմ հոգւոյս բաժնուելուն, որչափ որ իմ հոգիս ուրախութիւնով պիտի սպասէ բուն իր բաժանմանը։ Եւ վերջապէս՝ 'թո՛ղ իմ անձս արդարներուն մահովը մեռնի, և իմ վախճանս անոնց վախճանին պէս ըլլայ՝, որ է հասնիլ ան անվախճան փառքին։ Եւ ան ատենը թո՛ղ քու հրեշտակաց խումբը տանին իմ բաժանեալ հոգիս արդարոց կատարեալ հոգիներուն մէջ, և ես ալ ան իմ սիրելի բարեկամներուս ետևէն երթամ, որ Քրիստոսով մեռան ինծմէ առաջ. և քանի որ իմ տրտմած բարեկամներս կու լան իմ գերեզմանիս վրայ՝ թո՛ղ իմ հոգիս քու

քովդ հանգչի. և քանի որ իմ մարմինս կը փտտի հողին մէջ՝ թող իմ հոգիս լոյսի մէջ բնակող սուրբերուն վիճակին մասնակից ըլլայ: Ո՛վ դուն որ կը համրես իմ գլխուս մազերը անգամ, համրէ բոլոր ան օրերը որ իմ մարմինս պիտի կենայ հողին մէջ. և դուն որ իմ անդամներուս բոլորը քու գիրքիդ մէջը կը գրես, պահէ իմ ցրուած ոսկորներուս հաշիւը: Ո՛վ իմ Փրկիչս՝ շուտով հասցուր քու գալուդ ժամանակը. խրկէ քու հրեշտակներդ և թող ան ահարկու և միանգամայն ուրախալից փողը հնչուի: Ո՛հ յապաղիր որ ողջ մնացողները յոյսերնին չկտրեն. մի՛ ուշանար որ երկիրը դժոխք չդառնայ և քու եկեղեցիդ հերձուածներով չփշրուի. մի՛ յապաղիր որ քու թշնամիներդ քու հօտիդ վրայ չյարձակին, և հպարտութիւնը՝ կեղծաւորութիւնը՝ հեշտասիրութիւնը և անհաւատութիւնը քու փոքրիկ մնացորդիդ վրայ չբռնանան և քու բոլոր ժառանգութիւնդ մէջերնին չբաժնեն, ու երբոր գաս հաւատք չգտնես երկրի վրայ. մի՛ ուշանար որ չըլլայ թէ գերեզմանը իր գողողութեամբը պարծենայ, ըսելով թէ Ես յաղթեցի: Թո՛ղ շուտով գայ ան մեծ յարութեան օրը, որ ատեն քու հրամանդ պիտի ելլէ և ո՛չ մէկը անհնազանդ պիտի ըլլայ, որ ատեն ծովն ու երկիրը ետ պիտի տան իրենց տրուած աւանդները, և ամէն անոնք որ կը ննջեն գերեզմանը՝ պիտի արթըննան և Քրիստոսով մեռեալները առաջ յարութիւն պիտի առնեն. որ ատեն ապականութիւնով ցանուած սերմը յարութիւն պիտի առնէ առանց ապականութեան, և գերեզմանները որ փտութիւն ու հող ընդունեցին, պիտի տան փառաւոր աստղեր ու արեգակներ: Ա՛ն որոյ վստահութիւնով իմ մարմինս հողը կը դնեմ,

յանձնելով անիկայ ոչ թէ գերեզմանին՝ այլ քեզի, անոր համար իմ մարմինս յուսով պիտի հանգչի մինչև որ տաս անոր ժառանգել յաւիտենական հանգիստը: "Դարձիր ո՛վ Տէր, մինչև ե՞րբ: Թո՛ղ քու թագաւորութիւնդ գայ": Քու ամայի եղած 'Հարսդ կ'ըսէ, Եկո՛ւր'. վասն զի անոր մէջ եղած 'Հոգին կ'ըսէ Եկո՛ւր. և կը սորվեցունէ անոր այսպէս աղօթք ընել անբարբառ հառաչանքներով. այլ և բոլոր ստեղծուածները կ'ըսեն, Եկո՛ւր, եռանդուն ակնկալութեամբ սպասելով որ ապականութեան ծառայութենէն ազատելով՝ Աստուծոյ որդւոցը փառաւոր ազատութեանը հասնին': Դուն ինքնդ ըսիր, Այո՛ շուտով կու գամ ես: Ամէն, եկո՛ւր՝ Տէր Յիսուս':"



# ՎԵՐՋԱԲԱՆՈՒԹԻՒՆ

Այսպէս՝ ով ընթերցող՝ ես քեզի իմ ամենալաւ խրատս տուի, որով կարող ըլլաս երկնային կենցաղավարութիւն մը ունենալ։ Եթէ չես կըրնար այսպէս կանոնաւոր և կատարեալ կերպով մտածութիւն ընել, կրցածիդ պէս ըրէ. միայն թէ զգոյշ եղիր որ ուշադրութեամբ և յաճախ ընես։ Ընտանեցիր աս երկնային գործին հետ՝ և չափով մը պիտի ընտանենաս Աստուծոյ հետ. քու ուրախութիւններդ պիտի ըլլան հոգևոր՝ զօրաւոր և տևողական, իրենց երջանիկ առարկային պէս. մըխիթարութիւն պիտի ունենաս թէ՛ կենաց և թէ մահուան ատեն։ Երբ ո՛չ հարստութիւն ունիս՝ ոչ առողջութիւն և ոչ աս աշխարհիս հեշտութիւնը, տակաւին մխիթարութիւն պիտի ունենաս։ Առանց բարեկամ մը քովդ գտնուելու կամ քեզի օգնելու, առանց քարոզիչի՝ առանց գիրքի, երբոր ամէն միջոցէ զրկուած ես, տակաւին կրնաս վայելել ազդու և իրական մխիթարութիւն։ Քու հաւատքդ՝ սէրդ և յոյսդ պիտի ըլլան զօրաւոր՝ գործունեայ և յաղթող. և ան հանապազօրեայ ուրախութիւնը որ ասանկով կրնաս քաղել երկինքէն՝ քու զօրութիւնդ պիտի ըլլայ։ Անանկ մէկու մը պէս պիտի ըլլաս որ կը կենայ խիստ բարձր լեռան մը գագաթը՝ և երբոր վար կը նայի՝ աշխարհը իրմէն շատ վար կ'երևի, դաշտերը՝ անտառները՝ քաղաքները և գիւղերը պզտիկ բիծերու պէս կ'երևին իրեն։ Այսպէս արհամարհանօք պիտի նայիս բոլոր աս վարի բաներուն վրայ։ Մեծամեծ իշխանները մարախներու պէս պիտի ե-

ըսէն, և զբաղեալ կուտարար ու ագահ աշխարհը մրջիւններու խումբի պէս։ Մարդոց սպառնալիքը քեզի վախ պիտի չտայ, ոչ ալ աս աշխարհիս պատիւները քեզ պիտի հրապուրեն, փորձութիւնները աւելի անվնաս և իրենց զօրութիւնը կորսնցուցած պիտի ըլլան. նեղութիւնները քիչ վշտալի և իրենց խայթը կորսնցուցած պիտի ըլլան. և ամէն պարգևի վրայ լաւագոյն ճանաչում և հաճութիւն պիտի ունենաս։ Հիմա Աստուծմէ ետքը՝ քու ձեռքդ է աս երջանիկ կեանքը վայելելը կամ չվայելելը, բոլոր իմ քեզի համար ըրած աշխատութիւնս յաջողելը կամ պարապը երթալը։ Եթէ քու անհոգութիւնովդ պարապը երթայ, մեծ վնասը քեզի պիտի ըլլայ։ Ո՛վ մարդ՝ Աստուծմէ ու երկինքէն 'ի զատ ի՞նչ ունիս հոգալու։ Աշխարհէն ելլելուդ ի՞նչ մնաց։ Մի՞թէ ամէն օր չե՞ս նայիր՝ երբ աս կամ ան հիւանդութիւնը պիտի արձակէ հոգիդ։ Մի՞թէ չը՞սպասեր գերեզմանը՝ որ քու տունդ ըլլայ, և որդերը՝ որ քու երեսդ և սիրտդ ուտեն։ Ի՞նչ կ'ըլլայ եթէ երակդ քանի մը անգամ ալ զարնէ. կամ քանի մը անգամ ալ աւելի շունչ առնես վերջին շունչդ չելած, և եթէ քանի մը գիշեր ալ քնանաս՝ հողին մէջ չքնացած։ Աւա՜ղ, ի՞նչ են ասոնք երբոր անցնին։ Նա արդէն անցածի պէս չէ՞։ Շատ քիչ ատենէն դուն քեզի պիտի ըսես, "Իմ կեանքս կատարեցա՛ւ, իմ ժամանակս անցա՛ւ. ալ ետ չդառնար։ Ուրիշ բան չկայ առջևս, այլ կամ երկինք կամ դժոխք"։ Ուրեմն ո՞ւր ըլլալու է քու սիրտդ հիմա, եթէ ոչ երկինքը։ Գիտե՞ս ինչ ահաւոր բան է երբոր մեռնելու վրայ եղող մարդ մը երկնից վրայ տարակոյս կ'ունենայ։ Նա միթէ կրնա՞յ չտարակուսիլ ան

տունը ան մարդը՝ որ առաջուց բնաւ ուշադրութեամբ և սրտի մտօք խորհած չէ երկինքի վրայ:

Կարելի է ոմանք պիտի ըսեն, "Արժան չէ այնքան ժամանակ անցընել և նեղութիւն կրել վերին ուրախութեանց մեծութեանը վրայ խորհելու համար, եթէ կրնանք վստահիլ որ անոնք մերն են՝ գիտենք որ մեծ են": Բայց ինչպէս որ աս մարդիկը չեն հնազանդիր Աստուծոյ հրամանին, որ իրենցմէ կը պահանջէ թէ "կենցաղավարութիւննին երկինքը ըլլայ և վերի բաները մտածեն", անանկ ալ կամաւ իրենց կեանքը թշուառ կ'ընեն՝ մերժելով ան ուրախութիւնները որ Աստուած դըրեր է իրենց առջևը: Եւ եթէ աս ըլլար ամէնը՝ մեծ բան մը չէր, բայց տես, որչափ բազմաթիւ ուրիշ չարիքներ կը հետևին աս երկնային ուրախութիւնները զանց ընելէն: Աս զանցառութիւնը պիտի մարէ, եթէ բոլորովին չկորսնցունէ իրենց առ Աստուած ունեցած սէրը. անհաճոյ պիտի ընէ իրենց՝ Աստուծոյ վրայ խորհիլ կամ խօսիլը կամ անոր ծառայութեանը մէջ գործելը, ալ զանցառութիւնը կը ծառայէ Աստուծոյ ճամբաներուն և աստուածային պաշտամունքներուն վրայ իրենց դատողութիւնը ծռելու, և զիրենք հեշտասէր և մոլի կ'ընէ, կը թողու զիրենք ամէն տառապանաց ու փորձութեան ազդեցութեանը տակը, և բոլորովին ուրացութեան պատրաստութիւն մըն է. Նաև մեռնելու ակամայ և վախկոտ կ'ընէ զիրենք, վասն զի ո՞վ կ'երթայ Աստուծոյ մը կամ անանկ տեղի մը, որուն վրայ հաճութիւն չունի. ո՞վ կ'ուզէ ձգել իր աս տեղի զուարճութիւնները, եթէ լաւագոյն զուարճութիւններ չունենայ անոնց երթալու: Եթէ ես միայն մեղամաղձոտ՝ երկիւղալից և տրտմալից ընթացք մը առաջարկէի՝ իրա-

տամբ կրնայիք դէմ դնել։ Բայց կամ երկնային ուրախութիւնները վայելելու էք, կամ բնաւ տևողական ուրախութիւն պիտի չունենաք։ Աստուած կ'ուզէ որ դուք հանապազ իրեն հետ քալէք և մխիթարութիւններ հանէք յաւիտենական աղբիւրէն, եթէ դուք չէք ուզեր՝ մնասը քաշեցէ՛ք. և երբոր մեռնելու ըլլաք՝ նայեցէք ո՛ւրկէ կրնաք մըխիթարութիւն գտնել, և տեսէ՛ք թէ մարմնաւոր ուրախութիւնները ձեզի հետ պիտի մնա՞ն. ան ատենը խղճմտանքը անյաղթելի կերպով միտքերնիդ պիտի բերէ՝ որ ատեն մը կը յորդորուէիք անանկ ճամբու մը որով աւելի գերազանց զուարճութիւններ պիտի վայելէիք, զուարճութիւններ՝ որ մահուան ատեն ալ ձեր քովը պիտի ըլլային և յաւիտեան պիտի մնային։

Իսկ դուք՝ որ ձեր սիրտը Աստուած կտրած է բոլոր աս վարի բաներէն, կը յուսամ որ կը ճանչնաք աս երկնային կեանքին յարգը և հանապազ Նոր Երուսաղէմը կը զննէք։ Աստուած ձեր սէրը և փափաքն է, շատ ուրախութեամբ կ'ուզէք աւելի ընտանենալ ձեր փրկչին հետ. և գիտեմ որ ձեր սիրտը անոր աւելի մօտ չըլլալը և անիկայ աւելի եռանդուն սիրով չսիրելնիդ և անով աւելի չուրախանալնիդ ձեզի վիշտ մը եղած է։ Ո՛հ, ձեր երկնային հանգստեանը վրայ մտածելու աս սովորութիւնը հաստատեցէ՛ք։ Աս է ան լեռը որուն վրայ ձեր հոգիներուն երերեալ՝ տատանեալ տապանը կը հանգչի։ Թող աշխարհ ձեր երկնային վարքովը տեսնէ որ կրօնքը լոկ կարծիքներ կամ վէճեր կամ արտաքին պաշտօն մը չէ։ Եթէ քրիստոնեայ մը երբէք քրիստոնեայ կը նմանի և իր սկզբունքներուն ուղղութեանը համաձայն է, աս պարտաւորութեանը մէջ ամենէն ուշադիր

և աշխոյժ եղած ատենն է։ Ինչպէս որ Մովսէս մարգարէն մեռնելէն առաջ Նաբաւ լեռը ելաւ Քանանու երկիրը դիտելու համար, անանկ ալ քրիստոնեան մտածութեան լեռը կ'ելլէ և հաւատքով իր հանգիստը կը դիտէ։ Կը նայի ան փառաւոր տեղերուն վրայ և կ'ըսէ, "փառաւոր բաներ" արժանապէս "կը պատմուին քեզի համար ո՛վ Աստուծոյ քաղաքը"։ Գրեթէ կը լսէ ան երկնային դասին մեղեդիները և կ'ըսէ, "Երանելի է ան ժողովուրդը որ ասանկ վիճակի մէջ է, և մանաւանդ երանելի է ան ժողովուրդը որուն Աստուածը Տէրն է"։ Կը նայի փառաւորեալ բնակիչներուն վրայ և կ'ըսէ, "Երանի քեզ ո՛վ Իսրայէլ. ո՞վ ժողովուրդը քեզի պէս Տէրոջը ձեռքովը փրկուած է. վասն զի քու օգնութեանդ ասպարը ու յաղթութեանդ սուրը անիկայ է"։ Իսկ երբոր կը նայի Տէրոջը վրայ՝ որ է անոնց փառքը, պատրաստ է միւսներուն հետ "իյնալ ու երկրպագութիւն ընել յաւիտեանս յաւիտենից կենդանի եղողին, և ըսել, Սուրբ՝ Սուրբ՝ Սուրբ՝ Տէր Աստուած ամենակարող, որ էր և է, և պիտի գայ։ Արժանի ես Տէր՝ փառք ու պատիւ և զօրութիւն առնելու"։ Երբոր կը նայի ան փառաւորեալ Փրկչին վրայ պատրաստ է ըսել Ամէն ան "Նոր երգին, Օրհնութիւն՝ և պատիւ՝ և փառք՝ և իշխանութիւն ըլլայ Անոր՝ որ կը նստի աթոռին վրայ՝ և ան Գառնուկին յաւիտեանս յաւիտենից։ Ինչու որ մորթուեցար, ու մեզ ծախու առիր Աստուծոյ՝ քու արիւնովդ ամէն ցեղէ ու լեզուէ և ժողովուրդէ ու ազգէ. և թագաւորներ ու քահանաներ ըրիր մեզ մեր Աստուծոյն"։ Եւ երբոր ետ աս աշխարհիս անապատին վրայ կը նայի, երանի կու տայ հաւատացեալ

համբերող և անարգեալ սուրբերուն, ու կը մեղքընայ ագէտ՝ խստապարանոց և թշուառ աշխարհը և իրեն համար Պետրոս առաքեալին պէս կ'ըսէ, "Աղէկ է հոս կենալ". կամ Ասափին պէս, թէ "Աստուծոյ մօտենալս բարի է ինծի. վասն զի ահա անոնք որ քեզմէ կը հեռանան կը կորսուին": Ինչպէս որ Դանիէլ մարգարէն իր գերութեանը մէջ իր պատուհանները ամէն օր դէպ'ի Երուսաղէմ կը բանար, թէպէտ ան իր տեսութենէն շատ հեռու էր, երբոր Աստուծոյ պաշտամունք կ'ընէր, նոյնպէս ալ հաւատացեալ հոգին իր մարմնոյն գերութեանը մէջ կը նայի դէպ'ի "վերին Երուսաղէմը": Եւ ինչպէս որ Պօղոս առաքեալ Կողոսացիներէն՝ անանկ ալ հաւատացեալը փառաւորեալ սուրբերէն "թէպէտ մարմնով հեռու է, բայց հոգւով անոնց հետ է, ուրախանալով և անոնց երկնային բարեկարգութիւնը տեսնելով": Եւ ինչպէս որ արտոյտը անուշիկ կ'երգէ բարձրերը ելած ատենը, բայց յանկարծ կը կտրէ ձայնը երբոր գետինը կ'իջնայ, զուարթ ու աստուածային հոգիին բնութիւնն ալ անանկ է երբոր երկնային մտածութիւնով Աստուծոյ կը մօտենայ: Աւա՜ղ՝ որ քիչ կը կենանք հոն, ու դարձեալ գետինը իջնելով մէկ դի կը ձգենք մեր մեղեդիները:

Բայց "ո՛վ դու՝ հոգիներուն ողորմած Հայրը՝ յանկուցիչ սիրոյ և ուրախութեանց ովկիանոս՝ վեր քեզի ձգէ աս թմրած սիրտերը և հոն պահէ զանոնք մինչև որ սրբութին ու հոգևոր ըլլան անոնք. օգնէ քու ծառայիդ տկար ջանքերուն և համոզէ աս գիրքը կարդացողները՝ որ աս երկնային ու զուարճալի գործը 'ի գործ դնեն: Եւ մի՛ թողուր քու բոլորովին անարժան ծառայիդ հո-

*գին որ օտար ըլլայ իր ուրիշներուն պատմած ուրախութիւններէն, այլ քանի որ երկրի վրայ կը մնամ, պահէ՛ զիս՝ քու վրադ հանապազօրեայ փափաքներու մէջ ու հաւատքով և սիրով քեզի հետ քալելու մէջ։ Եւ երբոր գաս, թող անանկ ըլլամ գտնուիմ, չծառայելով իմ մարմինիս և քուն չտալով աչքիս՝ լապտերս չպատրաստած, այլ իմ Տէրոջս գալստեանը սպասելով և ցանկալով՝ որ այսպէս իմ աս գրած խօսքերս ինծի դէմ վկայութիւն չըլլան, այլ գրողին սրտէն յառաջ եկած ըլլալով ազդու ըլլայ քու շնորհքովդ ընթերցողներուն սրտին և կենդանութեան հոտ ըլլայ թէ անոնց թէ ինծի. Ամէն"։*

**"ԷՐԿՆԻՑ ԲԱՐՁՐՈՒԹԵԱՆԸ ՄԷՋ ԱՍՏՈՒԾՈՅ ՓԱՌՔ, ՈՒ ԵՐԿՐԻՍ ՎՐԱՅ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ, ՄԱՐԴՈՑ ՄԷՋ ՀԱՃՈՒԹԻՒՆ"։**



